

# ԱՂԲԱՐ
# ԹՈՎՄԱՍԻ
# ՏՆԱԿԸ

ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ

ՀԱՐՐԻԸԴ ՊԻՉԸՐ ՍԴՈՅ

ՏԻԿՆՈՋՆ ԱՄԵՐԻԿԱՑԻՈՅ

ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

---

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

---

ՎԵՆԵՏԻԿ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆԻ

1906

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Մարդուս ճշմարիտ փառքը իր ընկերացը բնական և բարոյական վիճակը լաւցընելու ջանքը պիտի ըլլայ։*

ՀԻՊՊ. ՍԷՆԴ–ԱՆԴՌԷՆ

ՊԱՏՄԱԳՐՈՒԹԵԱՆՑ *վախճանը միշտ անցելոյն յիշատակաւը մարդուս միտքն ու սիրտը կրթելն եղած է։ Պատմութեամբ մեզմէ առջիններուն գլխէն անցածները կարդալով՝ խելք կը սորվինք՝ մեր գործերը աղէկ ու հաստատուն սկզբամբ մը գործելու։ Վիպասանութեան վախճանն ալ պատմագրական սկզբանց տակը կ'իյնայ, որուն դիտաւորութիւնն ու նպատակն ուրիշ բան չէ՝ բայց եթէ շատ անգամ, մանաւանդ այս վերջի ատեններս, ներկայ ընդհանուր կամ մասնաւոր մարդկային ընկերութեան մէջ*

անցած դիպուածները ու անոր գովելի և պարսաւելի պարագաները բարակ քօղի մը տակ ծածկած՝ մեր մտացը և սրտին դիմացը ձգել, ու անոնցմէ անկողմնասէր և անաչառ դատաստան մը խնդրել: Մարդուս վրայ մեծ տպաւորութիւն ընողը բարի և կամ պարսաւելի դիպուած մը՝ կենդանացեալ՝ իր դիմացը ունենալն է. անոր համար այնչափ աւելի պատմագիրք և վիպասանք գովելի և ընթեռնլի կ՚ըլլան, որչափ որ ճարտար և զգայուն ըլլայ մեր սրտին թելերը թոթուացնող գրիչնին: Այսպիսի ուղիղ մըտածութեամբ հնարուած և սկսուած է, և բոլոր Եւրոպայի մէջ այնչափ յառաջացած ու ծաղկած՝ վիպասանական պատմագրութիւնը. և միայն մարդուս ապականեալ բնութիւնն է, որ ինչպէս ուրիշ ամէն բարի բաներու մէջ, այսպէս ալ այս մարդկային բընութեան առողջարար դեղին մէջ իր դառնութեան թոյնը խառներ է:

Որչափ ուրախութիւն է մեզի տեսնել մեր ազգին արթնցած ջանիցն և փութոյն անուրանալի յառաջադիմութիւնը, (որով նա ճանչ-

ցած կ'երեւայ նաեւ վիպասանութեան ալ մարդկային սրտերը դաստիարակելու ունեցած օգուտն ու հարկաւորութիւնը), այնչափ ալ փափաքելի էր մեզի՝ որ թարգմանչաց կամ հրատարակողաց փոյթն ու նպատակը առաւելապէս ազգին բարոյական օգուտն ու որուն հրահանգութիւնն ըլլար, քան թէ առժամանակեայ զուարճութիւնը. վասն զի թէ և վիպասանութիւնը իր գիտած վախճանին հասնելու համար՝ զուարճացընելը ձեռքը զօրաւոր միջոց մը առած է, աւելի անզգալի կերպով մը ընթերցողին սրտին տիրելու և զինքը բարոյական վախճանին ախորժանօք մը հասցնելու, սակայն թէ որ միջոցը վախճանի տեղ փոխուելու ըլլայ, այնուհետեւ վիպասանութիւնը իր նպատակէն կը զրկուի, և փոխանակ օգտից՝ մեծամեծ խանգարմանց ալ պատճառ կ'ըլլայ։ Այս դիտողութիւնը, նորէն կ'ըսենք, մեծապէս կը փափաքինք որ ազգային գրիչք գիտցնին՝ մանաւանդ թէ սրտերնին ունենային. թէ որ ճշմարտի, ինչպէս ալ կ'ուզենք յուսալ, ազգին բարոյական օգուտն

է միայն իրենց թարգմանութեանց ու հրատարակութեանց նպատակը։

Այս բազմահռչակ վիպասանութեանս հեղինակն է ՀԵՆՐԻԿԷԴ կամ լաւ անգղիականին ՀԱՐՐԻԸԴ ՊԻՉԸՐ – ՍԴՈՑ[1] ամերիկացի տիկինը, որ իր այս վիպասանութիւնը առաջին անգամ Ամերիկայի Միացեալ Նահանգաց Նիւ-Եօրք քաղքին Ազգային-Դար[2] անունով օրագրին մէջ գլուխ գլուխ հրատարակեց. բայց այն ատենը այնչափ համբաւը չելաւ, որչափ երբ օրագրին մէջ տպա-

1. Harriet Beecher-Stowe. — Հէնրիկէդ Պիչըր-Սդոյ տիկինը Միացեալ-Նահանգաց մէջ ծնած է. իրեն հայրը Լայմէն-Պիչըր՝ Միացեալ-Նահանգաց ազատութեան պաշտպաններէն մէկն եղաւ. հինգ մանչ և երեք աղջիկ ունեցաւ, որոնք ամէնքն ալ իրենց հօրը հետեւած են։ Բայց գրականութեան մէջ ամենէն աւելի անուն հանողը այս Հէնրիկէդ տիկինն եղած է։

Հէնրիկէդ աննշան գեղի մը ծնունդ է, ուր իր առջի տարիները անցընելէն վերջը Պօսդըն անցաւ. բայց քիչ ատենէն անկէ ալ ելաւ իր բոլոր ընտանիքովը, ու գնաց Օհիոյ նահանգը բնակեցաւ։ Հոն սկսաւ գրականութեան ետեւէ ըլլալ և Ծաղկոցնէք Մայիսի ըսուած գիրքը հանեց։ Օհիոյէն Քէնդըքի անցաւ, ուր շատ տարի աղջկանց դաստիարակութեան զբաղեցաւ։ Այս Նահանգիս մէջ գերութեան ինչ ըլլալը ճանչցաւ, և ամէն օր իր աչքին տակը հանդիպած դիպուածներէն այս Աղքար Թովմասի տնակը ըսուած գրքուկիս նիւթերը հաւաքեց։

2. National-Era.

գրելը լմննալէն վերջը, գաս երկու հատորի մէջ ամփոփելով դուրս հանեց։ Այն ատենը կայծակի պէս Միացեալ–Նահանգաց մէջ մէկ ծայրէն մէկալ ծայրը այս տիկնոջ անունն հռչակուեցաւ, և առաջին երեք ամիսներուն մէջ 150,000 օրինակ ծախուեցաւ, հատը 15 ֆրանգի։ Ամերիկայէն համբաւը Լոնտրա անցաւ, և մի և նոյն միջոցին մեծատարած քաղաքին մէջ չորս տեսակ տպագրութիւն ելաւ. և տպագրողներէն մէկը՝ ինքիրմէ շարժեալ՝ հատոր գլուխ 30 դաղղիական ստեռլին, իբր հեղինակի իրաւունք, մատն հանեց Սդոյ տիկնոջ։ Անգղիայէն շուտ մը Գաղղիա, Իտալիա, Գերմանիա հռչակուեցաւ, ու շատ լեզուներու դարձուելով՝ տպագրեցաւ ու հրատարակուեցաւ։

Վիպասանութեանս նիւթն է Ամերիկայի Միացեալ–Նահանգաց մէջի գերեաց վիճակը և տեղացի գերեստացից իրենց գերիներուն հետ վարուիլը ստորագրել։

Ամերիկայի մէջ գերեստացութիւնը Սպանիացիք և Բորդուգալք մտուցին։ ԺԶ դարուն մէջ՝ երբոր Սպանիացւոց հարստահարութե-

նէն ու բռնութիւններէն՝ բուն Ամերիկոյ երկիրցիքը նուազիլ սկսան, մտածեցին Սպանիացիք որ երկիրը չէնցընելու համար Ափրիկէի սեւերէն գերիներ գնեն ու Ամերիկա բնակեցընեն։ Ասկէ սկսաւ Ամերիկացի գերեաց սկիզբը. և Սպանիացւոց զօշաքաղութենէն, և վերջը գաղթական Անգղիացւոց և այլ և այլ ուրիշ ազգաց, (որ Միացեալ-Նահանգաց հասարակապետութիւնը հաստատեցին), ունեցած շահասիրութենէն, այն աստիճանի անգութ բռնաւորութիւն մը տիրեց, որ այս խեղճ գերիները անասնոց և անբանից հաւասար կը գործածուէին, և վաճառքի տեղ կը համարուէին։

Արդէն սկիզբէն ի վեր այս անգթութեանս դէմ Հռովմայ պապերն ալ ձայներնին բարձրացուցեր էին։ Պիոս Բ. և Ուրբանոս Է. և Բենեդիկտոս ԺԴ. զանազան կոնդակներ հանեցին այս անգութ գործէս զգուշացնելով քրիստոնեայ ազգերը։ Իսկ 1839ին Դեկտեմբեր 3ին անմահ յիշատակաց արժանի Գրիգոր ԺԶ. պապն ալ կոնդակ մը հանեց, որուն մէջ իր նախորդացը բոլոր որոշմունք-

ներն ու Թղթերը յիշատակելէն վերջը՝ կ'ը-
սէ. «Մենք ալ ուզելով որ բոլոր քրիստո-
» նէից երկրէն այսպիսի նախատինքը և
» վատանուանութիւնը վերցուի... կը յորդո-
» րենք մեր առաքելական իշխանութեամբը
» և կ'աղաչենք բոլոր հաւատացեալս ի
» Քրիստոս, ինչ աստիճանի մարդ ալ ըլ-
» լայ, որ ոչ ոք համարձակի ասկէ ետքը
» այդպիսի անիրաւութեամբ չարչրկել Հըն-
» դիկները, սեւերը ու անոնց նմանները,
» զանոնք իրենց ստացուածքէն զրկելով,
» բանի ծառայեցընելով. և կամ անոնց
» դէմ բռնութիւն ընողներուն օգնելով, և
» կամ այնպիսի անգութ վաճառականու-
» թիւն ի գործ դնելով, որով սեւերը չէ
» թէ մարդ, այլ իբրև անբան կենդանի
» և ստացուած համարուեր են. և ո՛ և իցէ
» պատրուակաւ ալ ըլլայ՝ ընդդէմ օրինաց
» արդարութեան և մարդկութեան՝ կը ծա-
» խուին, կը գնուին, և դառն աշխատու-
» թեանց տակ կը հեծեն.... և այս ամէն
» բանս անարժան կը ճանչնանք քրիստո-
» նէական անուան» :

Բայց այս բոլոր մարդկութեան նուաստացընող գործիս, զորն որ աստուածային և բնական օրէնք կ'արգելուն, և մարդուս միտքը և սիրտն ալ ինքնիրեն դէմ կը բողոքէ, կարելի չեղաւ որ այսպիսի յորդորներով ալ սանձ մը դրուի. մինչեւ որ զանազան ընկերութիւններ և օրագիրներ ալ հաստատուեցան՝ թէ՛ Ամերիկա և թէ Եւրոպա, որ այս բանիս դէմ կռուին, և Անգղիոյ ու Գաղղիոյ խորհրդարաններուն մէջ ալ երկայն վիճելէն վերջը՝ վերջապէս այս երկու տէրութիւնները իրարու հետ դաշնակցեցան, ու գերեբարձ նաւերու դէմ նաւատորմիղ մը հանեցին, որ անընդհատ տասը տարուան մէջ Ատլանտեան Ովկիանոսին մէջ և Ափրիկէի արեւմտեան ծովեզերքը պտըտելով՝ բոլոր գերի տանող նաւերը սկսան բռնել, ու պատերազմական աւարի տեղ դնելով՝ նաւը աճուրդի հանել ու գերիները ալ ազատել։ Այս կերպով զգալի քիչնալ սկսաւ այսպիսի անարդար վաճառականութիւն մը։ Պրազիլի կայսերութիւնն ալ՝ 1853ին Հոկտ. 15ին օրէնսդիր ժողովքին ձեռքովը՝ մերժեց իր օրինաց մէ-

չէն գերեստացութեան օրէնքը։ Այսօր որոշման հետեւեցաւ 1854ին նաեւ Ամերիկայի հարաւային կողմի վերնեցուելոյ հասարակապետութիւնը ու ինքն ալ իր երկրին գերիները ազատեց. իսկ հիմայ Թէպէտ և ամբողջ Ամերիկայի և Միացեալ — Նահանգաց մէջ ալ բոլորովին անհետ եղած է այս անգութ շահասիրութիւնը, բայց տակաւին Ասիոյ և Աֆրիկէի խորերը, ուր որ դեռ չէ Թափանցեր քրիստոնէական կրօնից լոյսը, գժբախտաբար գերեվաճառութիւնը ի գործ կը դրուի՝ նաեւ այժմեան իրաւանց ազգաց այսքան զարգացման և քաղաքականութեան ալ այսպէս հսկայաքայլ յառաջադիմելու դարուս մէջ, յորում կանոնաւորեալ պատական օրէնք՝ իրենց գերիշխանութեան հասած են։

Սոյն տիկինն՝ պզտիկուց ի վեր՝ այս խեղճ գերեաց վշտացը ականատես և կարեկից եղած ըլլալով՝ շատ ճիշդ և սրտաշարժ կերպով անոնց վիճակը կը ստորագրէ, և աւելի մարդուս սրտին և մտացը հետ խօսելով՝ մարդկային բնութեան այնպիսի Թելերուն կը դպչի՝ որ անկարելի է

թէ չզգայ ընթերցողը։ Այս իր զգայուն գրչին
զօրութեամբն է՝ որ իր հայրենակիցացը և
օտարացը դիմաց համբաւ ստանալէն զատ,
նաև անոնց մտաց համոզողութեանը տի-
րեց. որով իր հայրենեացը շատ նահանգ-
ներ, այս գրքիս հրատարակուելէն վերջը,
ինքիրենցմէ շարժեալ՝ գերեստացութեան օ-
րէնքը մէջերնէն վերցուցին, մանաւանդ հիւ-
սիսային կողմերը, ուր ինչպէս պատմու-
թեանս ընթացքէն ալ կ'երեւի, արդէն սկսեր
էր տկարանալ գերեվաճառութեան և գերե-
ստացութեան սկզբունքները. իսկ հարաւա-
յին կողմերն՝ որ գերեաց համար ամենէն
դառն և խիստ կողմերն էին երբեմն, գրուա-
ծիս երեւան ելլելու ատեն արդէն շատ տը-
կարացած էին և առջի ուժէն ինկած։

Մենք հոս երկայն բարակ այս գրքիս
վրայ գովեստներ խօսելու տեղ՝ Ճան-Լմսէնի
այս գրքիս վրայ ըրած պատուասանը կը
կը համառօտենք, որ Եւրոպական տպագրու-
թեանց ամենուն մէջն ալ կը գտնուի։ «Այս
» գիրքս, կ'ըսէ այս երեւելի հեղինակս,
» քանի մը հարիւր երեսի մէջ՝ մեծ փոփո-

» խուժեան մը սկզբունքները կը բովան-
» դակէ. այս գիրքս՝ որ սրտաշարժ ու տաք
» սրտի զգացումներով լի է, բոլոր գրաւո-
» րական աշխարհի մէջ կը պտըտի, և հա-
» րիւրաւոր և հազարաւոր օրինակ բաժնուած՝
» բոլոր երկրագնտոյս վրայ յաղթական շըր-
» ջան մը կ՚ընէ, արտասուել տալով այն ա-
» չուըներուն որ զանիկայ կը կարդան, սոս-
» կացընելով այն ականջները որ կը լսեն,
» ու դողացընելով այն ձեռուըները որ զա-
» նիկայ կը բռնեն։ Թերևս մինչև հիմա
» գերեստացութեան վրայ իջած ծանր հա-
» րուածոց մէջ ամենէն խորագոյնը այս է.
» և կնկան մը բազուկը կրցաւ այս հա-
» րուածս տալ։ . . .
« Իմաստասիրական սկզբունքները սա-
» կաւաթիւ կիրթ և ուսեալ սրտերու վրայ
» կրնան ազդեցութիւն ընել. իսկ ստո-
» րագրութիւնը և նկարագրութիւնը բազ-
» մաթիւ, մանաւանդ թէ ամէն սրտերու
» վրայ առ հասարակ իր ուժը կը ներգոր-
» ծէ։ Արդ այս գիրքս կենդանի նկարներու
» շարք մըն է. կենդանի զոհերու դաս մը,

» որոնք մէկիկ մէկիկ իրենց վէրքերը, ի-
» րենց Թափած արիւնը, իրենց կրած շըղ-
» Թաները ցուցընելով՝ արդարուԹիւն կը
» պահանջեն յանուն մարդկուԹեան, մա-
» նաւանդ Թէ յանուն Որդւոյն Աստուծոյ,
» որ ինչպէս մեզի, նոյնպէս ալ Հաւասա-
» րապէս իրենց համար իր արիւնը Թափեց
» ու անարգական մահուամբ մեռաւ »։

« Այն բանը որ մեծամեծ փիլիսոփայք
» չկրցան ընել՝ քրիստոնեայ կնիկ մը կա-
» րող եղաւ ընելու. մարդկային արարա-
» ծոց ստրկական բարձրացուց գերիները.
» ցըցուց որ հոգի մը ունին. իրենց տի-
» րոջը բերնովը անոնց խեղճուԹիւնները
» պատմել տուաւ, և ցըցուց՝ Թէ ինչպէս որ
» ճերմակները, նոյնպէս ալ սեւերը ունին
» հօր մը, մօր մը, էրկան և ամուսնոյ ըն-
» նուԹեան զգացմունքը »։

« Այսպիսի ճշմարտուԹիւնները իրաւ շատ
» անգամ հրատարակուեցան, բայց այս-
» պիսի նկարագրուԹիւն՝ սրտաշարժ տեսա-
» րաններով՝ ոչ երբեք ցուցուեցաւ. և այս
» կերպս շուտ մը և հաւասարապէս կը

» կրթէ ինչպէս մեծերը, նոյնպէս պզտիկ-
» ները։ Անկէց վերջը, այս գրքիս այսպէս
» մեծ համբաւ ստանալովը, գերեաց առու-
» տուր մը տեսնալով, պիտի չըլլայ մայր
» մը՝ որ իր տղան գրկացը մէջ չսխմէ,
» պիտի չգտնուի աղջիկ մը՝ որուն այտերը
» բարկութենէն և ամօթխածութենէն չկար-
» միրնան. պիտի չգտնուի մարդ մը՝ որ
» զգացած զայրացմանէն ու ամօթէն չդող-
» դըղայ ու չսարսի»։...

Աս գրքիս վրայօք ուղղափառ օրագիրները ալ խօսեցան, այլ և այլ կերպով դատաստան ընելով. որոնցմէ Կաթողիկէ Քաղաքականութիւն (Civiltà Cattolica) անուանով Հռոմ հրատարակուած օրագիրն ալ՝ գրուածքին սրտաշարժ բացատրութեանցը և կենդանի նկարագիրներուն և դիպուածներուն մէկմէկու հետ ունեցած կապակցութեան և ուրիշ կատարելութիւններուն վրայ խօսելէն վերջը, անդրադարձընել կու տայ ուղղափառ ընթերցողներուն այն ընդհանուր պակսութիւնը, որ մենք ալ հարկաւոր կը համարինք յիշել հոս, ինչ որ առաջ կու

գայ հեղինակին նորաղանդ ըլլալէն։ Բոլոր գրքին մէջ կը ջանայ, հնարքներ կը փնտռէ գերէվաճառութիւնը ատելի ընելու և աշխարհիս վրայէն վերցնելու աս բարբարոսութիւնը, ու բնաւ չի յիշեր որ աշխարհիս այնչափ կողմերէն վերցաւ անիկայ՝ ուղղափառ կրօնքին գրած արգելքներովը, ու անոր քարոզիչներուն ու գերի ազատող եկեղեցականներուն ձեռքովը։ Ինքն ամօթ կը համարի կարօտ ըլլալու ուղղափառ կրօնքին ու անոր քարոզիչներուն օգնութեանը, և անոնց տեղը՝ բաւական կը համարի չորս միլիոն գերիներուն կապանքը խզելու համար՝ բնական զգացմունքներ ու Աստուածաշնչին օրինակները յարմար անյարմար տեղ շատցընելը։ Բայց բնական կարեկցութիւնն ինքնիրեն միայն բաւական չէ յաղթելու մարդուս շահախնդրութեանը, որ մարդկային զգացմունքներուն ալ կը յաղթէ։ Իսկ Աստուածաշընչէն մէջ բերուած օրինակները՝ վնասակար ալ կրնան ըլլալ, եթէ անվաւեր թարգմանութիւններով և առանց սրբոց Հարց մեկնութեանը, ամէն մարդու իր խելքին ձգուի

սուրբ Գրքին խօսքերուն իմաստը Հասկը-նալ։ Բայց այս պակասութիւնը Հեղինակին ու-րիշ բարոյական սկզբանցը վնաս մը չբերե-լուն՝ այսչափս ծանուցանելը Հարկ Համա-րեցանք ի զգուշութիւն ընթերցողաց։

Այս ամէն խորհրդածութիւններէն կըր-նայ իմանալ բարեսէր ընթերցողը՝ որ այս վիպասանութեանս ընտրողութեանը Համար ամէն Հարկաւոր զգուշութիւնները ի գործ դրած ենք, և այսպիսի Եւրոպիոյ և Ամե-րիկայի մէջ ամենուն ծանօթ եղած գիրք մը թարգմանելնիս ու մեր ազգին ընծայելնիս ուրիշ բանի Համար չէ, բայց եթէ ծանօ-թացընել մեր ազգն ալ այն մեծ փոփոխու-թեանը՝ որ տեղի ունեցաւ այս գրքուկիս ձեռքովը, որով և գրքին փառացն ալ գեղե-ցիկ յաւելուած մը տալու։



# ԱՂԲԱՐ
# ԹՈՎՄԱՍԻ
# ՏՆԱԿԸ

## ԳԼՈՒԽ Ա.

*Մարդասէր մարդ մը։*

Ամերիկացի *Միացեալ Նահանգաց Քէնթըքքի նահանգին պզտի քաղաքի մը մէջ փետրուար ամսուն ցրտկեկ իրիկուն մը, երկու ազնիւ պարոններ սեղանատան մը մէջ նստեր էին. ու հոն քովերնին ուրիշ մարդ ալ չըլլալով՝ իրարու հետ, գինիի գաւաթը ձեռքերնին, հարկաւոր բանի մը վրայ տաք տաք կը վիճէին։*

*Թէպէտ մենք երկուքն ալ ըստ սովորութեան պարոն անուամբ պատուել ուզեցինք, բայց ճիշդ խօսելով, այս երկու նստողացս մէկը արժանի չէր ամենեւին այս պատուանունին։ Կարճահասակ ու գէր մարդ մ'էր, դէմքէն ալ հասարակ ու ռամիկ մարդ մը*

կ'երեւար, և իր խրոխտ ու մեծաքան կեր-
պարը կ'իմացունէր որ ցածազգին մէկն էր, և միայն իր շահուն համար ընկերու-թեանց մէջ կը մտնէր կ'ելլէր։

Հագուստն ալ իր կերպարանքին շատ յարմար էր։ Վրան փայլուն չուխայէ լըզ-գեստ մը ունէր, գոյնզգոյն բաճկոն մը, և կապուտ ու դեղնագոյն կէտերով վզնոց մը. Հաստ ու կոշտ մատուըներն ալ խել մը մատնիներով զարդարուած էին. վզէն ժա-մացուցի մէկ հաստ ոսկիէ շղթայ մը կա-խած էր, վրան ալ շատ մը ոսկիէ օղակներ անցուցած, զորոնք խօսակցելու ժամանակ զուարճանալով մը կը պտըտցընէր։

Իսկ գիմացինը՝ որ Պարոն Շէլպի կը կո-չուէր, յիրաւի կատարեալ պարոնի կերպա-րանք մ'ունէր, և տանը կահ կարասիքէն ալ՝ ոչ զարմանալի հարուստ և ոչ ալ աղ-քատ կ'երեւար։

Կերակուըներն նոր լմընցուցեր էին. բայց Պ. Շէլպիին սեղանի հրաւիրեալը իրեն սո-վորական կոշտ կերպովը՝ ժամանակին ան-պատշաճութեանը չնայելով, գինիին զօրու-թենէն գլուխը տաքցած, լեզուն ղուրս ձգեր այլայլած կը վիճէր։

— Ահաւասիկ այս կերպով ատ մեր գոր-

ծերն ալ գլուխ կը հանենք, ըսաւ Պարոն Շէլպի։

— Սակայն ես այդպիսի պայմաններով հնար չէ որ աս դաշինքը կարենամ կնքել, ըսաւ մէկալը, ու գինիին գաւաթը դէպ ի ճրագին լոյսը մօտեցուց։

— Ինչո՞ւ համար պիտի չկարենաս. Թոմմասը ուրիշ գերիներու չի նմանիր, վրան գին մ'ալ չի կտրուիր. հաւատարմութեանը, բարեկրթութեանն ու ճարտարութեանը խօսք չկայ. տանս բաները ժամացուցի մը պէս կարգաւորեալ առաջ կը տանի։

— Այնպէս է, բարեկիրթ՝ որչափ գերի մը կրնայ ըլլալ. այնպէս չէ՞ մի, կրկնեց Հէլի, ու գաւաթ մը օղի անկեց։

— Չէ, շիտակ կ'ըսեմ, Թոմմասը իրաւցընէ բարեսիրտ, ազնիւ, սիրելի ու կրօնասէր ծառայ մըն է։ Չորս տարի է որ քըրիստոնեայ եղաւ, և ճշմարտիւ սրտի մտօք քրիստոնէութիւնը ընդունեցաւ։ Անկէ վերջը իմ ունեցածս չունեցածս իրեն յանձնեցի, ստակս ալ, տունս ալ, ձիերս ալ. ազատութիւն ալ տուի որ բոլոր նահանգին մէջ կարենայ ասդիս անդին երթալ գալ, ու միշտ զինքը հաւատարիմ ու ճիշդ գտայ իր պարտուցը մէջ։

— Շատերը կը կարծեն որ սեւերուն մէջ կրօնասէր մարդիկ չեն գտնուիր. ես կ'ըսեմ թէ կան։ Անցած տարի Նոր-Օռլէան գերի մը գնեցի, որուն հեզուկ ու համդարտ կերպին ամէնքը կը զարմանային։ Ստըկի կարօտութիւն ունեցողէ մը աժան աժան գներ էի, 600 տոլլար ալ վրան վաստակ ըրի։ Կրօնքը՝ թէ որ մէջը նոր նոր սկզբունքներ չխառնուին, գերիներուն համար մէկ հատիկ հարկաւոր բանն է։

— Իմ Թովմասս ալ քու ըսած գերիիդ մէկ հատիկ ջուխտը կրնայ ըլլալ, ըսաւ Շէլպի. անցած աշնան զինքը մինակ Ջինչիննատի[1] ղրկեցի, որ հոնտեղի բաներս կարգի դնէ ու անկէ 500 տոլլար առնելիքս բերէ։ Կանչեցի զինքը. «Թովմաս, ըսի, ես քու վրադ վստահութիւն ունիմ, որովհետեւ քրիստոնեայ ես, ու կը հաւտամ որ զիս չես խաբեր, ու կը դառնաս կու գաս»։ Գնաց, ու քիչ ատենէն ամէն բան ուզածիս պէս լմնցընելէն վերջը՝ դարձաւ եկաւ։ Ոմանք իրեն խրատ տուեր էին որ Գանատա փախչի, բայց ինքը՝ «Իմ տէրս ինծի վստահա-

1. Օհիօյ նահանգին գլխաւոր քաղաքը. այս նահանգս գերեաց ազատութիւնը ընդունած ըլլալով՝ գերիներուն շատ դիւրին բան է անկէ Գանատա փախչիլը։

ցաւ, այդպիսի վստահութիւն չեմ կրնար ընել», ըսելով՝ խորհուրդնին մերժեր էր։ Շատ կը ցաւիմ, իրաւցընէ, ատ մարդը ձեռքէս հանելուս համար. դուն պէտք է որ այս մարդս իմ բոլոր պարտուցս տեղը ընդունելով գոհ ըլլաս. և թէ որ քիչ մը խղճմտանք ունիս՝ առաջարկութեանս չէ չես ըսեր։

— Ինչ, կը տարակուսի՞ս վրաս. վաճառականէ մը որչափ որ խղճմտանք կը փնտռուի՝ հարկաւ այնչափը ես ունիմ. եթէ հարկաւոր ըլլայ՝ այս բանիս վրայ երդմունք ալ կ'ընեմ։ Բարեկամի մը սիրոյն համար ամէն բան պատրաստ եմ ընելու. բայց գիտնաս որ աս տարի գերիներու առուտուրը խիստ գէշ գնաց։

Աս ըսելով աչուըները դէպ ի երկինք վերուց, ու մէկ գաւաթ մըն ալ օղի անկեց։

Շէլպի՝ սիրտը նեղացած՝ քիչ մը լուռ կենալէն վերջը — Է՛յ, ըսաւ, նայինք ո՞րչափի կ'առնես։

— Տղայ մը և կամ մէկ աղջիկ մ'ալ Թովմասին հետ մէկտեղ կու տա՞ս։

— Չէ. ալ ուրիշ տալու բան չունիմ. իմ բանուորներէս ուրիշ մէկն ալ չեմ կըրնար հեռացընել։ Թովմասն ալ վերջին կա-

բռնութեան մէջ ըլլալուս համար է որ կը ծախեմ։

Այսոնց խօսելու ժամանակը մէյ մ'ալ դուռը բացուեցաւ, ու մէկ պզտի չորս հինգ տարեկան խառնածին[1] տղայ մը ներս մտաւ։ Դէմքը գեղեցիկ, սեւ ու մետաքսի պէս բարակ մազերը ոլորուն մինչեւ ուսերը կ'իջնային։ Սկսաւ կրակոտ ու անուշ աչքերը երկայն ընքուիներուն տակէն՝ խուցին չորս կողմը պտըտցընել։ Կարմիր ու դեղին գոյնզգոյն զգեստ մը հագեր էր, ու իր համեստութեանը հետ այնպէս միմոսական կերպեր ալ ունէր՝ որ տեսնողը մէկէն կ'իմանար որ կատակներու վարժած տղայ մըն է։

Դ. Շէլպին խաղողի ողկոյզ մը նետելով ըսաւ. — Շուտ, բռնէ նայիմ Հէնրիկոս։

Տղան կապկի պէս անանկ շուտ մը ցատքեց առաւ՝ որ տէրը չկրցաւ ծիծաղը բռնել. — Հոս եկուր, տղաս, ըսաւ։

Տղան տիրոջը քով վազեց։ Շէլպի փայփայելով մը ըսաւ. — Հէնրիկ, ցուցուր աս պարոնին ինչ որ գիտես երգել ու պարել։

1. Խառնածին (mulâtre) կ'ըսուին այն տղաքը՝ որոնց ծնողացը մէկը ճերմակ մէկն ալ սեւ է. Նոյն անունը կ'առնուն նաեւ անոնց որդիքը։

Տղան մէկէն անուշ ու բարձր ձայնով մը գերիներուն մէկ երգը երգել սկսաւ, ու ձեռքով, ոտքով ամանակ կը զարնէր, ու բոլոր մարմնովն ալ երաժշտութեան յարմար ձեւեր կ'ընէր։

— Ափրիս, շատ աղէկ ձեւացուցիր, ըսաւ Հէլի, ու կտոր մը նարինջ իրեն նետեց։

— Հենրիկ, ըսաւ նորէն Շէլպի, ձեւացուր նայիմ, Գուչոյ ծերը երբոր յօդացաւութիւն ունենայ ինչպէս կը քալէ։

Վազեց տղան, տիրոջը եղեգէ գաւազանը ձեռքը առաւ, կէս մէջքով ծռած՝ գաւազանին վրայ ինկաւ, երեսը կնճռմտեց ու ծերու պէս հազալով ու թքնելով՝ սկսաւ խուցին չորս կողմը պտըտիլ։ Երկու նստողները խնտալէն կը մարէին։

Շէլպի նորէն տղան քովը կանչելով. — Տեսնեմ, ըսաւ, Ռօպպի տէրտէրը ինչպէս սաղմոս կ'ըսէ։

Հենրիկոս մէկէն երեսը կախեց ու ծանր կերպով մը՝ քթին տակէն երգելով՝ սաղմոս մը սկսաւ ըսել։

— Օ՛, ալ ասոր խօսք չկայ, ըսաւ Հէլի. աչքս այս տղուն վրայ մնաց. աս ալ մէկալին վրան աւելցուր, կրկնեց՝ Շէլպիին

ուսը ծեծելով, ան առենը ամէն բան աղէկ կ'ըլլայ, կը լմըննայ։

Այս խօսքիս վրայ դուռը նորէն բացուե-ցաւ, ու քսանըհինգ տարեկան կնիկ մը ներս մտաւ. տղուն դէպ ի ատոր վազելէն՝ Հէլի մէկէն մակաբերեց որ տղուն մայրը պիտի ըլլայ։ Կնիկը այս օտարականին զարմացած նայուածքէն կարմրցաւ. Թէպէտ դէմքով ա-ւելի սեւագոյն էր, բայց մաքուր ու գեղեցիկ զգեստները իրեն բնական հանգամանքները աւելի դուրս կը ցայտեցնէին։ Բարակուկ ձեռուըները, վայելուչ ոտուըները, զարդա-րուն մազերը՝ Հէլիի աչքին զարկին, որ վարժ էր մէկ նայուածքով մը կին ապրանքի մը աղէկ հանգամանքներն ու պակասու-թիւնները մէկէն ճանչնալու։

— Ի՞նչ կ'ուզես, Էլիզա, ըսաւ Շէլպի։

— Հենրիկը կը փնտռէի։

Մէկէն տղան դիմացը վազեց, ու գոգը ժողուած խաղողը ցըցուց։

— Դուրս տար տղան, ըսաւ Շէլպի։

Էլիզա մէկէն տղան գիրկն առաւ ու դըռ-նէն դուրս ելաւ։

— Վա՜յ, ըսաւ վաճառականը զարմանա-լով մը, այս ինչ աղէկ գանձ է. ատ աղջը-կուս երբ որ ուզես Նոր-Օրլէանի մէջ բաղդ

կրնար շինել։ Կենացս մէջ այնչափ հազարաւոր կնիկներ գներ ու ծախեր եմ, բայց ասոր պէս գեղեցիկ մէկ հատ մ'ալ չեմ գտած։

— Ես չեմ ուզեր ատ աղջկով իմ բաղդս շինել, ըսաւ Շէլպի նեղսրտութեամբ. ու խօսքը փոխել ուզելով գինիի նոր շիշ մը բացաւ, ու — Ի՞նչպէս է, հարցուց վաճառականին։

— Աքանչելի... խիստ ընտիր տեսակէն է... Բայց հիմայ աս ըսէ ինծի, քանիո՞վ ատ կնիկը ինծի կը ծախես։

— Պարոն Հէլի, մէկ խօսքով ըսեմ, ատ կնիկը ծախելու չի գար, իրեն մարմնոյն ծանրութեամբն ալ ոսկի տաս՝ իմ կնիկս չի հաւանիր։

— Է՛, կանայք միշտ այնպէս կ'ըսեն. իրենք հաշիւ ընել չեն գիտեր. բայց մէյ մը որ իրենց հասկըցընես թէ այնչափ ոսկիով ո՞րչափ ոսկի շղթաներ ու զարդարանքներ կը գնուին՝ մէկէն մտքերնին կը փոխեն։

— Չէ, չէ, մի՛ երկընցներ, Հէլի. տասը և ոչ խօսքը ըրէ. քեզի յայտնի ու կարճ Չէ մը ըսելէն զատ՝ ուրիշ բան չունիմ զուրցելու։

— Գոնէ տղան տուր. տեսա՞ր թէ ինչ-պէս ախորժեցայ իրեն գեղեցկութեանն ու վայելուչ կերպին։

— Անիկայ քու ի՞նչ բանիդ կրնայ գալ։

— Ի՛նչ բանիս. բարեկամ մը ունիմ որ աս տարի այս տեսակ վաճառականութեան ետեւէ եղեր է. աղուոր աղջըներ կ'ուզէ գնել, որ վերջէն ծախէ։ Տղաք այնպէս բա-ներ են որ տեսողները իրենց կը քաշեն. Հարուստները տէր կ'ելլան, սուղ սուղ կը գնեն, ու իրենց մանրմունր ծառայութեանցը կը գործածեն։ Տղաք շատ բան կ'արժեն. մանաւանդ աս տղան ալ իրեն զուարճալի կերպովը շատ սաակ կ'ընէ։

— Այսպէս շուտով չեմ ուզեր ծախել, բայց Շէլպի մտածելով մը. ես գութ ունիմ, սիրտս չի քաշեր տղաքը իրենց մօրը գրկէն յափշտակել։

— Ի՛նչ կ'ըսես. ես ալ գիտեմ որ կա-նանց հետ գործք ունենալը շատ ախորժելի բան մը չէ, ես ալ չեմ սիրեր իրենց ճիչն ու աղաղակը. և որչափ կարելի է կը ջա-նամ գլուխ չցուցընել։ Մայրը քանի մը օր, շաբաթ մը տղէն հեռացուր. ամէն բան խաղաղութեամբ կը լմըննայ. երբոր կը դառ-նայ ու տղան չի գտներ՝ քանի մը օր կը

սրտմի, վերջը ամէն բան կը մոռցուի. կինդ ալ իրեն ջուխտ մը գինդ կու տայ, նոր հագուստ մը կը կարէ կամ ուրիշ զարդարանք մը կ՚ընծայէ՝ կը մխիթարուի կ՚երթայ։

— Ես չեմ կարծեր որ բանը ատ կերպով լմըննայ։

— Հը՞մ. տեսնաս թէ ի՞նչպէս կ՚ըլլայ. գիտե՞ս որ ատ սեւերը մեզի չեն նմանիր։

Վերջը Ճէլպիին դառնալով Հէլի՝ ընտանեկան ոճով մը ըսաւ.

— Ոմանք կը կարծեն թէ գերիներուն վաճառականութիւնը զմարդ քարասիրտ կ՚ընէ. բայց իմ վրաս փորձելով՝ այդպէս չեմ գտնար. թէպէտ իրաւ կան մարդիկ որ այդպիսի առուտուրի մէջ վարուելու ամենեւին կերպ չունին։ Քանիները տեսայ որ բռնութեամբ տղաքը մօրերնուն գրկէն խլելով կը ծախէին, մայրերնին ալ յուսահատաբար կը կանչուըռտէին։ Ասիկայ շատ գէշ կերպ մըն է, ատանկով ապրանքը[1] կ՚աւրուի, և շատ անգամ բոլորովին ծառայութեան անյարմար կ՚ընէ։ Նոր-Օռլէան կնիկ մը տեսայ որ այս կերպով փճացաւ. զինքը ծնող վաճառականը հարկաւորութիւն չունենալով տը-

1. Դիտէ ընթերցողը որ զմարդս ապրանքի տեղ դրած են գերեվաճառները։

ղուն՝ չէր ուզեր գնել. կնիկը տղան գիրկը առած կու լար ու չէր թողուր որ իրմէն զատուի. վերջապէս բռնութեամբ առին տղան ձեռքէն ու կնիկը խուցին մէջ փակեցին. Հոն սրտին ցաւէն խենդըցաւ ու մեռաւ։ Կը տեսնա՞ս, պարոն, որ այս գէշ կերպով հազար տոլլարի կորուստ եղաւ։ Փորձով համոզուած եմ, որ շատ խոհեմութեամբ ու մարդկութեամբ գործելու է։

Այս ըսաւ ու կռնակը աթոռին տալով՝ այնպէս ծանր կերպով նստեր էր՝ որ կարծես թէ Ուիլպերֆըրս[1] մըն էր։ Իր ըսածին վրայ այնպէս համոզուած էր, որ երբոր Շէլպի նարինջ մը կը տըրկէր, Հէլի գեռ քանի մը խորհրդածութիւններ ըրաւ լուրջ ու ծանր կերպով մը, իբր թէ ճշմարտութեան սիրոյն համար կը խօսէր։

— Իրաւ անպատշաճ բան մըն է ինքիր վրայ գովեստ խօսիլը, կ՚ըսէր, բայց ամէնքը կը վկայեն որ իմ ունեցած գերիներուս խումբը ընտիրներէն մէկն է. գոնէ շատերէն անանկ լսեր եմ. բոլոր գերիներս խիստ աղէկ վիճակի մէջ են, ամէնքն ալ վրայ ե-

1. Ուիլպերֆըրս (Wilberforce) անգղիացին գերեաց ազատութեան գլխաւոր պաշտպաններէն մէկը եղած է։ Ծն. 1759. Մեռ. 1833։

կած ու առողջ են, այս առուտուրներուն մէջ ամենևին փաս չեմ քաշած։ Անիկայ իմ կերպէս կը կախուի. իմ կերպս ալ մարդկութեան սորվեցուցածն է։

Շէլլի այս խօսքերուն ինչ պատասխան տալը չգիտնալով՝ պաղ կերպով մը.—Այնպէս պիտի ըլլայ, ըսաւ։

—Ի վերայ այսր ամենայնի կը հաւատամ, պարոն, որ իմին այս կերպս ծաղր ընելով՝ երեսիս ալ զարկին. բայց իմ ունեցած կարծիքներս ոչ ազատական են և ոչ ալ հասարակ մարդու կարծիք. ես իմ մտքիս վրայ հաստատ կեցած եմ ու անով է որ այնչափ վաստակ ըրի. և կրնամ ըսել որ այդ կարծեաց տէր ըլլալուս վարձքն է իմ ըրած վաստակս։

Գերեվաճառին այն վարդապետած մարդասիրութիւնը այն աստիճանի կարգէ դուրս ու ծիծաղական բան մ՚էր, որ Շէլլի չկրցաւ խնդալը բռնել։

Թերևս գրքիս ընթերցողն ալ պիտի խնդայ այս վաճառականիս ըրած մարդասիրութեան վարդապետութեանը վրայ. մենք հիմայ այն օրերուն հասեր ենք, որ մարդասիրութիւնը ուրիշ կերպարանք առած է, և հիմակուան մարդասէրք նոր նոր ու կար-

գէ դուրս բաներ ըսելու ու ընելու վրայ են։

Շէլպիին խնտալը Հէլիի ճարտասանութեանը գրգիռ մը եղաւ։

— Աս ի՜նչ տեսակ բան է, ըսաւ, չեմ հասկընար. չկրցայ այս իմ կարծիքս սա մեր վաճառակցաց ըղեղը մէյ մը խոթելու։ Օրինակի համար, իմ հին վաճառակիցս Թումաս Լոքէր ի՜նչ ճարպիկ մարդ է, բայց եկուր նայէ որ սատանայի պէս չար է իր գերիներուն հետ. շատ աղէկ սիրտ ունի, բայց գերիները ծեծելը իրեն բնութիւն եղեր է։ Շատ անգամ ըսեր եմ իրեն. բարեկամ, երբոր գերիներդ կու լան, ինչո՞ւ կը ծեծես ու գետինը կը զարնես. պարապ բան մըն է ըրածդ, և օգուտ մ'ալ չունի։ Լալուն մէջ ի՞նչ գէշութիւն կայ. բնական բան մ'է, և հարկաւ. մէկ կողմանէ չէ նէ՝ մէկալ կողմանէ պէտք է որ բնութիւնը սթափում մը ունենայ։ Այսպէսով նաև գերիներդ կը փճացընես. կը հիւանդանան ու կը տգեղնան, անկէ վերջը դժուարաւ կրնաս ծախել. նայէ որ քիչ մը անուշութեամբ ու սիրով հետերնին վարուիս. ապահով կեցիր որ ասանկով աւելի վաստակ կ'ընես քան թէ քու սպառնալիքներովդ ու ապտակներովդ։ Բայց անիկայ չուզեց ամենեւին ինծի մտիկ ընել,

և թէպէտ ուրիշ կողմանէ առուտուրի մէջ շատ վարպետ մարդ էր, բայց այնչափ իմ ապրանքներուս փճանալուն պատճառ եղաւ, որ հարկաւորեցայ իր ընկերութենէն բաժնուիլ։

— Բայց դուն միայն ի՞նչ գրած ես, միթէ քու բռնած կերպդ Լոքէրին կերպէն աղէ՞կ է։

— Կը համարձակիմ ըսելու, պարոն, որ իմս աւելի աղէկ է, և ես որչափ ձեռքէս կու գայ դժուար պարագաներուն մէջ շատ վարպետութիւն ու ճարտարութիւն կը բանեցընեմ։ Օրինակի համար, երբոր կ՚ուզեմ գերիներուս տղաքը ծախել՝ կը ջանամ որ մայրերնին հեռացընեմ. աչուընէն հեռու ըլլալով՝ սրտերնէն ալ կը հեռանան. վերջը երբոր ամէն բան կը լմըննայ, ի հարկէ պէտք է որ համբերեն։ Սևերը ճերմակներուն չեն նմանիր. ճերմակները միշտ յոյս մը ունին իրենց կանայքը ու տղաքը պահելու. իսկ աղէկ սորվեցուցած սևերը այսպիսի գաղափար չեն կրնար ունենալ, վասն զի գիտեն որ գէն կարուելէն ետև՝ ալ յոյս չկայ։

— Վախեմ որ այս պարագայիս մէջ իմ գերիներս աղէկ վարժած չեն,, ըսաւ Շէլպի։

—Ես ալ աս վախը ունիմ. դուք ձեր գիրքերը կը փճացընէք. մտածմունքնիդ աղէկ, բայց հիմ չունիք ամենևին։ Սևերը ձեռքէ ձեռք ծախուելու համար եղած են, և մարդասիրութեան դէմ բան է անոնց մտացը ու սրտին մէջ այնպիսի բաներու փափաքներ ձգել, որ չեն կրնար ունենալ. և զիրենք իրենց կոչմունքէն կը հեռացընեն։ Մէկ խօսքով՝ ես սեւերուս հետ ինչպէս պէտք է, այնպէս կը վարուիմ։

Շէլպի ուսը թօթուելով մը.—Մարդուս ինքիր վրայ զոհ ըլլալը ի՛նչ աղէկ բան է եղեր, ըսաւ։

Հէլի քիչ մը լուռ կենալէն վերջը.—Է՛յ, վերջապէս ի՞նչ որոշեցիր, հարցուց։

—Դեռ մտածեմ ու կնոջս ալ խորհուրդ հարցընեմ. և թէ որ կ'ուզես որ խաղաղութեամբ լմընցընենք, նայէ որ ուրիշի հետ այս բանիս վրայ չխօսիս, վասն զի մէյ մը որ իմ մարդիկներս իմանան, գիտնաս մէկն ալ չեմ կրնար տնէն դուրս հանել։

—Մի՛ ամենևին տարակուսիր, բայց որոշմունքդ շուտ ըրէ, որովհետև ես կը փութամ։

—Աղէկ, այս իրիկուն նորէն եկուր, ու պատասխանը կ'առնես։

Գերեվաճառը շուտ մը վերարկուն առնելը ու դռնէն դուրս ելլալը մէկ ըրաւ։

Երբոր դուռը գոցուեցաւ՝ Շէլպի ինքիրեն ըսաւ. — Սա մարդուս աններեսութիւնը այնպէս կիրքս կը հանէր՝ որ քիչ մնաց սանդուխէն վար պիտի նետէի զինքը. բայց հարկը կը ստիպէ որ զգուշութեամբ հետը վարուիմ։ Առաջուց թէ որ մէկը ինծի Թովմաս Աղբարը պիտի ծախես ըսէր, ինծի նախատինք կը համարէի, բայց ի՞նչ ընեմ, պէտք է որ ծախեմ, ո՜հ, նաև Ելիզային տղան ալ ծախելու է։ Կնիկս դէմ պիտի կենայ, չուզենայ պիտի որ ծախեմ, մանաւանդ տղան. բայց ձեռքէս ի՞նչ կու գայ, սա վաճառականը իմ պարտատէրս է, և այս առիթով իր շահը առաջ կը տանի։ Ո՜հ, ի՞նչ գէշ բան է պարտք ունենալը։

Թերևս Ամերիկայի Միացեալ Նահանգաց մէջ Քէնդըքի նահանգն է միայն՝ ուր գերիներուն վիճակը քիչ մը աւելի հանգիստ է։ Այն կողմերուն մեծագոյն աշխատութիւնը երկրագործութիւնն է, և հարաւային նահանգներուն պէս կարգէ դուրս ու ծանր աշխատութիւններ չունին։ Տէրերն ալ իրենց ամենօրեայ ըրած շահերուն վրայ գոհ ըլլալով մեծագոյն վաստակի յուսով մարդ-

կութեան դէմ իրենց գերիները չեն տանջեր: Այն կողմերը պտըտողները ամէնքը կը վկայեն՝ տեարց գերիներուն վրայ ունեցած սէրը, գերիներուն ալ իրենց տերանց համար ամենայն սիրով ու հոգւով աշխատիլը: Բայց ի վերայ այսր ամենայնի այսպիսի խաղաղ ու հանգիստ կենաց մէջ, մէկ տխուր ու միշտ վախ տուող խրտուիլ մը կայ՝ որ է Օրէնքը: Անոր համար, քանի որ օրէնքը այս գերիները իբրև ապրանք կը համարի կամ թէ ըստ Նիւթական բաներու կալուածը գրած է. քանի որ աղէկ տիրոջ մը սնանկութիւնը կամ թշուառութիւնը կամ մահը՝ կրնան գերիները երջանկութենէ յանկարծ թշուառ վիճակի մը մէջ ձգել, գերիներուն վիճակը ոչ երբէք երջանիկ կրնայ համարուիլ:

Շէլպի խիստ անուշ, ներողամիտ ու սիրելի յատկութիւններ ունէր, և իր գերիները ամենայն կարելի եղած խնամքով կը պահէր. բայց իր քանի մը սխալ ճամբաներովը պարտքի տակ ինկած էր, և իր գլխաւոր պարտատէրը Հէլին էր. այս իրեն պարտքերուն համար էր որ Հէլիի ծանր առաջարկութեանցը պէտք էր որ հաւանէր:

Բայց հիմա գանք Էլիզային. տղան փըն-

տանելու համար խուցը մտնալու ժամանակ՝ դռնէն Շէլպիին և Հէլիին խօսակցութիւնները լսելով՝ իմացեր էր որ Հէլի գերեվաճառ մըն էր, ու իր տիրոջը Շէլպիին հետ առուտուրի սակարկութիւն մը ընելու եկեր էր. և քանի մը կցկտուր լսած խօսքերէն կասկածի գնաց որ Հէլի իր տղան կ'ուզէր գնել: Տղան առած՝ խուցէն դուրս ելլալու ժամանակը ուզեց նորէն ականջ դնել, բայց իր խաթունը՝ Շէլպիին կնիկը՝ զինքը կանչելով՝ չկրցաւ ուզածն ընել: Բայց վախէն սիրտը այլայլած՝ խելքը վրան չէր, ինչ որ կ'ըսէր խաթունը՝ անոր հակառակը կ'ընէր:

—Էլիզա, այսօր բան մը կայ վրադ, ըսաւ խաթունը: —Էլիզային այլայլութիւնը ա՛լ շատցաւ, ու աթոռի մը վրայ ինկած բարձր ձայնով սկսաւ լալ:

—Ի՞նչ ունիս Էլիզա, ըսաւ խաթունը:

—Ո՛հ խաթուն, գերեվաճառ մը եկեր է ու տանտիրոջը հետ սեղանատունը նստած տղաս ծախելու սակարկութիւն կ'ընեն. ես ականջովս լսեցի:

—Է՛յ աղէկ. դնե՛նք թէ մէկ մ'ալ իրաւ ըլլայ, խօսելով բան կը լմըննա՞յ:

—Ի՞նչ կը կարծես խաթուն, արդեօք տանտէրը պիտի չհամոզուի՞ իմ Հենրիկոսս

ծախելու։ — Աս ըսաւ ու սկսաւ նորէն արցունք թափել։

— Ի՞նչ, ծախե՞լ. ատ անկարելի բան է. գիտես որ էրիկս ամենևին Հարաւային նահանգներու գերեվաճառներուն Հետ առուտուր չունի, մեր գերիները քանի որ աղէկ են՝ անոնցմէ մէկն ալ ծախելու միտք չունի։ Բայց դուն ինծի աս ըսէ, ո՞վ է որ քուկին Հենրիկոսդ գնել ուզենայ. կը կարծես որ ամէնքը քեզի պէս ա՞չք ունին վրան։ Ելիր, ելիր, մազերս շտկէ, զգեստներս մաքրէ, ու նայէ որ մէջ մ'ալ դռներուն ետեւէն խօսքի ականջ չդնես։

— Թէ որ տանտէրն ալ Հաւանի, Հրամանքդ չՀաւանիս խաթուն որ ծախ...։

— Ի՞նչ պարապ խօսք է ըսածդ, ի Հարկէ պիտի չՀաւանիմ. աւելի յանձն կ'առնում որ իմ տղուցմէս մէկը ծախէ։ Բայց, Ելիզա, դուն աս տղուն վրայ խենդ դարձեր ես. մէկը որ տանը դռնէն ներս մտնայ՝ մէկէն միտքդ կը դնես որ տղադ յափշտակելու եկեր է։

Ելիզա այս խրախուսիչ խօսքերէն սիրտ առնելով՝ սկսաւ ինքն ալ իր կրած վախին վրայ խնդալ, ու Հանդարտ սրտով սկսաւ խաթունին Հրամանները կատարել։

Շէլլիի խաթունը ազնիւ կնիկ մըն էր, առատասրտութեանը և բարերարութեանը հետ կարգէ դուրս բարեպաշտութիւն մ՚ալ ունէր, անոր համար էրիկն ալ կը պատուէր զինքը ու վրան մեծ համարմունք ունէր. կը թողուր որ ուզածին պէս գերիները կրթէ, ու անոնց մտացը մէջ բարի սկզբունքներ սերմանէ։

Շէլլի՝ գերեվաճառին հետ խօսելէն վերջը՝ շատ անհանգիստ էր թէ ինչպէս եղածը իր կնոջը պատմէ։ Առաջուցմէ սկսաւ գուշակել որչափ աղաչանք ու ընդդիմադրութիւններ իրեն առջև պիտի դնէր կնիկը, իր այս միտքը փոխելու համար։ Իսկ խաթունը՝ իր էրկանը դրամի կարօտութիւնը չգիտնալով և իր բարեսիրտ բնութեանն ալ տեղեակ ըլլալով, Էլիզային խօսքերը բանի տեղ չդրաւ. միտքէն ալ չէր անցըներ թէ ինչ բաներ նոյն գիշերը խեղճին գլխէն պիտի անցնին։

## ԳԼՈՒԽ Բ.

### Մայր

Եղիզա պզտիկուց ի վեր իր խաթունին ձեռքը մեծցած, իրեն շատ սիրելի եղած էր։

Որոնք որ Միացեալ Նահանգները պտըտած են, լսած պիտի ըլլան սեւամորթ կանանց անուշ ձայնը ու տեսած անոնց ազնիւ կերպը։ Եղիզան ալ աս և ասոնց նման ձիրքերով զարդարուած էր։ Իրեն խաթունին խնամոցը տակ, ամենայն փորձանքներէ ազատ ու խաղաղ կեանք մը ունէր, ու Շէլպիի դրակից պարոնի մը մէկ գերիին հետ՝ որ Գէորգ կ'ըսուէր՝ կարգուած, և անկէ ունեցեր էր պզտիկ Հէնրիկոսը։

Գէորգ շատ ճարտար գերի մըն էր, որուն յաջողակութիւնը տեսնալով տէրը՝ իրեն մօտակաց արուեստաւորի մը քով զինքը վարձքի տուեր էր։ Գէորգ ասոր քովը այնչափ առաջ գնաց՝ որ ամէնքը կը զարմանային։ Կանեփը մաքրելու նոր գործիք մը հնարեց, որ իրեն պզտիկուց առած ոչինչ կրթութեանը նայելով՝ կը ցուցնէր իրեն մեծ հանճարի տէր ըլլալը։

Բայց որովհետև ըստ օրինաց՝ գերին նուիրական ապրանք մը կը համարուէր և ոչ մարդու կարգ, անոր համար այս երիտասարդին այդպիսի գեղեցիկ հանգամանքներն՝ ապուշ ու անմիտ տիրոջ մը իշխանութեանը տակ ծածկուեր էին: Գէորգին տէրը իրեն այս գիտերը լսելով, մէկ օր մը եկաւ իրեն գերին տեսնալու: Գէորգը վարձքի բանող վաճառականը շատ սիրով ընդունեցաւ զինքը. և ուրախակից ըլլալով իրեն այսպիսի ճարտար գերի մը ունենալուն, սկսաւ մէկիկ մէկիկ ցուցնել մեծ գովեստներով Գէորգին ճարտարութիւնները: Գէորգ այնպէս աղէկ բացատրեց իր հնարած մեքենան որ տէրը մտքէն սկսաւ իր ազատութեանը վրայ ամչնալ: Բայց ի՞նչպէս կարելի էր որ խառնածին գերի մը կարենար պատիւ ունենալ: Տէրը՝ այնպիսի գերիի մը այն կատարելութիւնները չվայլեցընելով, ուզեց որ նորէն զինքը երկիր հերկելու նուաստ ծառայութեան մէջ դնէ. անոր համար հրաման տուաւ որ Գէորգ մէկէն տուն դառնայ:

— Բայց, Պարոն Հարրիս, ըսաւ արուեստաւորը, քու այս ըրածդ խիստ կարգէ դուրս բան մը կ'երևայ ինծի:

— Ի՞նչ կ'ըլլայ եղեր, ըսաւ Հարրիս, այդ մարդը իմս չէ՞:

— Թէ որ կ'ուզես՝ իրեն վարձքը եւել-ցընեմ։

— Ձէ, իմ գերեացս վարձքը աւելցը-նելու կարօտութիւն չունիմ։

— Բայց, պարոն, այս մարդս այդ արուես-տին շատ յաջողակ է։

— Կրնայ ըլլալ որ յաջողակ ըլլայ. բայց ես ինչ որ իրեն ապսպրած եմ ընելու՝ չէ կրցած ամենեւին կամքս կատարել։

— Մտածէ մէկ մը ինչպիսի՛ մեքենայ մը հնարեց, ըսաւ նեղանալով գործաւորներէն մէկը։

— Է՜հ, աղէկ է, մեքենայ մը հնարեց որ չաշխատի, այնպէս չէ՞։ Գերի մը մէկ հատիկ է այդպիսի բաներ հնարելու. վասն զի որչափ որ կրնայ՝ աշխատութիւնը քիչ-ցընել կ'ուզէ. մինչ իրենք ալ մէյմէկ մե-քենայ չե՞ն։

Գէորգ այս խօսքերս լսելով՝ պաղեցաւ մնաց. բայց այնպիսի իշխանութեան մը տակ էր՝ որ դէմ դնել չէր կրնար։ Սաստիկ բարկութենէն պռկունքը խածաւ, ու սրտին մէջ ատելութիւնը հրաբուխի մը պէս սկը-սաւ բռնկիլ. շունչը կտրեցաւ, աչուըները դարձան, ու քիչ մնաց որ բարկութիւնը դուրսէն ալ պիտի պոռթկար. բայց արուես-

տաւորը մէկէն ականջին ի վար քանի մը խօսք փսփսալով՝ խոստացաւ իրեն որ քիչ ատենէն նորէն դարձնէ զինքը։

Հայրիկս տեսաւ ականջէն վար խօսիլը ու մէկէն մակաբերեց. անոր համար հաստատուն միտքը դրաւ որ ինչևիցէ կերպով քովէն չհեռացընէ իր գերին։

Գէորգ արուեստը ձեռքէ ձգելէն վերջը, սկսաւ նորէն երկրագործութիւն ընել։ Տաս կը ջանար զսպելու զինքը, որ չըլլայ թէ սրտին նեղութենէն կարգէ դուրս բան մը ընէ. բայց զանազան կերպերէն կ'իմացուէր որ մտացը մէջ բան մը կը պտըտէր։

Արուեստաւորին քովը եղած ժամանակը ճանչուորեր էր Ելիզային հետ. արուեստաւորին ալ վրան վստահ ըլլալով՝ թող տուեր էր որ համարձակ երթայ գայ։ Եւ որովհետև կանանց սովորութիւնն է ջանալ ետևէ ըլլալ իրարու հարսնախօսութիւնը յարմարցընել, Տէլպիին խաթունն ալ անոնց մէկմէկու վրայ ունեցած սէրը տեսնալով՝ մեծ փութով մէջ մտաւ որ զասոնք մէկմէկու հետ կարգէ. ինչպէս որ յաջողեցաւ ալ, ու աս երկու վիճակակից ամուսինները պսակուեցան։ Տէլպիին խաթունը պսակման օրը շատ մեծ ուրախութիւն կատարեց, և ինքը

անձամբ հարսին գլուխը պսակը դրաւ և հարսնութեան քօղը գլուխը ձգեց։

Երկու տարիի չափ Ելիզա իր էրիկը ստէպ կը տեսնար, և իրենց խաղաղ և ուրախ կեանքը իրենց երկու տղոցը մահուամբը միայն պղտորեցաւ. բայց Հենրիկոսին ծննդեամբը այն տրտմութիւնները ալ շուտով փարատեր էր, երբոր Գէորգին տիրոջը ըրած անգութ բռնութիւնը՝ խեղճերուն տնական խաղաղութիւնը վեր ի վայր ըրաւ։

Քանի մը շաբթէն վերջը արուեստաւորը նորէն գնաց Հարրիսը տեսնալու, յուսալով որ սիրտը կակղցած ըլլայ, և շատ ջանք ըրաւ անոր միտքը համոզելու՝ որ նորէն Գէորգը իր քովը առնու։

— Պարապ տեղը խօսքը մի՛ երկնցըներ, ըսաւ Հարրիս կոպիտ կերպով մը, ես դիտեմ իմ ընելիքս։

— Բայց, պարոն, պատասխանեց արուեստաւորը, ես հրամանքիդ խրատ տուող չեմ, բայց կարծեմ որ քու շահուդ ալ օգտակար է իմ առաջարկած դաշինքներովս Գէորգը ինծի վարձընելը։

— Ես գիտեմ քուկին մտքիդ դրածները, պարոն. ես իմացայ ինչ որ խօսք տուիր Գէորգին զինքը գործարանէդ հանած օրս.

բայց աղէկ գիտնաս որ մաքիդ մէկ դրամն ալ առաջ պիտի չերթայ։ Ազատ երկրի մէջ ենք, այդ մարդը իմս է, ուստի ինչ որ ուզեմ այն կ'ընեմ։

Այս կերպով Գէորգին յոյսը բոլորովին կտրեցաւ. իմացաւ որ ալ ուրիշ ճար չմնաց իրեն, բայց եթէ անիրաւ բռնութեան մը տակ թշուառ կեանք մ'անցընել։

Ատենօք օրէնսդիր մ'ըսաւ՝ թէ «Աշխարհիս վրայ՝ մարդու մը հետ ամենադէշ վարուիլը՝ զինքը կախելն է», բայց ես կ'ըսեմ որ կախելէն աւելի գէշ կերպով ալ կրնայ մարդ ուրիշի հետ վարուիլ։



# ԳԼՈՒԽ Գ.

## Ամուսին և Հայր

Նոյն օրը Պ. Շէլպիին խաթունը այցելութեան գնաց. Էլիզան ալ սանը դիմացի բակը նստած՝ տրտում աչուըներով իր խաթունին կառքին ետևէն կը նայէր. մէկ մ՚ալ յանկարծ մէկը ուսին զարկաւ ։ Դարձաւ Էլիզան ու աչուըները խնտումէն զուարթացան. — Ո՛հ. դո՞ւն ես Գէորգ, ըսաւ, աս ի՞նչպէս վախցուցիր զիս. աղէկ ըրիր որ եկար. խաթունը տունէն դուրս ելաւ ու ինչուան իրիկուն չի դառնար. ես ալ ազատ եմ այսօր, եկո՛ւր խուցս երթանք։

Առաւ զինքը խուցը տարաւ, որ բակին վրան կը նայէր։

—Ի՞նչպէս ուրախ եմ զքեզ տեսնելուս վրայ, ըսաւ Էլիզան։... Բայց ի՞նչ ունիս... երեսդ ինչո՞ւ կախեր ես. նայէ մէկ մը Հենրիկոսին, տես ի՛նչպէս կը մեծնայ։

Տղան ալ մօրը քովը կեցած՝ վախնալով մը հօրը երեսը կը նայէր։

—Կը փափաքէի որ և ոչ ծնած ըլլար,

պատասխանեց Գէորգ դառնութեամբ. ո՞ւր էր թէ և ոչ իսկ ես աշխարհք եկած ըլլայի։

Ելիզա վախէն ու զարմանքէն լալ սկսաւ։

—Ելիզա, շատ կը ցաւիմ այդպիսի խօսքերով զքեզ վշտացընելուս վրայ։ Խե՛ղճ աղջիկ. ո՜հ... ինչո՞ւ ինծի հետ ընկերացար... առանց ինծի՝ դուն աւելի երջանիկ կրնայիր ըլլալ։

—Ա՜հ. Գէո՛րգ, Գէո՛րգ. ինչո՞ւ այդպիսի խօսքեր կ՚ըսես. ի՞նչ եղաւ, ի՞նչ հանդիպեցաւ... արդեօք ի՞նչ դժբաղդութիւն կայ վըրանիս գալու։... Բայց մինչև վերջին ատեններս երջանիկ էինք։...

—Այո՛, այդպէս է սիրելի, ըսաւ Գէորգ, ու տղան գիրկը առաւ, և անոր աչուըներուն մէջ նայելով. —Ելիզա՜, կրկնեց նորէն, ի՞նչպէս քեզի կը նմանի սա տղան. աշխարհքիս մէջ քեզմէ աղնիւ կնիկ մը չեմ տեսած. բայց... երանի՛ թէ մէկզմէկ ճանչցած չըլլայինք։...

—Ո՜հ Գէորգ, ի՞նչպէս սիրտ կ՚ընես այդպիսի խօսքեր ըսելու։

—Շիտակը կ՚ըսեմ Ելիզա... աշխարհքս բոլոր թշուառութիւն է, ու թշուառութեամբ լեցուն։ Լեղւոյ պէս դառն է իմ կեանքս. ես վշտացեալ, տանջեալ, յուսահատ մարդ

մըն եմ. ալ ուրիշ բան չեմ կրնար ընել քեզի, բայց եթէ զքեզ ալ իմ հետս թըշուառացընել։ Ինչո՞ւ ես ալ բանի գործի ձեռք զարկի, բան սորվելու ետեւէ եղայ. մանաւանդ թէ ինչո՞ւ դեռ ողջ կեցեր եմ, երանի՜ թէ մեռած ըլլայի...։

— Ո՜հ, սիրելիդ իմ Գէորգ, ի՜նչ տխուր մտածմունքներ մտքէդ կ'անցնին։ Գիտեմ որ շատ ցաւեցար արուեստաւորին քովէն ելլալուդ համար, տէրդ շատ խիստ մարդ մ'է գիտեմ. բայց համբերէ քիչ մ'ալ, ո՞ գիտէ, թերեւս....

— Ի՞նչ, համբերե՞մ. միթէ մինչեւ հիմայ չհամբերեցի՞... բերնէս խօսք մը ելա՞ւ՝ երբոր արուեստաւորին քովէն, ուր ամէնքը զիս կը սիրէին, առանց մէկ պատճառի մը հանեց զիս։ Ես ամէն վաստըկածիս մանրամասն հաշիւը տուի իրեն, ամէնքը կը վկայեն որ աղէկ կ'աշխատէի։

— Իրաւ է, դառն բան է, պատասխանեց Ելիզա, բայց ի՞նչ ընենք, քու տէրդ է։

— Իմ տէ՞րս է... ի՞նչ իրաւամբ իմ տէրս եղաւ... ես ալ ա՛ս կ'ուզեմ իմանալ։ Նայինք ինքը ի՞նչ իրաւունք ունի վրաս. ես ալ իրեն պէս մարդ չե՞մ. մանաւանդ թէ ես իրմէ աւելի եմ. բանի գործի ես իրմէ

աւելի խելք կը հասցընեմ. կարդալ գրել՝ իրմէ աղէկ գիտեմ. և այս ամէն բաներուս մէջ՝ իրեն ամենևին պարտաւորութիւն մը չունիմ. ես ինքնիրենս, մանաւանդ թէ իրեն կամացը դէմ սորվեր եմ. ուրեմն հիմայ ի՞նչ իրաւամբ կրնայ զիս իշու պէս աշխատցընել. ի՞նչ իրաւամբ ինծի վայել աշխատութիւններէն զիս կը զրկէ ու գրաստի աշխատանք ինծի ընել կու տայ. միտքը դրեր է զիս ընկճել, զիս խոնարհեցընել, ան է բոլոր իրեն ջանքը։

— Գէորգ, դուն զիս շատ կը վախցընես. քու բերնէդ ոչ երբէք այդպիսի խօսքեր լսած էի. կը վախեմ որ բարկութիւնդ չզսպելով՝ գէշ բան մը պիտի ընես. կ'իմանամ քու միտքդ, բայց կ'աղաչեմ իմ սիրոյս համար ըլլայ, Հենրիկոսին սիրոյն համար ըլլայ՝ խոհեմութիւնը ձեռքէ մի՛ ձգեր։

— Ես մինչև հիմայ խոհեմութիւնն ու համբերութիւնը ձեռքէ չձգեցի, բայց կը տեսնամ որ օրէ օր աւելի գէշի կ'երթանք։ Ինքը ամէն բանի մէջ զիս մահացընել ու ճընշել կը նայի։ Կը ջանայի որ աշխատութիւններս շուտ լմընցընեմ, ու մնացած ժամանակն ալ քիչ մը կարդալու ետևէ ըլլամ. ինքը տեսնալով որ աւելի բան կրնամ ընել՝

ա՛լ աւելի ծանրութիւն վրաս կը շատցընէ։ Ես ձայն չեմ հաներ, ինքը կը կարծէ որ փորս սատանայ կայ; ու կ'ուզէ հանել. յիրաւի ալ օրերս սատանան պիտի ելլէ, բայց իր չուզած կերպովը։

— Տէ՛ր Աստուած... ի՞նչ պիտի ըլլանք... հառաչեց Ելիզա։

— Դեռ երէկ, կրկնեց Գէորգ, ես սայլակի մը վրայ քար կը բեռնաւորէի. տանտիրոջը տղան ալ ձիուն քով կեցած խարազանը խաղցընելով՝ խեղճ կենդանին կը խրտեցընէր։ Անուշութեամբ մը ըսի իրեն, որ քիչ մը հանդարտ կենայ, մտիկ չըրաւ. նորէն զուրցեցի, դարձաւ ան ատենը որ զիս ծեծէ, ես ալ ձեռուընները բռնեցի. սկսաւ պոռալ, ու վազեց գնաց զուրցեց հօրը՝ թէ ես զինքը ծեծեր եմ։ Ալ տեսնայիր հօրը սրդողիլը. — Ես քեզի կը հասկըցընեմ, ըսաւ ինծի, թէ քու տէրդ ո՛վ է. զիս ծառի մը կապեց, ու ծառէն քանի մը ճիւղ փրցուց տղուն տուաւ որ մինչև որ յոգնի՝ լաւ մը զիս ծեծէ. ըսածը եղաւ... բայց ես ալ իրեն կը հասկըցընեմ։...

Այս ըսելու ատեն Գէորգին ճակատը կռնճմռտեցաւ, աչուըներն ալ անանկ այլայլեցան՝ որ խեղճ կնիկը դէմացը կեցած՝ վախէն կը դողար։

— Ո՞վ զինքը իմ վրաս տէր գրաւ, սա կ'ուզեմ իմանալ, կրկնեց Գէորգ։

— Ես միշտ միտքս դրեր եմ, պատասխանեց տրտմութեամբ մը Եղիզա, որ իմ պարտքս է իմ տէրերուս հնազանդիլը, ապա թէ ոչ չեմ կրնար Աստուծոյ սիրելի քրիստոնեայ մ'ըլլալ։

— Դուն այսպէս մտածելու իրաւունք ունիս, վասն զի քու տէրերդ զքեզ իրենց զաւկին պէս մեծցուցեր, սնուցեր ու հագուեցուցեր են, քու աղէկութիւնդ կ'ուզեն. զքեզ կրթեր ու դաստիարակեր են, որով կերպով մը քու վրադ իրաւունք մը ունին։ Բայց զիս ընդհակառակն չարչըրկեր, վայն ի վրաս բերեր ու գետնէ գետին զարկեր են. ուրեմն ես ի՞նչ պարտք ունիմ իմ տիրոջս. միթէ հարիւր անգամ իմ աշխատանքս գնած չե՞մ. ա՛լ չեմ կրնար դիմանալ այս վիճակիս. չեմ կրնար, չէ՛, կանչեց պոռալով ու կատաղութեամբ։

Եղիզա լուռ ու սարսափէն գլուխը ծռած կեցեր էր. ոչ երբէք տեսեր էր իր էրկանը այս աստիճանի բարկութիւնը. անոր համար իր քաղցր ու կակուղ բնութիւնը իր էրկանը կատաղութեան առջին՝ կը նմանէր փափուկ վարդենւոյ մը, որ սաստիկ մրրիկ-

ներու առջին չդիմանալով՝ խոնարհած կը կենայ։

— Գիտես որ ինծի շնիկ մը տուեր էիր, կրկնեց Գէորգ. անիկայ իմ վիշտերուս մխիթարութիւն մ՚էր. գիշերները քովս կը պառկէր, ցորեկներն ալ միշտ հետս էր, և անուշիկ կերպով մը ինծի կը նայէր, իբր թէ քաշած նեղութիւնս կ՚իմանար։ Ի՞նչ կ՚ըսես, մէկալն օր խոհանոցին դիմաց երբոր աւելցուք կերակուրներէ քիչ մը կու տայի անոր՝ տէրս վրայ հասաւ, ու սկսաւ բարկանալ որ իր ստակը փուճ տեղը կը վատնեմ. — Չեմ՝ կրնար թող տալ, ըսաւ, որ ամէն գերի մէյմէկ շուն ունենայ. հրամայեց ինծի որ վզէն քար մը կապեմ ու լիճը նետեմ։

— Ըսածն ըրի՞ր, Գէորգ։

— Չէ, ես չըրի, բայց ինքը առաւ ու նետեց լիճը. ան ալ բաւական չէ. իր տըղուն հետ մէկտեղ խել մը քարեր շանը վրայ նետելով՝ խեղճը խղդելէն վերջը, զիս ալ աղէկ մը ծեծեցին որ ինչո՞ւ չուզեցի ես իմ ձեռքովս խղդել։ Խե՛ղճ շնիկ, ողորմուկ կերպով մը ինծի կը նայէր, կարծես թէ կը զարմանար թէ ինչո՞ւ չեմ ազատեր զինքը։... Բայց աս ալ հոգս չէ... Թող տես-

նայ ու իմանայ տէրս, որ ես անոնցմէ չեմ՝ որ ծեծով կը խոնարհէին, ու գաւազանով կը սանձուէին։ Օր մը կու գայ... աչքը աղէկ բանայ...։

— Ի՞նչ պիտի ընես, Գէորգ. ղէշ բան մը չընես. Աստուծոյ ապաւինէ, քու պարտքդ ըրէ, Աստուած ալ զքեզ կ՚ազատէ։

— Ես քեզի պէս քրիստոնեայ չեմ, Ելիզա, սիրտս շատ այրած է, ես Աստուծոյ ապաւինիլ չեմ կրնար. ինչո՞ւ թող կու տայ որ այս բաներս ըլլան։

— Ո՜հ Գէորգ, պէտք է քիչ մը հաւատք ունենանք. տիկինս շատ անգամ կ՚ըսէ՝ թէ երբոր մեր գործերը յաջող չերթան՝ պէտք է հաւատանք որ Աստուած ա՛լ լաւագոյն բարւոյ համար թող կու տայ որ աս բաները գլուխնիս գան։

— Շատ դիւրին է տիկնայ ըսելը, և աս կ՚ըսեն նաև անոնք՝ որ փափուկ նստարաններու վրայ՝ կռնակնին կակուղ բարձերու տուած՝ հանգիստ կը նստին, կամ փառաւոր կառքերով ժուռ կու գան, ու ա՛լ ուրիշ մտածելիք չունին. իրենք ալ իմ տեղս ըլլային՝ ուրիշ կերպով կը խօսէին։ Կ՚ուզեմ հանդարտ կենալ, պարտքերս աղէկ կատարել ու համբերել, բայց ա՛լ չեմ դիմանար,

ա՛լ համբերութիւնս հատաւ։ Դուն ալ իմ տեղս ըլլայիր՝ չէիր կրնար դիմանար. ուր էր թէ ամէն բան գիտնայիր...

— Ուրիշ ի՞նչ բանէ կը վախնաս։

— Ուրեմն հիմայ ըսեմ քեզի։ Շատ ժամանակ չէ որ տէրս ըսաւ ինծի թէ խնդրութիւն մը ըրի որ քեզի կարգուելու հրաման տայ. և թէ զՇէլպին ու բոլոր անոր ընտանիքը չի սիրեր. վասն զի անոնց քիթը մեծ է, և իրմէ վեր կը համարին իրենք զիրենք։ Ուրիշ բան մ'ալ ըսե՞մ... միտքը դրեր է որ դուն ես զիս գլխէ հանողը, անոր համար թող պիտի չտայ որ ա՛լ քեզի հետ տեսնուիմ. ուստի երէկ հրամայեց որ Մինան ինծի կնիկ առնեմ, ու անոր հետ մէկտեղ զատ տուն մը նստիմ, թէ չէ՝ հարաւային[1] վաճառականաց կը ծախեմ զքեզ, ըսաւ։

— Ինչպէս, ըսաւ Էլիզա, զմեզ ալ ճերմակներուն պէս եկեղեցական պաշտօնեայ մը չպսակե՞ց։

— Դու չե՞ս գիտեր, որ գերի մը չի կրնար

1. Քէնդըքիի սեւերուն՝ Հարաւային վաճառականաց կը ծախուիմ՝ ըսելը, ամէն պատժէ մեծ կը համարուի. վասն զի Հիւսիսային Ամերիկոյ մէջ քանի որ դէպ ի հարաւ երթըլցուի՝ գերիներուն վիճակը խիստ գէշ է. ու տէրերուն ալ անգթութեանցը չափ չկայ։

կարգուիլ. և աս երկրիս օրէնքը անոր ամուսնութեանը երաշխաւոր չ'ըլլար. և երբոր տէրս ուզէ զմեզ մէկմէկէ բաժնել՝ ա՛լ դուն իմ կնիկս չես ըսուիր։ Ահա այս բանիս համար էր որ ըսի՝ Երանի՜ թէ աշխարհք եկած չըլլայի, և ոչ ալ զքեզ տեսած ըլլայի. ան ատենը ի՜նչպէս աղէկ կ'ըլլար ինծի ալ, քեզի ալ. և ա՛լ աղէկ այս պզտի տղուն ալ՝ որ արևուն լոյսը տեսած չէր ըլլար, վասն զի խեղճը մեզի պէս դժբաղդ պիտի ըլլայ։

— Ո՛հ. բայց իմ տէրս խիստ աղէկ է...

— Իրաւ այնպէս է, բայց ո՞ գիտէ. ինքը որ մեռնի՝ Աստուած գիտէ որո՞ւ կը ծախուի մեր տղան։ Ի՜նչ ընենք իրեն աղուորութիւնը, աշխուժութիւնը ու աչքաբացութիւնը։ Այս իր ամէն կատարելութիւնները, Էլիզա, սլաքի պէս քու սիրտդ պիտի ծակծըկեն, ու զանիկայ քովդ պահել ուզելդ քեզի շատ սուղի պիտի նստի։

Այս խօսքերէս Էլիզային սիրտը նորէն տակնուվրայ եղաւ. գերեվաճառին դէմքը աչքին առջևն եկաւ. ու կաթուածէ զարնուածի մը պէս՝ երեսին գոյնը նետեց, և շունչը բռնուեցաւ, ու այլայլած աչուըները դարձուց դէպ ի վայրապաւիթը, ուր որ մանկիկը՝ այս

ծանր խօսակցութիւնները չհասկընալով՝ վար ինջեր ու գաւթին մէջ Պ. Շէլլիին գաւազանոյը կը խաղար։ Փորձութիւն կու գար իրեն՝ որ իր ունեցած կասկածը իր երկանն ալ հաղորդէ, բայց ինքզինքը բռնեց, մտածելով որ երկանը այնչափ վշտերուն վրայ՝ նոր ցաւ մ՚ալ չաւելցընէ. ուրիշ կողմանէ ալ յոյս ունէր որ իր տիկինը չի խաբեր զինքը։

— Հիմակու հիմայ, Մնաս բարով սիրելի Ելիզա, ըսաւ Գէորգ՝ ոտք ելլալով։

— Կ՚երթա՞ս ուրեմն... բայց ո՞ւր պիտի երթաս։...

— Գանատա կ՚երթամ. հոն որ մէյ մը ինքզինքս նետեմ՝ ետեւ կ՚ըլլամ որ զձեզ ալ խալըսեմ։ Քու տէրդ բարի մարդ մ՚է կ՚ըսես. յուսամ որ երբոր զքեզ ծախու առնել ուզենամ՝ չէ չ՚ըսեր. և Աստուծով տղուդ հետ մէկտեղ զքեզ կ՚ազատեմ։

— Իսկ թէ որ դուն բռնուելու ըլլաս... ո՛հ, այն ի՜նչ սարսափելի բան է։...

— Մի՛ վախնար Ելիզա, զիս չեն կրնար բռնել. մեռնիլ յանձն կ՚առնեմ՝ քան թէ ձեռք իյնալ. կա՛մ կ՚ազատիմ և կա՛մ կը մեռնիմ։

— Չըլլայ թէ ինքզինքդ մեռցընես։

— Այդ չեմ ըներ, մի՛ վախնար, մեռնիմ ալ՝ ուրիշի ձեռքէ կը մեռնիմ. գիս ողջ ողջ ուրիշի ծախել չեն կրնար։

— Ո՛հ Գէորգ, Աստուծոյ սիրոյն համար ըլլայ, խելքդ գլուխդ ժողվէ, անանկ գէշ բան մի՛ ըներ, որ քեզի ալ ուրիշի ալ վնաս ըլլայ։ Ունեցած փորձութիւնդ խիստ սաստիկ է, գիտեմ, բայց նայէ որ դէմը առնես. պէտք է որ փախչիս, բայց խոհեմութեամբ փախիր. Աստուած հետդ ըլլայ։

— Ուրիմն տես հիմայ, Եղիզա, իմ ընելիքս։ Տէրս թուղթ մը տուաւ ինծի, որ հոսկէ մէկ մղոն հեռու տեղ մը տանիմ. ես ամենայն հաւատարմութեամբ կը տանիմ, ու իբր թէ բան մ'ալ չունիմ՝ հանդարտութեամբ տուն կը դառնամ։ Բայց դարձածիս պէս՝ ընկերներուս օգնութեամբը քիչ մը պատրաստութիւն կը տեսնամ ու կը ձգեմ կը փախչիմ. յուսամ որ մէյ մ'ալ գիս չեն գտնար։ Ինծի համար աղօթք ըրէ, Եղիզա, Աստուած քու աղօթքիդ կրնայ ըլլալ որ լսէ։

— Դուն ալ աղօթք ըրէ, Գէորգ, ու իրեն վստահացիր. թող ինքն Աստուած քեզի առաջնորդէ։

— Շատ աղէկ, կրկնեց Գէորգ. շատ ա-

ղէկ, ու Եղիզային ձեռքէն բռնած՝ խել մը ատեն անշարժ աչքով մէկմէկու երես նայելէն վերջը, փոխն ի փոխ հառաչանքներով ու հեծկըլտանքներով պագտուեցան ու բաժնուեցան իրարմէ։

## ԳԼՈՒԽ Դ.

### Թովմասին խրճիթին մէջ գիշեր մը։

Թովմասին խրճիթը տիրոջը տանը մօտ՝ ծառերու կոճղերով շինած տնակ մըն էր. դիմացը պարտէզ մը ունէր, ուսկից ամէն ամառ Թովմասին մասնաւոր խնամքովը աղէկ ելակ, մորենի ու տեսակ տեսակ պըտուղներ ու ընդեղէններ կ'ելլար։ Խրճիթին ճակատը կարմիր գառնազմակիկ ըսուած ծաղիկը ու հարիւրթերթեան վարդենի մը բոլոր ծածկեր էին, անանկ որ տանը պատերը ձևացուցած ծառերուն խորտուբորտ կոճղերը աչքի չէին զարներ։ Ծաղկըներու շատութեան կողմանէ ալ՝ այս պզտի պարտիզակը ուրիշ կարգաւորեալ պարտէզներէ վար չէր մնար. շուշանը, մարգարիտը և ուրիշ տեսակ տեսակ ծաղկըները՝ Թովմասին ու

իր Քլոյէ կնոջը սնական մխիթարութիւն մը, միանգամայն նաև զուարճալի զբաղումներն էին։

Մտնենք հիմայ խրճիթը։ Տիրոջը ընթրիքը լմնցեր էր. Քլոյէ՝ որ սեղան դնելուն ատենը իբրև առաջին խոհարար սոթտուած կ'աշխատէր, իրեն ստորակարգ ծառայից յանձնեց որ սեղանը ժողվեն ու պընակները լուանան. ինքն ալ վազեց գնաց իր անակը՝ որ իր ծերուկին ընթրիքը պատրաստէ։ Մեծ ուշադրութեամբ տապակին մէջ դրած քանի մը կտոր խորուելիք եփելու հետ էր, ու թոնրաձև կրակարանին խուփը վեր վերուցած ըլլալով՝ կերակուրին հոտը բոլոր խրճիթին մէջ բռներ էր։ Սև ու պղնձի պէս փայլուն երեսները՝ գլուխը կապած գոյնզգոյն լաչակին տակէն պարծենկոտութեան ցոյց մը ունէին։ Այն կողմի աղախիններուն մէկ մեծ ախտը սնապարծութիւնն է, որով իրենք իրենց ըրածներուն կարգէ դուրս կը հանեն. Քլոյէ ալ այս կողմանէ ուրիշ աղախիններէն վար չէր մնար։ Հաւնոցին վառեկները, հաւերն ու բադերը զինքը որ տեսնային՝ կարծես թէ կ'իմանային որ վերջերնին հասեր է. խելքը միտքը նոր նոր տեսակ տապկոցներ հնարելու հետ էր.

և իրաւցընէ կերակուր եփելու շատ վարպետ էր, անոր համար նախանձորդներն ալ չէին պակսիր։ Փառաւոր սեղաններու օրեր աւելի կը գրգռուէր իր անձնասիրութիւնը. և ամէն անգամ որ գաւթին մէջ ճամբորդներ տեսնէր՝ նոր հիւրերու ծառայելու մեծ փափաք մը և զուարճութիւն կը զգար։

Իսկ մենք մէյմը իր տնակին ներսի դին քննենք։ Խորճիթին մէկ անկիւնը իր անկողինը դրած էր, վրան ձեան պէս ճերմակ վերմակ մը. գետինն ալ գորգի կտոր մը փռած. մէկալ կողմն ալ սրահակն էր, որուն կարգաւորութեանը Քլոյէ մասնաւոր խնամք ունէր, տղոց թող չէր տար որ հոն ոտք կոխեն. և հոն նստած ատեն այնպէս կը զմայլէր՝ որ կարծես թէ երևելի տան մը տիկինն էր, և կամ ազնուական ընկերութեան մը փառաւոր սրահին մէջն ըլլար։ Խորճիթին մէկ ուրիշ անկիւնը պզտի անկողին մըն ալ կար. վառարանին վերի կողմն ալ սուրբ Գրոց այլ և այլ պատկերներ նկարուած էին. որոնց մէջ կար նաև Ուաշինկդըն Ամերիկայի Միացեալ Նահանգաց ազատարարին դէմքը, որուն քաշուածքը ու գոյնը զամէնքը կը զարմացընէր։

Կոշտ նստարանի մը վրայ երկու պզտի

տղաք նստեր էին, գռուզ մազերով, սև ա-չուի, գէր ու կախուած թուշերով, և իրենց պզտի քրոջը ձեռքէն բռնած՝ քալելու կը վարժեցնէին. ան ալ դեռ պզտիկ՝ ուրիշ մանր տղոց պէս՝ նոր ոտք ելլալու ժամանակն ըլլալով՝ կ'իյնար կ'ելլար. տղոց խըն-տումը, ասոր ճըւալը՝ տնակին մէջ մէկ շփոթութիւն մ'ալ աւելցուցեր էին։

Կրակարանին քով կոտրած սեղան մը կար, վրան փռոց մը ու գոյնզգոյն թասեր ու պնակներ՝ ընթրիքի համար պատրաստած։ Թովմաս՝ այս պատմութեանս դիւցազնը՝ սեղանին մօտ նստեր էր. իր բարձր հասակը, կարիճ ու լայն կուրծքը, սև ու փայլուն դէմքը աֆրիկեցի ըլլալը կը ցուցնէին. ծանրակաց ու հասուն խելքը՝ իր բարեսրտութեան ու մարդավար կերպին հետ միացած՝ երեսին թխութեանը բնական ազնուականութիւն մը տուեր էին։

Թովմաս ձեռքը սեաքար մը առած՝ ուշադրութեամբ վրան գրելու ձեւերը կը փորձէր. քովն ալ տանտիրոջ տղան Ճօնիկը կեցած՝ որ հազիւ տասուիրեք տարուան կար, իբրև վարժապետ՝ անոր սխալները կը սըրբագրէր։ Շատ ջանք կ'ընէր Թովմաս՝ որ Ճօնիկին գրերուն նմանցընէ, բայց խեղճը

յարմարութիւն չունենալով՝ անօգուտ տեղը կ'աշխատէր, կը զարմանար ալ Օննիկին արագ ու մաքուր գրելուն վրայ։

— Ինչպէս յաջող ձեռք ունիս ճերմակները, ըսաւ անդիէն Քլոյէ. ես տղան ինչ աղէկ կարդալ գրել գիտէ. չէ՞ր կրնար ամէն իրիկուն գալ ու դաս տալ քեզի. խիստ բարեսիրտ տղայ մըն է։

— Բայց, Քլոյէ, գիտցած ըլլաս որ ես անօթի եմ, ըսաւ Օննիկ. կրակին վրայինը դեռ չեփեցա՞ւ։

— Քիչ մ'ատենէն կ'եփի, պատասխանեց Քլոյէ, ու ամանին խուփը վեր վերցնելով՝ ի՛նչ աղէկ կ'եփի, ի՛նչ աղէկ գոյն ունի, ըսաւ։ Մէկալն օր տանտիկինը Սէլլիին ըսաւ որ քաքար մը եփէ, որպէս զի սորվի։ Ես չխառնուեցայ, սիրտս ալ կը կըտըրտէր՝ այնչափ բան զուր տեղը աւրուելուն վրայ. կարկանդակը մէկ կողմանէ ուռեցաւ կօշիկի ձեւին նման։ Այս ըսելով աման մը բացաւ, ու պարծենալով՝ իր շինած քանի մը կարկանդակները սկսաւ ցուցնել։ Հիմայ, կրկնեց Քլոյէ, Մովսէս ու Պետրոս դուրս ելէք սըկէց. դուն ալ Տալի՝ գնա սիրելիս հօրդ նստէ, քիչ մը ատենէն քու մասդ ալ կը բերեմ։ Հրամանքդ ալ Օննիկ, գրքերդ վեր-

ցուր սեղանին վրայէն ու ծերուկիս քովը նստէ, որ կերակուրնիդ բերեմ։

— Մայրս կ'ուզէր, ըսաւ Օննիկ, որ ընթրիքս մեր տունը ընեմ, բայց ես գիտնալով թէ ինչե՜ր կան հոս ինծի պատրաստած՝ ձգեցի հոս եկայ։

— Իրաւունք ունիս սիրելի, պատասխանեց Փլոյէ, նորէն կարկանդակները Օննիկին սկահակին վրայ դնելով. հարկաւ մտքէդ կ'անցնէր՝ որ ես քեզի համար ամենէն աղէկ բաժինները պահած ըլլամ, հրամէ հիմայ նայիմ։

Օննիկ շուա մը դիմացի բաժինը ուտելէն վերջը, ձեռքը խմորեղէնին երկընցուց։

— Ի՞նչ կ'ընես, ըսաւ Փլոյէ, կեցիր սա իմ սուր դանակովս կարեմ, քուլինովդ բոլորովին կը փճացընես. ես աս դանակս այս տեսակ խմորեղէններու համար մասնաւոր շինել տուեր եմ։

Օննիկ բերանը լեցուն, — Լինքոլին ընտանիքը, ըսաւ, մտքերնին դրած են՝ որ իրենց Ճէննի աղախինը քեզմէ աւելի վարպետ է։

— Անոնք ալ ինքզինքնին մեծ բանի տեղ դրած են, պատասխանեց Փլոյէ արհամարհանօք. իրաւ իրենք ալ բաւական միջակ

ընտանիք մ'են, բայց մեր տէրերուն հետ ոչ կրնան բաղդատուիլ, և ոչ ալ անոնց խօսքը կ'ըլլայ։

— Բայց ես լսեցի որ, կրկնեց Օննիկ, Ճէննին շատ վարպետ խոհարար է եղեր։

— Կրնայ ըլլալ, ըսաւ Քըլպէ. ի հարկէ հասարակ կերակուրներ գիտէ եփել, թերևս քաղքար մ'ալ կարենայ բանալ, բայց շինածը բան չէ, ան ալ թէ որ չգիտնար՝ ինչի՞ն խոհարարն է. կրնա՞յ պլակինդ մը բանալ՝ որ մարդուս բերնին մէջ հալի։ Երբոր Մարիամ կարգուեցաւ, սա Ճէննին հարսանեաց համար խմորեղէն մը բացաւ, ինծի ալ հարցուց թէ ի՞նչպէս է. գիտես՝ որչափ մէկմէկու հետ ընտանի ենք, այսու ամենայնիւ բերանս ալ չբացի. բայց թէ որ ես այնպիսի անհամ բան մը շինած ըլլայի՝ ամօթէս օրերով քուն չէի ըլլար։

— Բայց ընդհակառակն, պատասխանեց Օննիկ, Ճէննին անիկայ գերազանց բանի մը տեղ դրեր է։

— Թող որ իրաւ է ըսածդ, յայտնի է որ ամենևին իր արհեստէն չի հասկընար։ Իրեն տէրերն ալ խեղճ ընտանիք մ'են. խոհարարն ալ ի՞նչ կ'ուզես որ ըլլայ. ո՛հ Օննիկ, քու ընտանեացդ երջանիկ վիճակը չես գիտեր։...

Աս ըսելու ատենը Քըլոյէ հառաչեց ու սրտաշարժ կերպով աչուըները դէպի երկինք վերցուց։

— Հաւատա ինծի, Քըլոյէ, պատասխանեց տղան, որ ես լաւ կը ճանչնամ իմ խմորեղէններուս յարգն ու օգուտը. հարցու մէյ մը Թովմաս Լինքոլին, թէ ինչպէս ամէն ատեն անոնց վրայ կը պարծիմ։

Այս խօսքերուս վրայ Քըլոյէ այնպէս ուրախացաւ, որ սկսաւ բարձր ձայնով խնդալ, ու սեւափայլ երեսներէն վար աչքէն ուրախութեան արցունք թափել։ — Օր մը դուն զիս պիտի ճաթեցընես, կ՚ըսէր Մանիկին, այդ քու ծիծաղաշարժ խօսքերովդ։ Լինքոլին հետ ինչ բաներ կը խօսիս, խեղճը քու խաղալիկդ ըրեր ես։

— Կատակ ընելէն ի՞նչ փնաս կայ, կրկնեց տղան. օր մը զինքը հրամցուցի որ գայ մեզի հետ կերակուր ուտէ. միտքս ան էր որ վերջը կերած կերակուրներուն վրայօք իր ըրած դատաստանը լսեմ։

— Ապրիս, աղէկ ըրեր ես, պատասխանեց Քըլոյէ, քանի որ միտքս կու գայ խեղճին այսպիսի համով կերակուրներէ զուրկ մնալը, սիրտս կը ցաւի։ Աղէկ կ՚ընես թէ որ երբեմն երբեմն զինքը սեղանի հրամցընես,

որ գտնէ քիչ մը աղէկ եփած կերակուր բերանը դնէ։

— Շատ աղէկ, ուրեմն սա դիմացի շաբաթ օրը նորէն զինքը սեղանի կը հրաւիրեմ, դուն ալ նայէ որ իրեն աղէկ պատիւ ընես։ Այնչափ կերցընենք՝ որ տասնըհինգ օր ամենևին չանօթենայ։

— Տեսնես, կրկնեց Թլոյէ, թէ ինչ բաներ պիտի չընեմ։... Կը յիշե՞ս սա Նօքս զօրավարին սեղանին՝ վառեկի մսով շինած կարկանդակը։... Ան օրը խաթունին հետ պզտիկ վէճ մ'ալ ունեցայ։ Շիտակը տանտիկինները շատ մը փուճումուճ բաներով մարդս հանգիստ չեն ձգեր, մանաւանդ երբոր իր բանին գործին զբաղած ըլլայ։ Նոյն օրը տիկինը վար իջեր էր, մէյ մը այս բանը կը հրամայէր, մէյ մը մէկալ բանը կ'արգելուր. ա՛լ վերջապէս համբերութիւնս հատաւ. «Նայէ, ըսի, խաթուն, մէյմը քու ճերմակ ձեռուըներդ ու գեղեցիկ մատուըներդ, նայէ ալ իմ սև ու կոշտ ձեռուըներս. զիս Աստուած խմորեղէն շաղուելու ու կերակուր եփելու ստեղծեր է, իսկ զքեզ՝ փառաւոր սրահներու մէջ քալելու ու զարդարուն բազմոցներու վրայ նստելու». քիչ մը անխոհեմութիւն էր ըրածս, բայց զեն չի տար։

— Ի՞նչ պատասխան տուաւ մայրս։

— Ի՛նչ պատասխան պիտի տայ. անուշ աչքով դարձաւ նայեցաւ ինծի. «Իրաւունք ունիս, Քլոյէ» ըսաւ ժպտելով, ու մէկէն ե-լաւ վեր գնաց. կրնար ինքը գլխիս փոր-ձանք մը բերել իմ ըրած յանդգնութեանս համար. բայց ի՛նչ ընեմ, երբոր խաթունայք խոհանոց կը մանեն, սրտիս նեղութենէն բան մը չեմ կրնար ընել։

— Այն օրուան սեղանով՝ քու անունդ աւելի մեծցաւ, կրկնեց Ողան, ամէնքն ալ մէկ բերան՝ եփած կերակուրներդ գովեցին։

— Ես ալ գիտեմ. նոյն օրը սեղանին առեն դրանը ետին պահուըտած՝ մտիկ կ'ը-նէի. զօրավարը իրեք չորս անգամ իմ ե-փած կարկանդակներէս հաւնելով կերաւ, ու երկու խօսքին մէջ՝ «Այս ի՛նչ վարպետ խո-հարար ունիք» կ'ըսէր Շէլպի խաթունին. ես ալ քանի որ այս խօսքերս կը լսէի՝ ու-րախութենէս սիրտս կ'ուռէր. իրաւցընէ զօ-րավարը բանէ հասկըցող մարդ է եղեր։

Ասանկ խօսքի բռնուելով՝ առանց իմա-նալու շատ կերեր էր, ուստի ա՛լ բերանը պատառ մ'ալ չկարենալով դնել, Մովսէսը ու Պետրոսը կանչեց, ու մնացած ուտելիքը անոնց բաժնեց։

Օննիկն ու Թովմասը գլուխ գլխի տուած կրակին քովը նստան. Գլոյէն ալ կարկանդակով լեցուն պնակ մը ձեռքը՝ եկաւ քովերնին նստաւ ու պզտի տղէկն ալ գիրկը, սկսաւ մէյ մը ինքն ուտել, մէյ մ՚ալ տըղուն տալ։ Իսկ մէկալ երկու տղաքը Մովսէսն ու Պետրոսը սեղանին տակը մտած տապլտըկելով իրենց բաժինը կ՚ուտէին, և երբեմն երբեմն կու գային՝ իրենց պզտի քրոջը ուտքին մասը կը քաշէին։

— Չէ՞ք կրնար քիչ մը խելօք կենալ, կ՚ըսէր մայրերնին. գոնէ ճերմակներուն մեզի այցելութեան եկած ատեն քիչ մը հանդարտ կեցէք. երբոր պարոն Օննիկը երթայ՝ գաւազանն առած կողերնիդ պիտի մտնեմ։

Բայց այս սպառնալիքները ամենևին օգուտ մը չըրին։

— Սատտիկ կրակոտ են, ըսաւ աղբար Թովմասը, անոր համար չեն կրնար խելօք կենալ։

Մէյ մ՚ալ պզտի սևուկները սեղանին տակէն դուրս ելան, ու ճենճոտ բերնով և ձեռուըներով եկան քուրերնին շոյել ու պագնել սկսան։

— Կորսուեցէք սա տեղէն, ըսաւ մայրերնին, գլխունուն զարնելով. գնացէք աղ-

բիւրը լուացուեցէք։ Աս ըսելով՝ ապտակ մը իջեցուց, բայց անոնք հանդարտելու տեղ՝ աւելի բարձրաձայն սկսան խնտալ ու պոռալ։

— Այսպիսի անզգամ տղաք տեսած ունի՞ք, կանչեց Քլոյէ, ու հին ջնջոց մը ձեռքը՝ գրկի տղուն ձեռուըններն ու բերանը լուալով մաքրեց ու Թովմասին գիրկը առաւ... ինքն ալ ելաւ սեղանը վերցունելու։ Տղէկը մէյմը բարեմիտ Հօրը քիթը կը քաշէր, մէյմը երեսը կը ճանկէր, մէյմը մազերը կը քաշէր։

— Սիրունիկ, ըսաւ Թովմաս, ու զինքը վեր վերցուց և իր լայն ուսացը վրայ դրաւ, ու սկսաւ խցին չորս կողմը պտըտցընել. Ծնիկն ալ իր Թաշկինակովը կը խաղցնէր տղէկը. մէյմըն ալ այն երկու սեւուկները ներս մտան և սկսան տղեկին չորս կողմը արջու պէս ոռնալ։

— Ա՛լ բաւական է, ըսաւ Քլոյէ, ու անկողինը պատրաստեց որ տղաքը պառկին, շուտ ըրէք, մենք ժողովք[1] ունինք։

1. Ամերիկայի մէջ գերիներուն մեծ մխիթարական բան է այս ժողովքները. իրիկունները՝ աշխատութիւննին լմընցընելէն վերջը միատեղ կը ժողովին ու հոգեւոր գրքեր կը կարդան, երգեր կ'երգեն, ու մէկզմէկ

— Չէ, մայրիկ, չէ. չենք ուզեր պառկիլ, մենք ալ կ'ուզենք ժողովքի գալ։

— Թող, Գլոյէ, թող որ իրենք ալ գան, ըսաւ Օննիկ, ու դուռն սա կրակարանը իրեն տեղը դիր։

— Ո՛վ գիտէ, ըսաւ Գլոյէ, կրնայ ըլլալ որ խելքերնին գլուխնին գայ։

Ինչ և իցէ՝ ամէնքը մէկտեղ սկսան ժողովքի պատրաստութիւն տեսնալ։

Քանի մը շաբաթ ետևէ ետև այս ժողովքները Թովմասին խրճթին մէջ կ'ըլլային, ուստի նոյն իրիկունն ալ յանկարծ լուր եկաւ որ ժողովականք նորէն հոն պիտի գան։ Ա՛լ տղոց ուրախութիւնը ո՛վ կրնայ պատմել. իսկ Գլոյէ նոյն իրիկունը տղոց ալ մէկտեղ ըլլալուն համար շփոթեր էր, թէ ուսկից այնչափ աթոռ գտնայ։

— Ի՛նչպէս աթոռ պիտի բաւեցընենք այս անգամ, ըսաւ։

— Անցեալ շաբաթ, վրայ բերաւ անմիջէն Մովսէս, ծեր Պեստիկ աղբարը սա հին աթոռին երկու ոտուըները կոտրեց։

կը քաջալերեն ու կը մխիթարեն. գերիներուն շատը այնպիսի ժողովքներու մէջ մէկմէկէ յորդորանքներ լսելով՝ հեթանոսութենէ կը դառնան՝ քրիստոնէական կրօնքը կ'ընդունին։

— Ես չեմ հաւատար, պատասխանեց Քը-լոյէ, խաղալու տանձնիկ պուք կտրած պի-տի ըլլայ:

— Նորէն բանի կրնայ գալ, կրկնեց Մօվսէս, պէտք է պատին կոթընցուցած դը-նել:

— Աղէկ. բայց Պեարիկ աղբարը պէտք չէ որ վրան նստի, վասն զի երգելու ատե-նը շատ կը շարժի, մէկալն օր քիչ մնաց պատին պիտի զարնուէր:

— Ընդ հակառակն թողլու է որ նստի, ըսաւ Մօվսէս. երբոր Արդարք և մեղաւորք եկայք տու իս երգը սկսի երգել, փամ՝ վար կ'իյնայ: Ու այն բարեխիղճ մարդուն պէս քթին տակէն մռմռալով՝ նոյն ատենի շփո-թութիւնը հիմակուընէ ձևացընելով թողուց որ աթոռը վար իյնայ:

— Բաւական է, չը՞ս ամըչնար, պոռաց Քըլոյէ:

Մանուկն ալ խնդալը չկրցաւ բանել. ա-րաւ մօրը ձայնը ազդեցութիւն մը չըրաւ տղուն վրայ:

— Ծերուկ, ըսաւ Քըլոյէ, պէտք է սա տակառներն ալ բերել:

— Մեր մօրը տակառներն ալ, ըսաւ Մօվսէս իր եղբօրը, ամէն բանի կու գան:

— Բայց անցեալ շաբաթ երգի ժամանակ անոնցմէ մէկուն տակն ինկաւ, ըսաւ Պետրոս, ուստի բանի չի գար։

Մինչդեռ Մովսէսն ու Պետրոսը մէջերնին կը խօսակցէին, Քլոյէն գնաց երկու պարապ տակառներ բերաւ, ու վրանին տախտակներ շարելով նստարան ձեւացուց. նոյնպէս քանի մը կոտրտած աթոռներ ունէր՝ անոնք ալ բերաւ կարգաւ դրաւ. մէկ խօսքով՝ խեղճ ողորմելի տնակին յարմար, ողորմելի ժողովարան մ'ալ ձեւացաւ։

— Պարոն Ճոնիկին գրաւարժութիւնը շատ բաց է, յուսանք թէ կը կենայ մեզի այս իրիկուն ու քիչ մը հոգեոր կը կարդայ, ըսաւ Քլոյէ։

Ճոնիկն ալ սիրով յանձն առաւ։ Տղաք պատրաստ են յանձնառու ըլլալու որ բանին մէջ որ երես կրնան ճերմըկցընել։

Քիչ ատենէն մէջ մ'ալ բոլոր խուցը սեւրով լեցուեցաւ, ութսուն տարուան ծերերէն սկսեալ՝ ինչուան տասնըհինգ տարուան մանչ աղջիկ հոն թափեցան։ Խօսակցութիւննին անմեղ նիւթերու վրայ էին, իւրաքանչիւրը իրենց տանը վերաբերեալ բաները կը պատմէին. մէկմէկու խօսակցութեանցն ալ այնպէս մտադրութեամբ ու համ առնելով մտիկ

կ'ընէին՝ որ կարծես թէ աշխարհքիս քա-
ղաքականացեալ ազգաց մէկ ժողովարանն
ըլլար, ու ազգին կամ տէրութեան վերա-
բերեալ մեծամեծ խնդրոց վրայ խօսուէր։

Քիչ մը ատենէն վերջը սկսան ուրախա-
կան երգեր երգել։ Աներուն երաժշտութիւնը
ռնգաձայն ներդաշնակութեամբ եղանակներ
են, որ իրաւ՝ ձայնի բնական գեղեցկութիւնը
բռնի կ'առնեն, բայց այսու ամենայնիւ՝ այն-
պիսի հոգւով ու զգացմամբ կ'երգեն որ մարդ
չի կրնար չզգացուիլ։ Երգածներնէն մէկ քա-
նին հոգևորական երգեր էին, մէկ քանին ալ
իրաւ անոնց՝ բայց շատ խորհրդաւոր իմաստ-
ներով բանաստեղծութիւններ էին։ Յաջորդ
պարերգութիւնը իրենց երգածներէն մէկն էր.

Փափաքիմք հետամուտ
Անկանել ի մարտի
Ո՛վ փառացն անկապուտ.

Ուրիշ երգ մ'ալ այսպէս կը սկսէր.

Յարարչին գիրկս անմրտանց
Մանկանացող մինչ հանգչիս,
Զուարթունն յանեղ ժամուն զանգք
Քեզ կարապետ է յերկինս.
Եւ դու նորափայլ պըճնելով զարդու
Մուտ յեդեմական դըրունս յուսատու.

Երգերնուն մէջ ստէպ Յորդանանու եզերքները, Քանանու դաշտերը ու Նոր Երուսաղէմը կը յիշէին: Սևերուն երևակայութիւնը միշտ բնական ու գեղազուարճ տեսարաններ ու արտաշարժ բացատրութիւններ կը փնտռէ. ուստի երգելու ատեննին ոմանք ուրախութենէն կու լային, ոմանք կը պոռային, ոմանք ծափ կը զարնէին, ոմանք ալ իրենց սրտին ուրախութենէն՝ մընջկատակով՝ Իսրայէլացւոց Յորդանան գետէն անցնիլը կը ձևացընէին:

Երգերէն վերջը՝ այլ և այլ հոգևորական յորդորանքներ խօսուեցան. մէջերնին պառաւ մը կար, մազերը բոլորովին ճերմըկած. ու շատ ատենէ ի վեր աշխատելու անկարող ըլլալով՝ օրերը հանգիստ կ'անցընէր, ամէնքը զինքը իբրև կենդանի ժամանակագիր մը կը պատուէին. ասիկայ ոտք ելաւ ու գաւազանին վրայ կոթնած՝ այսպէս խօսեցաւ.

— Ով որդեակք իմ, շատ բարեբաղդ ինքզինքս կը սեպեմ որ ձեզ մէկ անգամ մըն ալ հոս մէկտեղ ժողուած տեսայ, վասն զի կը յուսամ որ քիչ ատենէն երկնային փառաց հրաւէրքը պիտի ընդունիմ. Ես իմ ամէն պատրաստութիւններս տեսած եմ, ու

կը սպասեմ կառքին՝ որ գայ ու զիս իմ Հայրենիքս տանի. երբեմն գիշերն ալ կարծես թէ կառքին անիւներուն ձայնը կը լըսեմ, և ուշադրութեամբ մտիկ կ'ընեմ՝ որ չըլլայ թէ իրաւցընէ հասած ըլլայ։ Դուք ալ, որդեակք, պատրաստ կեցէք, ըսաւ, գաւազանը գետին զարնելով. Նորէն կ'ըսեմ պատրաստ կեցէք. մեր Հայրենիքը գերազանց աղուորութիւն մը ունի, իրաւցընէ աղուոր է։... Ալ չէր կրնար խեղճ պառաւը խօսքը առաջ տանիլ, վասն զի սիրտը ելաւ ու առատ արցունքներ աչուըներէն կը վազէին։ Մէյմըն ալ պարտէզպանները նորէն միաձայն սկսան հեծեծել երգը երգել.

Քաղցրանոյշ երկիր... անձկալիդ Քաղցրան,
Ի՛րք ի քեզ աչկունքս և սիրտ հառեցան,
Ինչի՞ւ ընդ ծառոցդ հանգստեայց հովանեաւ։

Իսկ Օննիկ՝ որ մինչև ան տանը լուռ կեցած այս արտաշարժ երգերը մտիկ կ'ընէր, ու երբեմն ինքն ալ իր ձայնը խեղճ գերիներուն հետ խառնելով կ'երգէր, ամէնուն խնդիրքովը Յայտնութեան գրքին վերջին գլուխը կարդաց, որուն ամէնքն ալ ծափ զարնելով կ'ըսէին. — Ի՜նչ զարմանալի

բան է, մտիկ ըրէք... մտածեցէք... ըս-տոյգ է որ ատոնք ամէնքն ալ պիտի կա-տարուին։ Օննիկ բնական խելացի, ու ա-ղէկ կրթութիւն ալ առած ըլլալով մօրմէն՝ մանաւանդ հոգևոր բաներու մէջ, տեսնալով որ ամէնքը ուշադրութեամբ մտիկ կ'ընէին, երբեմն երբեմն ծանրութեամբ մը՝ կարդա-ցած տուներուն մեկնութիւն կու տար, որուն վրայ ամէնքը կը զարմանային ու կ'օրհնէին զինքը, և ամէնքն ալ միաբերան, — Քա-րոզիչ մը ասկէ աղէկ կրնա՞ր խօսիլ, կ'ը-սէին։

Իսկ մեր Թովմասը բոլոր շրջակայ սեն-րուն պատգամախօս համարուած էր։ Ի բնէ բարոյական առաքինութեամբ զարդարեալ, ու իր ընկերացը մէջ ամենէն աւելի կըր-թուածն ըլլալով՝ ամենուն պատուելի էր, ու վրան մեծ համարմունք ունէին։ Իրեն խօսած յորդորանքներուն պարզ ու բնական ոճը, ու միանգամայն անուշ զրուցուածքը՝ կիրթ մարդու մ'ալ մեծ ազդեցութիւն կ'ը-նէին. բայց ամէն բանէն աւելի գերազանց էր իր պարզ աղօթքները որ սուրբ Գրոց ո-ճովը ու իմաստներովը շինուած էին, և այն-պէս բնական կերպով մը ու սրտանց կը զրուցէր՝ որ կարծես թէ բուն սրտան էր

խօսողը. և կամ ինչպէս ծերերուն մէկը կ'ըսէր՝ «Իրենն ազօթքները շիփշիտակ եր-կինք կ'ելլային»։

Թովմասին տնակին մէջ այս սրտաշարժ հանդէսն ըլլալու ատեն, իր տիրոջը տունը ընդհակառակն բոլորովին տարբեր տեսարան մը բացուած էր։

Շէլպին ու գերեվաճառը սեղանատան մէջ նստած խել մը թղթադրամներ կը համրէին. գերեվաճառը բոլորն ալ ժողվելէն վերջը, — Շատ աղէկ, ըսաւ Շէլպիին, կը մնայ որ ստորագրութիւնդ տաս։

Շէլպի շուտ մը վաճառքի դաշնագիրը ստորագրեց, ու ակամայ ըրած ըլլալուն համար՝ նեղսրտութեամբ մը թղթադրամնե-րուն հետ գերեվաճառին դիմացը նետեց, ու ոտք ելաւ։

— Ուրեմն, ըսաւ գերեվաճառն ալ՝ ոտք ելլալով, բաներնիս լմընցուցինք։

— Հրամեր ես, պատասխանեց Շէլպի տխրութեամբ, ու խորունկէն հառաչանք մը ըրաւ։

— Կ'երևայ թէ այնչափ գոհ չեղար, կրկնեց Հէլի Պ. Շէլպիին։

— Բարեկամ, պատասխանեց Շէլպին, յուսամ որ ինծի պատուոյդ վրայ ըրած

խոստումնե՞րդ կը յիշես, ու ամենէն Թով-մասը չգիտցած մարդուդ ձեռքը չես մատ-ներ։

— Բայց քու աս ըրածդ՝ հիմակուան ինծի ապացուցածիդ դէմ չէ՞[1]։

— Բայց դուն գիտես, պատասխանեց Շէլպին բարկութեամբ, թէ ինչպիսի՛ ծանր հարկ մը ստիպեց զիս այդ ցաւալի բանն ընելու։

— Նոյնը ինծի ալ կրնայ հանդիպիլ, վրայ բերաւ Հէլի. բայց ամենայն ջանքս կ'ընեմ, որ լաւ տեղ մը գտնեմ Թովմասին. մի՛ վախնար, ես զինքը չեմ չարչըրկեր։ Թէ որ բանի մը համար Աստուծոյ եւելօք շնոր-հակալ ըլլալու պարտք մը ունիմ, այս է՝ որ մէկու մ'ալ անգթութիւն չեմ ըրած։

Շէլպին չէր հաւատար գերեվաճառին ը-րած խոստումներուն, բայց պարագաներէն ստիպեալ՝ ձայն չհանեց. գերեվաճառը դուրս ելլալէն վերջը՝ ինքը սրտաւմ տխուր՝ տանը առանձին անկիւն մը քաշուեցաւ ու սկսաւ ծուխ քաշել։

1. Կ'ուզէ ըսել, առանց զիս աղէկ ճանչնալու՝ ի՞նչ-պէս Թովմասը ինծի ծախեցիր։

# ԳԼՈՒԽ Ե.

*Ինչ զգացմունք կրնայ ունենալ կենդանի ապրանք մը, որ ձեռքէ ձեռք կը ծախուի։*

Պարոն Շէլպի ու իրեն կնիկը խուցերնին քաշուեր էին. էրիկը բազմոցի մը վրայ երկընցած՝ երիկուան թղթատարով հասած նամակները աչքէ կ'անցընէր. կնիկն ալ խուցին մէկալ անկիւնը հայելիին դիմացն անցած՝ ինքնիրեն գլխուն զարդարանքները կը հանէր. որովհետև նոյն իրիկուն Ելիզային տժգոյն երեսը ու քնոտ աչուըները տեսնալով՝ պառկելու ղրկեր էր։ Ան միջոցին կնկան միտքը ինկաւ առաւուան ազախնոյն հետ ըրած խօսակցութիւնները, ու դարձաւ իր էրկանը կէս բերնով մը հարցուց.

— Խնդրեմ, Արթուր[1], ո՞վ էր այս օրուան եկող մարդը, որ մեզի հետ կերակուր կերաւ։

— Անոր Հէլի կ'ըսեն, պատասխանեց Շէլպի, ու մէկ կողմանէ ալ այլայլած՝ բազ-

1. Արթուր՝ Շէլպիին բուն անունն է, իսկ Շէլպի՝ մականունը։

մոցին վրայ մէյմը մէկ կողմը մէյմը մէկալ կողմը կը դառնար։

— Հէլի… ո՞վ է ատ Հէլին, ի՞նչ բան ունի հոս։

— Աս ան մարդն է՝ որուն հետ վերջին անգամ՝ որ Նէյշիզ գացի՝ հետը քանի մը գործք ունեցայ։

— Բայց հոս առանց հրաւէրքի ինքնիրե՞ն եկաւ սեղանի։

— Չէ, ես հրաւիրեր էի զինքը, որ մնացած մէկ քանի թեթև հաշիւներս լմնցնեմ հետը։

— Չըլլա՞յ թէ գերեվաճառ մը ըլլայ ատ մարդը, վրայ բերաւ կնիկը էրկանը շփոթ կերպը տեսնալով։

— Ո՛հ… ուսկի՞ց ալ ատ բանը միտքդ ինկաւ… ո՞վ ըսաւ քեզի։…

— Ոչ ոք. միայն սեղանէն ետև եկաւ Ելիզան շփոթած, լալով ու խեղճ թափելով ըսաւ ինծի, թէ դուն գերեվաճառի մը հետ խօսակցութիւն ըրեր ես, և թէ անիկայ Ելիզային պզտի սեւուկը ուզեր է գնել… դեռ, ի՞նչ գիտնամ, խել մը այսպիսի բաներ, որ անխելքի մը մաքէն ալ չանցնիր։

— Իրա՞ւ կ՚ըսես, կրկնեց Շէլպին, ու սկսաւ նորէն իբրև թէ ուշադրութեամբ իր

թղթերը կարդալ, առանց իմանալու որ թուղթը հակառակ կողմը բռներ էր. ինքն-իրեն ալ կ՚ըսէր. — Քիչ մը ուշ քիչ մը կանուխ՝ պէտք է որ կնիկս ամէն բան գիտ-նայ, ուստի ա՛լ լաւ է որ շուտ իմանայ։

— Ես, ըսաւ խաթունը, խենդի տեղ դը-նելով Եղիզան, ըսի իրեն որ այսպիսի փուճ բաներ միտքը պնելով անհանգիստ չըլլայ, ու ապահովցուցի զինքը որ քու մտքէդ ոչ երբեք անցեր է ծառաներէդ մէկն ալ ծա-խելու, մանաւանդ այնպիսի մարդու մը։

— Իրաւցընէ, Եմիլիա, ես քու ըսածիդ պէս միշտ միամտեր եմ, բայց այս անգամ իմ գործքերս զիս ստիպեցին սաստիկ շար-ժելու. ուստի գիտնաս, սիրելի, որ պար-տաւորուած եմ գերիներէս մէկ քանին ծա-խելու։

— Աս մարդո՞ւն պիտի ծախես ... կա-տա՞կ կ՚ընես։

— Դժբաղդաբար ստոյգ է ըսածս, որո-շեցի որ Թոմմասը ծախեմ։...

— Թոմմա՞սը ... պատասխանեց կնիկը նեղանալով մը, ան բարի ու հաւատարիմ ծառանիս՝ որ պզտիկուց ի վեր մեզի այն-պիսի հաւատարմութեամբ կը ծառայէր։ Դուն իրեն չխոստացա՞ր որ զինքը պիտի ազա-

տես. ես ալ, դուն ալ այս բանիս վրայ քանի՜ անգամ խօսեր ենք հետը։ Հիմայ Ելիզային ամէն կասկածներուն ալ կրնամ հաւատալ, անշուշտ խեղճին մէկհատիկ Հէնրիկն ալ ծախելու միտք ունիս։

— Ի՜նչ ըսեմ... որովհետեւ ուզեմ չուզեմ՝ ամէն բան պիտի իմանաս, ստոյգ գիտցիր որ Թովմասն ու Հէնրիկը ծախեցի. գիտեմ որ աս բանիս համար զիս դուն հրէշ մը պիտի համարիս, բայց հոգս չէ, իմ ըրածս նոր բան չէ, այսօրուան օրս ամէն մարդ նոյն բանը կ'ընէ։

— Բայց ինչո՞ւ այնչափ գերիներուն մէջէն՝ աս երկուքը ընտրեցիր ծախելու, հարցուց կնիկը. ուրիշ մը չգտա՞ր անոնց տեղը ծախելու։

— Վասն զի անոնք աւելի արժէք ունին. Ելիզային համար ալ աղէկ գին մը տուաւ ինծի գերեվաճառը, կ'ուզես նէ անոնց տեղը Ելիզան ծախեմ։

— Ա՜յ թշուառական, գետինն անցնի, կանչեց կնիկը նեղանալով։

— Ի՜նչ... վրայ բերաւ էրիկը, գնա շնորհակալ եղիր ինծի, որ զքեզ չվշտացնելու համար, գերեվաճառին խոստմունքներուն ականջ չկախեցի։

— Թողութիւն ըրէ, սիրելի, պատասխանեց հանդարտութեամբ կնիկը, յանկարծակիի գալով՝ հարցմունքիդ կրքոտ պատասխան մը տուի... բայց կը յուսամ որ աս խեղճերուն համար իմ միջնորդութիւնս կ՚ընդունիս. Թովմասը թէպէտ սև է, բայց ազնիւ սիրտ ունի ու հաւատարիմ ծառայ մ՚է. Թէ որ հարկ ըլլայ՝ քեզի համար իր կեանքն ալ կու տայ։

— Ես ալ գիտեմ, որ այնպէս է. բայց ի՞նչ ընեմ, բանը լմընցած է։

— Քու ստացուածքէդ քիչ մը պոնէ զոհ չե՞ս կրնար ընել, ես իմ կողմանէս պատրաստ եմ ամէն զոհ ընելու։ Մինչև հիմայ, ինչպէս քրիստոնեայ կնկան մը կը վայլէր՝ ամէն կերպով ջանացի՝ ձեռքէս եկած օգնութիւնը ըրի աս խեղճ ու թշուառ գերիներուս։ Քանի որ քովս եկեր են՝ անպակաս վրանէն հոգ ունեցայ՝ որ քիչ մը կրթուին. հագուեցուցի, ու միշտ իրենց ուրախութեանը ուրախակից ու տրտմութեանն ալ տրտմակից էի։ Ի՞նչ երեսով հիմայ իրենց երևամ. ի՞նչ կ՚ըսեն երբ կը տեսնան որ մենք մեր ամենէն հաւատարիմը, պատուականն ու սրտակիցը կը ծախենք։ Երկուտարուան աշխատութիւնս ու տուած կրթու-

թիւնս և իրենց սորվեցուցածս՝ որ է յարգել ու սիրել իրենց տէրերը, մէկ վայրկենի մէջ կը կորսնցընեմ: Սորվեցուցի իրենց՝ թէ հօր կամ մօր ու հարսին ու փեսային իրարու ունեցած պարտքերն որո՛նք են. հիմայ պիտի ըսեն՝ որ մեր դիմացը աւելի յարգի է արժաթը, քան թէ աս պարտուց կամ կապերուն պահպանութիւնը: Ելիզային այնչափ ջանացեր եմ սորվեցնելու՝ թէ ի՞նչպէս պէտք է խնամք ունենայ իր պզտիկին վրայ, որ քրիստոնէաբար մեծցընէ, վրան արթուն կենայ, իր մայրական խնամքը տղուն վըրայէն պակաս չընէ. հիմայ ի՞նչ պիտի ըսեմ իրեն թէ որ դուն առնես քովէն իր տղան, ու խեղճը հոգւով մարմնով աս անպիտան ու սկզբունք չունեցող մարդուն ծախես: Իրեն շատ անգամ գրուցեր եմ որ մեր հոգին անգին է, անոր բոլոր աշխարհքիս ոսկիովն ալ գին չի կտրուիր, ի՞նչպէս ինծի կըրնայ հաւատալ, թէ որ մենք իր սիրական տղան ծախենք ի փառս մարմնոյ՝ թերևս նաև ի կորուստ հոգւոյն:

— Քու այդ զգացած ցաւելդ զիս ուելօք կը տրտմեցընեն, պատասխանեց Շէլպի, քու բարի զգացմունքներդ թէպէտ ես ևս չունենամ՝ կը գովեմ. բայց նորէն կ'ըսեմ

՝քեզի, որ բանը բանէն անցած է, ա՛լ ճար չկայ։ Շանկէ շիտակ ըսեմ քեզի, կամ աս երկուքը պէտք է ծախեմ, կամ միացած բոլոր գերիներս։ Հէլլի խել մը առնելիք ունի ինծմէ, զորոնք թէ որ շուտով չվճարեմ՝ ունեցածս ալ կը կորսնցընեմ։ Ամէն խնայութիւն ըրի, փոխ սատակ առի, բաց ի մուրացկանութենէ՝ ամէն ձեռքէս եկածն ըրի, որպէս զի այս երկու գերիները չծախեմ, բայց ճար չեղաւ. այս երկուքին գինովը բոլոր պարտքերս կը սրբուին, ուստի պարտաւորեցայ ծախել զանոնք։ Հէլլի զարնուեցաւ սղուն, ու առանց անոր անկարելի եղաւ որ հաշիւնիս գոցենք. չէի կրնար ալ չէ ըսել, վասն զի բոլորովին ձեռքը մատնուեր էի։ Թէ որ այս երկու գերիներուն ծախուիլը այսպէս զքեզ սաստիկ տրտմութեան մէջ կը ձգեն, հապա ի՞նչ պիտի ընէիր՝ թէ որ ստիպուէի զամէնքն ալ նոյնպէս ծախելու։

Շէլպիին խաթունը Եմիլիա՝ քար կտրեցաւ. գնաց խուցին մէկ անկիւնը նստաւ, ու ձեռուըները գլխուն զարնելով՝ սկսաւ հեծեծել զանգատանօք։ — Ա՛հ, անիծեա՛լ ըլլայ գերութիւնը, ըսաւ հառաչելով, այս դառն ու ատելի ծառայութիւնը. անիծեա՛լ

ըլլայ տէր եղողը, անիծեա՜լ ըլլայ գերին։․․․ Ի՛նչ խնդութիւն էր ըրածս, կարծեցի թէ բարիք մը կրնայ ելլել այս մահացու չարիքէն։ Մեր օրինաց տակը գերի ունենալը մեծ մեղք մըն է. տղայութենէս ի վեր նոյն կարծիքն ունէի։ Յոյս ունէի որ դաստիարակութեամբ ու խնամքով այս խղճալի արարածոց վիճակը լաւցընեմ, ու ազատութենէ աւելի ընտրելի ընեմ իրենց․․․ Ի՜նչ խնդութիւն էր որ ըրի։

— Դուն ալ, ըսաւ Շէլպի նեղսրտելով մը, օր օրուան վրայ բոլորովին գերեհանից[1] կարգը անցնելու հետ ես։

— Հրամեր ես, և միշտ ալ անոնց կարծեացը պաշտպան պիտի ըլլամ, միշտ պարսաւեր եմ, անկէց ետքն ալ միշտ պարսաւեմ պիտի գերեվաճառութիւնը. գերի ունենալուս վրայ շատ անգամ վշտացեր եմ, վասն զի գերի ունենալը ոչ երբեք օրինաւոր կրնայ ըլլալ։

— Այս բանիս մէջ դուն խելացի ու բարեպաշտ մարդկանցմէ տարբեր մտածմունք

1․ Abolitioniste որ բառն որ և իցէ Օրինաց խափանութեան համար եղող ըսել է, բայց հիմայ ընդհանրապէս այս բառը գերութեան օրինաց ջնջման համար եղողներուն սեպհականուած է, զորն որ մենք Գերեհան թարգմանեցինք։

տունիս. կը յիշե՞ս անցած կիրակուան քա-րոզը։

— Ես այնպիսի քարոզներ մտիկ ընելու ամենեւին կամք չունիմ, կրկնեց Լնիկը, այն-պիսի քարոզիչին երեսն ալ տեսնել չեմ ուզեր։ Իրաւ է՝ եկեղեցականք ալ մեզի պէս դարման մը չեն կրնար ընել այս անդար-մանելի չարեաց, բայց երբոր կը տեսնամ որ փոխանակ գերեվաճառութեան գէշութիւնը ցուցընելու՝ կը պաշտպանեն զանիկայ, ա-րիւնս գլուխս կը զարնէ։... Բայց ինչպէս որ միտքս կու գայ, այն տաենը դու ալ նոյն քարոզին չէիր հաւնած։

— Այնպէս է, պատասխանեց Շէլպի. իրաւ է որ երբեմն եկեղեցականք բուն իրեն ճշմարտութիւնը չգիտնալով՝ պէտք չեղած բանը կ՚ըսեն։... Բայց հիմայ ես ի՞նչ ընեմ ... դժբաղդութիւնը հեղեղի պէս վրաս թա-փեցաւ, ու հաղիւ այս կերպով գլխս ազա-տեցի։

— Ի՞նչ կրնամ պատասխան տալ, վրայ բերաւ Լնիկը... արժէք ունեցող բան մ՚ալ չունիմ որ ծախեմ... — քիչ մը մտածելէն վերջը — բայց սա ժամացոյցը արդեօք բանի չի՞ գար, ըսաւ, ու ծոցէն ոսկի ժամա-ցոյց մը հանեց. գնելու ժամանակ շատ սուղի

նստաւ ինծի, թէ որ կարենայի գոնէ Ելիզային մղէկը ազատել, սիրով ամէն ունեցածս կու տայի։

— Շատ կը ցաւիմ Եմիլիա, պատասխանեց Շէլլին, այսչափ վշտանալուդ վրայ, բայց անօգուտ է. ամէն բան լըմընցած է. դաշնագիրները ստորագրուեցան ու Հէլլին ձեռքն են։ Գնա դու Աստուծոյ շնորհակալ եղիր որ այսչափով ալ աժան խալըսեցանք, այդ մարդը կրնար աւելի մեծ փնասներ հասցընել մեզի... աղէկ որ դու ամէն բան չես գիտեր։

— Ուրեմն այդչափ անգո՞ւթ մէկն է այդ մարդը։

— Անգութ այնչափ չէ, բայց կարգէ դուրս շահախնդիր մարդ մըն է, պազարիւն, մահուան ու գերեզմանի պէս անկարեկիր. ուրիշներուն քաշած նեղութեանցը վրայ, բաւական է որ ինքը մէջը շահ մը ունենայ, ամենեւին գութը չի շարժիր. շահու համար թէ որ հարկ ըլլայ՝ իր մայրն ալ կը ծախէ, առանց ամենեւին չարիք մը ուզելու անոր։

— Ուրեմն սա թշուառական մարդուն ձեռքը պիտի անցնին սա մեր հաւատարիմ Թոմմասն և Ելիզային խեղճ տղան։

— Ո՛հ սիրելի, ինծի ալ մեծ ցաւ է այս բանս, ու մտածելու ատեններ ոսկորներս դող կ'ելլեն։ Հէլլին շուտ կ'ուզէ բանը լմընցնել, ու վաղը անոնց տէրն ըլլալ. ես վաղը առաւօտ կանուխ ձիս հեծած՝ գլուխս կ'առնում կը հեռանամ ասկէց, վասն զի սիրտս չի տանիր մէյ մ'ալ Թովմասը տեսնալու. շատ լաւ կ'ընէիր թէ որ դուն ալ մէկ տեղ մը քաշուէիր, ու Ելիզան ալ հետդ տանէիր, որպէս զի զոնէ մօրը աչքին առջև չըլլայ այս բանս։

— Չէ, չէ, պատասխանեց կնիկը, ես չեմ ուզեր ամենևին մասնակից գտնուիլ այս անգութ բարբարոսութեանը. ես կ'երթամ նորէն խեղճ Թովմասը տեսնալու, ու Աստուծմէ ալ կը խնդրեմ որ անոր վիշտերը մեղմացընէ. իրենք ալ իմանան զոնէ՝ որ իրենց տանտիկինը գիտէ ուրիշի ցաւոցը ցաւակից ըլլալ։ Իսկ Ելիզային . . . խե՛ղճ աղջիկ, ի՛նչպէս երեսդ պիտի նայիմ . . . . Աստուծոյ ողորմութիւնը հասնի մեզի . . . բայց ի՛նչ է մեղքերնիս՝ որ այսպիսի թըշուառութեանց արժանացանք։

Շէլպին ու իր խաթունը մտքերնէն ալ չէին անցըներ՝ որ իրենց այս խօսակցութեանցը մտիկ ընող մը կայ։ Ասոնց խցին

քով պզտիկ սենեակ մը կար. երբոր տան-
տիկինը Եղիզան պառկելու խրկեր էր, ա-
նիկայ՝ երեւակայութիւնը տաքցած ու տակն
ու վրայ եղած՝ գնացեր ան սենեակը փա-
կուեր էր, ու դրան բանալին ծակէն բո-
լոր այս խօսակցութեանը ամենայն ուշա-
դրութեամբ ականջ դրեր էր։ Խօսակցու-
թիւնն որ կարճեցուցին՝ խեղճը դեղնած ու
դողդղալով կամացուկ մը ելաւ ու իր տեղը
քաշուեցաւ. ա՛լ իր առաջին քաղցրութիւնն
ու երկիւղածութիւնը չմնաց վրան։ Զգուշու-
թեամբ սրահէն անցնելու ժամանակ՝ երբոր
տանտիկնոջը սենեկին դրանը դիմացն ելաւ՝
կանգ առաւ ու ձեռուընները երկինք վերցը-
նելով՝ սրտանց զԱստուած օգնութեան կան-
չեց ու իր խուցը քաշուեցաւ։

Եղիզային պզտի, կոկ ու մաքուր խուցն
ալ տանտիկնոջը կարգին վրայ էր. պատու-
հանը դէպ ի արեւելք կը նայէր, որուն դի-
մաց նստած երգելով կար կը կարէր. մէկ
կողմն ալ պզտիկ գրքարան մը կար՝ քանի
մը տօնական խաղալիքներով ու կաղանդ-
չէքներով զարդարած. մէկալ կողմն ալ իր
լաթերուն դարանը. միով բանիւ ամէն ունե-
ցածը այդ խցին մէջն էին, ուր որ ինչուան
այն ատեն բարեբաղդ կեանք մը անցուցեր

էր։ Նոյն ժամանակը տղան իր անկողնոյն մէջ խաղաղական անուշ քուն մը կը քաշէր, երկայն մազերը գեղեցիկ ու անմեղ երեսին վրայ ինջած, վարդագոյն շրթունքները կիսաբաց, մանարաիկ ու գիրուկ ձեռքերը վերմակին վրայ հանգչեցուցած, արևուն ճառագայթներուն նման անուշ ծիծաղ մը սփռուած էին գողարիկ դիմացը վրայ։

— Խե՜ղճ տղայ, հառաչեց Ելիզա, ծախե՜ր են զքեզ… բայց քու մայրդ գիտէ թէ ինչպէս պիտի ազատէ զքեզ։

Եւ ոչ կաթիլ մը արցունք թափեց . . . այնպիսի տառապանաց մէջ մարդուս սիրտը ամուլ է արտասուաց, այլ արեան գետեր կը վազցընէ։ Կապարեայ գրիչ մը առաւ ու շուտ մը հետևեալ տոմսակը գրեց.

« Ո՛վ տիրուհիս, ո՛վ սիրելի տանտիկինս, մի՛ զիս ապերախտ կարծեր ու անգութ դատապարտել մի՛ կարեր վրաս։ Այս իրիկուն ինչ որ խօսեցաք հրամանքդ ու իմ տէրս՝ բոլորն ալ լսեցի. ես իմ տղաս ազատել կը ջանամ, յուսամ որ զիս չէք մեղադրեր։ Աստուած զձեզ օրհնէ ու ձեր մեզի բրած աղէկութեանցը փոխարէնը հատուցանէ»։

Ելիզա

Տուփ մը ծալլեց թուղթը, հասցէն ալ գրեց. ետքը դարանէն աղուն քանի մը հագուստներ հանեց ու թաշկինակի մը մէջ պըլլած՝ ամուր մը գօտիին կապեց։ Այնչափ մեծ էր իր մայրենի գութը, որ այն տագնապին ու վախին մէջ ալ՝ իր աղուն համար քանի մը խաղալիք չմոռցաւ առնելու, թըղթէ շինած գունաւոր թութակ մ'ալ դուրս թողուց, որ աղան արթնցածին պէս ձեռքը տայ՝ որ խաղայ։ Շատ աշխատեցաւ որ աղան իր խաղաղ քնէն արթնցընէ. բայց վերջը վերջը աչուըները բացաւ, մայրն ալ թութակը ձեռքը տուաւ ու ինքը ճամբայ ելլելու պատրաստութիւն սկսաւ տեսնել։

— Ո՞ւր պիտի երթանք, մայրիկ, հարցուց աղան, տեսնելով որ մայրը արտորնոք զինքը կը հագուեցընէր. մօրը տխուր ու այլայլած կերպէն՝ կարծես թէ աղան ալ հասկըցաւ թէ արտաքոյ կարգի բան մը եղած պիտի ըլլայ։

— Ձայն մի՛ հաներ, Հենրիկս, կամացուկ խօսէ, պատասխանեց մայրը, հիմայ ձայներնիս կը լսեն։ Անպիտան մարդ մը պիտի գայ ու իմ Հենրիկս քովէս պիտի առնէ ու մութ ու գէշ տեղ մը պիտի տանի. բայց մայրդ զքեզ թող պիտի չտայ.

Հիմայ կեցիր, այս գլխարկս դնեմ, Թիկնոցս ալ կռնակս առնում՝ մէկէն քեզի հետ կը փախչինք, որպէս զի զքեզ այն անպիտան մարդուն ձեռքէն ազատեմ։

Այսպէս ըսելով՝ մայրը տղուն պարզ հագուստը կոճկեց ու զինքը գիրկն առաւ, ապըսպրելով որ ձայն չհանէ, և զգուշութեամբ գաւթին դռնէն դուրս ելաւ։ Ցըրտին ու աստեղազարդ գեղեցիկ գիշեր մըն էր, և հիւսիսային մեղմիկ քամիէն՝ պարտիզի ծառերուն քաղցրաձայն սօսաւիւնը կարծես թէ փախչողներուն ոտնաձայնը խափանել կ'ուզէր, որպէս զի փախուստնին չյայտնուի. խեղճ մայրը ցփսեայ վերարկուին մէջ լաւ մը պլլեր էր տղան՝ որ չմսի, ան ալ վախէն երկու ձեռուըներով մօրը վիզը պլլուեր էր։

Գաւթին մէկ անկիւնը ծեր շուն մը պառկեր էր որ գիշերը տանը պահապանութիւն կ'ընէր. զասոնք տեսածին պէս սկսաւ խորէն մռմռալ, բայց Եղիզան փաղաքշանքով մը անունը տալով՝ քովը կանչեց. կենդանին ալ տեսնելով որ իր հին բարեկամն է՝ սկսաւ պոչը շարժել, ու ետևէն երթալ. կարծես թէ խիստ զգածուեր էր այնպիսի գիշերային յանկարծական ճանապարհորդու-

թիւնը սեւեռելով. իբր թէ կը հասկընար այս բանիս անյարմարութիւնը, վասն զի երբեմն ճամբուն վրայ կանգ կ՚առնէր, կը կենար, մինչդեռ Եղիզան աճապարելով կը փախչէր, մէյ մը դէպ ի ետուն կը նայէր ու մէյ մըն ալ դէպ ի Եղիզան. բայց վերջը վերջը սկսաւ ինքն ալ Եղիզային ետեւէն երթալ: Քանի մը վայրկենէն աղբար Թովմասին տնակը հասան. Եղիզան կամացուկ մը տնակին պատուհանին ապակիներուն զարկաւ:

Միաբանական աղօթքը երգերուն պատճառաւ շատ երկընցեր էր. բայց ժողովականները ցրուելէն վերջն ալ՝ աղբար Թովմասը դեռ ինքնիրեն նոյն երգերը կը շարունակէր, անոր համար թէպէտ և կէս գիշերն անցեր էր, դեռ ինքը ու իր կնիկը արթուն էին:

— Տէ՛ր Աստուած, ո՞վ է, պոռաց Քըլօյէն նստած տեղէն վեր ցատքելով. ու շուտ մը վարագոյրը քաշաւ: Տէր ողորմեա, կարծեմ թէ Եղիզան է, ըսաւ: Թովմաս, շուտ հագուէ. ծեր Գրիւնոյ շունն ալ դուռը կը ճանկռտէ. ինչ եղեր է արդեօք. կայնէ՛ հիմայ կը՛ բանամ:

Ընելն ու բանալը մէկ եղաւ. անդիէն

Թովմասն ալ վազեց ճրագը բերաւ ու անոր լուսովը տագնապեալ խեղճ փախստականին դէմքին և աչուըներուն այլայլութիւնը տե-սան։

— Տէ՛ր Աստուած, ի՛նչպէս զիս վախ-ցուցիր Եղիզա, կանչեց Քլոյէ, հիւա՞նդ ես, ի՞նչ ունիս։

— Տղաս առած կը փախչիմ, բարեկամք, կը փախչիմ, պատասխանեց Եղիզա, տէրս զինքը ծախեց։

— Զինքը ծախե՞ց, գոչեցին երկուքն ալ մէկտեղ, շփոթելով ու ձեռուընին դէպ ի երկինք վերցընելով։

— Հրամեր ես ծախեց, կրկնեց Եղիզա դողդոջուն ձայնով մը։ Տիրուհւոյս սենեկին քովի խցիկը պահուըտեր էի այս իրիկուն, և լսեցի որ տէրս կը պատմէր թէ ինչպէս իմ Հէնրիկս ու զքեզ, աղբար Թովմաս, գերեվաճառի մը ծախեր է. ու վաղը առտու միտք ունի անէն հեռանալու՝ որ գերեվա-ճառին գալն ու զքեզ տանիլը չտեսնէ։

Թովմաս աս լսելուն պէս փայտ կարե-ցաւ, ու ձեռուըները վեր վերցուց ու խո-շոր աչուըները բացած՝ ինչպէս դէպի երկինք նայիլ, իբր թէ աչքին դիմաց նոր երևոյթ մը բացուած ըլլար. ու երբոր Եղիզան խօս-

քը լըմընցուց՝ գլուխը ծռած՝ իր հին աթո-ռին վրայ անշարժ ինկաւ մնաց։

— Տէ՛ր Աստուած, գթա, ողորմէ մեզի, հառաչեց Քլոյէ. իրա՞ւ է Ելիզա այդ ըսած-ներդ, էրիկս ի՞նչ ըրաւ որ տէրը զինքը պի-տի ծախէ։

— Ինքը բան մ՚ալ ըրած չէ, և ոչ տէ-րըս կ՚ուզէր զինքը ծախել, պատասխանեց Ելիզա. տիկինն ալ շատ դէմ կեցաւ իրեն, աղաչեց, պաղատեց. ես ականջովս լսեցի. բայց տէրս կը պնդէր թէ բանը լմընցած է, ալ ճար չկայ, պարտքի տակ է. և թէ որ Թօմմասը չծախէ՝ հարկ է որ ամէն տե-ղէն և ամէն ունեցածէն զրկուի, ու այն մարդուն պարտքը վճարէ։ Տէրս կ՚ըսէր թէ շատ կը ցաւի այս բանիս վրայ. իսկ տի-կինս հրեշտակի պէս կնիկ մ՚է, թէ որ ա-նիկայ քրիստոնեայ չէ, չեմ գիտեր թէ ալ ով կրնայ ըլլալ։ Կը ցաւիմ քովէն այս կերպով փախչելուս վրայ, բայց ինչ ընեմ. ինքը չէ՞ր որ կ՚ըսէր թէ հոգի մը աւելի կ՚արժէ քան թէ բոլոր աշխարհքս։ Այս պզտիկ տղան ալ հոգի ունի. ես թէ որ հոգ չընեմ՝ ո՞վ գիտէ ինչ կ՚ըլլայ այս հոգ-ւոյն. ես անպարտ եմ ամենևին. բայց թէ որ յանցանք է ըրածս, Տէր Աստուած, դուն

թողութիւն տուր ինծի, վասն զի ա՛լ ուրիշ ճար չմնաց։

— Խեղճ ծերուկ, դու ալ ինչո՞ւ չես փախչիր երթար, ըսաւ Քլոյէ, պիտի կենաս ըսպասե՞ս որ զքեզ ալ գետին անդիի կողմը տանին, ուր որ սեւերը չարաչար աշխատանքի տակ կը մեռնին, ուր անօթութենէ հոգինին բերաննին կու գայ... Ես հազար անգամ կ՚ընտրեմ մեռնիլ, քան թէ հոն երթալ. գնա՛ դուն ալ Ելիզային հետ, անցագիրդ ունիս, ուր որ կ՚ուզես կրնաս երթալ։ Ելիր ուրեմն զքեզ տեսնեմ, ես ալ քու բաներդ հիմայ կը պատրաստեմ։

Թովմաս գլուխը քիչ մը վեր վերցուց, ու աչուըները տխուր կերպով մը ասդին անդին պտըտցնելով ըսաւ. — Չէ, ես չեմ ուզեր տեղէս շարժիլ. թող Ելիզան երթայ, ինքը իրաւունք ունի, և ոչ ալ իրեն փախչիլը կը մեղադրեմ. բայց դու ալ լսեցիր պատմածները մեր տիրոջը կարօտութեանը վրայօք. թող ես միայն ծախուիմ, ու բոլոր մէկալ գերիները ծախու չելլեն. միթէ այնչափ արիութիւն չունիմ՝ որ այս դժբաղդութեանս ալ համբերեմ։

Այս ըսելու ատենը այն ամէն բանի համբերող ու ամենայն նեղութեանց մէջ

միշտ Աստուծոյ ապաւինող անյուսահատ լայն սրտէն՝ խորունկ հառաչանք մը ելաւ ու աչուըները արցունքով լեցուեցան։...

— Իմ տէրս, կրկնեց, միշտ իմ պար-տուցս մէջ՝ զիս հաւատարիմ գտած է, աս-կէց վերջն ալ միշտ այնպէս ճիշդ պիտի գտնէ։ Իր իմ վրաս ունեցած վստահու-թիւնները չեմ զեղծած, ոչ երբեք իրեն կամաց դէմ ձեռքի անցագրով սակէ հոն գնացեր եմ, և ոչ ալ կ'երթամ. լաւագոյն է որ ինքզինքս զոհեմ ու զուրիշներն ա-զատեմ. մեր տէրը պէտք չէ անգութ համա-րելով վար զարնել, շիտակը աղէկ մարդ է. իմ ծախուելէս վերջը՝ հարկաւ, Քլոյէ, քու ու տղոցդ վրայ հոգ կ'ունենայ, երեւէ չի ձգեր։

Դարձուց մէյ մ'ալ աչքը աղքատին ան-կողնոյն վրայ, ուր որդիքը անուշ քուն կ'ըլ-լային, ու սիրտը ելաւ. աթոռին կռթնեցաւ ու լայն ձեռուըներովը երեսը գոցեց որ չը-տեսնէ. ու մէկ կողմանէ ալ սրտին խորէն հառաչանքներ կ'արձակէր, և արտասուաց խոշոր խոշոր կաթիլներ գետին կը թափէին այն բարեսրտութեան ու առաքինութեան նախատիպ երեսէն։...

Այնպիսի արտասուք, ո՜վ ընթերցող հայր,

որ թերեւս դու առջինեկ զաւկիդ դագաղին վրայ թափեր ես, այնպիսի ցաւալի հառաչանքներ, ով ընթերցող մայր, ձեր որդեկին վրայ ըրած ողբերնէդ վար չէին մնար. վասն զի Թովմաս ալ ու դուք ալ հաւասարապէս մարդ էք, անոր սիրտն ալ՝ ձեր սրտին պէս զգայուն է, թերեւս անորը քիչ մ'ալ աւելի. մարդկութեան վիճակներուդ մէջ՝ ձեր հագուստներովը միայն կը զանազանուիք Թովմասէն ու անոր նմաններէն, բայց մեծամեծ թշուառութիւնները, կենաց սրտատոչոր վերջերը՝ ամենուն համար նոյն դառնութիւնն ունին։

— Երէկ, վրայ բերաւ Եղիզան՝ լալով դռնէն դուրս ելլելու ատենը, էրիկս տեսայ, բայց մաքէս ալ չէր անցներ այս գլխիս գալիքը։ Զինքն ալ այնչափ նեղը խոթեր են՝ որ ինքն ալ միտքը դրած է փախչելու. կ'աղաչեմ որ զինքը գտնէք ու իմ փախուստս ըսէք իրեն. իմացուցէք ալ թէ ինչու համար փախայ. ըսէք իրեն որ ես Գանատա կ'անցնիմ։ Նաև մի մոռնաք ըսելու որ դեռ ես զինքը կը սիրեմ... և թէ որ աս աշխարհքիս մէջ մէյ մ'ալ զինքը չտեսնեմ...

Քիչ մը կանգ առաւ ու նորէն հեծեծանօք կրկնեց. — Ըսէք իրեն որ միշտ բարի

ըլլայ, որպէս զի երկինքը մէկզմէկ գըտնենք։...

Վերջը շունն ալ ներս առնել ու դուռն ալ վրայէն գոցել տուաւ, որ խեղճ կենդանին ետևէն չգայ, ու քանի մը սրտաշարժ խօսքեր արտասուալից աչօք իրարու զուրցելէն ետքը՝ մէկմէկէ բաժնուեցան։ Եղիզան նորէն տղան տեղաւորեց, որ ահուդողի մէջ էր, ու լռիկ մնջիկ անկէն դուրս ելաւ։

## ԳԼՈՒԽ Զ.

### Եղիզային փախուստը կ'իմացուի։

Պարոն Շէլպին և իր կինը երկայն ու տաք տաք խօսակցութենէն՝ մէկէն քուն չեղան. անոր համար ալ առաւօտը սովորականէն քիչ մը ուշ ելան։

— Ի՞նչ կ'ընէ Եղիզան, ըսաւ Շէլպիին խաթունը, քանի մը անգամ սենեկին զանգակը քաշելէն վերջը։

Իսկ էրիկը հայլիին դիմացը անցած՝ ածիլուելու կը պատրաստուէր. մէյ մ'ալ թըխագոյն մանկահասակ ծառայ մը ներս մըտաւ. տաք ջուրին ամանն ալ ձեռքը։

— Անդրէաս, ըսաւ խաթունը, գնա Ելիզային դուռը զարկ, ու ըսէ իրեն որ իրեք անգամ է զանգակը կը զարնեմ, ինչու չի գար...։ Խեղճ աղջիկ, ըսաւ ցած ձայնով մը ու հառաչեց։

Անդրէասը գնաց, ու շուտ մը այլայլած ետ դարձաւ.

— Ո՛հ, խաթուն, ըսաւ, Ելիզային դարանները բաց, ամէն բան ասդին անդին ձգձգած, կարծեմ թէ ելեր փախեր է։

Այս խօսքը կայծակի մը պէս Շէլպիին ու խաթունին սիրտը զարկաւ։

— Կասկած առնելով փախած պիտի ըլլայ, ըսաւ էրիկը։

— Օրհնեա՜լ է Աստուած, հառաչեց խաթունը. Աստուած տայ՝ որ ըսածդ իրաւ ըլլար։

— Խե՛նդ ես, գիտե՞ս զուրցածդ, պոռաց Շէլպի. ահաւասիկ նոր փորձանք մ'ալ գըլխուս բացուեցաւ. Հէլի տղուն ծախուելուն դժուարիլը տեսնելով՝ հիմայ պիտի ըսէ թէ ես Ելիզային հետ խօսքը մէկ ըրեր եմ ու փախուցեր եմ։ Այս բանս իմ պատուոյս կը դպչի, ըսաւ, ու արտորալով խցէն դուրս ելաւ։

Մէյ մ'ալ տեսնես բոլոր տունը մեծ շփո-

թութիւն մ՚էր ինկաւ. մէկը կը պոռար, մէկալը կը կանչէր, մէկը դուռ մը կը բանար, մէկալը դուռ մը կը գոցէր. բոլոր գերինները մեծ ու պզտիկ՝ տանը մէջ վեր վար Ելիզան կը փնտռէին։ Միայն խեղճ Քլոյէն որ ամէն բանին տեղեակ էր՝ լռիկ կեցած էր. ինքը որ գրեթէ միշտ ուրախ կ՚ըլլար, նոյն օրը տխուր ամպ մը երեսը պատեր էր, և իբր թէ տանը իրարանցումն ալ չէր լսեր. ու խոհակերոցին մէջ կամաց կամաց տիրոջը նախաճաշիկը կը պատրաստէր։

Եւ ահա անդին Հէլի տեսնուեցաւ. շուտ մը տասուերկու սեւուկներ ագռաւի պէս տա. նը գաւթին վանդակներէն մագլցելով՝ դուրս ելան, ու դիմացր վազեցին որ մէկմէկէ առաջ այս չարագուշակ լուրը տան իրեն։

— Ինչ որ կ՚ուզէք կու տամ, հիմայ սա մարդը պիտի խենդընայ, կ՚ըսէր մէկը։

— Արդեօք ի՞նչպէս պիտի հայհոյէ, վըրայ բերաւ ուրիշ մը։

— Անոր տարակոյս չկայ, կրկնեց պզտի աղջիկ մը, երէկ ես իրենց կերակուրին ժամանակը մառանը պահուըտեր էի ու խօսածնին բառ առ բառ բոլորն ալ լսեցի։

Երբոր Հէլի ներս մտաւ՝ տնուընները կօշկաւորած ու մտրակաւորած՝ ամէնքը վը-

րան Թափեցան այս դժբաղդ լուրը տալու իրեն։ Անոր կերք ելերը, հայհոյերը, և այս սեւուկներուն ծիծաղը՝ կատարեալ կատակերգութիւն մըն էր. չորս կողմը առին, մէկը կը ցաթկէր, մէկալը դիմացն անցած ձեւերը կ'ընէր, բայց այնչափ հեռուն կեցած որ ձեռքի խարազանը իրենց չհասնի. մէյ մ'ալ յանկարծ բարձրաձայն ծիծաղելով ձը-գեցին փախան ու գաւթին դիմացի մարգա-գետինը փռուեցան, և իրենց ձեւերովը ու ծի-ծաղովը իրենց սրտին խնդումը կը ցուցը-նէին։

— Ա՜խ, սատանայի ձագեր, կ'ըսէր Հէլլի քթին տակէն մռմռալով, ո՞ւր էր թէ մէյ մը ձեռքս անցնէիք։

— Աղէկ որ ձեռքդ չենք, պատասխանեց Անդրէասը յաղթական կերպով մը, ու ետին անցած՝ անոր շարժուածքը ձեւացընելով կը ծաղրէր զինքը, միանգամայն նայելով որ խարազանը իրեն չհասնի։

Հէլլի տաքցած՝ կոպտաբար սրահին դռնէն ներս մտաւ, ու — Այս ի՞նչ նոր բան է, պարոն Շէլպի, ըսաւ բարկանալով, անշուշտ աղջիկը տղան առեր փախեր է։

— Պարոն Հէլլի, չե՞ս տեսներ որ կինս հոս ներկայ է, ըսաւ Շէլպի։

— Թողութիւն կ'ընես, խաթուն, վրայ բերաւ Հէլլի, վեր ի վերոյ ու ակամայ և խոժոռ դիմօք մը ծռելով... բայց շատ կարգէ դուրս բան է լսածս, իրա՞ւ է։

— Պարոն, պատասխանեց Շէլպի, ամէն բանէ առաջ՝ պէտք է որ մեր մարդավարութեան պարտքերնիս կատարենք։.... Անդրէաս, եկուր սա պարոնին գլխարկն ու խարազանը ձեռքէն ա՛ռ, աթոռ մ'ալ բեր՝ որ հրամէ նստի։... Ցիրուի, իմ ալ շատ դժուարս բերաւ այս դիպուածը. անշուշտ մայրը կասկած մ'առեր է, կամ խօսակցութիննիս գաղտուկ լսեր է, ու այս գիշեր տղան առած՝ ձգեր փախեր է։

— Ես քու անկեղծութեանդ վրայ վստահացեր էի, պատասխանեց Հէլլի կոպիտ կերպով մը։

— Ի՞նչ ըսել կ'ուզես, պարոն, կրկնեց Շէլպի. իմ պատուոյս դպչողին հետ՝ մէկ կերպով միայն կը խօսիմ, գիտե՞ս։

Այս սպառնալիքին վրայ՝ Հէլլի մէկէն կերպը փոխեց, և հանդարտութեամբ ու անուշութեամբ մը զանգատիլ սկսաւ եղածին վրայ։

— Պարոն Հէլլի, պատասխանեց Շէլպի, թէ որ դու իրաւամբ նեղանալու առիթ ու-

նեցած չըլլայիր՝ այդ կոշտ ու կոպիտ կերպիդ համար, քեզի տունս և ոչ ոտք կոխել կու տայի. գիտնաս որ ես չեմ կրնար ներել անոր՝ որ իմ հաւատարմութեանս վրայ կը տարակուսի. անոր համար ինծի պարտք կը համարիմ՝ ամենայն կերպով օգնելու քեզի՝ որ քու ստացուածքդ գտնես. ահա քեզի իմ ձիերս, ծառաներս, ուր որ կ'ուզես՝ գնա փնտռէ գտիր։

Վերջը Շէլպի մէկէն առջի ցուրտ ու իշխանական կերպը փոխելով՝ իր սովորական անուշ եղանակաւ ըսաւ. — Պ. Հէլի, հիմայ նախաճաշիկնիս ընենք, վերջը ճար մը կը մտածենք։

Խաթունը ոտք ելաւ, ու իր գբաղմունքները պատճառելով՝ խցէն դուրս ելաւ, ու իր տեղը խառնածին աղախին մը զրկեց որ խահուէն հրամցընէ։

— Այս քու խաթունդ կ'երևայ թէ ինծմէ չ'ախորժիր, ըսաւ Հէլի՝ բռնի ընտանութիւն մը ցուցընելով։

— Իմ կնկանս վրայ այսպիսի խօսքեր չեմ ուզեր լսել, պատասխանեց Շէլպի նեղսրտութեամբ։

— Թողութիւն ըրէ, պարոն, կատակի համար ըսի, կրկնեց Հէլի կէս ծիծաղով մը։

— Կատակներուն մէջ անհամներ ալ կը գտնուին, ինչպէս է նաև սա քու ըրածդ, վրայ բերաւ Շէլպի։

— Ի՜նչպէս փոխուեր է սա մարդս, ըսաւ ինքնիրեն Հէլի. պաշտնագիրներուն իր ստո-րագրութիւնը դնելէն վերջը՝ ուրիշ մարդ եղեր է։

Մեծ տէրութեան մը մէջ այնչափ մեծ ազդեցութիւն չ'ըներ առաջին պաշտօնէի մը ինկնալը, որչափ որ Թովմասին ծախուիլը բոլոր իր ծառայակցացը վրայ տպաւորու-թիւն ըրաւ։ Ամէնքը այս բանիս վրայ կը խօսէին. տունը, արտը ուրիշ խօսք չկար բայց եթէ Թովմասին ծախուիլը, ու անկէ զանազան հետևանքներ կը հանէին։ Ասոր վրայ աւելցուր նաև Ելիզային փախուստն ալ, որ ամենուն վրայ մեծ տպաւորութիւն ըրեր էր. վասն զի այն տունը՝ գերւոյ փա-խուստը ոչ երբեք լսուած բան էր։

Սեւ Սամուէլը, որ ուրիշներէն աւելի կարգէ դուրս թուխ գոյնին համար՝ վրան այս անունս ժառանգեր էր, շատ խորունկ անդրադարձութիւններ կ'ընէր այս դիպուա-ծիս վրայ. — Գէշ հետևանքներու նախա-գուշակութիւն մ'է այս բանս, ըսաւ վճռա-բար, հագուստը կոճկելով։ Բայց... կրկնեց

ինքնիրեն, ա՛լ հիմայ Թուլմաս չկայ, Թուլմասն ինկաւ, ուրիշի տեղ բացուեցաւ... Ես ինչո՞ւ իրեն տեղը պիտի չմտնեմ։ Թուլմասը բոլոր մեր կալուածներուն մէջ ձիով կը պտըտէր, մաքուր կօշիկներ կը հագնէր, անցագիրն[1] ալ միշտ գրպանն էր. մէկ խօսքով պարոնի կեանք մը կ՚անցընէր. Ես ինչո՞ւ այդպէս պիտի չըլլամ... արդեօք տեղը կրնա՞մ անցնիլ։

— Է՛յ, շուտ ըրէ, Սամուէլ, պոռաց անդիէն Անդրէասը, տէրերնուս հրամանն է, գնա շուտ ձիերը պատրաստէ։

— Ի՞նչ նոր բան կայ։

— Ի՞նչ բան պիտի ըլլայ... դեռ չիմացա՞ր... այս գիշեր Եղիզան ձագը առած թողեր փախեր է։

— Դուն գիս ինչի՞ տեղ դրեր ես, պատասխանեց Սամուէլ արհամարհելով մը, ես քեզնէ առաջ իմացայ, հոգ մ՚ըներ։

— Աղէկ ուրեմն, կրկնեց Անդրէաս, հիմայ մեր տիրոջը հրամանն այս է՝ որ երթաս ձիերը պատրաստես. վասն զի դու և

1. Երբոր գերիները արեւը մտնելէն վերջը քաղաքէն դուրս գտնուին, և կամ տէրերնին զիրենք հեռու տեղ մը ղրկէ՝ պէտք է որ ձեռքերնին անցագիր մը ունենան. չունեցողը ծանր պատժի տակ կ՚իյնայ։

ես Հէլլին հետ Ելիզան փնտռելու պիտի ելլենք։

— Աղէկ, աղէկ, պատասխանեց Սամուէլ, հիմայ սկսան իմ յարգս ճանչնալ. թէ որ ես անիկայ չըռնեմ՝ ինչ կ՚ուզես կու տամ. տէրս ալ թող տեսնէ՝ որ ես ալ բանի կու գամ եղեր։

— Բայց մտածելու բան մ՚ալ կայ, կամացուկ մը ըսաւ Անդրէասը, տիկինը չուզեր որ Ելիզան բռնենք... կ՚իմանա՞ս... ընելիքնիս աղէկ մտածելու ենք։

— Է՜յ, պատասխանեց Սամուէլ՝ աչուըները պատատելով, դու ինչէ՞ն գիտես։

— Ես ականջովս լսեցի այս առտու տիրոջս ածիլուելու համար տաք ջուրը տանելուս ատենը։ Խաթունը զիս ղրկեց որ երթամ Ելիզան կանչեմ որ գայ զինքն հագուեցընէ. երբոր դարձայ ու ըսի՝ որ թըռչունը վանդակէն փախեր է, մէկէն՝ փառք տուաւ Աստուծոյ. իսկ տէրս՝ կարծես թէ խելքը թռուց. խենդըցե՞ր ես, ըսաւ կնկանը ։ Բայց խաթունը անոր խօսք կրնայ հասկըցնել. ուստի աւելի աղէկ է որ խաթունին կողմը բռնենք։

Այս խօսակցութեանս ժամանակ Սեւ Սամուէլը տարակուսելով մը գլուխը կը քերէր,

և թէպէտ զարմանալի խելք մը չունէր, սակայն ամէն աշխարհի, ամէն երկրի այս վիճակի մարդկանց աղէկ յատկութիւններէն զուրկ չէր. և շատ լաւ գիտէր թէ հացին որ կողմը կարագ քսուած է։

— Ա՛ գիտէ... ճշմարիտ է արդեօք ըսածդ, այս աշխարհիս վրայ իրաւ բան չի կայ։ — Կարծես թէ աս ըսելով կ'ուզէր ցցնել թէ ինքը խել մը այլ և այլ աշխարհներ քալեր փորձեր է։ — Ես ընդհակառակն կը կարծեմ՝ կրկնեց մտածելով մը՝ որ խաթունը բոլոր աշխարհք տակն ու վրայ կ'ընէ որ Եղիզան գանէ։

— Կընայ ըլլալ... բայց չե՞ս հասկընար խեղճ սեւուկ, որ արեւուն լուսոյն պէս յայտնի բան է. խաթունը չուզեր՝ որ Հէլի Եղիզային աղան ձեռքէն առնու, կը հասկընա՞ս... բոլոր բանն այս է։

— Կը հասկընամ, կը հասկընամ, ըսաւ Սեւ Սամուէլը։

— Ուրիշ բաներ ալ քեզի ըսելիք ունիմ... բայց հիմայ խօսքերնիս շատ երկընցաւ. առաջ գնա դուն ձիերը պատրաստէ, ու շուտ ըրէ...։ Տանտիկինը զքեզ կը կանչէ։

Սեւ Սամուէլը շուտ մը գնաց, ու քիչ

տանմէն երկու ձիերը խաղցնելով առաւ ե-
կաւ. կորիճ ձիավարի մը պէս դեռ ձին
չկեցած՝ վար իջաւ ու Հէլլին ձիուն քովը
տարաւ կապելու. իսկ Հէլլի ձին խրտան
ըլլալով՝ սկսաւ կից նետել, ու քիչ մնաց
որ չուանը փրցընէ։

— Շա՜տ բան, ըսաւ Սամուէլ, այս ձին
ինչ խրտան ընութիւն ունի եղեր. բայց ես
զինքը կը հանդարտեցրնեմ, ըսաւ ու սեւ
դէմքին վրայ չարութեան ծիծաղ մը ծաղե-
ցաւ։

Հոնտեղը փեկոնի մեծ ծառ մը կար, ա-
նոր խոզակներէն հատ մը առաւ Սամուէլ,
ու ձիուն քով մօտեցաւ, սկսաւ շոյել ու
գգուել որ վախը անցնի. ու թամբը շտկել
ձեւացրնելով՝ կամացուկ մը թամբին տակը
խոթեց այն սուր ծայրերով խոզակը, որ
ձիուն վրայ պզտի ծանրութիւն մ'ալ գար՝
ձին պիտի խայթուէր ու կատղեցրնէր։

— Ինչպէս կը խելօքնայ, ըսաւ ու աչ-
քին ծայրովը ասդին անդին նայեցաւ։

Այն միջոցին Շէլպին խաթունը պա-
տուհանին եկաւ ու Սամուէլին ձեռքով նշան
ըրաւ՝ որ մօտ գայ. Սամուէլ շուտ մը գի-
մացը վազեց։

— Ի՞նչ կ'ընես հոս, հարցուց խաթունը

Սամուէլին, ի՞նչու կ՚ուշանաս. Անդրէասը քեզի բան մը չըսա՞ւ որ շատ մը անէծ բան պատրաստանես։

— Օրհնած ըլլաս, պատասխանեց Սամուէլ. ձիերը անասանձ են, պէտք է զանոնք կառավարելը, դուրսը՝ դաշտը տարէք էր արձելու, Աստուած վկայ՝ որ ասկէ շատ հեռու է։

— Սամուէլ, քեզի քանի՜ անգամ ըսեր եմ որ Աստուծոյ անունը պարապ տեղը բերանդ մի՛ առներ. մեղք բան է, գիտե՞ս, Աստուած վկայ կանչելը։...

— Աստուած վկայ, խաթուն, որ մէյ մ՚ալ չեմ ըսեր, մոռցեր էի։

— Բայց կարծեմ ըսիր։...

— Ըսի՞ իրաւցընէ... Աստուած... ուշադրութիւն չըրի, միտքս ան չէր։

— Ասկէ վերջը պէտք է զգուշանաս։

— Հրամեր ես, շատ աղէկ։

— Հիմայ նայէ քեզի ի՞նչ կ՚ըսեմ։ Գ. Հէլլիին հետ կ՚երթաս, որպէս զի ճամբայ ցուցընես, ու իրեն հետ Միկաէլ Եղիզան փնտռես. աղէկ նայէ ձիերուն, դուն ալ գիտես որ ձիուն մէկիկին ոտքը անցեալ շաբաթ փտտուեցաւ, շատ չվազցնես։

Խաթունը այս վերջին խօսքը ցած ձայնով ու մասնաւոր դիտմամբ մ՚ըսաւ։

— Ա՜լ ինծի թող, խաթուն, ամէն բան, պատասխանեց Սամուէլ, ու աչքով նշան ըրաւ։ Աստուած վկայ... ո՛հ ինչպէս նորէն սխալեցայ, ըսաւ անանկ ծիծաղական կերպով մը՝ որ վերէն խաթունին ալ խնդալը չկրցաւ բռնել։

— Աղէկ աղէկ, կրկնեց Սամուէլ, ձիերը շատ կը հոգամ։ Վերջը տեսնալով Անդրէասը որ ծառին տակ ձիերուն մօտ գնացեր էր, վազեց քովը գնաց, ու — Չեմ զարմանար, ըսաւ, թէ որ օտարական պարոնը ձին նստելու ժամանակը՝ ձին քիչ մը վեր վեր ցատքէ. ձիերը երբեմն այսպիսի խաղեր կը սիրեն, դուն ալ գիտես. այս ըսաւ ու կամացուկ մը ձիուն թամբին տակը կրածը ցրցուց։

— Հասկըցայ, հասկըցայ, ըսաւ Անդրէաս։

— Առջի ըսածդ իրաւ է եղեր, վրայ բերաւ Սամուէլ, խաթունը չ՚ուզեր որ փութանք. պէտք է ուզածն ընել։ Քակէ սա ձիերը, թող որ դիմացի անտառը փախչին. Ու կարծեմ թէ պարոնը շատ պիտի չկարենայ ճամբայ ելլալ։

Անդրէաս սկսաւ ծիծաղիլ։

— Կրկնեց Սամուէլ, երբոր Հէլի հիմայ գայ ու իր ձիուն վրայ ցատքելու ըլլայ՝ ձին Թամբին տակի խողակին պատճառաւ վեր վեր պիտի նետուի, թէ որ Հէլին վար ձգէ ու փախչի՝ մենք ալ անոր ետեւէն մեր ձիերը թողած՝ իրեն օգնութեան կը վազենք. մէյ մը որ անոնք դաշտը մտնեն, ալ նորէն զանոնք բռնելը դժուար կ'ըլլայ, անով Հէլին ալ ճամբայ ելլելու կ'ուշանայ։

Այն միջոցին Հէլին երեւցաւ. անուշ խաղուէն ծծելով՝ քիչ մը ինքն ալ անուշցած կ'երեւար, սկսաւ սա երկուքին հետ կատակով խօսիլ ու ծիծաղիլ։ Անդրէաս ու Սամուէլը արմաւենիի տերեւէ գլխարկներ շինեցին ու գլուխնին դրին. վերջը վազեցին իւրաքանչիւրն իրենց ձիուն քով, որպէս զի վերջէն Հէլիին օգնեն։

— Ծօ՛ տղաք շուտ ըրէք, պոռաց Հէլի, ժամանակնիս կարճ է։

— Վայրկեան մ'ալ չենք կորսնցըներ, պատասխանեց Սամուէլ՝ ձիուն սանձը Հէլիին ձեռքը տալով ու ասպանդակն ալ շըլակելով, մինչդեռ անդին Անդրէասը մէկալ ձիերը կը քակէր։

Հազիւ թէ Հէլի ձիուն վրայ հեծաւ չհեծաւ՝ ձին խողակէն խաղալով՝ վեր վեր

ցատքեց և զինքը տասը քայլ անդին նե-
տեց: Մեկէն Սամուէլ վրայ հասաւ պոռա-
լով, որպէս զի սանձը բռնէ: Ձին անոր
այլանդակ գլխարկէն աւելի խրտչելով զինքն
ալ գետին պառկեցուց, ու խրխնջելով կա-
տաղաբար սկսաւ վազվզել դիմացի դաշտին
մէջ: Անդին Անդրէասն ալ՝ ինչպէս որ խօսք
դրեր էին՝ իրեն ձիերը թողուց. անոնք ալ
գլուխնին առին շիտակ Հէլլինի ձիուն ետեւէն
վազեցին:

Մեծ շփոթութիւն մ'էր փրթաւ: Անդրէասն
ու Սամուէլը կանչուըռտելով աստին անդին
կը վազէին, շները վեր վար կը հաչէին,
բազմութիւն գերեաց, աղայ ու ծեր դուրս
թափեցան, սկսան պոռալ կանչել ուրախու-
թեամբ ծափ զարնել:

Հէլլին ձիուն աշխուժութիւնը Անդրէասին
ու Սամուէլին դիտմամբը շատ յարմար եկաւ:
Դաշտը մղոն մը երկայն և մղոն մը լայն
էր, անկէ անդին անտառ էր. ձին երբեմն
կը վազվզէր, երբեմն ալ հանդարտ հան-
դարտ կը քալէր. բայց երբոր կը մօտենային
որ զինքը բռնեն, կէց մը կը նետէր ու
խրխնջելով կը փախչէր անտառը կը մտնէր:
Սամուէլ ամէն ջանք կ'ընէր որ ձիերը շատ
չբռնուին ու տանին վաստըկին. երբոր կը

տեսնէր որ ձիերէն մէկը բռնուելու վտանգի մէջ ինկեր է՝ սուր ձայնով մը — Ձեզ ատենեմ, ձեզ ատենեմ, ծօ՛ բռնեցէք, ծօ՛ բռնեցէք, կը պոռար, ու վրանին կը վազէր. այս ձայնէն և իր գլխարկէն ձիերը աւելի կը խրտչէին ու հեծուորները կը փախչէին:

Իսկ Հէլիի սադնապը ալ կրնայ պատմել, մէյմը առջին կը վազէր, մէյմը անդին, կը հայհոյէր, կը պոռար, ոտուրները գետին կը զարնէր: Պ. Տէլպին ալ վերէն պարապ տեղը կ'աշխատէր, ան ըրէք ան ըրէք կը հրամայէր. խաժուժն ալ իր խեցին պատուհանը կեցած՝ քիչ շատ այս շփոթութեան պատճառը մեկնաբերելով՝ ծիծաղելէն կը մարէր:

Վերջապէս կէսօրուան մօտ՝ Սամուէլն երեւցաւ յաղթանակաւ իր ձիուն վրայ հեծած, Հէլիին ձիուն ալ սանձէն բռնած. Խեղճ կենդանին արիւն քրտինք մտեր էր, և աչուրներուն կրակէն ու քթէն դուրս տուած դողդողէն կ'երեւար թէ դեռ կատաղութիւնն իջած չէ:

— Բռնուեցաւ ձին, պոռաց հեռուանց Սամուէլ յաղթական կերպով մը, թէ որ ես չըլլայի՝ անոնք բան մ'ալ չէին կրնար ընել. ես բռնեցի:

— Դո՞ւ էիր հա, ըսաւ Հէլլի քթին տակէն մռմռալով. մանաւանդ թէ դու չըլլայիր՝ այս բանս չէր հանդիպեր։

— Աստուած վկայ, պարոն, պատասխանեց Սամուէլ ցաւելով մը, մինչև հիմայ ետևնէն ընկնողն ես էի. չե՞ս տեսներ արիւն քրտինք մտեր եմ։

— Գնա գնա բանդ, ինծի երեք ժամ քու խենդութիւններովդ կորսնցընել տուիր. հիմայ շուտ ճամբայ ելլենք, ա՛լ կատակը մէկդի թող։

— Բայց, պարոն, վրայ բերաւ Սամուէլ, հրամանքդ ձիերն ալ զմեզ ալ սպաննե՞լ կ'ուզես. հոգինիս բերաննիս եկաւ, յոգներ ենք. ձիերը քրտնքի մէջ կը լողան. կէսօրուընէ առաջ անկարելի է ճամբայ ելլելը. ձիդ դարմանուելու կարօտութիւն ունի, տե՛ս վրան որչափ տիղմ կայ. իմ ձիս ալ կը կաղայ, խաթունը չուզեր որ խեղճ ձին շատ չարչարուի։ Մէկալ կողմանէ ալ հանգիստ կեցիր, պարոն, վտանգ չկայ որ Ելիզան ձեռքերնէս փախցընենք. Աստուած վկայ կ'ըսեմ, որ ինծմէ գիտցիր՝ անիկայ զարմանալի շուտ քալող մը չէ։

Շէլպիին խաթունը որ մեծ հաճութեամբ մտիկ կ'ընէր պատուհանէն զաւթին մէջի

եղած այս խոստակցութիւնները՝ վար իջաւ, որպէս զի ինքն ալ խօսքի բռնելով Հէլըն ուշացընէ։ Քաղաքավարութեամբ մը ցաւակից եղաւ Հէլըին այն պժբաղդ դիպուածին վրայ, ու կէսօրուան կերակուրին ժամանակը մօտ է ըսելով բռնադատեց որ սեղանի ալ կենայ։ Քիչ մը պժուարեցաւ Հէլը այնչափ ուշանալուն վրայ, բայց վերջապէս ակամայ կամօք սեղանի ալ կենալու յանձն առաւ. ուստի Սամուէլն ալ աչուըները շփշփելով Անդրէասին հետ հանդարտ հանդարտ ձիերը ախոռ քաշեցին։ Ներս որ մտան, — Տեսա՞ր Անդրէաս, ըսաւ Սամուէլը. տեսա՞ր թէ ինչպէս մենք մեր վախճանին հասանք. այն անպիտանին ըրածները կատարեալ կատակերգութիւն մ'էր. այն ի՞նչ հայհոյանքներ էին, այն ի՞նչ կատաղաբար տուըները գետին զարնելներ էին, այն ի՞նչ ասդիս անդին վազելներ էին. քանի որ կը հայհոյէր, կը բարկանար, ես ալ մտքէս կ'ըսէի «Հայհոյէ, անպիտան դու. և սպասէ որ ձիդ բերեմ. բերանդ բա՛ց կեցիր հոն». տէր Աստուած, կարծես թէ դեռ աչքիս դիմացն է։

Անդրէասն ու Սամուէլը կռնակնին պատին տուած՝ խնտալէն կը մարէին։

— Դիտեցի՞ր, կրկնեց Սամուէլ, երբոր

ձին բերի, այն ի՞նչ կատարողի նայուածքով մը երկար նայեցաւ. Թէ որ կարելի ըլլար՝ Հաւատա որ զիս կը սպաննէր։... Բայց ան ատենը կը տեսնէր թէ ես ո՛վ եմ. Ես ալ դիմացը այնպէս հեզուկ կերպով չէի կե-նար նայիր։

— Տեսայ, տեսայ, կարծեմ մ՚ալ քեզմէ աւելի չէր կրնար ձեւացընել, պատասխանեց Անդրէաս։

— Իրաւ է. տեսա՞ր խանդութն ալ, վերը պատուհանին քով կեցած ինչպէս կը ծի-ծաղէր։

— Չէ, ես չտեսայ, աղջիկն անդին վա-զելով գլուխս այնպէս բռնկեր էր, որ և ոչ վեր նայիլը մաքէս անցաւ։

— Տես Անդրէաս, ծանրութեամբ մը վրայ բերաւ Սամուէլ՝ Հէլլիին ձին լուալով, ես դիտողութիւն ընելու վարժութիւն ըրած եմ, որ շատ հարկաւոր բան է, նայէ որ դուն ալ սորվիս քանի որ դեռ երիտասարդութիւնը վրադ ունիս։ Ամենքը դիտողութեամբ միայն առաջ կրնան գալ և անով մէկմէկէ կը տար-բերին։... Նայէ մէյ մը, այս առտու չի-մացա՞յ ես ինքնիրմէս քամիին ո՛ր կողմէն փչելը, խանութին ուզածը չմակաբերեցի՞ մէկէն, տանոց ամենեւին իրեն ինծի բան

մ՚ըսելուն, այս է ահա իմ ըսած դիտողութիւնս . Իրաւ ամէն մարդու հաւասար կարողութիւն տրուած չէ, բայց մարդ զանոնք մշակելով շատ առաջ կրնայ գալ։

— Թէ որ ես ալ քու դիտողութեանց օգնած ըլլայի սա տարւոյս, կարծեմ բանիկ այնչափ յաջող պիտի չըլլար, ըսաւ Անդրէաս։

— Անդրէաս, շատ աղէկ նշաններ կու տաս . վրադ մեծ համարմունք ունիմ, և չեմ ամչնար քու կարծեացդ ալ հետեւելու։ Ախորհքիս վրայ պէտք չէ զմայր արհամարհել, Անդրէաս . վասն զի շատ անգամ ամենէն խոնարհամիտ մարդն ալ իրմէ վարպետը կը գտնէ ։ Բայց հիմայ եկուր տուն դառնանք կերակուրնիս ուտենք, վասն զի մութը կոխելու ալ ըլլայ՝ Հէլը Եղիզայէն ետեւէն երթալէն ետ պիտի չկենայ։

# ԳԼՈՒԽ Է.

## Մօր մը արհաւիրքը։

Աղբար Թումմասին տնակէն բաժնուելէն ետքը, Եղիզային Թշուառ և անօգնական վիճակը անկարելի է երևակայել. երկանը վշտերն ու ցաւերը և գլխուն գալիք փորձանքները, իրեն ու իր խեղճ տղուն անըստոյգ ու վտանգաւոր վիճակը քանի որ կը մտածէր, սիրտը տակնուվրայ կ'ըլլար. մէկալ կողմանէ ալ քանի որ կը յիշէր իր մէկ հատիկ պզտիկուց ի վեր ճանչցած ու վարժած բունիկը, ուր անմեղ Թռչնոյ մը պէս մեծցեր էր՝ ճշմարիտ ու սիրելի բարեկամի մը հովանաւորութեանը տակը, և հիմայ ստիպուեր էր ձգելու, և անծանօթ ու վշտերով Թափառելու. ասոնք ամէնը յուսահատութեան մէջ կը ձգէին զինքը։ Աչքին առջևը կու գային իր անմեղ ընտանի առարկաները և քաղցր յիշատակները, իր ննջեան տեղը, այն ծառերը՝ որոնց տակը պզտիկուց կը խաղար, այն ծառազարդ ճեմելիքները՝ ուր իր երջանկութեանը ժամանակ՝ կարիճ երկանը Թևը մտած՝ իրիկունները ստէպ

պտըտելու կ՚ելլէր. մէկ խօսքով՝ այն պարզ ու ցուրտ գիշերուան մէջ ամէն դիմացի առարկաները կարծես թէ լեզու առած՝ իր սրտին հետ կը խօսէին, և իրեն փախուստը երեսը կը զարնէին։

Բայց մայրական սէրը ամէն բանի յաղթող է. իր տղուն մօտահաս վտանգը տեսնելով՝ այնպէս սիրտը արիացեր էր ու ինքիրմէ դուրս ելեր էր՝ որ այս ամէն բան և ինչ և իցէ նեղութիւն, վիշտ ու տառապանք աչքին չէին երևար։ Տղան բաւական մեծ ըլլալով՝ կրնար ոտքով մօրը հետ քալել, և ուրիշ անգամներ Եղիզան տղուն ձեռքէն բռնած կը տանէր. բայց այս անգամ տղան կորսնցընելու վախը սրտին այնպէս տիրեր էր՝ որ զանիկայ գիրկը սխմած՝ գուրգուրալով կը դողար, ու գետին չէր ուզեր դնել. մէկ կողմանէ ալ թռչնոյ պէս արագ արագ կը վազէր։

Ոտքին տակի սառած գետինը քալելու ժամանակ ճաթըռտելով ձայն կը հանէր. աս ձայնէն խեղճը վեր վեր կը ցատքէր ու կը դողար. տերևներու պզտի շարժմունք մը և որ և իցէ շուքի մը ծածանմունքը՝ արիւնը երակներուն մէջ կը պաղեցընէին. վախնալով որ չըլլայ թէ ետևէն հասնին՝ ու զինքը

քանեն, անոր համար երկթայօղ քաղաքածքը կ'երազէր։ Ինքն իր վրայ կը զարմանար այնչափ ույժ ունենալուն համար, և գրեթէ ազատ թռչնոյ մը պէս թեթև կ'երևար իրեն։ Որչափ վախը կը շատնար՝ այնչափ կարծես թէ գերբնական զօրութիւն մը վրան կու գար, ու ոտքը առաջ կը նետէր. մէկ գիւղէն ալ ուժգոյն ու ցամաքեալ շրթունքներէն խուլին հառաչանքներով այս ձայնը կ'արձակէր. — Տէր, օգնէ ինծի. Տէր, փրկէ զիս։

Ինչ կ'ընէիր դու ալ, ով որդեսէր մայր, թէ որ քու մէկ հատիկ սիրելի որդդ ալ անգութ գերեվարողի մը ծախուած ըլլար, որ վաղը առաւօտ զայն գրկէդ յափշտակէր. Ինչ կ'ընէիր երբ աչքովդ տեսնէիր այն մարդը և պայմանագրին կնքուիլը լսէիր, և կէս գիշերուընէ ինչուան առաւօտ միայն ատեն ունենայիր փախչելու. Ինչպէս կը ձգէիր ու կը փախչէիր... քանի՜ քանի մղոն քիչ ժամանակի մէջ կը կտրէիր. երբ տղան գիրկդ՝ իր հեզուկ գլուխը ուսիդ վրայ կռթնցուցած ու փափուկ ձեռուըներովն ալ վզիդ պլլուած՝ վախի ու քնոյ մէջ պատերազմէր...։

Եղիզային տղան իր մօրը վշտալից սառապանացը ժամանակ քուն կ'ըլլար։... Աղջի բերան այս կարգէ դուրս դիպուածն

ու վախը երեղծին քունը փախուցին. Մայրը հագիւ շունչ առնելու չափ թող կու տար որ ձայն հանէ. ու մէկ կողմանէ կ՚ըսէր տղուն, որ թէ որ հանդարտ կենալու ըլլայ՝ զինքը կ՚ազատէ. իսկ տղան քունը առնելէն առաջ հարցուց.

— Մայրիկ, հիմայ կրնամ քիչ մը քնա-նալ, անանկ չէ՞։

— Հա տղաս, հա, կրնաս քնանալ երբ որ ուզես։

— Բայց մայրիկ թէ որ քնանալու ըլ-լամ՝ զիս չե՞ս թողուր որ առնեն տանին։

— Չէ, տղաս, չէ. քանի որ Աստուած ինծի կ՚օգնէ. պատասխանեց մայրը՝ դեղնած երեսով ու կրակ կարած սև աչուըններովը։

— Ապահով ես ըսածիդ մայրիկ, անանկ չէ՞, կրկնեց տղեկը։

— Հա տղաս, հա, ապահով եմ։ . . . . Այս խօսքս կէս բերնով՝ ըսած ժամանակ՝ դող ելաւ խեղճ մայրը. կարծես թէ իրմէ չէր այն խօսքը, այլ աներևոյթ զօրութիւն մ՚էր որ իրեն ըսել կու տար։ Տղան ալ գլուխը մօրը ուսին վրայ կոթընցուց, ու սկսաւ քնանալ։ Եղիզա տղուն անուշիկ շըն-չովը որ ուսը կը տաքցնէր՝ նոր զօրութիւն մը կը զգենուր, այն փափուկ ձեռուըները

որ վիզը սխմած պլլուեր էին՝ ելեկտրական ոյժ մը խեղճ մօրը վրայ կ'ազդէին։... Որչափ զօրաւոր է հոգւոյն ուժը մարդուս վըրայ... մարմինը կ'ուժովցընէ, ջղերը պողպատի պէս կ'ամրցընէ, ու տկարաց գերբնական զօրութիւն մը, ոյժ մը կու տայ։

Տիրոջը երկիրներուն սահմանները, ծառաստանը, անտառը՝ Եղիզային արագ քալուածքին դիմաց՝ շուքի պէս շուտ շուտ կ'անցնէին. բոլոր գիշերը մէկ ընթացքով առանց կենալու քալելով՝ հեազհեաէ իրեն ընտանի տեղերէն հեռացաւ, ու արշալուսին՝ ինքզինքը արքունի մեծ ճամբուն վրայ գտաւ։ Օհիոյ գետին եզերքը գեղ մը կար, ուր Եղիզա Շէլպիի խաթունին հետ շատ անգամ ծանօթի մ'այցելութեան գնացեր էր. ուստի միտքը դրաւ որ շիտակ հոն իյնայ ու անկէ գետը անցնի. իսկ անկէ անդին ճամբայ չգիտնալով՝ Աստուծոյ ապաւինի՝ որ իրեն ճամբայ ցուցնէ։

Երբոր լուսացաւ ու ճամբուն վրայ ձիեր ու կառքեր սկսան տեսնուիլ՝ միտքէն անցաւ որ չըլլայ թէ իր շուտափոյթ ու արտորանօք քալելը ու խռոված դէմքը՝ անցնողներուն կասկած մը տան. ուստի տղան գրկէն վար առաւ ու վրան գլուխը շտկելով՝

այնպէս քալել սկսաւ որ ուրիշներուն աչքին չզարնէ։ Փախչելու տեղը կապոցին մէջ քիչ մը խմորեղէն, ու քանի մը խնձոր դրեր էր, սկսաւ խնձորները ճամբուն վրայ գլորտըկել որ տղան ետեւէն վազելով շուտ առաջ երթայ, աս կերպով խել մը մղոն տեղ քալցուց տղան։

Կէս օրուան մօտ թանձր անտառ մը մըտան, որուն մէջէն խոխոջաձայն յստակ առուակ մը կ՚անցնէր. ան ատեն տղան սկսաւ ուտելիք ու ջուր ուզել. մայրն ալ ցանկէն անդին անցաւ ու ժայռի մը ետեւ մտաւ՝ ուր անցորդները չէին կրնար զինքը տեսնել. հանեց կապոցին մէջէն ինչ որ ունէր, ու տղուն նախաճաշիկ մ՚ընել տուաւ. տղան կը զարմանար ու կը ցաւէր թէ ինչո՞ւ մայրը բան չէր ուտեր, ու գիրկը ցատքելով և վզին պլլուելով՝ ուզեց բռնի մօրը բերանը քիչ մը բան դնել։

— Չէ, չէ, սիրելի տղաս, ըսաւ Եղիզան՝ Հենրիկը պագնելով. քու մայրդ բերանը բան չի կրնար դնել, ինչուան որ զքեզ վըտանգէն չազատէ. պէտք է որ դեռ երկայն ատեն քալենք, ու գետէն անդին անցնինք։

Ճամբուն վրայ ելաւ նորէն, ու տղուն ձեռքէն բռնելով՝ սկսաւ առաջ երթալ։ Չին-

Արեւը մտնելէն ժամ մ'առաջ Եղիզա Օհիոյ գետին քովի պզտի գեղը հասաւ, հոգին բերանը եկած, ոտուըները վիրաւորուած, վրան գլուխն աղտոտած, բայց սիրտը դեռ աննկուն. Իր առջի նայուածքը գետին վրայ գնաց, որ Յորդանանու պէս իրեն ու Քանանու ազատութեան երկրին մէջտեղէն՝ պըղտոր կը վազէր։

Գարնան սկիզբն ըլլալով՝ գետը ուռած ու զայրացած էր, և տղմուտ ալիքներուն երեսը սառերու մեծամեծ կտորներ կը լողային։ Օհիոյ գետին եզերքը Քէնդըքիի կողմանէ դէպ ի ներս գնացած է, ուր սառերու կտորներն՝ այն նեղ անցքին վրայ գետին ընթացքը կ'արգելուին, ու այնպէս շարուեր էին որ շարժական կամուրջի մը պէս՝ գետին երկու եզերքը իրարու կապեր էին։

Եղիզա գետեզերքը քիչ մը կանգ առաւ ու տարակուսական աչքով այս տեսարանս դիտեց. սիրտ չըրաւ մէջը մտնելու ու սառերուն վրայէն անցնելու. նաւակ մ'ալ չգտնելով՝ որոշեց գետեզերքի օթեանը մտնել որ տեղեկութիւն մ'առնու։

Պանդոկապետին կնիկը իրիկուան կերակուր պատրաստելու վրայ էր. Եղիզային անուշ ու տխրական ձայնը լսելով՝ պատաս-

ոտքաղը ձեռքը՝ ետեւ դարձաւ. — Ո՞վ ես, հարցուց։

— Հոս մէկալ կողմը անցնելու նաւակ մը կամ լաստ չկա՞յ արդեօք, պատասխանեց Ելիզա։

— Չէ, ըսաւ կնիկը, հիմայ նաւակները ալ չեն անցնիր։ Բայց Ելիզային խռովքին ու շփոթիլը տեսնելով. — Կ'ուզէի՞ր անդին անցնիլ, հարցուց. հիւանդ մը ունենալու ես անդիի կողմը, վասն զի շատ խռովեալ կը տեսնեմ զքեզ։

— Տղայ մը ունիմ որ ծանր վտանգի մէջ է, ըսաւ Ելիզա. երէկ իրիկուն լուրն առի, ու շատ հեռուներէն վազեցի եկայ՝ յուսալով որ նաւակ մը գտնեմ անդին անցնելու։

— Շատ կը ցաւիմ այս կերպով ուշանալուդ վրայ, կրկնեց կնիկը՝ իր մայրական սէրն ալ արթընցնալով. շա՛տ մեծ ցաւ է իմ սրտիս ալ... — Սողոմոն, կանչեց պատուհանէն։

Մէյ մ'ալ դռնէն մէկը ներս մտաւ՝ խոհարարի գոգնոցով, ձեռքերն ալ աղտոտ։

— Սողոմոն, հարցուց կնիկը, այս իրիկուն կու գա՞յ սա տակառները անցընողը։

— Չիմ գիտեր, պատասխանեց եկողը,

բայց զուրցեր էր որ կը փորձէ, և թէ որ կարենայ անցնիլ՝ կու գայ։

— Հոս մէկը կայ, վրայ բերաւ կնիկը, որ աս գիշեր քանի մը վաճառք անդին անցնելու միտք ունի, աղէկ կ'ընես որ հոս սպասես մինչև որ գայ, որովհետև այս իրիկուն կերակուրն ալ հոս պիտի ուտէ։ Այլ ի՛նչ աղուոր աղայ ունիս, ըսաւ, ու Հենրիկին խմորեղէն մը տուաւ։

Բայց տղան շատ յոգնած ըլլալով՝ կու լար։

— Խեղճ տղայ, ըսաւ Ելիզա, վարժած չէ քալելու, ես ալ շուտ շուտ վազցուցի։

— Աղէկ, աղէկ, պատասխանեց կնիկը, սա խուցը տար պառկեցուր խեղճը որ հանգչի։

Ելիզան տղուն ձեռքէն բռնած՝ տարաւ անկողնին վրայ պառկեցուց, ու ինչուան որ քնացուց՝ քովը կեցաւ, անոր ձեռուըները իր ձեռացը մէջ բռնած։ Իսկ ինքը չէր կրնար աչուըները գոցել. քանի որ կը մտածէր թէ իր ետևէն ինկնող կայ, անհամբերութենէն հիւծած մաշած՝ անկուշտ աչքով մը խռովեալ ջրերուն վրայ կը նայէր, որ խաբող էին իրեն ու ազատութեան հողին։

Բայց մենք հոս թողունք զինքը ու դառ-

նանք մէջ մ'ալ զինքը փնտռողներուն։ Թէ-պէտ Շէլպիին խաթունը խոստացեր էր որ շուտ մը կերակուրի նստին, բայց զանազան արգելներով ուշացաւ սեղանը ։ Խաթունը խստիւ հրաման տուած էր Հէլլիին առջև որ շուտ շարժին, ու ետևէ ետև հինգ վեց հոգի խրկուած էր խոհանոցը Քլոյէին՝ որ շուտ ընէ. բայց անիկայ գլուխը շարժելով՝ քթին տակէն մռմռալով, իր սովորականէն դուրս՝ կամաց կամաց կը պատրաստէր։ Ծառայք մտքերնին դրեր էին՝ որ խաթունին խստիւ հրամանը երեսանց է, և սեղանին ուշանալը իրեն տհաճելի բան մը չէ. անոր համար ամենայն կերպով ջանք կ'ընէին որ ուշացը-նեն ու ետ ձգեն. աման լուացողը համեմին պնակը ձգեց կոտրեց ու մէջինը բոլոր գե-տին թափեց, ուստի հարկ եղաւ որ Քլո-յէն նորէն աշխատի ամենայն զգուշութեամբ ու նորէն շինէ։ Իսկ երբոր Քլոյէն կը փու-թացընէին որ շուտ լըմընցընէ՝ ինքը կ'ը-սէր. «Ես ան եփողներէն չեմ, որ տէրերուս դիմացը չեփած կերակուր հանեմ. աղէկ բանը շուտ չ'ըլլար, կը հասկընա՞ք»։ Մէկ ուրիշ մը՝ աղբիւրէն ջուր բերելու ատեն՝ ինկաւ ջուրը թափեց, ուստի նորէն պէտք եղաւ որ դառնայ ջուր բերելու երթայ. եր-

րորդ մը՝ հալած կարագը գետին Թափեց. միով բանիւ՝ ամենայն ձախողութիւն վրայ հասաւ։ Երբեմն երբեմն ալ երբոր մէկը մէկալը խոհակերոցը կը վազէին, ու «Շուտ ըրէք, կը պոռային, կ'երեւնայ Թէ Հէլի ձանձրացեր է կերակուրին այսչափ ուշանալուն վրայ, ու նստել չկրնալէն՝ վեր վար սրահին մէջ կ'երԹայ կու գայ», անոնք բարձր ձայնով կը սկսէին ծիծաղիլ ու կատակի կ'առնէին զանիկայ։

— Թող երԹայ սորվի, հառաչեց Բլոյէ նեղանալով. Թէ որ խելքը գլուխը չժողվէ, ա՛լ աւելի գէշ բաներու կը հանդիպի. օր մը զինքն ալ իր Տէրը պիտի կանչէ, իր Տէ՛րը ... տեսնենք Թէ ի՞նչ երեսով դիմացը պիտի կարենայ ելլել։

— Անշուշտ դժոխք պիտի երԹայ, պատասխանեց անդիէն հոն եղող պզտի սեւուկներէն մէկը։

— Հազար դժոխոց ալ արժանի է այդ անզգամը, ըսաւ Բլոյէ բարկուԹեամբ. ի՞նչ սրտեր այրեր է, ի՞նչ սրտեր կոտրեր է։ Այս խօսքս ըսելու ատեն՝ պատառաքաղը ձեռքը՝ ձեռուըները երկինք վերցուց, ու — Մտքերնիդ բերէք, ըսաւ, մէկալ իրիկուն Օննիկին կարդացած ՅայտնուԹեան գրքին կտորը.

«Խորաններուն վրայէն արդարոց հոգիքը կ՚աղաղակեն ու Աստուծմէ վրէժխնդրութիւն կը պահանջեն». Աստուած անանց ձայնին պիտի լսէ, այո՛, քիչ ատենէն պիտի լսէ։

Քլոյէին վրայ բոլոր գերիները մեծ համարմունք ունենալով՝ բերաննին բաց մտիկ կ՚ընէին ըսածներուն։ Եւ որովհետեւ կերակուրները բոլոր պատրաստ էին՝ իրենց չորս կողմը շարուեցան ու անոր խօսակցութիւնը մտիկ ընել սկսան։

— Այս մարդիկը յաւիտեան պիտի այրին, ըսաւ Անդրէաս. անանկ չէ՞։

— Ասոնց այրիլը շատ կ՚ուզէի տեսնել, կրկնեց ուրիշ մը։

Այն միջոցին ներս մտաւ աղբար Թովմաս, ու ասոնց խօսակցութիւնները լսելով՝

— Տղաք, դուք ըսածնիդ ալ չէք գիտեր, ըսաւ, Մի՛շտ ու Յաւիտեան բառերը սոսկալի բառեր են, գիտէ՞ք... միայն մտածելը զմարդ կը սարսափեցընէ. ամէն մարդիկ ալ հաւասարապէս Աստուծոյ արարածներն ըլլալով՝ այսպիսի բան մէկու մ՚ալ պիտի չփափաքիք։

— Մենք ուրիշ մարդու այսպիսի բան չենք մաղթեր, պատասխանեց Անդրէասը, բայց եթէ մարդավաճառներուն. այն թշուա-

տականները յաւիտենական պատժոց արժանի են։

— Նոյն իսկ բնութիւնը անոնց դէմ չէ՞ բողոքեր, ըսաւ Փըլոյէ. ատոնք չե՞ն որ պզտի տղաքը մօրերնուն գրկէն կը յափշտակեն ու ծախու կը հանեն. ատոնք չե՞ն որ երբ խեղճ տղաքը կու լան, կը կանչեն ու մօրերնուն զգեստէն բռնած՝ չեն ուզեր թողուլ, կը քաշքըշեն ու կ՚առնեն կը տանին. ատոնք չե՞ն որ կինը իր էրկանէն կը բաժնեն. (ու աս ըսելու տեղն Փըլոյէին աչուըները լեցուեցան). աւելի լաւ էր, կըկնեց, անոնց կեանքը վերցընէին. իսկ իրենց և ոչ փոյթերնին է, մէկ զգացմունք մ՚ալ վրանին չ՚երևար. ամէն մտքերնին դրած չարութիւնը ի գործ դնելէն վերջը՝ կը նստին ուրախ զուարթ կ՚ուտեն կը խմեն, կարծես թէ՛ չարիք մ՚ալ ըրած չըլլային։ Սատանան ի՞նչ բանի կու գայ, թէ որ այսպիսինները չառնէ չտանի։ Աս ըսաւ, ու գոգնոցովը երեսը գոցեց և սկսաւ հեծեծել։

— Աւետարանը՝ «Ձեզ հալածողաց համար աղօթք ըրէք, կ՚ըսէ», վրայ բերաւ Թովմաս։

— Ով Տէր, պատասխանեց Փըլոյէ, այնպիսի չար մարդկանց համար աղօթք ընել՝ շատ դժուար բան է, իսկ ինծի՝ անկարելի։

— Իրաւ է, կրկնեց Թովմաս, բնութիւնը թող չի տար, բնութիւնը ուժով է. բայց Աստուծոյ շնորհքը ա՛լ աւելի զօրաւորագոյն է, կարող է՝ ամէն դժուարութեանց յաղթելու։ Մտածէ մէյմը գերեվաճառաց հոգւոյն թշուառ վիճակը, ու շնորհակալ եղիր Աստուծոյ որ այսպիսիներուն չես նմանած. բիւր անգամ կ'ընտրեմ ծախուիլ, քան թէ աս թշուառ մարդուն պէս բոլոր ըրածներուս համար պատասխան տալ։

— Ես ալ նոյնպէս, ըսաւ սեւկներէն մէկը. իսկ դո՞ւ Անդրէաս...։ Անդրէասն ալ ուսերը թօթուելով ու փոփոալով հաւանութեան նշան տուաւ։

— Շատ ուրախ եմ, ըսաւ Թովմաս, որ տէրս այս առաւօտ տնէն դուրս չելաւ, ինչպէս որ միտքը դրեր էր. ծախուելէս աւելի գէշ պիտի ըլլար ինծի՝ թէ որ երթալէս առաջ մէյ մըն ալ չտեսնէի զինքը. բնական է իրեն այսպիսի տեղի մէջ փախչիլը որ չերեւնայ. բայց ինծի համար դառն բան էր, ինծի՝ որ պզտիկուց օրօրոցին մէջէն գիրկս մեծցուցեր եմ զինքը։ Քիչ մը առաջ տեսայ որ հոս էր, ու սիրտս հանգչեցաւ. Աստուծոյ կամքն ըլլայ։ Խեղճ տէրս վերջին կարօտութեան մէջ ըլլալով՝ շատ աղէկ որ զիս

ծախեց՝ քան թէ աւելի թշուառութեան մէջ ինկնար։ Միայն անկէ կը վախեմ, որ երթալէս վերջը՝ տանը բաները չըլլայ թէ աղէկ առաջ չերթան. որովհետեւ տէրս ինծի պէս բոլոր տանը վրայ արթնութիւն ընել չի կրնար. ուրիշներն ալ իրաւ աղէկ սիրտ ունին ու աշխատասէր են, բայց քիչ մը ձգձգող են... այս մտածմունքն է միայն որ զիս կը տանջէ։

Նոյն միջոցին զանգակը զարնուելով՝ Թովմասը վեր կանչուեցաւ։

— Թովմաս, ըսաւ Շէլպին քաղցրութեամբ. գիտցած ըլլաս որ աս պարոնին հազար տոլլարի տուգանք վճարելու խօսք տուած եմ, թէ որ գայ ու զքեզ չգտնայ. հիմայ ուրիշ զբաղմունքներ ունի ձեռքը, անոնք կարգի դնելէն վերջը՝ զքեզ առնելու պիտի գայ. ուստի այսօր բոլոր օրը ազատ ես. ուր որ ուզես կրնաս պտըտիլ։

— Շատ շնորհակալ եմ, պատասխանեց Թովմաս։

— Նայէ, ըսաւ վաճառականը Թովմասին. սեւերուն բնական խարդախութիւնը ձեռք չառնես՝ տէրդ խաբելու համար. ամբողջ ինչուան վերջին պանկը կ՚առնում։ Թէ որ ուզէր ինծի մտիկ ընել՝ պէտք չէր ոչ քեզի

և ոչ ուրիշ գերիներու վստահիլ. դուք ա-մենքնիդ ալ օձաձուկի պէս լպրծուն էք, ձեռքէ կը սահիք։

— Տէր իմ, պատասխանեց Թովմաս Շէլ-պիին. ութը տարուան էի՝ երբոր իմ ողոր-մած հոգի առջի տիկինս՝ հրամանքնիդ մայրը՝ զքեզ իմ գիրկս առաւ, որ դեռ հազիւ տարուան մը չափ կայիք, և ըսաւ. «Թով-մաս, ահա աս քու պզտիկ տէրդ ու նայէ որ վրան աղէկ խնամք ունենաս»։ Հիմայ ըսէք, տէր իմ, չպահեցի՞ ինծի տրուած պատուէրը, ինչ բանի մէջ հրամանքնիդ կամացն հա-կառակեցայ, մանաւանդ քրիստոնեայ ըլլա-լէս վերջը։...

Շէլպիին սիրտն եկաւ և լալ սկսաւ, ու
— Սիրելիդ իմ, պատասխանեց, ըսածներդ բոլորն ալ իրաւ են. թէ որ իմ ձեռքս ըլ-լար՝ աշխարհիս ոսկին ալ տային՝ զքեզ չէի ծախեր։

— Սուրբ Հաւատքիս վրայ կ'երդնում, ըսաւ անդիէն Շէլպիին խաթունը, որ եթէ քիչ մը վրայ գնենք՝ շուտ մը նորէն կը գնեմ զքեզ։ — Վերջը դարձաւ Հէլիին՝ Պարո՛ն, ըսաւ, նայէ՝ ուրու որ կը ծախես զինքը՝ ան մարդուն անունն ու տեղը մեզի իմացընես։

— Շատ աղէկ, պատասխանեց Հէլի. բայց

ես մէկ տարիէն՝ ինչպէս որ առի, այնպէս ողջ ու առողջ ձեր ձեռքը նորէն կը հացընեմ զանիկայ։

— Շատ լաւ կ՚ընես, վրայ բերաւ խաթունը, մենք ալ ան տանը կարող ենք գնել, ու քեզի շահ ալ ընել կու տանք։

— Անկէ աղէկ բան չէիր կրնար ըսել, խաթուն, պատասխանեց Հէլի. ամենևին փոյթս չէ, ո՛վ որ կ՚ուզէ թող գնէ իմ վաճառքս, բաւական է որ ես շահով ելլեմ. գոհ եմ ես որ իմ ապրուստս հանեմ. աշխարհիս մէջ ամենուն ուզածն ալ աս է։

Պարոն Շէլպին ու իր խաթունը շատ ձանձրացեր էին ու սրտերնին նեղացեր էր գերեվաճառին այս աստիճանի լիրբ ու աներես ընտանութեան վրայ, բայց երկուքն ալ իրենց զիրենք բռնել կը ջանային։ Խաթունը որչափ կը տեսնէր Հէլիին անզգայ ու անտարբեր կերպը՝ այնչափ կասկածը ու վախը կ՚աւելնար, որ չըլլայ թէ խեղճ Էլիզային ետևէն երթայ ու կարենայ զինքը բռնել ու տղան ձեռքէն առնուլ. ուստի ամէն կանացի հնարք ու խորագիտութիւն ի գործ դրաւ՝ որ ժամանակ անցընել տայ. դիմացն անցաւ, սկսաւ հետը ընտանեբար խօսիլ, իրեն խօսքերուն իրաւունք տալ՝ որ խօ-

սելու զրգռուի, որպէս զի ժամանակ անցնիլը չիմանայ։

Ժամը երկուքին Սամուէլն ու Անդրէասը ձիերը բերին. որոնց վրայ առաւօտեան պատահարէն վերջը աւելի ուժ ու աշխուժութիւն եկեր էր։ Հէլի երբոր վար իջաւ՝ երկուքը մէկական դիմացն ելան ու ամենայն կերպ մեծ մեծ խօսքերով կը ջանային զինքը ապահովցընել՝ որ կրնան դիւրութեամբ Ելիզային ետեւէն հասնիլ։

— Ձեր աչքը շուն կը պահէ՞, հարցուց Հէլի մռմռալով մը։

— Հրամեր ես, պատասխանեց Սամուէլ պարծենալով մը. ահա սա շունը... գիտես ինչպէս կը հաչէ. մենք ալ դրեթէ ամէնքնիս մէյմէկ շուն ունինք։

— Ձեր աչքը անտարակոյս սեւերը որսալու շուն չի՞ պահեր։

Սամուէլ առջի հարցմունքէն ալ Հէլիին միտքը հասկըցեր էր. բայց չհասկընալ ձեւացընելով՝ իբր պարզմտութեամբ մը, — Մեր շները, պատասխանեց, շատ սուր հոտառութիւն ունին, շատ աղէկ տեսակ են և քու ըսած որսորդութեանդ շատ յարմար. թէպէտ և մինչև հիմայ դեռ փորձ մը ըրած չենք։

Հէլի ուզածը չգտնալով՝ — Գետինն անցնիք, ըսաւ բարկանալով, ու ձին հեծաւ, երկուքին ալ հրամելով որ հեծնան։

Սամուէլ հնազանդեցաւ, բայց հեծնալու ատեն կերպով մը Անդրէասը խլատըրտացուց. ան ալ բարձրաձայն խնտալ սկսաւ. Հէլի սրդողելով դարձաւ խարազան մը իջեցուց Անդրէասին։

— Կը զարմանամ վրադ, Անդրէաս, ըսաւ Սամուէլ՝ անխռով ծանրութեամբ մը. դիմացի ընելիքնիս ծանր բան է, կատակը մէկ դի ձգելու է։

Երբոր Շէլպիին-կալուածներէն դուրս ելան՝ Հէլի ուզեց շիտակ դէպ ի գետն իջնալ — վասն զի ամէնքն ալ այս ճամբով կ՚երթան, ըսաւ։

— Իրաւ է ըսածդ, պատասխանեց Սամուէլ, բայց գետն իջնալու երկու ճամբայ կայ, մէկն աղէկ, մէկալը գէշ. հրամանքդ տեսնենք ո՞րը կ՚ուզես ընել։

Անդրէաս ի սկզբան Սամուէլին այս նոր տեղեկութիւնները լսելով՝ դարձաւ զարմանալով մը անոր երեսը նայեցաւ. բայց ետքը մէկէն ինքն ալ սկսաւ նոյնը հաստատել։

— Ապահով գիտեմ, ըսաւ Սամուէլ, որ

Ելիզան գէշ ճամբէն գնացեր է, որովհետեւ ան կողմէն քիչ անցուդարձ կայ։

Հէլի թէպէտ վարպետօրէն և միանգամայն կասկածոտ էր բնութեամբ, բայց Սամուէլին բառերին հաւնեցաւ. — Ծօ, ըսաւ, չըլլայ թէ երկուքնիդ ալ խարդախ ստախօսութեամբ՝ ուզենաք զիս խաբել։

Հէլիին այս խօսքին վրայ Անդրէասին ծիծաղը շարժելով՝ ետ քաշուեցաւ ու սկսաւ այնպէս մը խնդալ՝ որ քիչ մնաց ձիէն վիար իյնար. իսկ Սամուէլ ծանրութեամբ մը պատասխան տուաւ.

— Տէր ես, պարոն, ինչ որ կ՚ուզես՝ ըրէ. ուր ճամբան կ՚ուզես՝ ընտրէ. մեզի համար երկուքն ալ նոյն է. բայց ինծի աւելի աղէկ կ՚երեւայ որ շիտակ ճամբէն երթանք։

Իսկ Հէլի մտածման մէջ ընկղմած՝ առանց Սամուէլին խօսքերուն մտիկ ընելու, ըսաւ. — Հաւանական է՝ որ քիչ յաճախեալ ճամբէն գնացած պիտի ըլլայ։

— Ըսածիդ խօսք չունիմ, պատասխանեց Սամուէլ, կնիկ մարդիկ խելքէ դուրս բաներ կը մտածեն. շատ անգամ կարծածիդ հակառակը կ՚ընեն. բնութեամբ հակառակասէր են, անոր համար թէ որ միտքդ դնես՝ որ այս ճամբէն գնացեր են՝ լաւ կ՚ընես մէկա-

լէն երթալ. և ոտուզիւ կրնաս ան ատենը գիրենք ձեռք ձգել. Հիմայ իմ կարծիքս ալ աս է, որ կողմնակալն ճամբէն գնացած պիտի ըլլայ Եղիզա, անոր համար լաւ կ՚ըլլայ, որ մենք ալ շիտակ ճամբան բռնենք։

Բայց Հէլի անոր խորհրդին չուզեց հետեւիլ, և ուզեց խոտոր ճամբան բռնել, ու հարցուց Սամուէլին՝ թէ ո՛րչափ ատենէն գետեզերքը կրնանք հասնիլ։

— Քիչ մը տեղ է, պատասխանեց Սամուէլ, ու աչքին ծայրովը ալ՝ Անդրէասին նշան կ՚ընէր։ Բայց, կրկնեց, լաւ կ՚ըլլայ որ այս ճամբէն չերթանք, աղէկ չեմ գիտեր, անցուպարձ ալ չկայ, կրնանք մոլորիլ, և Աստուած գիտէ թէ ո՛ւր կ՚ելլենք։

— Փոյթ չէ. ըսաւ Հէլի, ես այս ճամբէն կ՚ուզեմ երթալ։

— Հիմայ միտքս եկաւ. կարծեմ լսեր եմ որ երկու կողմէն ցանկով պատած է, այնպէս չէ՞ Անդրէաս։

Անդրէաս աղէկ չէր գիտեր. իրաւ շատ անգամ ան ճամբուն վրայօք լսեր էր ուրիշներէ, բայց ինքը անձամբ անկէ անցած չըլլալով՝ չէր կրնար որոշ կարծիքն ըսել։

Հէլի՝ որ վարժեր էր պզտի ու մեծ սուտերուն մէջ աւելի հաւանականը գտնելու,

միտքը դրաւ որ Սամուէլ առաջուց առանց մտադրութեան այն պզտի ճամբուն անունը տուաւ, և թէ վերջը դէմ կենալուն պատճառը՝ Եղիզան ազատել է, անոր համար այն խոտոր ճամբէն ուզեց երթալ։

Այս խոտոր ճամբայ լսածնիս առենօք ինչուան գետեզերքը կը հանէր, բայց խել մը առեն էր որ այգունի ճամբան շինուելով՝ այն կողմէն անցուդարձ չկար. այս բանս շատ լաւ գիտէր Սամուէլ, բայց առանց նշան մը տալու՝ Հէլլին ետևէն կ'երթար. իսկ Անդրէաս չէր գիտեր։

Ժամ մը այս երեքը քալելէն վերջը՝ կալուածատէրի մը տան բակը հասան, ուր մարդ մ'ալ չկար. անկէ անդին ճամբուն ծայրն ալ մեծ շէնք մը շինուած էր, որով ճամբան բոլորովին խափանուեր էր։

— Հրամանքիդ չըսի՞, պարոն , ըսաւ անդիէն Սամուէլ. ի՞նչպէս կրնայ ըլլալ որ օտարական մը այս երկրիս բաները տեղացիէ մը աւելի աղէկ գիտնայ։

— Դու ուրեմն, այ անզգամ, գիտէ՞ր, հա... պոռաց բարկանալով Հէլլի։

— Ես հրամանքիդ քանի՛ անգամ ըսի, կրկնեց Սամուէլ, բայց դուն ինծի չուզեցիր հաւտալ. կ'ըսէի հրամանքիդ որ աս ճամ-

բան պոց է, չենք կրնար առաջ երթալ. ահա Անդրէասն ալ հոս է. ինքն ալ ըսածներս լսեց, կրնայ վկայել։

Հէլլի ինչ ըսելիքը չէր գիտեր, ինքզինք բռնեց որ կիրք չելլէ. ուստի երեքը մէկէն ձիերուն գլուխը դարձուցին ու դէպ ի հասարակաց ճամբան սկսան երթալ։

Այս զանազան դիպուածներն էին, որ Ելիզային քիչ մը շունչ առնել տուին. երեք քառորդ հազիւ կար որ գետեզերքի գիւղին պանդոկին մէջ խեղճը իր տղան կը քնացընէր, երբ այս երեքը ձիով նոյն գեղն հասան։ Ելիզան տղուն քնանալու ժամանակ ինքը հանգիստ չկարենալով կենալ՝ պատուհանէն միակերպ ասդին անդին կը նայէր. մէյ մ՚ալ հեռուանց զՍամուէլը տեսաւ, Սամուէլն ալ զինքը ճանչցաւ. Հէլլին ու Անդրէասը աւելի ետև էին։ Սամուէլ այս մերձաւոր վտանգը տեսնելով՝ կամօք գլխարկը հովէն թողուց որ առաւ տարաւ, և իբր թէ ետևէն վազելով՝ սարսափելի վայնասուն մը փրցուց. խեղճ փախստականը սակնուվրայ եղաւ, պատուհանէն ներս քաշուեցաւ, մինչդեռ աս երեք ձիաւորները պատուհանին տակէն վազելով անցան ու դէպ ի պանդոկին մեծ դուռը գնացին։

Այս քանի մը վայրկեանը խեղճ Ելիզային դար մը երեւցաւ. կեցած խցէն դէպ ի վեր ելլալու դուռ մը կար. մէկէն տղան դիրկն առնելն ու սանդուխներէն վար ցատքելը մէկ ըրաւ. և կայծակի պէս՝ Հէյլիի դռնէն ներս մտնալու ժամանակ՝ դիմացէն անցաւ գնաց։ Հէյլի զանիկայ տեսածին պէս՝ մէկէն ձիէն վար իջաւ ու որչափ որ ձայն ունէր՝ սկսաւ Անդրէասն ու Սամուէլը օգնութեան կանչել ու ինքը կրակի պէս Ելիզային ետեւէն վա-զեց։

Այս ահաւոր վայրկեանին կարծես թէ Ե-լիզային ոտուըները գետին չէին դպչեր. աչքը գոցեց բացաւ ինքզինքը գետեզերքը գտաւ։ Անոնք ալ մէկէն ետեւէն հասան. ան ատեն Ելիզան ողորմուկ ճիչ մը հանեց, և այնպիսի ուժով մը՝ որ Աստուած վտանգի մէջ եղող յուսահատելոց միայն կու տայ՝ գետեզերքէն ինքզինքը ողմուտ ջրին մէջի սառի կտորներուն մէկուն վրայ նետեց։ Յու-սահատական ցատքել մըն էր այս, որ մէկը ինչուան վերջին աստիճանի խելագարութեան ու յուսահատութեան մէջ չինկնայ՝ անկա-րելի բան է որ յանդգնի։ Հէյլին, Սամուէլն ու Անդրէասը ապշած պաղած կեցեր այս տեսարանս կը դիտէին։

Սառուցին ահագին կտորը, որուն վրայ ցատքեց, Ելիզային ծանրութենէն խորտակեցաւ ու սկսաւ ընկղմիլ. բայց ինքը շուտ մը յուսահատական նոր աղաղակով մը և անլուր զօրութեամբ անկէ ուրիշ սառուցի մը վրայ ցատքեց, անկէ ալ ուրիշի մը վրայ նետուեցաւ. սայթաքելով, ցատքտելով, սահելով՝ միշտ ճամբան առաջ տարաւ՝ սառուցէ սառոյց անցնելով։ Ոտքի ամանները ելան ոտքէն, գուլպաները պատռտեցան, ոտուըները արիւնլուայ եղան, սառերը խեղճին արիւնովը ներկուեցան, բայց իրեն աչքին բան մըն ալ չէր երևար, ինքը բան մըն ալ չէր զգար։ Վերջապէս՝ երբ թէ երազի մը մէջ ըլլար՝ մթընցած աչքին զարկաւ Օհիոյ գետեզերքը, ուր մարդ մը կեցած՝ ձեռքը երկնցուց ու օգնեց իրեն ցամաք ելլելու։

— Ո՛վ որ ալ ըլլաս, ըսաւ այն մարդը, արիասիրտ օրիորդ մը կ՚երևաս դու իմ աչքիս։

Ելիզան ձայնէն ու գծագրութենէն ճանչցաւ որ իր տիրոջը կալուածներուն մօտ ուրիշ կալուածատէր մըն էր. — Ահ, հրամանքդ ես Պ. Սայմիս, հառաչեց. ա՛հ, ազատէ զիս, հոգիդ սիրես, խալըսէ զիս, ծակ մը խոթէ զիս։...

— Ի՞նչ է, ի՞նչ բան կայ, պատասխանեց Սայմիս, դու Պ. Շէլպիին տունը չէ՞իր։

— Հրամեր եմ, բայց այս պզտի տղան, սա տղան ծախուեցա՜ւ... ո՛հ ահա դիմացը կեցեր է գնողը . . . ու ձեռքովը Քէնդըքիի գետեզերքը կը ցուցընէր։ Ո՛հ, հրամանքդ ալ պզտի տղայ մ'ունիս։...

— Հասկըցայ. բայց այդ ի՞նչ արիութիւն էր քու ըրածդ. ինչպիսի՜ կտրճութեամբ ասդիս անցար, ըսաւ Սայմիս, ու Ելիզային օգնեց որ գետին թումբին վրայ ելլէ։

Երբոր վեր ելան՝ մարդը — Ես զիս երջանիկ կը համարիմ, ըսաւ, որ քեզի կրցայ կերպով մը ծառայութիւն ընել. կը փափաքէի հոս քովս պահել զքեզ, բայց տեղ չունիմ. լաւ կ'ըլլայ որ քիչ մ'ալ վար երթաս ու դիմացի սա ճերմակ տունը մտնես, այն տանը անձինքը շատ լաւ մարդիկ են. ա՛լ վտանգ չկայ, մի վախնար, անոնք քեզի կ'օգնեն, մանաւանդ թէ ուրիշի բարիք ընել շատ կը սիրեն։

— Աստուած զքեզ օրհնէ, սրտանց մը ըսաւ Ելիզա։

— Բան չկայ, բան չկայ, պատասխանեց մարդը, ըրածս բան մը չէ։

— Ո՛հ, չըլլայ թէ, պարոն, մատնես զիս մէկու մը։

— Ի՞նչ կ'ըսես աղջիկ, դուն զիս ի՞նչ կը կարծես, ինչո՞ւ պիտի մատնեմ. գնա դու հիմայ ու նայէ որ կարճութեամբ բաներդ յաջողցընես. ա՛լ ազատ ես հիմայ. ես ոչ երբեք քու ազատութեանդ մատնիչ կ'ուզեմ ըլլալ. քանի որ ես կենդանի եմ, դու միշտ ազատ պիտի ըլլաս։

Ելիզան տղան գիրկն առաւ գուրգուրալով ու շուտ մը դէպ ի տունը վազեց. մարդն ալ կեցեր միակերպ ետևէն կը նայէր։

— Թերևս Պ. Շէլպին, կ'ըսէր ինքնիրեն մարդը, զիս հաւատարիմ դրացի պիտի չհամարի. բայց ես ի՞նչ կրնայի ընել. թէ որ իմ գերիներուս մէկն ալ իրեն ապաւինէր, ինքն ալ նոյն բանը պիտի չընէ՞ր։... Իմ սիրտս չի քաշեր այնպիսի որսատեղի մէջ տեսնել մէկը որ կը հալի ու կը մաշի, ու մէկ կողմանէ ալ շները ետևէն կը վազեն. ա՜հ,. չէ, չէ. սիրտըս չի դիմանար այսպիսի թշուառութեան մէջ տեսնել մէկը ու չօգնել ... դարձեալ, ամենևին պատճառ մը չեմ տեսներ՝ մէկու մը բարիք ընեմ ըսելով՝ ուրիշի մեծ չարիք մը հասցընեմ ու ազատութիւնը վերցնեմ թէ՛ սև եղեր է, թէ ճերմակ։

Այսպէս կը մտածէր ինքնիրենը քենդըրքեցի հեթանոս մարդը, որ ամենևին քաղա-

քական օրէնք ու սահմանադրութիւն չէր գիտեր. և առանց գիտնալու՝ բնական բերմամբ՝ քրիստոնէի մը պէս կը մտածէր. անշուշտ թէ որ այն երկրին օրէնքները գիտնար՝ ուրիշ կերպով կը շարժէր. ան ատենը ինքն ալ մեծամեծ պաշտօններու հասնելու ու իմաստնոց կարգը անցնելու յոյս կրնար ունենալ:...

Իսկ Հէլի այս տեսարանին ատենիլ արձան կտրած կեցեր էր. և երբոր Ելիզան աներևոյթ եղաւ՝ դարձաւ սարսամ ու շփոթած՝ Անդրէասին ու Սամուէլին նայեցաւ:

— Շա՛տ կարգէ դուրս բան, ըսաւ Սամուէլ ժպտելով:

— Կարծես թէ, պատասխանեց Հէլի, այս աղջըկան փորը եօթը սատանայ մտեր էր. վայրի կատուի նման ատ ինչպէս կը ցատքէր:

— Յուսամ որ, պարոն, ըսաւ Սամուէլ գլուխը քերելով, մեզի թողութիւն կ'ընես, նոյն ճամբէն անոր ետևէն երթալ չուզելնուս համար, որովհետև այն ճամբան ընելու մեր քովը սիրտ չկար:

— Դեռ կը խնտաք ալ հա՛... մռմռաց Հէլի:

— Աստուած վկայ, պարոն, պատասխա-

նեց Սամուէլ, ինքզինքս չեմ կրնար բռնել. ու սկսաւ բարձրաձայն ծիծաղիլ. — Հա՛յ Ելիզա, հա՜յ... այն ի՜նչ ցատքըներ էին, այն ի՜նչպէս սառերուն վրայ կը վազէր, այն ի՜նչպէս կը նետուէր. ո՜հ, ի՜նչպէս ալ չէր վախեր։

Անդրէասն ու Սամուէլը ծիծաղելէն կը ճաթէին, այնպէս որ աչքերնէն արցունք կու գար։

— Ես հիմայ ուրիշ կերպով կը ծիծաղեցընեմ զձեզ, թշուառականներ, պոռաց Հէլլի, ու սկսաւ խարազանը շարժել։

Անոնք երկուքը մէկէն կծկուեցան որ խարազանը իրենց չհասնի, ու պոռալով խընդալով գետեզերքէն իրենց ձիերուն քով վազեցին, ու Հէլլի դեռ թումբին վրայ չելած՝ անոնք հեծան։

— Պարոն, մնաս բարով, ըսաւ Սամուէլ, յուսանք թէ ա՛լ մեզի կարօտութիւն չունիս, մենք տուն կը դառնանք. խաթունը չուզեր որ խեղճ ձիերը գիշերանց դուրս մնան։ Ու երկուքը մէկտեղ ձգեցին փախան. և հեռուանց դեռ կը լսուէր իրենց ծիծաղն ու կատակները։

# ԳԼՈՒԽ Ը.

## Որսորդք մարդկան։

Մութը բաւական կոխած էր՝ երբ Ելիզա յուսահատաբար Օհիոյ գետին վրայէն իր վտանգաւոր անցքը կատարեց։ Երեկոյեան թանձր մշուշ մը գետին վրայէն կամաց կամաց բարձրանալով՝ բոլոր օդը պատեց, ու անկարելի եղաւ Ելիզան ալ տեսնել։ Գետին բարձրութիւնն ալ ու սառուցի մեծամեծ կըտորներն և մութը՝ անյաղթելի արգելքներ եղան Հէլիի դիմաց՝ Ելիզային ետևէն իյնալու. անոր համար ճարը հատած՝ գլուխը կախեց ու նորէն ոգար պանդոկը դարձաւ որ ինչ ընելիքը մտածէ։ Պանդոկապետին կինը զինքը խուց մը տարաւ, ուր պատըռտած կորգ մը փռուած էր, մէջ տեղն սև փայլուն մոմշորով ծածկած սեղան մը, չորս դին ալ քանի մը փայտէ կոտրտած աթոռներ, խցին մէկ կողմը կրակարան մը կար՝ կրակը կէս մարած, ու ծխնելուզին վրայ փայլուն գոյներով քանի մը գաճէ արձաններ շարած էին։ Հէլի կրակին դիմաց կոշտ փայտէ բազմոցի մը վրայ նստաւ ու սկսաւ

մարդկային գործոց անհաստատութեան վրայ մտածել...։

— Ինչ խելք էր ըրածս, կ'ըսէր ինքնիրեն, որ սա անիծած տղուն ետեւէն ինկայ, հիմայ մկան պէս որոգայթի մէջ բռնուած՝ աշխարհքի դիմաց խաղք եղայ. ու սկսաւ ինքզինքը անիծել։ Մէյ մ'ալ յանկարծ մարդու մը ձայն լսեց, որ պանդոկին դրան դիմաց խօսելով ձիէն վար կ'իջնար։

— Փառք քեզ, ըսաւ տեղէն ցատքելով, Ի՛նչ մեծ նախախնամութիւն ինծի պատահեցաւ. թէ որ չեմ սխալիր աս եկողը Լոքէրը պիտի ըլլայ, — ու մէկէն պատուհանէն նայելով, — Հա՛, իրաւցընէ ան է եղեր, ըսաւ, ու վար վազեց։

Պանդոկին բակը՝ գինեվաճառի սեղանատախտակին քովը՝ պղնձագոյն ու վիթխարի մարդ մը կեցեր էր, հասակը վեց ոտք բարձրութեամբ, անոր համեմատ ալ լայնութիւն ունէր. վայրի գոմէշի մորթէ զգեստ մը հագեր էր, որուն մազերը դէպ ի դուրս ըլլալով՝ ահռելի տեսք մը առեր էր։ Երեսին կծապրտութիւնը ու գլխուն ձեւը՝ իր ներքին վայրենի ու կատաղի բնութեանը ճըշգրիտ պատկերն էր. թէ որ մէկը կարենայ մակաբերել գամփռ մը՝ մարդու ձեւ առած,

այս մարդս տեսնելով բաւական գաղափար կրնայ առած ըլլալ։ Ասոր հետ մէկը կար որ ամենևին իրեն չէր նմաներ. խեղճ, բարակուկ ու ճոզած, կատուի պէս արագաշարժ, սև ու սուր աչուըներով. անանկ երկայն քիթ մ'ունէր, որ կարծես թէ ամէն տեղ խոթել կ'ուզէր. մազերն ալ սև ու ցանցառ՝ ճակտին վրայ ժողվըւած։ Առաջինը առանց բան մը խօսելու՝ գաւաթ մ'օղի խմեց, իսկ իր ընկերը գլուխը ասդին անդին դարձուց, պատին վրայ շարած շիշերը աղէկ մը զննելէն վերջը՝ ցած ձայնով մը հրամեց որ անանուխի օշարակ բերեն, ու ախորժելով մը խմեց։

Իսկ Հէլլի իրեն հին բարեկամը տեսնելով՝ դիմացը վազեց, ու — Բարի եկար, Լոքէր, այս ի՞նչ բաղդ էր որ զքեզ տեսայ, ըսելով՝ ձեռքը սխմեց։

— Որ սատանան զքեզ հոս բերաւ Հէլլի, պատասխանեց Լոքէր։

Իսկ մէկալ մարդը՝ որ Մարք կ'ըսուէր՝ օշարակին գաւաթը մէկդի դրաւ ու սրունքները լզելով՝ քովերնին մօտեցաւ ու գլուխը երկնցուցած՝ սկսաւ հետաքրքրաբար Հէլլին դիտել։

— Գիտնաս, Լոքէր, ըսաւ Հէլլի, որ ըզ-

քեզ տեսնալուս վրայ շատ ուրախացայ. դժբաղդութեան մը մէջ ինկայ, խնդրեմ օգնէ ինծի որ անվնաս ազատիմ։

— Հա՛յ, հա՛յ. կը հաւտամ, կը հաւտամ, մռմռաց Լօքէր. հարկաւ մէկը տեսնալու ախորժ ունենալուդ պատճառ՝ անկէ մէկ օգուտ մը քաղելն է. ի՞նչ կայ նայինք։

— Քօլինդ բարեկամդ է, ո՞վ է, հարցուց Հէլլի ականջէն։

— Ի՞նչ ըսել է։... Պարոն Մարք, ահա այս պարոնն է Նէչիգի հին վաճառակիցս։

— Ուրախ եմ որ հրամանքդ ճանչցայ, ըսաւ Մարք Հէլլին, կարծեմ հրամանքդ պարոն Հէլլի՞ն ես, և երկայն ու չոր ձեռքը անոր երկընցուց։

— Հրամեր ես, պատասխանեց Հէլլի, և որովհետև զձեզ այսպէս յանկարծ տեսնալու մեծ բաղդ ունեցայ, պէտք է որ պզտիկ ուրախութիւն մ'ընենք։

Հրամայեց ճրագները վառել, տաք ջուր, օղի ու ծխախոտ բերել տուաւ, ու վառարանին կրակը քիչ մը արծարծելով՝ գնացին սեղանին չորս կողմը նստան։ Հէլլի սրտաշարժ կերպով մը նոյն օրուան գլուխն եկածը սկսաւ պատմել. Լօքէր լուռ մտիկ կ'ընէր. իսկ Մարք թօնչ շինելու զբաղած ըլ-

չալով՝ երբեմն երբեմն միայն կը վերցնէր աչուըները ու Հէլիին կը նայէր։

— Վերջապէս ամէն կերպով պզտիկ ին-կար... հա՛, հա՛, հա՛... ծիծաղելով ըսաւ Մարք Հէլիին։

— Պէտք է խոստովանիլ՝ որ քարն աղէկ տեղը դրուեր է, վրայ բերաւ Լոքէր։

— Ի՞նչ ընեմ, պատասխանեց Հէլի, տը-ղոց տառուտուրը միշտ այսպիսի նեղութիւն-ներ հետը ունի։

— Թէ որ կարելի ըլլար, ըսաւ Մարք, անանկ տեսակ մը կանայք գտնել որ այն-չափ գութ ու խնամք չունենային իրենց տը-ղոց վրայ, այս բանս մեր քաղաքականա-ցեալ դարուս մեծ ու երևելի գիւտերէն մէկը կ'ըլլար։

— Իրաւցընէ՜ ... պատասխանեց Հէլի. ես ալ դեռ չեմ կրցած հասկընալ մայրերուն իրենց տղոց վրայ այս տարիճանի սէր ու-նենալնուն պատճառը. տղաք իրենց մայ-րերուն հոգ ու սրտմաշուք տալէն զատ ու-րիշ բան չունին, որով կարծես թէ աւելի գոհ պիտի ըլլային մայրերը որ զիրենք ան նեղութենէն կ'ազատենք. բայց այնպէս չէ. որչափ որ տղայ մը անհանդարտ է՝ ինչպէս են սովորաբար ամէն տղաք, այնչափ ալ ա-ւելի մօրերնուն սիրելի կ'ըլլան։

— Պ. Հէլլի, սա տաք ջուրն հոս տար, ըսաւ Մարք։ Նոյն բանը իմ մաքէս ալ անցեր է, կրկնեց. երբոր տառուտուրի մէջ էի՝ գեղեցիկ կերպարանքով ու խելացի օրիորդ մը գնեցի, որ հիւանդոտ և կուզ զաւակ մ'ունէր. ողորմելին սատակ մ'ալ չէր արժեր. չէի գիտեր թէ ի՞նչ ընեմ. առի իմ բարեկամիս մէկուն տուի որ մեծցնէ զանիկայ. մաքէս ալ չէր անցներ բնաւ որ այս բանիս համար մայրը ձայն հանէ։ Բայց սակայն հօն պէտք էիր ըլլալ ու տեսնել թէ ի՜նչ վայնասուններ ըրաւ. իբրև թէ ամէն բան կորսընցուցած ըլլար՝ սկսաւ պոռալ ու աղաղակել, և գրեթէ խենդցաւ. կարծես թէ հիւանդութեանը և զինքը նեղացընելուն համար աւելի կը սիրէր զանիկայ։ Շիտակը շատ ծիծաղական բան է... ամէն կնիկ մարդիկ ալ ա՞յսպէս կը մտածեն արդեօք... Հը՜մ, խելքս չի հասնիր...։

— Մի և նոյն բանը իմ գլխէս ալ անցաւ, վրայ բերաւ Հէլլի. անցեալ ամառ երբոր Կարմիր[1] գետն իջայ՝ կին մը գնեցի որ աղուորիկ տղայ մ'ալ ունէր, որուն ա-

1. Միսիսիփի մեծ գետին ճիւղերէն մէկը՝ 2,400 քիլոմէտր երկայնութեամբ, որ Միացեալ Նահանգաց Լուիզիանա նահանգէն կ'անցնի։

չուլները հրամանքինիդ պէս կը փալփըլէին, բայց մօտէն քննեցի տեսայ՝ որ կոյր է եղեր. անոր համար տակառ մը օղիի հետ փոխնորդ ըրի. բայց երբոր աղան մօրը գրկէն բաժնել կ'ուզէին՝ տեսնես մայրը էգ վագրի պէս կատղեցաւ։ Դեռ ճամբայ չէինք ելած, անոր համար պերիներն ալ շղթայի չէի զարկած. մէյ մ'ալ նայիս մայրը ցատքեց թամբակի բեռան մը վրայ, ու նաւավարի մը ձեռքէն դանակն յափշտակեց, և մահ սպառնալով զաւկները փախուց. բայց վերջը տեսնելով որ ճար չկայ՝ աղան գիրկը՝ ինքզինքը գետը նետեց, մէ՛յ մ'ալ չերևցաւ։

— Բա՛րէ... պատասխանեց Լոքէր արհամարհանօք, դուն բան չես գիտեր եղեր, իմ պերիներուս մէջ այդպիսի բաներ չեն հանդիպիր։

— Իրա՞ւ կ'ըսես. ուրեմն դու ի՞նչպէս քու պերիներուդ հետ կը վարուիս, հարցուց անգլիէն Մարք հետաքրքրութեամբ մը։

— Ի՞նչպէս պիտի վարուիմ... երբոր իմ պերի կանանցս մէկուն աղան կ'ուզեմ ծախել՝ շիտակ իրեն կ'երթամ, ու զինքը դիմացս կ'առնեմ, և ձեռքս կզակին տակը կը դնեմ ու կ'ըսեմ. «Աղէկ նայէ, եթէ ձայն մը հանես, գլուխդ կը ջախջախեմ, ինչ որ

հիմայ ըսեմ քեզի մտիկ պիտի ընես ու ամենեւին ձայն պիտի չլսեմ»։ — Ան ատեն կը դառնամ կ'ըսեմ իրեն. «Քու տղադ քուկդ չէ, հապա՛ իմս է, դուն՝ ա՛լ անոր հետ բան չունիս, առաջին անգամ որ առիթ գտնիմ՝ զանիկայ պիտի ծախեմ. ուստի շատ լաւ պոռալ չեմ ուզեր, թէ չէ՝ զքեզ անանկ կը տանջեմ՝ որ ծնած ըլլալուդ վրայ կը զղջաս»։ Այս կերպով ահա կը հասկընան որ ինծի հետ գլուխ պիտի չկարենան ելլել, անոր համար ձայներնին կը քաշեն, կը սմքին կը մնան. թէ կրնայ՝ անոնցմէ մէկը թող ձայն հանէ...։ Այս խօսքին՝ Լօքէր ձեռքը այնպէս մը սեղանին վրայ զարկաւ՝ որ վրայի բաները շարժ եղան։

— Ասոր կ'ըսեն գործ տեսնել, ըսաւ Մարք ծիծաղելով. այս պարոն Լօքէրը ինչ կարգէ դուրս մարդ է. հէ՜, հէ՜, այդ կերպով իր ձեռքին տակը եղող սեւերը որչափ ալ յամառ ըլլան՝ բռնի կարգի կու գան. շիտակը՝ Լօքէր՝ դու թէ որ սատանայ ալ չես, անոր երկուորեակ եղբայրը կրնաս ըսուիլ. է՜, ասիկայ քեզի պարծանք մ'է։

Լօքէր այս քաղաքավարական ու գովեստի խօսքերուն վրայ՝ համեստութեամբ մը շնորհակալ եղաւ։ Հէլի որ այս միջոցին ա-

*ղէկ խմելու զբաղած էր, սկսաւ թեթեւութիւն մը զգալ, և անսովոր կերպով մը իր բարոյական կարողութիւնները սկսաւ դուրս տալ, ինչպէս որ յաճախ կը պատահի սոյնպիսի գինովածոց մէջ ծանրագլուխ ու խոհեմ մարդկանց։...*

*— Շիտակը գրուցեմ, Լոքէր, ըսաւ, դու շատ խիստ բնութիւն մ'ունիս, ինչպէս շատ անգամ ըսեր եմ քեզի. միտքդ կու գա՞յ Նէյչիզ քեզի հետ այս բաներուս վրայ խօսածներս. քանի՞ անգամ ըսեր եմ քեզի որ անոնց հետ պէտք է անուշութեամբ վարուիս. անով միայն կրնանք զանոնք մեզի շահաւոր ընել, և բաղդերնիս ալ կը բանի՝ երկնից թագաւորութիւնը մտնելու, երբոր այս աշխարհքիս վրայ ամէն բան լմնցնենք ու ալ վաստակ ընելու բան չգտնենք։*

*— Մենք աս բաներս շատոնցուընէ գիտենք, պատասխանեց Լոքէր. հոգիդ սիրես՝ սա ափեղցփեղ խօսքերդ մէկդի դիր. սամոքսս աւրուեր է։ Աս ըսաւ, ու կէս գաւաթ օղի անկեց։*

*— Ինծի մտիկ ըրէ, կրկնեց Հէլի՝ երկըննալով աթոռին վրայ. նայէ ինչ կ'ըսեմ. Ես այնպիսի առուտուրի ետեւէ ըլլալ կ'ուզեմ որ շուտ ու շատ վաստըկցընէ. բայց*

տակէ ալ ինչ կ՚ըլլէ, վերջապէս այս ալ-կը լըմըննայ. սա մէյ մը հոգինիս նայինք՝ բանը հոն է։ Գիտեմ որ այս խօսքերուս վրայ պիտի խնտան լսողները, բայց փոյթս ալ չէ, զիս ոչ ոք կրնայ արգիլել որ իմ կարծիքներս չկարենամ համարձակ զուրցել։ Ես կրօնքի վրայ հաւատք ունիմ, և այս օրերս երբոր բաղդս շինեմ՝ միտք ունիմ որ քիչ մ՚ալ հոգիս հոգամ. ան ալ հարկաւոր բան մըն է։ Ինչո՞ւ հարկ չեղած ատեղը չարիք ընեմ. այս բանս ինծի խոհեմութիւն չ՚երեւար։

— Ի՞նչ, պատասխանեց Լոքէր արհամարհանօք, դու հոգի՞դ մի պիտի հոգաս, պարապ ատեղը մի՛ աշխատիր. առաջ ան նայէ թէ արդեօք դու հոգի ունի՞ս. սատանան զքեզ աղէկ մը մաղելու ալ ըլլայ, քու կաշիդ տակը անանկ բան չի գտներ։

— Այսօր ամէն բան գէշ մտքի կ՚առնուս, վրայ բերաւ Հէլլի. ինչո՞ւ չես ուզեր որ քու աղէկութեանդ համար քանի մը խօսք խօսիմ։

— Բաւական է, բաւական. քեզի ըլլան այդ մամածուկ ու անմիտ խրատներդ. զիս այսպիսի փուճումուճ խօսքերով մի՛ նեղացըներ։ Դու ինծմէ ի՞նչ տարբերութիւն

ունիս. ինծմէ աւելի սի՞րտ ունիս, սուտ է, բոլորն ալ պարզ կեղծաւորութիւն է, դու՛ քու շահուդ համար կարելի ըլլար՝ սատանան ալ խաբելու ետեւէ կ'ըլլայիր։

— Խօսք չգտա՞ր, Լոքէր, պոռաց անդիէն Մարք. հիմայ այդ բաները մէկդի թողուցէք. ասոնցմէ մեզի ի՞նչ շահ կայ. ամէն մարդ իր առանձին մտածմունքն ունի։ Պ. Հէլին բարեսիրտ ու խղճմտանքաւոր մարդ է եղեր, շատ լաւ. դու ալ, Պ. Լոքէր, քու առանձին մտածութիւնդ ունիս, ան ալ լաւ. երկուքնիդ ալ իրաւունք ունիք. բայց այս վէճերէն օգուտ մը չ'ելլեր. մենք սա մեր բանը նայինք։... Ուրեմն, Պ. Հէլի, ի՞նչ պիտի ընենք... կ'ուզե՞ս որ սա կնիկը ձեռք ձգելու համար քեզի օգնենք։

— Կնկան ետեւէն իյնալն ինծի չի վերաբերիր, վասն զի անիկայ Պ. Շէլպիին է, ես տղան միայն կ'ուզեմ ձեռք ձգել.... ո՛հ, ի՞նչ խենդութիւն էր ըրածս որ ատ չըլլալուն գնեցի։

— Աս աղջիկը չէ, մոմռաց անդիէն Լոքէր քթին տակէն։

— Է՛յ, բաւական է Լոքէր, կրկնեց Մարք, պռկունքները լզելով. մէկզմէկ նախատելէն ի՞նչ կ'ելլէ։ Պ. Հէլի, հոգ մի՛ ը-

ներ, այսպիսի բաները իմ ձեռքէս կու գան ... Աս բաժդ ի՞նչպէս կնիկ է, ո՛վ է տեսնենք։

— Ճերմակ, գեղեցիկ ու բարեկիրթ կին մըն է. այնպէս որ՝ Պ. Շէլլին թէ որ ուժ հարիւր կամ հազար ոսկարի ալ ինծի տալու ըլլար՝ մէկ սորկի պէս կ՚առնէի, ու միրան վստահ ալ կինայի ընել։

— Ճերմակ, գեղեցիկ, բարեկիրթ է եղեր ... մռմռաց Մարք, սրտէն մեծ փափաք մ՚անցընելով որ իրենն ըլլար ու ինքը ծախէր։ Նայէ, Լոքէր, նայէ ձեռքերնիս ի՞նչ աղէկ առիթ ինկաւ վստահ ընելու, պէտք չէ փախցընել. ետևէն իյնանք ու սուտկայ ձեռք ձգենք. բնականաբար տղան Պ. Հէլլին է, իսկ մայրը մենք երկուքնիս Նոր-Օրլէան կը տանինք ու հոն մեր հաշուին կը ծախենք. ի՞նչ կ՚ըսես դու, Պ. Լոքէր, աղէկ չէ՞։

Լոքէր այս խօսքերուն աղէկ ուշադրութիւն ընելէն վերջը՝ հաւանութեան նշան տուաւ։

— Ինծի մտիկ ըրէ, ըսաւ Մարք՝ բօնչին գաւաթը ձեռքէն վար դնելով. գետին մօտերը ամէն տեղ դիւրահաւատ ու բաներնուս յարմար դատաւորներ պակաս չեն,

ամէն ուզածնիս ընել կու տանք անոնց։ Թէ որ կուխ պէտք ըլլայ՝ ահաւասիկ Պ. Լոքէրը կեցեր է. իսկ թէ որ երդումն ուզեն՝ ես կեցեր եմ. սպիտակ հագուած, փայլուն կօշիկներով առջինին կ'ելլեմ, տեսնաք թէ ինչպէս ամէն բան կը յարմարցընեմ։ Հէ՜, աս առաջին անգամը չէ. օր մը Նոր-Օղլէանցի պարոն մ'եմ, ուրիշ օր մը այս անուն պաւառին մեծ հողատէրներէն մէկն եմ, ուր եօթն հարիւր գերի ձեռքիս տակը կ'աշխատին. ալ ինչ ըսեմ։ Ամէն կատարելութիւն ամէն մարդու տրուած չէ. Լոքէրը կուխ ընելու մէկ հատիկ է, բայց սուտ ըսելու ամենևին յարմարութիւն չունի. այս արուեստին մէջ բանի չի գար։ Թէ որ աշխարհիս վրայ ինծի պէս ուրիշ մ'ալ գտուի որ կարենայ ինչ բանի վրայ ալ որ ըլլայ, որո՛ւն գլխոյն ալ որ ըլլայ՝ անայլայլակ կերպով երդուըննալ, ինչ որ կ'ուզէ կու տամ։ Դատաւորաց ձեռքին մէջ օձաձուկի մը պէս կը սահիմ. բայց զուարճալին որն է գիտե՞ս... երբոր ես իրենց ուզածէն աւելի մանրամասնաբար տեղեկութիւն կու տամ։...

Լոքէր՝ որ ինչպէս տեսանք՝ պանպաղ էր իր շարժմանց ու մտածմանցը մէջ՝ յանկարծ

ձեռքը սեղանին վրայ զարնելով — Շա՛տ լաւ, պոռաց ուրախութեամբ, յանձն կ'առնում ես այդ առաջարկութիւնը։

— Է՛, հասկըցանք, պատասխանեց Մարք, գաւաթներն ալ կոտրել ի՛նչ պէտք է, հարուածդ ուրիշ լաւագոյն առթի մը պահէ։

— Բայց ինծի ալ, պարոն, ըսաւ Հէլի, շահ մը չկա՞յ ատկէ։

— Քեզի՞... դու տղան պիտի առնես, պատասխանեց Լոքէր. բաւական չէ՞, անկէ աւելի դեռ ի՞նչ կ'ուզես։

— Բայց, վրայ բերաւ Հէլի, ձեր այս շահուն պատճառը ես ըլլալով՝ պէտք է որ վաստակին հարիւրին տասը ինծի մասն հանէք։

— Քե՛զի պէս... պոռաց Լոքէր՝ հայհոյանօք ու ձեռքը սեղանին վրայ զարնելով. միտքդ ի՞նչ գրեր ես, միթէ քու շահուդ համար միայն այն փախստական կընկան ետեւէն պիտի իյնանք, հէ՞. աս բանը մտքէդ հանէ՛. մայրը մենք կ'առնենք ու դուն մեզմէ բան մ'ալ պիտի չպահանջես. ապա թէ ոչ՝ մայրն ալ տղան ալ մենք կ'առնենք, հա՛. ո՞վ կրնայ դէմ դնել։ Դու մեզի որը ցըցուցիր, ա՛լ հիմայ մենք ա-

զատ ենք, ուզածնիս կրնանք ընել, դու մեզմէ ի՛նչ աւելի իրաւունք ունիս. Թէ որ դու կամ Շէլլին ուզենաք զմեզ դատաստանի կանչել, բաներնիդ շա՜տ լաւ է, տեսնենք թէ ո՞վ կը յաղթէ. Թէ որ կ'ուզէք՝ փորձեցէք:

— Աղէկ, աղէկ, պատասխանեց շփոթելով Հէլլի, ինչպէս որ ըսիր՝ միայն տղան տուր ինծի. չէ, բարեկամ, չէ. դու գիտեմ որ խօսքդ կը պահես, եկուր զուր տեղը մէկմէկու հետ չաւրուինք:

— Դու ալ աղէկ գիտես, կրկնեց Լոքէր, որ ես քեզի պէս խեղճ մարդ չեմ, բայց առուտուրի մէջ՝ սատանայի հետ ալ ըլլայ՝ խարդախութիւն չեմ ըներ, խօսքս խօսք է. բան մը որ խոստանամ՝ կը կատարեմ, դու ալ աղէկ գիտես, անանկ չէ՞...

— Գիտեմ, գիտեմ, Լոքէր, պատասխանեց Հէլլի. Թէ որ ուզես ինծի խօսք տալ որ մէկ շաբաթուան մէջ տղան կարենաս ձեռքս հասցընել՝ ա՛լ քեզմէ ուրիշ բան չեմ ուզեր:

— Բայց իմ ուզածս այս չէ միայն, կրկնեց Լոքէր, ուրիշ բան մ'ալ կայ. միտքըդ կու գա՞յ, Հէլլի, Նէյշիլզի մէջ քեզի համար կրած աշխատութիւններս. ի՞նչ կար-

ծես, անոնք ես ձրի՞ կըլլեցի. ձեռքս ինկած օձաձուկը բռնելը ես գիտեմ. Հիմայ այս առիթը չեմ փախցըներ. պէտք է որ ինծի յիսուն տոլլար տաս, թէ որ կ'ուզես որ աղան ձեռքդ հասցընեմ, ապա թէ ոչ գնա դու անոր խէրը տես. ես զքեզ աղէ՛կ կը ճանչնամ։

— Ի՞նչ կ'ըսես, պոռաց Հէլլի, ձեռքդ այնպիսի գործք մը ձգեցի որ քեզի հազար, հազար հինգ հարիւր տոլլարի վաստակ կը բերէ, գիտե՞ս... Շիտակը, Պ. Լոքէր, ուզածդ շատ անիրաւ պահանջմունք է։

— Ամենևին անիրաւ չէ. ի՞նչ կարծես այս բանս քանի՞ շաբաթուան մէջ կը լմըննայ. ենթադրէ թէ ամէն բաներնիս թռղուցած՝ ասդին անդին այս աղան փնտռելու պիտի ելլենք, և թէ որ վերջապէս չըկարենանք մայրը ձեռք ձգել, — որովհետև այդ թշուառականները դժուարաւ կը բռնուին — ան ատենը ի՞նչ պիտի ընենք. դու մեզի զանկ մ'ալ կու տաս... Այնպէս բան չ'ըլլար, դու հիմակուընէ համբէ նայիմ ինծի սա յիսուն տոլլարը. թէ որ բաներնիս յաջողի՝ նորէն քեզի կը դարձընեմ զանոնք, թէ որ չյաջողի՝ աս սատակը մեր անօգուտ տեղը կրած աշխատութեանցը

փոխարէն կը համարինք. դու ինչ կ'ըսես Պ. Մարք:

— Անանկ է անանկ, պատասխանեց Մարք ժպտելով. տարիկայ ուրիշ բան չէ՝ բայց եթէ կանխիկ վճարում մը. մենք օրէնսգէտ մարդիկ ենք, այս բաներուս աղէկ անդեկութիւն ունինք. Լոքէրը զաղան ուր որ կ'ուզես հոն կը տանի. անանկ չէ՞ Լոքէր:

— Թէ որ տղան ձեռք բերեմ, պատասխանեց Լոքէր, Զինչինատի կը տանիմ, ու հոն հարաւանատեզւոյն մօտ՝ մէկ բարեկամիս կը յանձնեմ:

Մարք գրպանէն եղռուած թղթապանակ մը հանեց, ու մէջէն երկայն թուղթ մը դուրս քաշելով սկսաւ քթին տակէն կարդալ: — Նայինք, ըսաւ, ընելիքներնուս ցանկը:

« Պոռնս — կոմսութիւն Շէլպեայ — Ճէյմ տղան ողջ կամ մեռած բռնողին 300 տոլլար: Էտվըրտ — Տիք ու Լիւսի — այր և կին, 600 տոլլար: Բոլի կնիկը իր երկու տղոցմովը, ողջ կամ մեռած, 600 տոլլար ...» Մեր գործողութեանց ցանկը աչքէ կ'անցընեմ, նայինք թէ քու բանդ ալ դիւրաւ յանձն կրնանք առնուլ: — Վերջը դարձաւ, Պ. Լոքէր, ըսաւ, Աբրինկէրն ու

Ռամոնը այն նաքլիններուն մասէն զրկելու ենք։ Շատ ատեն է որ նշանի ենք զանոնք։

— Բայց անոնք քիչ բանով գոհ չեն ըլլար գիտե՞ս, պատասխանեց Լոքէր։

— Դուն հոգ մ՚ըներ, ես ամէն բան կը յարմարցընեմ. դեռ անոնք շատ բանի գործի մէջ մտած չեն. յուսամ թէ ես զանոնք քիչ բանով գոհ կ՚ընեմ, ըսաւ ու սկըսաւ կարդալը շարունակել։ Այս վերջի երեքին բանը, կրկնեց, դիւրին է. վասն զի կամ սպաննելու է զանոնք, և կամ սպաննուած ըլլալնուն վրայ երդմունք ընելու է, ուրիշ բան չ՚ուզեր. իսկ մէկալ մնացածներուն մասէն իյնալը, ըսաւ՝ թուղթը ծալլելով, կրնանք քիչ մը ուշացընել։... Հիմայ մենք մեր բանին գանք... Պ. Հէլի, երբոր այդ կինը գետին մէկալ կողմն ելաւ, դուն նորէն զինքը տեսա՞ր։

— Ինչ ըսել է, պատասխանեց Հէլի, այնպէս որոշ տեսայ, ինչպէս հիմայ զքեզ դիմացս անկուած կը տեսնեմ։

— Մէկը իրեն օգնե՞ց, որ ցամաքն ելլէ, հարցուց Լոքէր։

— Հրամեր ես։

— Շատ հաւանական է, վրայ բերաւ Մարք, որ զինքը մէկը իր տունը առած

ըլլայ. բայց թէ ուր, բանը հոն է գիտնալը. ի՞նչ կ'ըսես, Պ. Լոքէր։

— Ի՞նչ պիտի ըսեմ. պէտք է այս գիշեր գետէն անդին անցնիլ։

— Բայց նաւակ չկայ, ըսաւ Մարք, գետն ալ ահագին սառերով ծածկուած է, ուսկից անցնիլը շատ վտանգաւոր բան է։

— Ես անանկ բան չեմ գիտեր, պէ՛տք է որ անցնինք, պատասխանեց Լոքէր հաստատ ձայնով ու դէմքով մը։

— Տեսնենք... վրայ բերաւ Մարք այլայլելով. բայց իրաւցընէ աս գիշերս ալ շատ մութ է... Այս ըսելով՝ գլուխը պատուհանէն դուրս երկընցուց։

— Իմացայ որ դուն կը վախես, Մարք, բայց ճար չկայ, պէտք է երթալ. թերևս կ'ուզէ՞ր որ մէկ երկու օր ալ սպասէինք, ինչուան որ աս կնիկը ժամանակ գտնելով մեզմէ առաջ Սէնթըլուքիէն[1] կամ ուրիշ կողմանէ Գանատայի սահմանագլուխը անցնի, հէ՞։

— Ո՛, ես ամենևին վախ ըրած բանդ չունիմ, պատասխանեց Մարք, բայց...

— Բայց ի՞նչ, հարցուց Լոքէր։

— Նաւակ չկայ։

1. Սահմանագլուխ Գանատայի։

— Պանդոկապետին կնոջմէն լսեցի, որ այս գիշեր մարդ մը կայ՝ գետէն անդին անցնող, ինչ որ ըլլայ ըլլայ, մենք պէտք է որ անոր հետ անցնինք։

— Լաւ շներ ունի՞ք, հարցուց Հէլի։

— Հէ՛, հէ՜, սքանչելի՜ շներ, պատասխանեց Մարք, բայց ի՞նչ բանի կու գան. կնկանը մէկ հագուստը պէտք էր՝ որ հոտուըտալ տայինք անոնց։

— Հոս մէկերկու բան ձգեր է, պատասխանեց Հէլի ուրախութեամբ. արտորանօք փախչելու ժամանակ՝ շալն ու գլխարկը անկողնին վրայ մոռցեր է։

— Ո՜, այս աղէկ եղաւ, ըսաւ Լոքէր, տուր ինծի տեսնեմ։

— Բայց շները չըլլայ թէ կատաղաբար խեղճ կնկան վրայ յարձակելով վնաս մը ընեն, վրայ բերաւ Հէլի։

— Հը՛մ... այս ալ մտածելու բան է, կրկնեց Մարք. անցեալները Մըպայլ ըսուած տեղը՝ մեր շները գերիներէն մէկը պատառ պատառ ըրին. ետեւէն ալ չկրցանք հասնիլ որ ողորմելին անոնց բերնէն ազատէինք։

— Այս տեսակ վաճառքներուն՝ որ իրենց գեղեցկութեան համար կը ծախուին, շները հարկաւոր չեն, ըսաւ Հէլի։

— Իրաւ է, վրայ բերաւ Մարք. թէ որ անիկայ սուտ մը մտեր է, չներն ի՞նչ բանի կրնան գալ. չները բաց դաշտերու մէջ աղէկ կը ծառայեն, ուր գերիները փախչելու ալ ըլլան՝ չները համարձակ ետեւնէն կրնան հասնիլ։

Լոքէր նոյն ատենը վար իջեր էր՝ որ գետին մէկալ կողմն անցնող մարդուն ե՛րթ գալը հարցընէ, մէյ մ՚ալ վազելով վեր ե-կաւ. — Երթանք, երթանք, լսաւ, գետը անցնողն եկեր է, շուտ ըրէ Մարք։

Պարոն Մարք այն հանգիստ ու տաքուկ խուցէն ելլելուն վրայ ցաւելով, տխուր կեր-պով մը չորս կողմը նայեցաւ, ու մեծ դը-ժուարութեամբ դուրս ելաւ։ Հէլը՝ Լոքէրին հետ ընկերքնին որոշելէն վերջը՝ 50 տո-լարն ալ չուզելով համրեց, ու այս մեծա-րոյ ընկերութիւնը քակուեցաւ։

Եթէ մեր աղնիւ ու կիրթ ընթերցողնե-րէն ոմանք տհաճութիւն մը զգան թէ ին-չո՞ւ այս անպիտան ընկերութեան վրայ խօս-քերնիս այսչափ երկընցուցինք, կը համար-ձակինք ըսելու՝ որ այս նախապաշարմունքս մէկդի թողուն. վասն զի փախչող գերեաց որսորդութիւնը, ներեն մեզի ըսելու, մեր մէջ հիմայ օրինաւոր ու ազգասիրական ա-

րուխոս մը պարզեր է։ Քանի որ Ամերիկայի Միացեալ–Նահանգաց երկիրը՝ Միսիսիփիէն սկսեալ մինչև Խաղաղական Ովկիանոսը՝ մարմնոց ու հոգւոց ընդարձակ վաճառանոց մը դարձած է, և մեր ժթ դարուն հսկայաքայլ յառաջադիմութեանց պէս մարդկեղէն ստացուածքն ալ կ՚ընդարձակի ու առաջ կ՚երթայ, շատ տարի չ՚անցնիր որ գերեվաճառները ու գերեաց որսորդները Ամերիկայի ազնուականաց կարգը պիտի դասուին։

Մինչդեռ պանդոկին մէջ այս հանդէսները կը կատարուէին՝ Սամուէլն ու Անդրէասը իրենց ուզածը յաջողելուն վրայ ուրախ ու գոհ սրտով՝ վազելով տուն կը դառնային։

Սամուէլն ուրախութենէն ճամբան ըրածը չէր գիտեր. երբոր տուն մօտեցան՝ իր ուրախական երգերովը պոռալներովը և սուլելովը բոլոր անտառը կը թնդացընէր. վերջապէս ժամը տասն անցած՝ տանը բակը մտան։ Ծէլլիի խաթունը որ մինչև այն ատեն անհանգիստ կը սպասէր, ասոնց ձիերուն ոտքին ձայնը լսելով՝ մէկէն պատուհանը վազեց, ու. — Դո՞ւք էք, Սամուէլ, հարցուց, ի՞նչպէս եղաւ։

— Պ. Հէլլին, խաթուն, հոն պանդոկը մնաց, խեղճը շատ յոգնած է։

— Հապա Եւլիզա՞ն։

— Անիկայ Յորդանանէն անցաւ, ու ինչպէս որ կ՚ըսեն՝ հիմայ ինքը Քանանու երկիրն է։

— Ի՞նչ կ՚ուզես ըսել, Սամուէլ, պատասխանեց խաթունը, այլայլած ու գոյնը նետած, կարծելով թէ դժբաղդութիւն մը պատահած ըլլայ[1]։

— Խաթուն, Աստուած իրեններըը կը պաշտպանէ. Եւլիզան անանկ հրաշալի կերպով Օհիոյ գետն անցաւ՝ որ կարծես թէ Աստուած հրեղէն կառքով զինքն յափշտակեց տարաւ։

Սամուէլ իր տանտիկնոջը գիմացը կրօնքի վրայ մեծ եռանդ մը կը կեղծէր, ու սուրբ Գրոց նկարագրական պատմութեանց վրայ մեծ համարմունք մը կը ցուցընէր։

— Սամուէլ, հոս եկուր, ըսաւ Պ. Շէլպի, որ ինքն ալ պատուհանն ելեր էր, ու եղածները պատմէ խաթունին։ Եկուր երթանք, Եմիլիա, ըսաւ կնոջն ալ, ու թեւը մտաւ. այս ի՞նչպէս մեռեր ես ու կը դողաս, դու ալ ամէն բանէ մէկէն կ՚այլայլիս։

1. Վախնալով որ չըլլայ թէ մեռած ըլլայ. Յորդանանէն անցնիլն ու Քանանու երկիրը մտնելը՝ այս աշխարհէս անդին աշխարհը անցնիլ կարծելով։

— Ի՞նչպէս չայլայլիմ, պատասխանեց խաթունը. մայրական զգացմունք չունի՞մ... երկուքնիս ալ պատասխանատու ենք Աստուծոյ առջեւ այս աղջկան համար.... Տէ՛ր Աստուած, մի՛ յիշեր մեր այս մեղքը։

— Մե՞ղք մի... մեղքը ո՞րն է, պատասխանեց Շէլպի, չտեսա՞ր ինչ աստիճանի կարօտութեան մէջ ինկեր էինք։

— Քանի որ այս ըրածնիս կը մտածեմ՝ կը սարսափիմ. չեմ կրնար խիղճս հանդարտեցնել։

— Անդրէաս, հօս եկուր. ծօ սև աղբարներ արթընցէք, կը պոռար Սամուէլ բակին մէջ. սա ձիերը ախոռ տարէք։ Զըլսեցի՞ք որ տէրս զիս կանչեց. ու մէկէն ներս մտաւ արմաւենիէ գլխարկն ալ ձեռքը։

— Սամուէլ, ըսաւ Շէլպի, սա եղածը մէկիկ մէկիկ պատմէ ինծի նայիմ. հիմայ Էլիզան ո՛ւր է գիտե՞ս։

— Տէր իմ, պատասխանեց Սամուէլ, ես իմ աչքովս տեսայ որ սառոյցներուն վրայ ցատքելով՝ գետին անդիի կողմն անցաւ. այսպիսի բան կենացս մէջ չէի տեսեր. իրաւցընէ հրաշք էր։ Գետին անդիի եզերքը մարդ մ'ալ տեսայ որ օգնեց իրեն դուրս

ելլելու. բայց մշուշը վրայ հասնելով՝ եր-կուքն ալ աներևոյթ եղան, անոր համար չկրցայ ո՛վ ըլլալը իմանալ։

— Սամուէլ, կրկնեց Շէլպի, պատմածդ շինծու բան մը կ'երևայ ինծի, սառոյցնե-րուն վրայէն ցատքելով գետէն անպլին անց-նիլը դիւրին բան չէ, բայց...

— Դիւրի՛ն... առանց Աստուծոյ յայտնի օգնութեանն ո՛վ կրնայ այնպիսի բան ընել. հիմայ պատմեմ հրամանքիդ թէ ի՛նչպէս ե-ղաւ։ Պ. Հէլլին և ես ու Անդրէասը գետեզեր-քի պանդոկին հասանք. ես իրենցմէ քիչ մ'առաջ էի, այնչափ Ելիզան ձեռք ձգելու փափաք ունէի՝ որ տեղս հանդարտ չէի կըր-նար կենալ։ Երբոր պանդոկին մօտեցանք՝ մէջ մ'ալ ի՞նչ կը տեսնես... Ելիզան պա-տուհանը կեցեր էր. Հէլլին ու Անդրէասն ալ ետևէս հասեր էին. նոյն ատեն չեմ գի-տեր ի՛նչպէս եղաւ՝ գլխարկս գլխէս վար ինկաւ, ես ալ այնպիսի պոռալ մ'է փրցու-ցի՝ որ մեռելներն անգամ կրնային արթըն-նալ։ Ելիզան ձայնս լսածին պէս իմացաւ ու ներս քաշուեցաւ. նոյն ատենն ալ Պ. Հէլլի պանդոկին դէպ ի դուռը կ'երթար. Ելիզան ալ ուրիշ դռնէ մը կայծակի պէս դուրս ելաւ ու առջևնէս շուտ մը անցաւ

դէպ ի գետը վազեց։ Հէլի զանիկայ տեսածին պէս՝ սկսաւ պոռալ ու զմեզ կանչել, և մէկտեղ անոր ետևէն ինկանք։ Եզերքէն տասը ոտք հեռուն՝ սառոյցի մեծամեծ կտորներ կը լողային ու մէկմէկու կը զարնուէին և մէյմէկ շարժական կղզիներ կը ձևացընէին։ Ետևէն հասանք չհասանք ու հա՛ հիմայ պիտի բռնենք ըսելու չմնաց, մէյ մ'ալ այնպիսի սարսափելի ձայն մը հանեց որ լսած չունէի, ու ինքզինքը սառոյցներուն վրայ նետեց. սառոյցներն իրենց հաւասարակշռութիւնը կորսնցնելով՝ սկսան իրարու զարնուիլ ու ջրին տակն երթալ. իսկ ինքը այծի պէս մէկէն մէկալը ցատքելով անդին անցաւ...։ Աս կնկան ունեցած ուժը կարգէ դուրս բան մը կը կարծեմ ես։

Խաթունը որ Սամուէլին այս պատմութեանը ատեն այլայլած՝ բազմոցին վրայ փռուեր էր, — Փա՛ռք քեզ Աստուած, կանչեց, վերջապէս ողջ է մնացեր, չէ մեռած. այս ալ ինծի բաւական է. բայց խեղճը ո՞ւր է արդեօք հիմայ։

— Աստուած զինքը կը հոգայ, խաթուն, պատասխանեց Սամուէլ՝ աչուըները երկինք վերցընելով. ինչպէս միշտ լսած եմ, ինչ-

պէս հրամանքդ ալ, խաթուն, շատ անգամ կը զուրցես՝ Նախախնամութիւն մը կայ, և Աստուած իր կամացը կատարուելուն այլ և այլ միջոցներ կը գտնէ. թէ որ այսօր ես չըլլայի՝ խեղճ Ելիզան հազար անգամ բռնուած էր։ Ես չէի՞ որ այս առաւօտ կամօք ձիերը փախուցի, և թողուցի որ մինչև կէսօր վազվըռտեն, ես չէի՞ որ ամենայն կերպով ջանք ըրի՝ որ այս իրիկուն Հէլի ճամբան հինգ վեց մղոն մոլորած քալէ. ապա թէ ոչ անիկայ ինչուան հիմայ խեղճ Ելիզան ձեռք ձգած էր. այս ամէն բան Նախախնամութեան շնորհքն է։

— Այդ տեսակ Նախախնամութեան շնորհքներուն վրայ լաւ կ'ըլլայ որ կարճ կապես, վրայ բերաւ ծանրութեամբ մը Պ. Շէլպի. ես չեմ ուզեր որ ինծի հետ գործողութիւն ունեցողներուն այդպիսի խարդախութիւններ ի գործ դրուին։

Ինչպէս որ տղու դիմաց՝ այնպէս ալ սեւերուն հետ բարկութիւն կեղծելը շատ դըժուար բան է, տղաքն ալ, սևերն ալ բանին էութիւնը շուտով կ'իմանան. Սամուէլն ալ աղէկ հասկըցաւ տիրոջը այս կեղծեալ բարկութիւնը, անոր համար փոյթը չեղաւ, բայց մէկէն ամփոփուեցաւ ու սկսաւ առջևը նայիլ։

— Իրաւունք ունիք, պարոն, ըսաւ, պէտք չէր ինծի այնպէս ըսել. բայց խեղճ ոև մը, շատ անգամ աւելի գէշ բան ըսելու յարմար է քան թէ աղէկի. մանաւանդ երբոր Հէլիին պէս պարոն մը զիմացնին ելլէ. շիտակը սա մարդը ամենևին կըթութիւն վրան չի ցուցըներ. և ինծի պէս խեղճ մարդն ալ կրնայ մէկէն հասկընալ անոր քանի ստակ արժելը իր անշնորհք կերպերէն։

— Աղէկ, աղէկ, վրայ բերաւ անգլիէն խաթունը, որովհետև յանցանքդ կը ճանչնաս, գնա հիմայ Քլոյէին իմ կողմանէս ըսէ որ քեզի ու Անդրէասին կէսօրուընէ աւելցած քիչ մը ուտելու բան տայ, կարծեմ փորերնիդ անօթի պիտի ըլլայ, որովհետև կէսօրն ալ հանդիստ կերակուր չկերաք։

— Շնորհակալ ենք, խաթուն, որ մեր վրայ այսչափ հոգ կը ցուցընես, պատասխանեց Սամուէլ, ու յարգանօք ծռելով՝ դուրս ելաւ։

Սամուէլ, ինչպէս պատմութեան կարգէն ալ կը տեսնուի, բնական հանճար ունէր, և մանաւանդ իրեն այն վարպետ կերպովը՝ որով ամէն բանի տակէն կ՚ելլէր, կրնար

քաղաքական ընթացքի մը մէջ մեծ պաշտօնի հասնիլ։

Գոհ սրտով և ուրախութեամբ տիրոջը խուցէն դուրս ելածին պէս, արմաւենիէ գլխարկը գլուխը սխմեց ու շիտակ խոհանոցը գնաց. — Հիմայ սա սևերուն ճառ մը խօսիմ, կ'ըսէր ինքիրեն. որ ամէնքն ալ զարմանքներնէն մատերնին խածնեն. ասկէ աղէկ առիթ չէի կրնար գտնել։

Հոս պէտք է այս ալ ըսել որ Սամուէլին մեծ փափաքներէն մէկն ալ քաղաքական ժողովքներու երթալն էր, ուստի Պ. Շէլպի երբոր կ'երթար՝ ինքն ալ ամէն անգամ անխափան հետը կ'երթար. վարպետութեամբ մը ներս կը մտնէր, ու բարձր տեղ մը կեցած՝ ատենախօսաց աղէկ մը խօսածնին մտիկ կ'ընէր, ու վերջը դուրս կ'ելլէր զուարճալի ու ծիծաղական կերպերով իրեն գերեկիցներուն առջևը կը ձևացընէր։ Թէպէտև իրեն ունկնդիրները իրեն պէս խափշիկներ էին, բայց շատ անգամ մեծաւ հաճութեամբ կը տեսնէր ունկնդրաց մէջ սպիտակներ ալ, որ ծիծաղելով իրեն մտիկ կ'ընէին. ուստի այս կերպով ճարտասանի անուն հաներ էր իր նմանեացը մէջ, ու օր օրուան վրայ աւելի պատիւ

կը մեծնար. ինքն ալ առիթ մը ձեռքէ չէր փախցըներ։

Քլոյէի ու Սամուէլին մէջ շատոնց ի վեր հակառակութիւն մը կար, ու մէկմէկու հետ միշտ պաղութեամբ կը վարուէին, բայց նոյն օրը անօթութիւնը տիրած ըլլալով՝ Սամուէլ ուզեց կերպը փոխել. ուստի հանդարտ կերպով մը Քլոյէին առջևն ելաւ, ու իր հալածեալ եղբօրը պաշտպանութեանը համար ներողութիւն քաշողի մը պէս՝ սիրտը կոտրած նստաւ. . ու Քլոյէին պատմեց խաթունին հրամանը. բայց միշտ Քլոյէն խոհանոցին մէջ մեծ ճանչնալ ձևացնելով՝ աւելի աղաչանքի կերպ բռնեցուց։ Ուզածը յաջողեցաւ. Քլոյէն Սամուէլին իրեն ցուցած յարգանքներէն թևերն առած՝ զինքը սեղանի մը զիմաց նստեցուց, ու ամէն ուզածը տալով պէտք եղածին պէս գոհ ըրաւ զանիկայ։

Բոլոր գերիները խոհանոցը լեցուեր էին, որպէս զի եղածը լսեն. ալ Սամուէլը անսանալու էր, յաղթանակին վայրկեանն հասեր էր. ամենայն ճարտասանութեամբ շատ հեղ կրկնեց նոյն պատմութիւնը, ու միշտ նոր նոր կերպեր ու խորհրդածութիւններ աւելցընելով իրականէն աւելի կերպարանք մը կու տար պատմութեան։ Սամուէլին պատմած

ժամանակ՝ սևերուն ունեցած ուրախութիւնը անկարելի է նկարագրել. երբոր անոնք բարձրաձայն կը ծիծաղէին, կը պոռային, կը կանչուըռտէին՝ ինքը ծանր կեցած խոլոր մոլոր մէկուն մէկալին կը նայէր, և մեծ մեծ վճիռներ կ՚որոշար։

— Ինծի նայեցէք, բարեկամք իմ. ով որ ուզէ մեզմէ մէկու մը դպչիլ՝ ամենուս ալ կը դպչի, ըսաւ՝ հնդկահաւի ազդր մը շողացնելով. սկզբունքը մէկ է... որ վաճառականը կ՚ուզէ գայ մեզմէ մէկը գնելու համար, ես ահա կեցեր եմ... ինծի եկէք, ես ան մարդուն խելքը գլուխը կը բերեմ։ ... Ես ինքզինքս ձեզի համար կը զոհեմ, ձեր իրաւունքը, եղբարք իմ, պաշտպանելու համար՝ թէ որ հարկ ըլլայ՝ կեանքս ալ կը նուիրեմ...

— Բայց, Սամուէլ, ըսաւ Անդրէաս, որ մինչև ան ատեն լուռ կեցեր մտիկ կ՚ընէր, քու հիմակուան խօսակցութիւնդ առաւօտեան ըրածիդ հետ չի համեմատիր. աս առտու կ՚ըսէիր որ Ելիզան բռնելու համար Հէլլին օգնելու պիտի երթաս։

— Դուն լուռ կեցիր, Անդրէաս, պատասխանեց Սամուէլ իշխանական կերպով մը. դուն դեռ տղայ ես, ամէն բանի խելքդ չի

*հասնիր. տղաք մարդու մը գործոցը ներքին խորհրդոյն չեն կրնար թափանցել։*

*Անդրէաս այս խօսքին վրայ ձայնը կտրեց ու մէկդի քաշուեցաւ. — Ես, կրկնեց Սամուէլ, խղճմտանքով մտածեցի. կը կարծէի որ տէրս կ'ուզէ Եղիզային բռնուիլը, անոր համար որոշեցի որ ետևէն երթամ. բայց երբոր իմացայ՝ որ խաթունը չ'ուզեր՝ խղճմտանքս աւելի շարժեցաւ, վասն զի խաթունին կողմը բռնելը միշտ աւելի աղէկ ու ապահով է։ Հիմայ իմացա՞ր թէ, ի՛նչպէս ես միշտ իմ խղճիս ազդմանցը կը հետևիմ. ես իմ սկզբանցս մէջ հաստատուն եմ. այո՛ հաստատուն եմ, կրկնեց՝ հաւու վիզ մը խածնելով. ի՞նչ բանի կու գայ սկզբունքը՝ թէ որ մարդ հաստատուն չբռնէ զայն։ — Ա՛ս Անդրէաս, կրծէ սա ոսկորը, վրայէն դեռ միս կ'ելլէ։*

*Բոլոր գերիները Սամուէլին այս ճարտասանական զուրցուածքներուն՝ բերաննին բաց մտիկ կ'ընէին. աս որ տեսաւ՝ նորէն սկսաւ խոշոր խոշոր ջարդել։*

*— Յարատևութիւնը, ըսաւ նրբախօս ճարտասանի մը պէս, յարատևութիւնը այնպիսի բան մ'է՝ որ շատ մարդ աղէկ չէ ըմբռնած։ Մէկը այսօր կ'ելլէ ջերմութեամբ*

բան մը կը հաստատէ, վաղը անոր հակառակը կը գործէ. ռամիկ մարդը հաստատուն միտք մը չունի: — Անդրէաս, սա կարկանդակին կտորն ինծի նետէ: — Բայց օրինակով մը բացատրենք. յուսամ թէ պարոնայք և խաթունայք կը ներեն ընելի բաղդատութեանս: Ես կ'ուզեմ այս խոտի դէզին վրայ ելլել. սանդուղս այս կողմը կը դնեմ, աղէկ չէ. չեմ պնդեր, այլ կ'առնում անդիի կողմը կը դնեմ. վերջապէս դէզին վրայ կ'ելլեմ. յարատեւութիւն չէ՞ ըրածս. որ կողմէն կ'ուզէ ըլլայ. վախճանն է այն դէզին վրայ ելլել. կը հասկընա՞ք:

— Իրաւ շատախօսութեան մէջ ալ յարատեւութիւն ունիս, մոմռաց քթին տակէն Փլայէ, որ գլխուն գալիք դժբաղդութիւնը մտածելով տրտմութիւնը կ'աւելնար:

— Այո, ըսաւ Սամուէլ՝ ոտք ելլելով, այս եղբարք իմ և քորք, ես սկզբանց տէր մարդ եմ. և այս բանիս վրայ շատ ուրախ եմ. սկզբունք ըսածդ ամէն ժամանակ հարկաւոր է, թէ հիմայ և թէ վերջը: Ես հաստատուն եմ իմ սկզբանցս վրայ. և հազար անգամ յանձն կ'առնում կրակը մտնել այրիլ՝ քան թէ անոնցմէ ետ կենալ. ճակատս բաց ի մահ կը դիմեմ, և բարձրաձայն կ'ա-

ղաղակեմ թէ արիւնս կը թափեմ իմ սկըզ-բանցս համար, իմ հայրենեացս համար, ընկերութեան ընդհանուր օգտին համար։

— Է՛, բաւական է, բաւական, ըսաւ Քըլոյէ. սկզբունքներէդ մէկն ալ պէտք ըլլայ երթալ պառկիլ, և ոչ թէ այսչափ հոգւոյ մինչև առաւօտ քունը փախցընել։ Իսկ դուք, տղաք, թէ որ չէք ուզեր խարազանին ձայ-նը լսել՝ ելէք պառկելու գնացէք։

— Է՛յ, ա՛լ բաւական է սեեր, ըսաւ Սամուէլ՝ արմաւենիին գլխարկը շարժելով. ես ձեզի իմ օրհնութիւնս կու տամ. գնա-ցէք պառկեցէք, որ միշտ խելքով վարուիք։

Այս սրտաշարժ օրհնութենէն ետև՝ գե-րիները ցրուեցան, ու ժողովքն ալ լուծուե-ցաւ։

## ԳԼՈՒԽ Թ.

### Աստենակայն ու վերջապես մարդ է։

Ջարդարուն խուցի մը մէջ, ուր կրակա-րանին բոցը երեկոյեան վերջաճաշիկի հա-մար պատրաստուած սեղանին վրայի գա-ւաթներէն ու մաքուր և փայլուն թէյամա-

նէն կ'անդրադառնար, Պէրա անունով ա-տենակալը կրակին քով նստած՝ կօշիկները կը հանէր ու զոյգ մը գեղեցիկ մուճակ կը հագնէր, որոնք իր կինը բաներ էր՝ երբոր ինքը ատենակալաց ժողովոյն գնացեր էր։ Խաթունն ալ սեղանին հարկաւոր բաները կարգի կը դնէր, և երբեմն երբեմն կը դառ-նար ու տղաքը կը չխէր որ հանդարտ կե-նան։

— Թոմիկ, դրան հետ մի խաղար. ա-մենևին հանգիստ պիտի չկենաս... Մարի-ցա... Մարիցա, կատուին պոչէն մի քա-շեր, թող սա խեղճ կենդանին, մի ճուացը-ներ. Յակոբ, սեղանին վրայէն վար իջիր։

— Չես գիտեր, ըսաւ էրկանը՝ երբոր վայր-կեան մը հանգիստ գտաւ, թէ ինչպէս յան-կարծակիի եկանք, վասն զի ամենևին յոյս չունէինք որ այս իրիկուն տուն դառնաս։

— Հազիւ թէ քիչ մը ազատեցայ խոր-հրդարանէն, ըսաւ ատենակալը, գոնէ այս գիշեր հանգիստ քուն մ'ըլլամ... Հոգիս բե-րանս եկեր է. գլուխս ալ կը ցաւի։

— Ո՛ւզե՞ս քիչ մը օղի տամ, հարցուց կնիկը։

— Չէ՛, չէ, Մարիամ. համով ու տաք թէյ մը, ան բաւական է, ոգելից ըմպելիք

չեմ ուզեր...։ Ի՛նչ աշխատութիւն է եղեր օրէնսդրութեան պաշտօնն ալ։

Եւ քթին տակէն ծիծաղեցաւ, իբր թէ հայրենեաց համար զոհ կ'ըլլայ։

— Նայինք խորհրդարանին մէջ ի՛նչ նոր բան հանդիպեցաւ, հարցուց կինը, երբոր սեղանի պատրաստութիւնները լմընցուց։

Պէրային խաթունը սովորութիւն չունէր տէրութեան բաներուն հետաքրքրութիւն ընելու, վասն զի զբաղելու բաւական բան ունէր. անոր համար զարմանալով մը՝

— Նոր բան չկայ, պատասխանեց ատենակալը։

— Լսեցի որ նոր օրէնք մը գրուեր է, որ կ'արգելու ու գետէն անդին անցնող փախստական գերիներուն օգնութիւն չըլլուի։ Իրաւ, լսեր էի որ խորհրդարանին մէջ այնպիսի խօսք մը եղեր է, բայց ոչ երբեք կրցայ ես զիս համոզել՝ որ քրիստոնեայ օրէնսդիր ժողով մը կարող ըլլայ այնպիսի օրէնք մը հաստատել։

— Բայց Մարիամ, կը տեսնեմ որ օր աւուր քաղաքագէտ ըլլալու վրայ ես։

— Իմ գիմացս ձեր քաղաքագիտութիւնը սատակ մ'ալ չ'արժեր. միայն այս կը մտածեմ՝ որ եթէ այդպիսի անիրաւ օրէնք մը

հաստատեն՝ քրիստոնէութեան ու մարդկութեան դէմ լրած կ'ըլլան...։ Յուսամ թէ այսպիսի օրէնք չեն հաստատեր։

— Հիմայ քեզի պատմեմ խորհրդարանին մէջի եղած խօսքերը. ուզեցին օրէնք մը դնել, որ Քէնդըքիի հանքէն փախչող գերիներուն օգնութիւն չըլլուի։ Գերեհանները այնչափ ըրին՝ որ վերջապէս Քէնդըքեցիները սկսան բողոքել. ուստի խաղաղութեան համար պէտք եղաւ՝ որ այս օրէնքը մեր նահանգին մէջ ալ հաստատենք։

— Ի՞նչ... սաստ արգելուած է ուրեմն մեզի ապաւինող խեղճերը գոնէ գիշեր մը տուներնիս պահելու, քիչ մը կերակուր ու հագուստ տալու, և թողլու որ ճամբանին շարունակեն։

— Հրամեր ես, սիրելի, ապա թէ ոչ՝ իրենց գործակից եղած կը համարուինք։

Մարիամ՝ որ բնութեամբ վախկոտ ու ամչկոտ էր, այս խօսքերս լսածին պէս՝ կարծես թէ ինքիրմէ դուրս ելաւ, երեսը կարմրցաւ ու նեղանալով մը։

— Ի՞նչ կը կարծես, սիրելի, ըսաւ իր էրկանը, այս օրէնքը արդար ու քրիստոնէավայել բա՞ն է։

— Կը յուսամ որ շատ չես սրդողիր,

պատասխանեց ասենակալը, երբոր լսեց որ ես ինքս ալ նոյն օրէնքը Հաստատողներէն մէկն էի։

— Ամօ՛թ, կրկնեց կնիկը, ես այս բանս քեզմէ չէի յուսար ամենեւին… խե՛ղճ ողորմելի գերիներ, անոք և անօգնական…։ Այս անիրաւ ամօթալից և ատելի օրէնքը չպահողներէն առջինը ես պիտի ըլլամ, և յուսամ թէ առիթ չի պակսիր։ Ի՞նչ կարգէ դուրս հրաման է. աս ի՞նչ ժամանակներու հասանք, որ ես իմ տանս մէջ պիտի չկարենամ իմ ազատութեամբս խեղճ ու սովալլուկ տառապեալ մ'ընդունելու. միթէ գերի ըլլալովնին ու միշտ բռնութեան տակ ընկճուելովնին՝ մարդասիրութեան դուռը գո՞ց պիտի ըլլայ անոնց դէմ։

— Բայց Մարիամ, մէյ մ'ալ ինծի մտիկ ըրէ. քու զգացմունքներդ շատ վսեմ ու մարդավայել են, անոր համար ինծի ալ ատկէց ետքը ա՛լ աւելի սիրելի պիտի ըլլաս. բայց պէտք չէ որ մեր սրտին զգացմունքները մեր դատողութիւնը շփոթեն։ Օրէնքին առանձնական մեր զգացմունքներուն վրայ չէ. հասարակաց ընդհանուր օգուտը մտածելու է. տարաձայնութիւնը այնչափ սիրեր է՝ որ խաղաղութեան համար առան-

ձնական զգացմունքները պէտք է մէկդի դը-նել. ի՛նչ պիտի ընես։

— Ես քաղաքականութենէ ամենեւին չեմ հասկընար, բայց սուրբ Գիրքը կը պատուիրէ՝ որ քաղցելոց կերակուր տամ, մերկերուն զգեստ հոգամ, վշտացեալները մխիթարեմ. ուստի ես սուրբ Գրոց խօսքին կ՚ուզեմ հետեւիլ։

— Իսկ թէ որ քու այս կերպ վարմունքդ հասարակաց ընդհանուր դժբաղդութեան մը պատճառ ըլլա՞յ...

— Աստուծոյ հնազանդ ըլլալը՝ ոչ երբեք հասարակաց չարիք մը կրնայ հասցընել, կարելի բան չէ. ամենէն ապահով ճամբան Աստուծոյ պատուիրանացը հնազանդիլն է։

— Բայց նայէ, Մարիամ, ի՛նչ կ՚ըսեմ. քեզի հիմայ...

— Բաւական է բաւական, ի՛նչ կ՚ուզես ըսէ, բոլոր գիշերս ալ խօսիս՝ զիս չես կըրնար համոզել։ Հիմայ ինծի ան ըսէ. եթէ յանկարծ մէկ խեղճ փախստական մը անօթի ու ծարաւ և ցրտէ փայտ դարձած՝ գայ քեզի ապաւինի, փախստական է ըսելով կը վռնտե՞ս զինքը, թէ արգեօք...

Ատենակալը դժբաղդաբար[1] մարդասէր ու բարեսրտին մէկն էր, և ոչ երբեք սիրտ ըրած էր իրեն ապաւինող փախստական գերիները վռնտելու և կամ մատնելու. կնիկն ալ աղէկ գիտէր անոր սիրտը, ուստի անոր համար համարձակաբար վրայ կու տար։ Ատենակալը իր կնոջը հարցմունքին պատասխան չտալու համար՝ սկսաւ գրպանէն թաշկինակն հանելով՝ ակնոցին ապակիները մաքրել, ու մէկ կողմանէ ալ հազալ կը ձևացընէր։ Կնիկը տեսնելով իր էրկանը այսպէս անպատասխանի մնալը, շուտով վրայ բերաւ.

— Ես շատ կ'ուզէի որ մէյ մը վռնտէիր ... օրինակի համար՝ ձեան ժամանակ փախստական կնիկ մը գար ու քեզմէ ապաւինութեան տեղ ուզէր, դու ալ դուրս վռնտէիր կամ առնէիր բանտ դնել տայիր։

— Ծանր պարտք մ'էր, որ պէտք էր ընէի, պատասխանեց ատենակալը դաշն ձայնիւ։

— Պա՞րտք մը... գոնէ սա բառը մի՛ գործածեր. այսպիսի անիրաւ հրամանը՝ դուն ալ գիտես, որ ոչ պարտք է և ոչ ալ պարտք

1. Այս բառս դիտմամբ դրուած է իբրև Գերեհանից դէմ օրէնք դնողները ծաղրելու համար։

պխտի կարենայ ըլլալ։ Թէ որ գերի ունե-ցողները կ՚ուզեն որ իրենց գերիները չփախ-չին՝ թող հետեւինին աղէկ վարուին. ահա այս է իմ ըսելիքս։ Թէ որ գերի ունենայի, ինչ որ Աստուած չընէ, պատասխանատուութեամբ կրնամ ըսել՝ որ ոչ ինծմէ և ոչ ալ քեզմէ կը փախչէին. երբոր անոնք գոհ ըլլան՝ ոչ երբեք տեղերնէն կը շարժին. կամք ալ ու-նենան՝ սովէն և ցրտէն, ու վախէն որ չըլ-լայ թէ ձեռք իյնան ու տանջուին, մինչև վերջին խեղճութիւն չհասնին ու ատանկ բռնութեան տակ չհեծեն՝ փախչիլը և ոչ մաքերնէն կ՚անցնի։ Ի՛նչ օրէնք որ կ՚ուզեն ընեն. ես գերիներուն ոչ երբեք դէմ պիտի ընեմ, և յուսամ որ Աստուած ալ ինծի կ՚օգնէ։

— Կեցիր, Մարիամ, մէյ մը ես ալ իմ պատճառներս ըսեմ...

— Ես քու պատճառներդ մտիկ ընելու կամք չունիմ, մանաւանդ այս նիւթիս վրայ։ Դուք որ քաղաքագէտ կ՚ըսուիք՝ ամէն բան կը խառնափնդորէք, պարզ բանի մը մէջ ալ հազարումէկ շփոթութիւն կը ձգէք, ա-նոր համար քաղաքագիտութիւն է ըսելով ձեր առանձնական զգացման դէմ ալ որոշ-մունք կու տաք։ Ես զքեզ աղէկ կը ճանչ-

նամ, սիրելի, դու ալ ինծի պէս այս օրէնքը արդար չես գտած մտքէդ, և ինծմէ աւելի ոչ երբեք պիտի հնազանդիս այն օրէնքին։

Նոյն միջոցին մէջ մ՚ալ ծերուկ մը գլուխը դռնէն ներս խոթեց, ու — Խաթուն, ըսաւ, կրնա՞ս մէյ մը շնորհք ընել խոհակերոցը հրամել։

Ատենակալը քիչ մը հանգչած ըլլալով՝ գրասեղանին առջևն անցաւ ու սկսաւ լրագիրները խառնել։

Շատ չանցաւ՝ կինը վազեց դարձաւ ու արտորնոք զինքն ալ կանչեց, ու երկուքը միատեղ խոհակերոցը մտան։

Մանկահասակ ու վայելչադէմ կնիկ մը աթոռի մը վրայ կիսամեռ ինկած՝ հոն մարեր էր, պզտիկ տղայ մը գիրկը սխմած. Հագուստը աղտոտ ու պատըռտած, ոտուները բոբիկ, վիրաւոր ու արիւնլուայ։ Գըծագրութենէն կ՚իմացուէր՝ որ այն արհամարհեալ ցեղէն էր, այսու ամենայնիւ իր դէմքին վրայ կ՚երևար փափուկ ու տխուր գեղեցկութիւն մը։

Այն տառապեալ կերպարանքն ու սառուցեալ անդամները տեսնելով, որոնց վրայ կարծես թէ կամաց կամաց մահուան ըս-

տուներները կը տարածուէին, այլայլութենէն ատենակալին շունչը բռնուեցաւ. իսկ խաթունն ու Դինա պառաւ աղախինը խեղճ կնիկը արթնցընելու համար եղան. սև ծերուկ ծառան ալ աղուն ոտքի ամաններն ու գալպանները կը հանէր՝ որ անոր սառած ոտուըները տաքցընէ:

— Խե՜ղճ կնիկ, կ'ըսէր Դինա, ի՜նչպէս ալ յանկարծ ինկաւ մարեցաւ, կ'երևայ թէ կրակը գլխին զարկաւ, կամ դրուէն ցուրտ ցուրտ գալով՝ յանկարծակի տաքութիւնը այլայլութիւն վրան բերաւ. խեղճը երբ ներս մտաւ՝ բան չունէր, քիչ մը տաքնալ ուզեց, և հազիւ թէ ուսկի՞ց կու գաս ըսելուս չմնաց, մէյ մ'ալ այսպէս ինկաւ մարեցաւ: Խե՜ղճ կնիկ, սա ձեռուըները նայեցէք, այնպէս փափուկ են՝ որ կարծես թէ ամենևին չէ աշխատած:

— Խե՜ղճ աղջիկ, ըսաւ խաթունը: Մէյ մ'ալ մարած կնիկը խոշոր ու սև աչուըները բացած՝ իրեն նայեցաւ. ու յանկարծ երեսը պատ դարձած՝ ոտք ելաւ, — Ո՞ւր է Հենրիկս, տարի՞ն Հենրիկս, պոռաց:

Տղան անկէն մօրը ձայնը լսելով՝ ծառային գրկէն վար ցատքեց ու մօրը քով վազեց. մայրը զինքը գիրկն առաւ ու սխմե-

լով, — Ո՛հ, հոս է, հոս է, հառաչեց. ու վերջը խաթունին դառնալով, — Կ՚աղաչեմ խաթուն, լսաւ հեծեծանօք, օգնէ մեզի, թող մի՛ տար որ դան զմեզ գտնեն։

— Մարդ մ՚ալ ձեզի հոս վնաս չի կրնար ընել, պատասխանեց կնիկը, հոս ապահով է, բանէ մ՚ալ մի՛ վախեր։

— Աստուա՛ծ օրհնէ զձեզ, վրայ բերաւ խեղճը, ու երեսը ձեռուըներովը գոցելով՝ սկսաւ հառաչելով արցունք թափել։ Իսկ տղան տեսնելով որ մայրը կու լայ, կ՚ուզէր անոր ծնգաց վրայ ելլել։

Խաթունին անուշ խօսքերէն ու ցուցած խնամքէն խեղճ կնիկը կամաց կամաց հոգի առաւ. շատ մը կրակին դիմաց անկողին մը պատրաստեցին ու կնիկը տղան գիրկը՝ խորունկ քուն մտաւ. այնչափ ջանացին որ իր հանգստեանը համար տղան ուրիշ անկողնի մէջ դնեն՝ բայց կարելի չեղաւ, քնանալու ժամանակն անգամ տղան բազուկն առած կեցեր էր, սաստիկ երեւակայութենէն՝ կարծելով որ ամէն վայրկեան դիմացը մէկը կեցած տղան գրկէն յափշտակել կ՚ուզէ։

Ատենակալը և իր կնիկը խուցերնին դարձան. ամենեին նախընթաց խօսակցութեանցը նշան մը չտալով. պարոնը լրագիրը ձեռք

առաւ, խաթունն ալ դիմացը նստած կար կ'ընէր։

— Շատ հետաքրքիր եմ սա կնկան ով ըլլալը իմանալու, ըսաւ վերջապէս ատենա-կալը՝ լրագիրը վար դնելով։

— Երբոր արթըննայ՝ ան ատեն կը հար-ցընենք կ'իմանանք, պատասխանեց խաթու-նը։

— Նայէ ինչ կ'ըսեմ... քիչ մը լուռ կենալէն վերջը վրայ բերաւ ատենակալը։

— Ի՞նչ։

— Սա քու հագուստներէդ մէկը չե՞ս կրնար աս կնոջը տալ... քիչ մը վրան կը յարմարցընենք... վասն զի հասակը աչքիս քեզմէ քիչ մը աւելի երկայն երեւցաւ։

— Տեսնենք, պատասխանեց խաթունը ծիծաղելով մը։

— Նայէ, ինչ կ'ըսեմ, կրկնեց ատենա-կալը...։

— Ի՞նչ պիտի ըսես նայինք։

— Աղէկ կ'ըլլար որ քու հին կրկնոցնե-րէդ մէկն ալ տայիր, խեղճը վրայի հա-գուստ մ'ալ չունի։

Նոյն միջոցին Դինա ներս մտաւ ու ըսաւ թէ օտարական կինն արթընցեր է ու խա-թունը կը կանչէ։ Պ. Պէրս ու խաթունը ե-

լան իրենց երկու մեծ տղաքը միատեղ խոհակերոցը գնացին. իսկ անոնցմէ պզտիկները նոյն տանն պառկելու ղրկեր էին։

Փախստականը կրակին քով նստեր էր, և տխուր ու վհատեալ աչուըներով կրակին բոցը կը դիտէր։

— Ձե՞ս կանչեր ես, ըսաւ խաթունը անուշ կերպով մը.... յուսամ թէ քիչ մը հանգչեցար։

Խեղճը առանց պատասխան տալու՝ երկայն հառաչանք մ'ըրաւ, ու այնպէս խեղճ ու աղաչական աչուըներով խաթունին երեսը նայեցաւ, որ չկրցաւ գթասիրտ կնիկը արցունքը բռնել։

— Ամենևին բանէ մ'ալ վախ մի՛ ունենար հոս, ամէնքնիս ալ քեզի հետ ենք. հիմայ դու ինծի ան ըսէ, սիրելի, թէ ուսկի՞ց կու գաս, ու ի՞նչ բանի կարօտութիւն ունիս։

— Ես Քէնդըրքիէն եկայ, պատասխանեց փախստականը։

— Ե՞րբ, հարցուց անոյշէն տանտիկինը։

— Այս իրիկուն։

— Ի՞նչպէս գետէն անցար։

— Սառոյցներուն վրայէն։

— Ի՜նչ... սառոյցներուն վրայէ՞ն, հար-

ցուցին բոլոր հոն գտնուողները զարմանա-լով։

— Հրամեր ես, պատասխանեց ստարա-կանը մեղմով. Աստուծոյ օգնութեամբը սա-ռոյցներուն վրայէն ցատքելով անցայ. վասն զի ետևէս հասեր՝ զիս բռնել կ'ուզէին. ու-րիշ ճամբայ ալ չկար։

— Ի՞նչ կը լսեմ, ըսաւ անդիէն վերը յիշուած սև ծերուկը՝ որ Քուչոյ կ'ըսուէր, կտոր կտոր սառոյցներուն վրայէն ի՞նչպէս անցար...։

— Ո՛հ, գիտեմ, գիտեմ, պատասխանեց փախստականը. բայց Աստուած օգնեց ին-ծի ու վերահաս վտանգէն զիս ազատեց. Թէ որ չանցնէի՝ պէտք էր որ հոն մեռնէի։ Աստուծոյ կարողութեան չափը մարդ չի կրնար գիտնալ մինչև որ փորձը առած չըլ-լայ։ — Այս խօսքերուս ատեն խեղճ կըն-կան աչուըները լեցուեցան։

— Գերի՞ էիր դու, հարցուց Պէրա։

— Հրամեր ես, Քենտըքիի հարուստ հո-ղատէրներէն մէկուն գերին էի։

— Տէրդ քեզի հետ աղէկ չէ՞ր վարուեր, ի՞նչ, կը չարչարէ՞ր զքեզ։

— Չէ, պարոն, չէ, տէրս շատ ազնիւ մարդ էր։

— Հապա խաթո՞ւնդ խիստ էր։

— Ո՛հ, չէ, պարոն, չէ. իմ խաթունս զիս իր զաւկին պէս կը սիրէր։

— Ի՞նչ եղաւ ուրեմն որ այնպիսի հանգիստ տեղը թողլով, այսպիսի վտանգներու մէջ ձգեցիր դու զքեզ։

Կնիկը այս խօսքիս վրայ ուշադրութեամբ խաթունին երեսը նայեցաւ, ու տեսնելով որ սեւեր հագած էր, — խաթուն, ըսաւ յանկարծ, կ'երեւայ թէ զաւկըներէդ մէկը մեռած պիտի ըլլայ։

Այս անակնկալ հարցմունքը խեղճ խաթունին միտքը տխուր յիշատակ մը նորոգեց. վասն զի հազիւ ամիս մը կար՝ որ իր զաւկըներէն մէկը գերեզմանն էր դրեր։

Պ. Պէրս կոնակը դարձուց ու դէպ ի պատուհանը գնաց. իսկ խաթունը լալով՝
— Ինչո՞ւ ինծի այս հարցմունքս կ'ընես, հարցուց. սիրելի զաւակ մը կորսնցուցեր եմ։

— Հիմայ իմ վիճակս ալ կրնաս ըմբռնել, պատասխանեց կնիկը. ես ալ քիչ ատենուան մէջ ետեւէ ետեւ երկու զաւակ կորսնցուցի. և ես ձեռքովս զանոնք գերեզման դրի . . . ։ Ասիկայ միայն մնացեր էր, որ գիշեր ցորեկ քովէս չէր հեռացներ,

իմ մէկ հատիկ ուրախութիւնս ու մխիթարութիւնս էր։ Զինքն ալ, խաթուն, կ'ուզէին ձեռքէս յափշտակել ու ծախել. աղայ մը՝ որ իր կենացը մէջ մորը քոլէն ոչ երբեք հեռացեր է, մինակուկ առնուլ հարաւային երկիրները ղրկել։ Ա՛լ չկրցայ, խաթուն, դիմանալ. մանաւանդ երբոր իմացայ որ դաշինքն ալ հաստատուեր է ու տէրս ստորագրեր է, գիշերանց աղաս առի ու փախայ։ Գնողը՝ տիրոջս գերիներէն երկու հոգի հետը առած՝ ետեւէս ինկաւ, և հասան ինծի ու այնչափ մօտեցան՝ որ խօսակցութիւննին կը լսէի. ա՛լ ճար մը չգտնելով՝ ինքզինքս գետին մէջի սառոյցներուն վրայ նետեցի, ու ա՛լ չեմ գիտեր թէ ի՛նչպէս գետէն անցայ. այսչափը միայն միտքս է՝ որ գետին ասդին եզերքը մարդ մը ձեռքէս բռնեց ու գիս թումբին վրայ հանեց։

Այս բանս պատմելու ժամանակ՝ խեղճ փախստական կնկան սիրտը այնպէս մորմոքեր ու բռնուեր էր՝ որ և ոչ կաթիլ մը արցունք աչքէն կը վազէր, իսկ մտիկ ընողները՝ սրտերնին եռած՝ կու լային։

Գ. Պէրտին երկու տղաքը զուր տեղը գրպաննին թաշկինակ փնտռելէն ետև՝ չգըտնելով՝ մօրերնուն հագուստովը երեսնին գո-

ցեցին ու սկսան լալ և արտասուքնին սրբել։ Խաթունն ալ երեսը թաշկինակովը գոցած կու լար. անդին պառաւ Դինան խոշոր արցունքներ թափելով — Տէր, ողորմէ մեզի կ'ըսէր. — ինչպէս նաև Քուչոյ ծերուկն ալ շապկին թևովը աչուըները սրբելով՝ նոյնպիսի հառաչանքներ կ'արձըկէր։

Իսկ ատենակալը քաղաքական պաշտօնեայ ըլլալով՝ պէտք չէր որ հասարակ մահկանացուի մը պէս ինքն ալ լար. ի վերայ այսր ամենայնի պատուհանին դարձած՝ ակնոցին ապակիները կը մաքրէր, ու երբեմն-երբեմն իր հեկեկալը չիմացընելու համար կը թքնէր ու քիթը կը սրբէր... սակայն աչուըները լեցուեր էին, բայց լալը կը ջանար բռնել...։ Քիչ մ'ատեն պատուհանին դիմացը այնպէս կենալէն վերջը՝ դարձաւ յանկարծ փախստականին քովը եկաւ, ու ըսաւ. «Ջըսե՞ր որ աղէկ ու բարեսիրտ տէր մ'ունէիր»։

— Հրամեր ես, պատասխանեց կնիկը, ոչ երբեք պիտի մոռնամ. խաթունս ալ ինծի ամէն բարիք կ'ուզէր. բայց երկուքին ալ ձեռքէն բան չէր գար։ Պարոքի տակ ընկեր, և այնպիսի մարդու մ'ալ ձեռք մատնուեր էին՝ որ բռնադատուած էին անոր ա-

մէն ուզածը կատարել։ Այս բաները տէրս իր կնոջը պատմելու ժամանակ՝ ես ալ լսեցի. բարեսիրտ խաթունս՝ իմ տղուս համար այնչափ աղաչեց, միջնորդութիւն ըրաւ, բայց տէրս պատասխան կու տար, որ անօգուտ է, վասն զի դաշինքը արդէն ստորագրուած է. Ես ալ երբ այս լսեցի՝ տղաս առի ու անկէն փախայ. վասն զի այս է միայն իմ մէկհատիկ ակնկալութիւնս ու մխիթարութիւնս. Թէ որ սաիկայ ալ ձեռքէս յափշտակեն՝ ինծի համար ամէն բան կը լմըննայ։

— Էրիկ ունի՞ս։

— Հրամեր ես, բայց այն ալ ուրիշ տիրոջ մը ձեռք է. տէրը այնպիսի խիստ մարդ է՝ որ ոչ երբեք թող կու տար որ գայ մէյ մը ինծի հետ տեսնուի, և օր օրուան վրայ խստութիւնը կ'աւելցընէր. սպառնացեր էր ալ որ զինքը հարաւային կողմի գերեվաճառներուն կը ծախէ։ Կարծեմ մէյ մ'ալ մէկզմէկ տեսնելիք չունինք այս աշխարհիս վրայ...

Այս վերջի խօսքերս այնպիսի հանդարտ կերպով մ'ըսաւ, որ լսողներուն կրնար մըտքէն անցնիլ որ էրիկը կորսընցընելուն վրայ այնչափ փոյթ չէր ըներ. բայց իր խաշոր

ու սեւորակ աչուըներուն մէջ այնպիսի խորին տրտմութիւն մը տպաւորուեր էր, որ անկարելի էր ունեցած զգացմունքը չիմանալ։

— Հիմայ ո՞ւր կ'ուզես երթալ, հարցուց խաթունը։

— Գանատա ... բայց չեմ ալ գիտեր թէ ո՞ւր է այդ երկիրը. շատ հեռո՞ւ է ասկէց։

— Այնչափ՝ որչափ չես կարծեր, պատասխանեց խաթունը. բայց մենք ամէն ջանք կ'ընենք, ուզածդ կը կատարենք։ Դինա՛, գնա խուցդ անկողին մ'ալ իրեն համար պատրաստէ, վաղը առաւօտ կը մտածենք ընելիքնիս. հիմկուհիմայ, սիրելի, վախնալու բան չունիս, յոյսդ Աստուծոյ վրայ դիր, ան զքեզ կը պաշտպանէ։

Խաթունը իր էրկանը հետ նորէն խուցերնին քաշուեցան. խաթունը կրակին քով գնաց նստաւ, իսկ Պ. Պէրտ խուցին մէջ վեր վար խորունկ մտածման մէջ ընկղմած կը քալէր. մէյ մ'ալ կնոջը քով մօտեցաւ, ու — Մտիկ ըրէ ինծի, ըսաւ. նայէ ինչ կ'ըսեմ. պէտք է որ այս իրիկուն աս կնիկը հեռանայ ասկէց. իր ետեւէն ինկնողը հարկաւ վաղը առաւօտ կանուխ այս կողմերը

պիտի գայ. թէ որ կնիկը մինակ ըլլար՝ գիւղին էր բանը. մարդը մինչև որ գայ ու երթայ՝ մէկ տեղ մը կը փակէինք զինքը, բայց տղան ի՞նչ պիտի ընենք, բանակ մ՚ալ ըլլայ՝ կարելի բան չէ որ լուռ կենայ. յանկարծ թէ որ ձայն մը հանէ կամ գլուխը պատուհանէ մը դուրս հանելով՝ բանը դուրս ելլէ՝ շատ գէշ կ՚ըլլայ: Մտածէ թէ ինչ կ՚ըլլայ թէ որ գիրենք Պէրա ատենակալին տունը գտնեն:... Չէ, չէ, պէտք է որ այս իրիկուընէ հեռանայ երթայ անկէց:

— Այս իրիկո՞ւն, ո՞ւր կ՚ուզես որ երթայ:

— Դուն ինծի թող, պատասխանեց ատենակալը՝ ճակատը շփելով, ու սկսաւ կօշիկները հագնիլ ու մէկ կողմանէ ալ, — Շատ գէշ բան է, շատ գէշ բան է, կ՚ըսէր:

Խաթունը թէպէտ իր էրկանը խորհրդոց մէջ չէր մտներ սովորաբար, բայց այս անգամ ուզեց իր էրկանը մտածմունքն իմանալ:

— Ինծի մտիկ ըրէ, ըսաւ էրիկը, ես երկրատէր մը կը ճանչնամ այս կողմերս, որ Վան—Դրոմբ կը կոչուի, և ատեն մը ատեանի մէջ իր մէկ դատաստանը պաշտպաներ եմ: Այս մարդս Քէնդըքիէն այս կողմերս եկաւ, ու իր բոլոր գերիները ազա-

տեղով՝ գետածոցէն վեց եօթը մղոն հեռու երկիր մը գնաց անտառին մէջ, անծանօթ տեղ մը, ուր դժուարաւ մարդ կրնայ երթալ գտնել. այդ կնիկը այս գիշեր հոն տանելու է, ուր ամէն վտանգէ ապահով կրնայ ըլլալ. բայց եկուր նայէ որ գիշերանց ինծմէ զատ ուրիշ մարդ չի կրնար կառքը քշել:

— Ի՞նչպէս... պատասխանեց կնիկը, մեր Պուչոն չի՞ կրնար կառք քշել:

— Այնպէս է. բայց գետածոցին եզերքէն երկու դժուարին ճամբաներ կան, որոնցմէ մէկը շատ վտանգաւոր է. մանաւանդ չգիտցողին. ես շատ անգամ ձիով անցեր եմ այն ճամբէն, անոր համար ինծմէ լաւ գիտցող չկայ: Ուստի կը տեսնես որ ուրիշ կերպով չենք կրնար այս բանս ընել. Թող Պուչոն կէս գիշերուան ատենները՝ կամացուկ մը ձիերը լծէ, ես անձամբ կը տանիմ ատ խեղճ կնիկը: Կասկած մը չտալու համար ալ՝ կնիկը Վան–Դրամին տունը ձգելէս վերջը՝ կառքով ետ մօտիկ իջեւանը կ'երթամ, ու հոն Պօլոմպոյէն եկող ճեպընթացին կը սպասեմ. ճեպընթացը առաւօտեան դէմ կը հասնի, անով կը կարծեն տեսնողները որ մինչեւ իջեւանը երթալու համար կառքս մէկ տեղ առած եմ.

իսկ ես շիտակ Քօլոմպոյ կ՚իջնեմ իմ քանի մը գործերուս համար։ Գիտեմ որ իմ ձեռքովս հաստատուած օրինաց դէմ բան կ՚ընեմ, բայց ինչ ընեմ, թող ինչ կ՚ուզէ ըլլայ, ես իմ մաքիս գրածէն ետ չեմ կենար։

— Ահ, սիրուն մարդ՚ը լաւ է, ըսաւ խաթունը՝ էրկանը ձեռքէն բռնելով. Ինչպէս կրնայի զքեզ սիրել թէ որ չճանչնայի քու սիրտդ. ու աչուըները լեցուեցան։ Ամենակալը շուտ մը վար իջաւ որ կառքը պատրաստել տայ, ու վերջը նորէն վեր գալով,

— Մարիամ, ըսաւ, մաքէս բան մ՚ալ կ՚անցնի, չեմ գիտեր թէ դու ինչ կը մտածես. պարան մը լեցուն է... մեր... խեղճ Հենրիկոսին վերաբերեալ հագուստներով... այս ըսաւ ու դուռը գոցեց գնաց։

Խաթունը այս խօսքիս վրայ՝ իր խցին քովի պառկելու պզտի խուց մը մտաւ, ու ձեռքի ճրագը սեղանի մը վրայ դնելով՝ գրպանէն բանալի մը հանեց, ու տխուր աչուըներով պարան մը բացաւ, ու հառաչեց. նոյն միջոցին իր երկու աղջիկն ալ ետևէն վազեցին, ու հետաքրքրաբար կը նայէին թէ մայրերնին ինչ կ՚ընէ։

Ով մայր, որ սա գրածս կը կարդաս, տանդ մէջ պարան մը կամ սնտուկ մը չու-

նե՞ս որ բանալու ժամանակդ կարծես թէ պզտի գերեզման մը կը բանաս... Երանելի ես թէ որ այս բանս քեզի ալ չէ պատահած։

Խաթունը կամնոց մը դարանը բացաւ․ ինչ տեսնես, մէջը այլ և այլ ձևերով հագուստներ կային, կրծկալներ, գուլպաներ․ զոյգ մ'ալ պզտի մուճակ կար, որուն մաշած ծայրերը պլլուած թուղթէն դուրս ինկեր էին։ Փայտէ ձի մ'ալ կար պզտի կառքի մը լծած, գնտակներ և ուրիշ խաղալիկներ։ Քովընտի նստաւ, ու գլուխը ձեռքին դրած՝ սկսաւ դառն արցունք մը թափել․ մէյ մ'ալ յանկարծ գլուխը վեր վերցուց ու սկսաւ քանի մը շապիկ, գուլպայ և ուրիշ բաներ մէկդի դնել, ու կապոց մ'ըրաւ կապեց։

— Մայրիկ, հարցուց տղոցմէ մէկը քովը մօտենալով, այս կապոցը որո՞ւ պիտի տաս։

— Ա՛հ, որդեակ, պատասխանեց Խաթունը՝՝ արցունքը սրբելով, թէ որ հիմայ երկնքէն մեր սիրելի պզտի Հենրիկը տեսնէ՝ շատ պիտի ուրախանայ որ իր աշխարհքիս վրայ ձգած յիշատակը բարեգործութեան համար կը գործածենք։ Ամենէն սիրուն ա-

ռաջ չէր երթար ասոնցմէ բաժնուելու. բայց այս խեղճ կնկանէն աւելի ուրիշ յարմար մարդ մը չեմ տեսներ որ այս սիրելի յիշատակներս տամ. ան ինծմէ ալ աւելի թըշուառ մայր մ'է. Աստուած խեղճին վրայ գթայ ու օգնէ իրեն։

Շուտ մը ուրիշ պարան մ'ալ բացաւ, ու մէջէն քանի մը կանայի հագուստներ հանեց, ու էրկանը ըսածին պէս շտկեց շտկըտեց ու պատրաստեց։

Կէս գիշերն անցած չանցած՝ ատենակալը կառքը դուրս հանել տուաւ, ու խաթունին ալ ըսաւ՝ որ երթայ փախստականն արթընցընէ։ Խաթունը բոլոր պատրաստածները սնտուկի մը մէջ դրաւ, կղպանքով ալ գոցեց ու էրկանը աղաչեց որ կառքին մէջ դնել տայ։ Մէկ քանի կտոր բան ալ փախստականին ու տղուն հագուեցնելու համար դուրս ձգեր էր։ Յետոյ շուտ մը գնաց զինքն արթընցուց ու հագուեցուց զիրենք, և առաւ վար բերաւ։ Ատենակալը մէկէն զանոնք կառքը խոթեց, ու Պուչոյ ծառան մէկ տեղ առած՝ ճամբայ ելաւ։

Ելիզան գլուխը կառքէն դուրս հանեց և ձեռքը դէպ ի անոր երկընցուց, ու խոշոր սև աչուըներովը սիրալիր կերպով մը խա-

թունին երեսը կը նայէր, և կարծես թէ բան մը կ'ուզէր ըսել։ Երկու երեք անգամ բերանը բացաւ որ բան մ'ըսէ, բայց խեղճ կնկան՝ սրտին այլայլութենէն՝ լեզուն կապուեր էր, շնորհակալութեան խօսք մ'ալ չկրցաւ ըսել իր բարերարին. այն ատեն ձեռուըները դէպ ի երկինք վերուց ու այնպիսի հառաչանք մ'էր հանեց՝ որ մարդ յաւիտեան չի մոռնար, ու նստարանին վրայ իյնալով՝ ձեռուըներովը երեսը գոցեց։ Կառքին դուռը գոցուեցաւ, ու կառքը ճամբայ ելաւ։

Խեղճ հայրենատէր ատենակալ... ինչ ողորմելի վիճակի մէջ ինկաւ. շաբաթ մ'առաջ իր ամենայն ճարտասանութիւնը թափելով՝ փախստական գերիներուն և անոնց օգնութիւն ընողներուն դէմ օրէնք հաստատել տուեր էր. առիւծի մը պէս կտրճութեամբ բոլոր ատեանին ունկնդիրները զարմացուցեր էր.... բայց հիմայ թշուառութեան ներկայ տեսարանը զինքը բոլորովին փոխեց... Անշուշտ իր խօսելու ատեն միտքէն չէր անցած՝ որ դիմացը Թշուառ մայր մը պիտի ելլէ իր տղովը, և այն տղան իր քանի մը շաբաթ առաջ վախճանած տղուն անունովը, և անոր հագուստներովը ծած-

կուած պիտի ըլլայ...։ Եւ իրաւցընէ՝ ատենակալը գթասիրտ և մարդասէր մէկն էր բնութեամբ...։

Ի՛նչ և իցէ, եթէ մեր ատենակալը քաղաքական օրինաց դէմ յանցաւոր գտնուեցաւ այս բարերարութեամբ, սակայն այն ցուրտ գիշերուան ատեն իր յանցանքին պատիժը կը քաշէր։

Ասկէ առաջ անդադար անձրևներ եկեր էին. Օհիոյ անուշ ու հարուստ երկիրը զարմանալի է ցեխ պտղաբերելու։ Ատենակալին կառքը սկսաւ ցեխերուն մէջ թաղուիլ, ու ձիերը չէին կրնար քալել։ Ատենակալն ուզեց վար իջնել, բայց հազիւ թէ մէկ ոտքը գետին դրաւ՝ մինչև ծնկուընները ցեխին մէջ թաղուեցաւ. վեր ելլեմ, ազատիմ ըսելու չմնաց՝ մէյ մ'ալ խեղճը ցեխին վրայ ինկաւ, ուսկից հազիւ հանեց զինքը Քուչոն։ Շատ աշխատանքով և կամաց կամաց ձիերը քշելով՝ ցեխերուն մէջէն հազիւ դուրս ելաւ կառքը, կալուածատիրոջ մը տանը դիմաց հասաւ ու հոն կեցաւ. երկար ատեն դուռը զարնելէն ետև, վերջապէս կալուածատէրը վար իջաւ ու դռները բացաւ։

Ասիկայ երկայնահասակ թաւամազ մարդ մ'էր, և ասուեայ կարմրագոյն բաճկոն մը

Հագած. խարտեաշ մազերն ու քանի մը օրուան չածիլած մօրուքը՝ առաջին անգամ տեսնողին վրայ շատ ախորժելի տպաւորութիւն մը չէր ըներ։ Դուռը բանալով՝ աս ճամբորդները տեսածին պէս՝ քիչ մ՚ատեն պաղ կեցաւ մնաց. և ճրագը անոնց մօտեցընելով՝ գլուխներնէն ինչուան ոտուըները ապշած զննեց զանոնք։ Մեր ատենակալը չէր գիտեր թէ ինչպէս հասկըցնէ անոր իւր յանկարծական գալստեան պատճառը, և մինչդեռ թողութիւն խնդրելով՝ կ՚աշխատի պատմելու, մենք տեսնենք թէ ով է այս նոր մարդը։

Ազնուասիրտ ծերունին Յովհաննէս Վան-Դրոմբ՝ ատենօք հարուստ կալուածատէր մ՚էր, և Քէնդըլքի գաւառին գլխաւոր գերի պահողներէն մէկն էր։ Իր բնական մեծասիրտ, ազնիւ ու արդար բնութեամբ՝ երկայն ատենէ ի վեր գերեվաճառութեան դէշ հետեւանքները տեսնելով՝ զզջացեր էր գերի ունենալուն վրայ. վերջապէս միտքը դրաւ որ բոլոր գերիներն ազատէ. ուստի Օհիոյ նահանգին մէջ բարեբեր կալուած մը գնեց, ու բոլոր ունեցած գերիներուն օրինաւոր կերպով ազատագիրը տալով՝ իր կալուածներուն մէջ տեղաւորեց զանոնք. ինքն ալ

գետածոցին մօտերը տուն մը շինեց իրեն համար, ու հոն քաշուած՝ խաղաղական ու հանգիստ կեանք մը կ'անցընէր։

— Պարոն, կրնա՞ս գերեաց որսորդներուն ձեռքէն փախչող խեղճ կնիկ մը իր տղովը՝ քու տունդ ընդունիլ, հարցուց վերջապէս ատենակալը։

— Կարծեմ թէ կրնամ, պատասխանեց ազնուամիտ կալուածատէրը՝ ծիծաղելով ու անվախ կերպով մը։

— Ես ալ չէի տարակուսիր այս բանիս վրայ, ըսաւ ատենակալը։

— Ուրիշ ով որ ալ գայ, կրկնեց Վան–Դրոմբ, պատրաստ եմ զինքն ընդունելու. եօթը զաւակ ունիմ, ամէնքն ալ վեց ոտք հասակաւ բարձր, որոնք ինծի պէս պատրաստ են. գնա բարև ըրէ իմ կողմանէս գերեաց որսորդներուն ու ըսէ որ թող հրամեն երբ որ կ'ուզեն. իրենց վայլած պատուովը կ'ընդունինք զիրենք, ըսաւ՝ մազերը շակելով ու բարձրաձայն ծիծաղելով։

Ելիզան ճամբաներուն գէշութենէն ծեծուած ու յոգնած, դռնէն ներս մտաւ՝ տղան ալ գիրկը քուն եղած. կալուածատէրը ճըրագն անոր մօտեցուց՝ մէյ մը երեսը նայեցաւ, և անոր խեղճ կերպը տեսնելով

գուլթը շարժեցաւ. մէկէն խոհանոցին մօտ խուց մը բանալով՝ նշան ըրաւ որ ներս մտնէ. կանթեղ մ'ալ վառեց ու սեղանին վրայ դրաւ, և դարձաւ:

— Ինծի նայէ, ըսաւ խեղճ կնկան, հիմայ դու այս տանս մէջ վախնալու բան մը չունիս, ո՛վ որ կ'ուզէ գայ. ես այս տեսակ դիպուածներուն վարժած եմ. տունս կը տեսնե՞ս՝ ըսաւ, պատին վրայի քանի մը ատըրճանակները ցուցընելով. ով որ գիս ճանչցեր է՝ աղէկ գիտէ որ իմ տնէս անկարելի է իմ կամացս դէմ մարդ մը դուրս հանել. ուստի գնա դուն ալ հանգիստ եղիր, և հոգ մ'ըներ, ըսաւ, ու դուռը վրայէն գոցեց:

— Այդ ի՜նչ գեղեցիկ կնիկ է, ըսաւ ատենակալին... բայց այդպիսիները պէտք է որ փախչին. բաւական է թէ քիչ մը ըզգացմունք ունենան:

Ատենակալը համառօտ կերպով մը Ելիզային պատմութիւնը պատմեց անոր:

— Կարելի՞ բան է... այդ ի՜նչ անիրաւութիւն է, կ'ըսէր բարեսիրտ կալուածատէրը: Խե՛ղճ աղջիկ. ամէն կողմէն պաշարուած, եղջերուի պէս որսորդներէ հալածուած՝ իր բնական զգացմանցը մտիկ ընե-

լուն համա՛ր. ո՞վ կրնայ մայր մը մեղադրել իր տղան ազատելուն համար։ Այս կ'ըսէր, ու մէկ կողմանէ ալ խոշոր ձեռուըներով աչուըները կը սրբէր։

— Կը հաւտա՞ս, բարեկամ, կրկնեց Նուրէն, տեսնելով որ սա մեր եկեղեցականները սուրբ Գրքէն վկայութիւններ բերելով կը պաշտպանէին գերեվաճառութեան անիրաւ օրէնքը, շիտակը՝ կրօնքէ պաղեր էի, եկեղեցի ալ ոտք չէի կոխեր. բայց օր մը գիտուն եկեղեցականի մը հանդիպեցայ, որ բոլորովին դէմ էր սա անիրաւ օրէնքին, շատ վկայութիւններով հակառակը հաստատեց ու իմ միտքս ալ շինեց։

Այս խօսքերս ըսելու ժամանակ՝ դարանէն Կիպրոսի գինիի շիշ մը դուրս հանելով,

— Աղէկ կ'ըլլայ, ըսաւ ատենակալին, որ մինչև առաւօտ հոս կենաս, հիմայ աղախինը կանչեմ որ հրամանքիդ համար անկողին մը պատրաստէ։

— Չէ՛, չէ՛. շնորհակալ եմ, պատասխանեց ատենակալը, պէտք է որ ճամբան շարունակեմ. Քոլոմպիա գնացող ճեպընթացին հասնիլ կ'ուզեմ։

— Է՛, դու գիտես. երբոր հարկ է երթալդ, ես ալ հետդ կու գամ խել մը տեղ՝

որպէս զի աղէկ ճամբայ մը ցուցնեմ. եկած ճամբադ շատ գէշ է։

Մէկէն գնաց պատրաստուեցաւ, ու լապտերը ձեռքը՝ ատենակալին կառքին ճամբայ ցուցընելու իջաւ։ Երբոր իր երկիւղներէն դուրս ելան՝ ատենակալը Պ. Վան-Դրոմբին ձեռքը տասը տոլլարի թուղթ մը դրաւ, ու այն կնկանն համար է՝ ըսաւ, և շնորհակալ ըլլալով՝ վերջին բարեւը տուաւ։

— Հրամեր ես. երթաս բարով, երթաս բարով, ըսաւ կալուածատէրը. ու մէկմէկու ձեռքը սեղմելով՝ բաժնուեցան։

## ԳԼՈՒԽ Ժ.

### Թովմասին ծախուիլը։

Փետրուար ամսուն թաց ու անձրեւոտ առաւօտ մը ծագեր էր աղբար Թովմասին տնակին վրայ. և թշուառացեալ սրտերու տխուր դէմքերը կը լուսաւորէր։ Պզտի սեղանատախտակը նորէն կրակարանին քովն էր, բայց այս անգամ ճերմակեղէնները յարդարելու համար փռոց մը կար վրան. կրակին քով աթոռի մը կռնակը մէկ երկու

հաստ՝ բայց մաքուր՝ շապիկներ փռուած էին, որ քիչ ատեն էր որ արդուկէ (իւթիւէ) անցեր էին. և Քլոյէն ձեռքը ուրիշ մ'ունէր։ Մեծ խնամքով ամէն կոտրտուածներուն վըրայէն կ'անցընէր երկաթը և ճմռուած կտորները կը տափկեցընէր. և երբեմն երբեմն ձեռքն ալ աչքին կը տանէր ու արցունքները կը սրբէր։

Թովմասն ալ քովը նստած, Նոր Կտակարանը ծնկանը վրայ բաց՝ գլուխը ձեռքին կռթնցուցեր էր։ Երկուքն ալ լուռ կեցեր էին. իսկ տղաքը իրենց խեղճուկ անկողնոյն մէջ անուշ քուն կը քաշէին, վասն զի դեռ ատենը կանուխ էր։

Թովմաս՝ որուն սիրտը սիրով կը բորբոքէր, (մանաւանդ ընտանեաց սիրով, որ իւր Թշուառ ցեղին գլխաւոր յատկութիւններէն մէկն է, և պատճառ մեծամեծ Թշուառութեանց), ոտք ելաւ ու կամաց կամաց տղուն անկողնոյն քով մօտենալով՝ սկսաւ վրանին նայիլ։

— Այս վերջին անգամն է որ զձեզ կը տեսնեմ, ըսաւ հառաչելով։

Քլոյէ պատասխան չտուաւ, ու արդուկը ուժով հաստ շապկին վրայէն կ'անցընէր. քիչ մ'ատենէն արդուկը կրակին քովը դրաւ

ու եկաւ սեղանատախտակին քով նստաւ, ու լալով, — Պէտք է համակամութիւն ունենալ, ըսաւ. բայց, ո՜հ Տէր, ի՞նչպէս կարենամ ես զիս բռնել. գոնէ գիտնայի ո՛ւր երթալիքդ և թէ հետդ ի՞նչպէս պիտի վարուին։ Խաժամուժը կը խոստանայ որ ձեռքէն եկածը կ'ընէ ու տարիէ մը կ'ազատէ զքեզ. բայց, ո՜հ, Աստուած գիտէ թէ մինչև ան ատենը ի՞նչ կ'ըլլայ։ ... Հարաւային կողմերը գնացողներէն մարդ դարձած չէ... հոն կը սպանուին խեղճերը։ Ես լսեր եմ որ ի՞նչպէս աշխատեցընել կու տան զանոնք հոն։

— Նոյն Աստուածն է հոն ալ, Քլոյէ, որ հոս մեզի հետ է։

— Այնպէս է, ըսաւ Քլոյէ, բայց Աստուած թող կու տայ երբեմն որ մեծ թըշուառութիւններ մեր վրայ գան. քանի որ այս կը մտածեմ՝ չեմ կրնար ինքզինքս մխիթարել։

— Ես Աստուծոյ ձեռքն եմ, պատասխանեց Թումաս, Աստուծոյ որոշածէն դուրս մարդիկ բան մ'ալ չեն կրնար ընել. ես Աստուծոյ աւելի շնորհակալ կ'ըլլամ, որ միայն ես ծախուեցայ, և ոչ դու ու տղաքդ. հոս դուք ապահով տեղ մ'էք. ի՞նչ որ ըլլայ՝

ինծի պիտի ըլլայ, բայց Աստուած կ'օգնէ ինծի ալ։ Մեր տիրոջը մեզի ըրած բարիքները թէ որ մտածենք, ըսաւ աչուըները լեցուած, պէտք է Աստուծոյ կամացը ինքզինքնիս հպատակենք, ու մեր տէրերը չմեղադրենք։

— Մեր տիրոջը, հառաչեց Քլոյէ, մեզի ո՞ր ըրած բարիքները մտածենք, ես չեմ գիտեր. այս ըրածը անիրաւութիւն չէ՞։ Ինքը պարապ ունենալով՝ ծախեց զքեզ՝ որ պարտատիրոջը ձեռքէն ազատի. բայց միթէ դու իրեն քու գնոյդ կրկինը չե՞ս վաստըկցուցած. պէտք չէ՞ր որ զքեզ ազատէր և տարիներով առաջ ազատէր։ Թող ի՞նչ որ կ'ուզեն ըսեն, ի՞նչ խոստմունք որ կ'ուզեն ընեն, աս ըրածը մեծ անիրաւութիւն է։ Ի՞նչ ըսել է՝ հաւատարիմ ծառայ մը ծախել, որ իր տիրոջը վրայ աւելի սէր ունէր քան թէ իր կնոջն ու զաւակաց վրայ. այս բանիս օր մը Աստուած համար պիտի պահանջէ։ Ի՞նչ ըսել է՝ նեղութենէ ազատելու համար՝ ընտանեաց մը սէրն ու արիւնը այս կերպով ծախել։

— Քլոյէ՛, թէ զիս կը սիրես, այդպիսի խօսքեր մի՛ ըսեր. գուցէ այս վերջին անգամն ըլլայ որ մէկզմէկ կը տեսնենք։ ...

Նայէ, Քլոյէ, ես տիրոջս վրայ գէշ խօսք
չեմ կրնար լսել. պզտիկուց ի վեր իմ
ձեռքս մեծցած ըլլալով՝ բնական գութ մը,
սէր մ՚ունիմ վրան... Ի՛նչ ընենք, տէր ե-
ղողներն երբեմն այսպիսի բաներ կ՚ընեն,
պէտք է համբերել ու ամէն բանին վերջը
նայիլ։ Ուրիշ տէրերուն հետ բաղդատէ զին-
քը. ո՞ր գերին ինծի պէս աղէկ նայուած ու
խնամուած է. ապահով եմ որ եթէ տի-
րոջս ձեռքն ըլլար՝ այս իմ ծախուելուս ալ
ճարը կը գտնէր, բայց կ՚երևայ թէ ձեռքէն
բան չի գար։

— Դու ի՛նչ կ՚ուզես ըսէ. պատասխա-
նեց Քլոյէ, որուն՝ սրտին այլայլութենէն՝
գլուխը դարձեր էր. այս բանիս մէջ գէշու-
թիւն կայ, անիրաւութիւն կայ, ես աս գի-
տեմ։

— Մէյ մը երկինք նայէ, Քլոյէ, մտածէ
մէյ մը որ առանց վերինին կամացը մեր
գլխէն և ոչ մէկ մազ մը կրնայ գետին ին-
կնալ։

— Այդ խօսքերովդ ես չեմ մխիթա-
րուիր.... բայց սակայն.... պէտք է ալ
մխիթարուիլ։ Բայց ինչո՞ւ զուր տեղը կեցեր
կը խօսիմ. ելլեմ քեզի նախաճաշիկ մը
պատրաստեմ... ո՞ գիտէ մէյ մ՚ալ այսպի-
սի նախաճաշիկ պիտի ընե՞ս։

Հիւսիսային նահանգաց սեւերուն հարաւային նահանգաց կալուածատէրներուն ծախուելու համար կրած վախերնին ու ցաւերնին աղէկ ըմբռնելու համար՝ պէտք է մարդ գիտնայ որ իրենց բնական զգացմունքնին շատ սաստիկ է։ Բնակած տեղերնուն մեծ յարմունք ունին. բնութեամբ ոչ յանդուգն են և ոչ ալ նոր բանի ձեռք զարնող, այլ հանդարտ նստողական բնութիւն մ'ունին։ Բայց չգիտցած ու չճանչցած՝ մանաւանդ հարաւային կողմի՝ կալուածատէրներու ծախուելու վախը այնպէս սաստիկ է՝ որ մէջերնին ամենէն մեծ պատիժը այն կը համարին։

Գանատա ճամբորդութիւն ընողներէն մէկը կը պատմէ թէ Քէնդըքիի գերիներուն Գանատա փախչելուն պատճառը աւելի հարաւային գերեվաճառներու ծախուելու վախն է՝ քան թէ տէրերնուն իրենց հետ գէշ վարուիլը ու զիրենք չարչըրկելը։ Այս վախը սրոյ մը պէս իրենց ու իրենց կանանցն և տղոցը գլխուն վրայ կախուած է. և դիւցազնական քաջութիւն մը կ'ազդէ այս բնութեամբ վախկոտ և համբերող գերիներուն. ու աչուընուն բան մը չեն երևար, ոչ սով, ոչ ծարաւ, ոչ ցուրտ, և որ աւելի սոս-

կալլին է և ոչ ձեռք իյնալուն հետևանք թշուառութիւնը։

Առաւօտեան աղքատիկ նախաճաշիկը սեղանին վրայ կը պաղէր։ Շէլպիի խաթունը նոյն օրը աշխատութենէ ազատ թողուցեր էր Քլոյէն. ուստի ան ալ ամենայն ջանքով իր ճամբորդ էրկանը վերջին նախաճաշիկ մը պատրաստելու հետ էր. գիրուկ հաւերէն մէկը մորթեց, խմորեղէններ բացաւ, ու տեսակ տեսակ կարկանդակներ պատրաստեց։

— Նայէ, նայէ, Պետրոս, ի՜նչ նախաճաշիկ է, ըսաւ Մովզէս ու հաւու կտոր մը խլեց։

Քլոյէն ապտակ մ'իջեցուց, — Աս ի՜նչ ծակաչք ես, պոռաց, խեղճ հօրդ վերջին նախաճաշիկին վրա՞յ ալ աչք տնկեցիր։

— Քլոյէ, ի՞նչ կ'ըսես, ըսաւ Թովմաս քաղցրութեամբ։

— Հաւատա, չեմ կրնար ես զիս բռնել, պատասխանեց Քլոյէ, ու գոգնոցով երեսը գոցեց։

Տղաքը լուռ կեցեր էին, մէյմը հօրերնուն կը նայէին, մէյ մ'ալ մօրերնուն. իսկ պզտիկ աղջիկը մօրը հագուստէն քաշելով՝ սկսաւ պոռալ կանչել։

— Ելուր գիրկս, ըսաւ Քլոյէ՝ աչուընե-

րը սրբելով. խեղճ տղաք դուք ալ կտոր մը բան կերէք։

Այս որ լսեցին տղաքը՝ մէկէն սեղանին վրայ թափեցան։ Աղէկ ըրին, ապա թէ ոչ՝ բոլոր պիտի աւելնար։

Նախաճաշիկէն վերջը ելաւ Քլոյէ որ Թովմասին հագուստները պատրաստէ։

— Ո՞ գիտէ, ըսաւ, նոր տէրդ պիտի թողո՞ւ արդեօք որ ասոնք գործածես։ Ես լաւ գիտեմ... այդ մարդիկը սիրտ ըսած բանը չունին... Նայէ, սիրելի, երկու ասուէ բաճկոն կը դնեմ, նայէ որ պաղ չառնուս. ասոնք հին շապիկներդ են, ասոնք ալ նորերն են. նայէ որ աղէկ հոգ տանիս ասոնց, վասն զի մաշելու որ ըլլան՝ քեզի ո՛վ նորէն պիտի շինէ. այս գուլպաներն ալ երէկ իրիկուն առի ու քաշուածները բացի... ասկէ ետև ո՛վ զքեզ պիտի հոգայ։

Այս ըսաւ Քլոյէ ու սիրտը նորէն ելլելով՝ գլուխը սնտուկին կռթնցուց ու հեծեծանօք սկսաւ լալ։

— Երբոր մտքես կ՚անցընեմ, կ՚ըսէր, որ մարդ մը չունենաս պիտի քովդ՝ որ գոնէ հիւանդութեանդ ատեն հոգ ունենայ վըրադ՝ խելքս գլխէս կ՚երթայ. չեմ գիտեր ասկէ ետև ինչ մխիթարութիւն պիտի ունենամ այս աշխարհիս վրայ։

Տղաքը սեղանին վրայ Մնացածները բոլորն ալ լափելէն վերջը՝ մօրերնուն քով շարուեցան. ու տեսնելով որ մայրերնին կուլայ, հայրերնին տրտում է, իրենք ալ սկըսան լալ, ու ձեռքերնին աչուըներնուն տանիլ։ Պզտիկ աղջիկն ալ հօրը ծնգացը վրայ կը ցատքէր, մազերը կը քաշէր, երեսը կը ճանկէր ու ամէն կերպով իր սրտին ուրախութիւնը կը յայտնէր։

— Զուարճացիր, զուարճացիր, ըսաւ անդիէն Քլոյէ, քանի որ դեռ պզտիկ ես, քու լացերուդ օրն ալ կը հասնի. տեսնես պիտի դուն ալ օր մը էրկանդ ծախուիլը, քու իսկ ծախուիլդ։ Այս տղաքս ալ... երբ քիչ մը բանի կարենան գալ՝ ասոնք ալ պիտի ծախուին։ Ի՞նչ բանի կու գայ սեւերուն զաւկի տէր ըլլալը...։

Նոյն ատեն տղոցմէ մէկը, — Խաթունը եկաւ, խաթունը եկաւ, պոռաց։

— Երբոր բան մը չի կրնար ընել՝ ինչո՞ւ համար կու գայ, ըսաւ Քլոյէ։

Նայիս Շէլպի խաթունը ներս մտաւ։ Քլոյէ պաղ կերպով աթոռ մը տուաւ անոր ու հրամցուց որ նստի. խաթունը ուշ չըդրաւ, գլուխը նետած ու այլայլած՝ նստաւ։

— Թովմաս, ըսաւ, եկայ որ...

Այս խօսքիս վրայ սիրտը ելաւ, ու զանոնք հոն լուռ կեցած տեսնելով՝ աթոռին վրայ ինկաւ ու հեծեծանօք լալ սկսաւ։

— Ո՛հ, խաթուն, մի՛ լար, մի՛ լար այդպէս, ըսաւ Քլոյէ, ու ինքն ալ սկսաւ հեծել ու լալ։

Քիչ մ՚ատեն ամէնքն ալ լուռ կեցեր կուլային. այն երկու երջանիկ ու թշուառ վիճակի մարդկանց արցունքներն էին՝ որ մէկմէկու հետ խառնուելով՝ ամենախիստ սրտերն ալ կը փղձկէին ու ատելութիւնն ու բարկութեան կրակները կը մարէին։ Քլոյէ ու բոլոր այն ցաւալի տեսարանին ականատես գերիները՝ խաթունին այս դառն արցունքները տեսնելով՝ Թոմմասին ծախուելուն համար, սրտերնէն վառած ատելութեան բոցը բոլորովին մարեցաւ ու սկսան անոր ցաւոցը վշտակից ըլլալ։

— Սիրելի բարեկամս, ըսաւ Թոմմասին Շէլպի խաթունը, առ այժմ քեզի օգնելու ձեռքէս բան չի գար. քեզի ստակ ալ տալու ըլլամ՝ ձեռքէդ կ՚առնուն...։ Բայց առաջի Աստուծոյ կը խոստանամ քեզի որ բաւական ստակ ունենալուս պէս՝ զքեզ փրնտռել կու տամ ու կը գնեմ։ Այս յուսով սիրտդ ամուր բռնէ ու յոյսդ Աստուծոյ վրայ դիր, ու անոր ապաւինէ։

— Պարոն Հէլլին եկաւ, պոռացին մէկրեւ-րան տղաքը։

Նոյն միջոցին Հէլի կապիտ կերպով մը ոտքով դուռը հրեց բացաւ ու ամարդաբար ներս մտաւ։ Անցուցած գէշ գիշերը ու բոլոր իր միտքը դրամներուն չյաջողիլը՝ շատ գանուացուցեր էին զինքը։ — Երթանք, պատրաստ ես, պոռաց Թովմասին երեսէն մեր։ Վերջը խաթունը տեսնելով՝ գլուխը բացաւ բարև տուաւ։

Քիչ մէկէն Թովմասին ճերմակեղէններուն սնտուկը գոցեց, չուանով մ'ալ պըլ-լեց ու ծուռ ծուռ գերեզմանատին երեսը մէկ մը նայեցաւ. կարծես թէ դառնութեան արցունքները շատ մը մէյմէկ կրակէ կայծակներու փոխուեցան։

Թովմաս առանց ձայն մը հանելու, ոտք ելաւ ու սնտուկը ուսն առած՝ իր նոր տիրոջը ետևէն գնաց։ Քլոյէն պզտիկ աղջիկը գիրկն առած՝ մինչև կառքը հետը գնաց, տանը գերիներն ալ հեծեծելով կու լային ու ետևէն կ'երթային։

Շէլպի խաթունը գերեզմանատը մէկդի ա-ռած՝ տաք տաք կը խօսէր. նոյն տանենը բոլոր անեցիքը մէկ տեղ կառքին քովը գնացին։ Բոլոր ան կողմի գերիները մեծ ու

պզտիկ վազեր եկեր էին՝ որ իրենց հին բարեկամին վերջին բարևնին տան։ Թովմասը չէ թէ միայն Շէլպիին ամենէն հաւատարիմ գերին կը ճանչնային, այլ նաև բոլոր գերիներուն իբրև բարի օրինակ մը և իբրև մխիթարիչ մը՝ մեծ համարում ունէին վրան. ուստի անոր ծախուիլն ու անկէն հեռանալը ամենուն, մանաւանդ կանանց, մեծ ցաւ պատճառեց։

Կանանցմէ մէկը Քլոյէին վրայ տխրած հանդարտութիւն մը տեսնելով՝ քովը մօտեցաւ, ու — Ամենէս աւելի դու զքեզ կտրիճ կ'ուզես ցուցընել, ըսաւ։

— Ես բոլոր արցունքս թափեցի մինչև հիմայ, պատասխանեց Քլոյէ, բայց... (տեսնելով որ գերեվաճառը կը մօտենայ՝ ծուռ ծուռ երեսը նայեցաւ). բայց, կրկնեց, սա անպիտանին դիմաց ինչ ալ ըլլայ՝ կաթիլ մ'ալ արցունք թափել չեմ ուզեր։

— Կառքը հեծիր, պոռաց Հէլի Թովմասին՝ գերեաց բազմութեան մէջէն անցնելով՝ որոնք խոլոր մոլոր իրեն կը նայէին։

Թովմաս անմեղ գառնուկի մը պէս՝ առանց ուշանալու՝ շուտ մը կառքը ցատքեց։ Հէլի կառքին նստարաններուն տակէն խոշոր ու ծանր երկաթէ ոտնակապ մը հանեց

ու սկսաւ Թովմասին ոտուըները կապել։ Կապալութեան մոմռալ մը փրթաւ բոլոր հոն գտնուող գերիներուն մէջ։ Շէլպի խաթունն ալ տանը դիմացը կեցած՝ Հէլլիի ըրածը տեսնելով՝ — Ջուր տեղը այդ զգուշութիւնները կ՚ընես, պոռաց։

— Ես չեմ գիտեր, խաթուն, պատասխանեց Հէլլի. 500 տոլլար կորսընցուցի, ա՛լ աւելին կորսընցընելու կամք չունիմ։

— Այդ անպիտան մարդէն ինչ աղէկ բան կրնայ յուսացուիլ, ըսաւ տրտմութեամբ Քլոյէ։ — Իսկ երկու տղաքը՝ որ մինչև այն ատենը բան մը չէին հասկըցած, հօրերնուն ոտքը շղթան տեսածնուն պէս՝ իմացան ըլլալիքը ու լաց մ՚էր փրցուցին։

— Շատ կը ցաւիմ, ըսաւ Թովմաս, որ Պ. Օննիկն այսօր տունը չէ։

Օննիկը քանի մ՚օրուան համար իր մէկ ընկերոջը հետ անոնց կալուածները գնացեր էր. և նոյն օրը որ Թովմասին ծախուելու լուրը ելաւ՝ ինքը առաւօտը կանուխ ճամբայ ելլելով՝ բան մ՚ալ չէր իմացած։

— Պ. Օննիկին իմ կողմանէս շատ բարև ըրէք, ըսաւ Թովմաս աչուըները լեցուած։

Հէլլի ձիերուն զարկաւ ու ճամբայ ելաւ։

Թովմաս ինչուան վերջը մտիկերով իր խեղճ տնակին վրայ կը նայէր, ուսկից այնպիսի անգութ կերպով զինքը կը հեռացընէին։

Պ. Շէլպի նոյն օրը տունը չէր. Թովմասը ծախեր էր՝ այն ձանձրացուցիչ պարտատիրոջը ձեռքէն ազատելու համար, ուստի դաշինքը ստորագրելէն վերջը՝ իբրև ծանր բեռէ մ'ազատած կը կարծէր ինքզինքը. բայց իր կնոջ առջի գիշերուան ըրած խօսքերը սրտին վէրք մ'եղեր էին ու խիստ անհանգիստ էր։ Զուր կը ջանար ինքզինքը համոզել՝ ըսելով թէ ուրիշներ նոյն բանն ընելով՝ ես ալ իրաւունք մը ունիմ ընելու, և կ'ուզէր խիղճը հանդարտեցընել. բայց իր ներքին բնական զգացմունքը զինքը հանդարտ չէր թողուր. անոր համար գոնէ Թովմասին երթալը չտեսնելու մտքով՝ նոյն օրը ուրիշ տեղ ելաւ գնաց։

Կառքը փոշելից ճամբաներէ վազելով կ'անցնէր։ Թովմասին ընտանի տեսարանները մէկիկ մէկիկ աչքէն հեռացան, և իւր այնչափ տարուան սննդեան տեղուանքը հետզհետէ ծածկուեցան. քիչ ատենէն Շէլպիի կալուածներէն դուրս ելան ու հասարակաց ճամբան մտան։

Հազիւ թէ մղոն մը կտրեր էին՝ Հէլլի

յանկարծ երկաթագործի մը խանութին դի-
մացը վար իջաւ՝ որ քովը ունեցած երկաթ
ձեռնականները նորոգել տայ։

— Ասոնք՝ սա մարդուս համար ինծի
շատ պզտիկ կ'երևան, ըսաւ երկաթագոր-
ծին՝ Թովմասը ցուցնելով։

— Տէ՜ր Աստուած, ի՜նչ կը տեսնեմ. ա-
սիկայ Շէլպիին Թովմասը չէ՞. ի՞նչ... զի՞ն-
քը ծախե՞ց, ըսաւ երկաթագործը։

— Հրամեր ես, ծախեց, կրկնեց Հէլի։

— Ինծի անհաւատալի կ'երևայ. որո՞ւն
մտքէն կ'անցնէր որ Թովմասը ծախեն, կըրկ-
նեց երկաթագործը։ Հաւատա ինծի, այդ
մարդը այսպէս կապկըպելու կարօտութիւն
չկայ, շատ աղէկ, շատ պատուական ու
շատ հաւատարիմ մարդ է։

— Այնպէս է, այնպէս, պատասխանեց
Հէլի արհամարհանօք, այդ քու հաւատարիմ
ըսած մարդիկներէդ աւելի վախնալու է։ Ան-
հոգ, ապուշ ու գինով մարդիկներէն վախ
չկայ. զանոնք լաթի մը պէս մէկ տեղէն մէ-
կալ տեղը կրնաս քշել առանց դժուարու-
թեան. բայց այս տեսակ գերիները՝ տէ-
րերնին փոխելը մեղքէն աւելի կ'ատեն. ուս-
տի զասոնք շղթայի զարնելէն ապահով ճամ-
բայ չկայ. թէ որ մէկ մը ոտուընին ազատ

թողուս՝ ան ատենը կը տեսնես որ ուրիշի բարեմտութենէն ինչպէս անոնք իրենց օգուտը կը քաղեն։

— Ի հարկէ, վրայ բերաւ երկաթագործը՝ գործիքները փնտռելով, հարաւային կողմերը շատ փափագելի չեն Քէնտըրքեցի գերիներուն, ուր շատ շուտով մահերնին վրայ կը հասնի։

— Այնպէս է, պատասխանեց Հէլի, այն կողմերը գերիները շատ չեն դիմանար. կլիմայէն է ինչէ՛ն՝ է չեմ գիտեր, շատ շուտով կը մեռնին հոն, և մեզի ալ առուտուրի աղէկ դուռ կը բացուի։

— Շիտակը շատ ցաւալի բան է տեսնելը, որ այս Թոմասին պէս կտրիճ, հաւատարիմ ու արդար մարդը այն կողմերը տարուի, և հոն շաքարի արտերուն մէջ աշխատութեան տակ իրեն վերջի շունչը տայ։

— Ո՛, սիրտդ հանգիստ բռնէ, Թոմասն երջանիկ վիճակ մ'ունի. խոստացայ որ վրան աղէկ հոգ տանիմ։ Բարի ընտանեաց քով կը դնեմ զինքը. և թէ որ կլիմային ու ան կողմի սովորական ջերմին դիմանայ՝ կրնայ սեւի մը երևակայածին չափ երջանիկ կեանք մ'ունենալ։

— Կնիկն ու տղաքը հո՞ս ձգեց։

— Հրամեր ես. բայց հին ուրիշ մը կը պահենք իրեն. փառք Աստուծոյ, աշխարհիս վրայ կնիկ պակաս չէ[1]։

Այս խօսակցութեանցս ատեն Թովմաս խանութին դուրսը կառքին մէջ տըխուր նըստեր էր. մէյ մ'ալ յանկարծ ձիու ոտնաձայն մը լսեց, ու ետը դառնալն ու նայիլը չմնաց՝ մէկէն Պ. Օննիկը ձիէն վար ցատքեց ու Թովմասին վիզը պլլուեցաւ լալով ու հեծեծելով. — Այս ի՜նչ անիրաւութիւն է, պոռաց, այս ի՜նչ մեծ ամօթ է մեր տանը. ի՞նչ կ'ուզեն թող ըսեն, վատութիւն մ'է այս բանս։ Ա՜հ, թէ որ քիչ մ'ալ մեծ ըլլայի ու խօսքս անցնէր՝ այդպիսի բան թող չէի տար որ ըլլեն։

— Ո՛հ, Պ. Օննիկ, ո՜րչափ ուրախացայ զքեզ այս վերջին անգամս ալ տեսնելուս. շատ ցաւեր էի որ զքեզ մէկ անգամ մ'ալ չկրցայ տեսնել, բայց հիմայ չես կրնար երեւակայել թէ ի՜նչպէս ուրախացայ։

Այս խօսքերս ըսելու ատեն՝ Թովմաս քիչ մը շարժեցաւ. մէյ մ'ալ Պ. Օննիկ անոր ոտքին շղթաները տեսնելով,

— Այս ի՜նչ բան է, հառաչեց ձեռոլ-

1. Ընթերցողը պատմութեանս Գ. գլուխը յիշելով՝ այս խօսքերուս թող չզարմանայ։

ները երկինք վերուցած, այս ի՜նչ անօրէ-
նութիւն է. պէտք է որ ես սա անպիտան
մարդուն հետ զարնուիմ։

— Չէ, չէ, Պ. Օննիկ, այդպիսի բան
մի՛ ըներ. կ'աղաչեմ, քիչ մը կամաց խօսէ,
թէ չէ՝ ըսածներդ կը լսէ ու կը կատղի, ա-
նով ինծի հետ ալ գէշ կը սկսի վարուիլ։

— Աղէկ ուրեմն, քու սիրոյդ համար
բան մը չեմ ըներ, բայց այս ի՜նչ անօ-
րէնութիւն է, այս ի՜նչ անկարգ բան։ Ինծի
բան մ'ալ չըսին, բան մ'ալ չհարցուցին,
և թէ որ Լինդոլը չըլլար՝ ես և ոչ հիմայ
պիտի իմանայի։ Անոր համար երբոր տուն
դարձայ պէտք եղածին պէս նեղացայ։

— Ո՛հ, գէշ ըրեր ես, Պ. Օննիկ։

— Ես գիս չկրցայ բռնել. ըսի թէ աս
ըրածնիդ մեծ անիրաւութիւն է...։ Բայց,
վրայ բերաւ կամացուկ մը՝ կռնակը խանու-
թին դարձընելով, ա՛ռ տօփկայ, իմ տոլլարս
է, քեզի բերի։

— Ո՛հ, շատ շնորհակալ եմ, բայց չեմ
կրնար առնուլ, պատասխանեց Թօւմաս սիր-
տը ելած։

— Պէտք է որ առնես. գալէս առաջ
Քլոյէին իմացուցի որ այս տոլլարը քեզի
պիտի բերեմ, ան ալ խորհուրդ տուաւ որ

ծակեմ ու ժապաւէն մ՚անցրնեմ, որպէս զի կարենաս վիզէդ կախել ու պահել, թէ չէ՝ այդ անպիտան մարդը ի հարկէ ձեռքէդ կ՚առնէ։ Բայց ինչուան որ սա մարդուն հետ չնետուիմ՝ սիրտս պիտի չհանգչի։

— Չէ, չէ, Պ. Օննիկ, մի ըներ, ինծի անով աղէկութիւն մ՚ըրած չես ըլլար։

— Լաւ, միայն քու սիրոյդ համար ետ կը կենամ, կրկնեց Օննիկ, տոլլարը Թովմասին վիզն անցրնելով. հիմայ բաճկոնդ ալ վրայէն կոճկէ որ չտեսնուի, ու քանի որ տեսնես զանիկայ՝ միտքդ բեր որ օր մը պիտի գամ զքեզ ազատեմ։ Այս բանիս վրայ Քլոյէին հետ ալ խօսեցայ ու ապահովցուցի զինքը որ սիրտը հանգիստ բռնէ. ես իմ վրաս կ՚առնեմ այդ գործը, և այնչափ պիտի ըսեմ՝ որ ինչուան ձանձրացունեմ հայրս, որպէս զի վերջապէս հարկադրուի զքեզ ազատելու։

— Ջուր տեղ ինծի համար հայրդ մի նեղեր։

— Չէ, գէշ բան մ՚ընելու համար չէ, այլ զքեզ ազատելու համար. միշտ ետևէն պիտի քալեմ։

— Հիմայ խոստացիր ինծի, Պ. Օննիկ, վրայ բերաւ Թովմաս, որ խելօք ու խելա-

ցի տղայ մը պիտի ըլլաս։ Նայէ, սիրելի, տանը յոյսն ու ակնկալութիւնը բոլոր քու վրադ է. մօրդ խօսքէն դուրս չելլես. չնմանիս ան տղոց՝ որոնք ինքզինքնին խելացի համարելով՝ մօրերնուն հնազանդիլ չեն ուզեր, կնկան խօսքին մտիկ ընելը ամօթ է ըսելով։ Աստուած ո՛ր և իցէ բարիք շատ անգամ կը շնորհէ, բայց մայր մը մէ՛կ անգամ միայն կու տայ. հարիւր տարի ալ ապրիս՝ այս քու մօրդ պէս բարեպաշտ ու բարեսիրտ մայր մը չես կրնար գտնել. անոր համար վրան աղէկ սէր ունեցիր, զինքը մեծարէ միշտ ու նայէ որ իրեն մխիթարութիւնն ըլլաս։ Պիտի պահես ըսածներս, այնպէս չէ՞, սիրելի։

— Հա, հա, կ՚ընեմ կ՚ընեմ, պատասխանեց Օննիկ։

— Խօսքերուդ աղէկ ուշ դիր. քու տարիքովդ տղաք երբեմն տաքգլուխ կ՚ըլլան. իրաւ բնութիւններնուն մէջն ալ կայ. բայց ճշմարիտ ազնուական մը, ինչպէս կը յուսամ որ դուն ըլլաս, կը նայի միշտ որ բերնէն անանկ բառ մը չհանէ՝ որ կերպով մը ծնողացը նախատինք ըլլայ, և կամ իրենց գործոցը չհաւնիլ մը ցուցընէ։ Կը յուսամ, Պ. Օննիկ, որ այս խրատներս հրամանքիդ ծանր չեն գար։

— Չէ, Թովմաս, չէ. քու յորդորներդ միշտ ինծի սիրելի ու հաճելի եղած են։

— Նայէ սիրելի, պատասխանեց Թովմաս, լայն ձեռքերովը Օննիկին երեսը շոյելով, նայէ ես քեզմէ ծեր եմ. դուն աղէկ մարդ մ'ըլլալու ամէն ձիրք ու կատարելութիւն ունիս. կրնաս օր մը գիտուն, խելացի ու ազնուական մարդ մ'ըլլալ. և քու ծնողացդ ուրախութիւնն ու պարծանքը։ Հօրդ պէս աղէկ տէր եղիր և մօրդ պէս ալ բարեպաշտ քրիստոնեայ. յիշէ քու Ստեղծիչդ մանկութեանդ ժամանակը, Պ. Օննիկ։

— Ամէն խօսքերդ կը ջանամ կատարել, Թովմաս, և կը խոստանամ որ ըսածիդ պէս աղէկ մարդ մ'ըլլամ. ամենևին մի՛ տարակուսիր։ Այս միայն պահէ որ քիչ ատենուէն նորէն դու հոս պիտի գտնաս, նայէ, ե՛ս եմ խօսքը... ինչպէս այս առաւօտ ալ Թըոյէին կ'ըսէի, երբոր մեծնամ և մարդու կարգ անցնիմ, տնակդ նորէն պիտի շինել տամ աւելի մեծ ու կարգաւորեալ. ու մէջը ապուռ գորգով փառաւոր սենեակ մը յատուկ քեզի համար պիտի պատրաստեմ։ Ո՛հ, ան ատեն տեսնես թէ ինչ ուրախ օրեր պիտի ունենաս։

Հէլլի նոյն միջոցին երկաթէ ձեռնակապները առած՝ խանութէն դուրս ելաւ։

Օննիկ Հէլլիին ձեռքի կապանքները տեսնելով՝ կիրք ելաւ, և — Գիտնաս, պարոն, ըսաւ, պիտի երթամ ծնողացս պատմեմ թէ Թովմասն ի՛նչպէս կը չարչրկես։

— Գնա՛ բանդ. ի՛նչ կ՚ուզես ըրէ, պատասխանեց Հէլլի։

— Պէտք էիր ամըչնալ այդ ցած արուեստիդ վրայ, որ մարդիկ անասուններու պէս շղթայի զարկած՝ անգթաբար ծախու կը հանես։

— Քանի որ հարուստ ազնուականներ կը գտնուին որ զմարդիկ կը գնեն, ես ալ առուտուրը անարգ բան մը չեմ գտներ. ծախելուն ու գնելուն մէջ մեծ տարբերութիւն մը չեմ տեսներ։

— Երբոր ես մեծնամ, պատասխանեց Օննիկ, ոչ գնող պիտի ըլլամ, և ոչ ալ մանաւանդ ծախող. մինչև հիմայ Քէնդըրքի ծնելուս վրայ կը պարծէի, հիմայ ամչնալս կու գայ, ու ինծի նախատինք կը համարիմ։

Օննիկ մէկէն ձիուն վրայ ցատքելն ու նստիլը մէկ ըրաւ. ու դառնացած աչուըները չորս դին կը դարձընէր, կարծելով թէ իրեն այս մտածութիւնները մեծ բանի տեղ պիտի դնեն իր հայրենակիցները։

— Մնաս բարով, ըսաւ Թովմասին, արիացիր ու մի՛ յուսահատիր։

— Երթաս բարով, Պ. Օննիկ, պատասխանեց Թովմաս, վերջին անգամ աչուըները իր պզտի տիրոջը վրայ դարձընելով, Աստուած օրհնէ զքեզ. Քէնդըքի նահանգը քեզի պէս ազնիւ տղաք երանի թէ շատ ունենար։

Օննիկ վազելով տուն դարձաւ, Թովմասն ալ անդադար ետևէն կը նայէր մինչուան որ աներևութացաւ, և ձիուն ոտնաձայնն ալ մարեցաւ. ատիկայ վերջին տեսն էր, վերջին ձայնն էր որ միտքը կը ձգէին իր քաղցր բնակարանը, իր սրտին սիրելիները . . .։ Բայց կարծես թէ կուրծքին վրայ՝ ուր որ Օննիկին փափուկ ձեռուըները այն տոլլարը կախեցին՝ տաքութիւն մը կը զգար. մէկէն ձեռքը շապիկին տակը խոթեց, ու այն տոլլարը սրտին վրայ սեղմեց։

Հէլլի ձեռնակապները կառքին մէջ նետելով, — Նայէ ի՛նչ կ՚ըսեմ, ըսաւ Թովմասին, քեզի հետ ալ աղէկ կ՚ուզեմ սկսիլ, ինչպէս որ ուրիշ գերիներուս հետ միշտ սկսեր եմ. թէ որ դու խելքով վարուիս՝ ես ալ քեզի հետ աղէկ կը վարուիմ. ես իմ գերիներուս հետ խստութեամբ չեմ վարուած։ Ուստի նայէ որ խելքդ գլուխդ ժողվես, ապա թէ ոչ ինծի հետ չես կրնար խաղալ

հա՛. ես սեւերուն ամէն հնարքները գիտեմ, ինծի աղէկ նայէ։ Երբոր անոնք հանդարտ ու խելքով կը կենան ու փախչիլ չեն ուզեր, ես ալ անոնց հետ աղէկ կը վարուիմ, իսկ եթէ ուզածիս պէս չերթան՝ յանցանքն իրենցն է, իմս չէ։

Թովմաս ապահովցուց Հէլին՝ որ փախչելու ամենեւին միտք չունի. արդէն չէր ալ կրնար, վասն զի երկու ոտուըները շղթաներով կապուած մարդն ի՞նչպէս կրնայ փախչիլ։ Բայց Հէլի սովորութիւն ունէր իր շընչաւոր վաճառքներուն հետ ունեցած վերաբերութիւնն այսպիսի սզտի յորդորակներով սկսիլ, և կը կարծէր թէ այս կերպ խօսքերով գերիները ուրախ կ՚ըլլան, իրեն վրայ վստահութիւն կ՚ունենան, և չի հարկադրիր զանոնք գանն պատիժներու տակ ձգելու։

Ինչ և իցէ հիմայ թողունք Թովմասը, և մեր պատմութեան մէկալ անձինքը նայինք թէ ի՞նչ կ՚ըլլեն։

---

# ԳԼՈՒԽ ԺԱ.

*Գերւոյ մը իր տիրոջը քովէն փախչիլը.*

*Երեկոյեան մօտ էր, օրն ալ ամպոտ ու տխուր և բարակ անձրև մ'ալ կու գար. Քէնդրքէի Ա. Ա. գեղի մը պանդոկին դիմացը օտարական ճամբորդ մը ձիէն վար իջաւ։ Անձրևի վախէն շատ մարդիկ ալ նոյն պանդոկն ապաւիններ էին. անոր համար ընդունելութեան մեծ սրահին մէջ ամէն աստիճանի մարդ կը գտնուէր։ Բարձրահասակ ու վատուժ Քէնդրքեցիներ որսորդի հագուստով վեր վար թոյլ թոյլ կը պտըտէին. որոնց հրացանները մէկ անկիւն մը ձգած, վառօդի քսակներնին ուրիշ անկիւն մը. անդին որսի շներ, ասդին պզտի սեղաններ՝ խառնակութեան տեսարան մը կ'ընծայէին. չորս կողմն ալ երկայնասրունք պարոններ նստեր էին, աթոռնին երկու ոտքի վրայ դէպ ի ետև ծռած, գլխարկնին գլուխնին ու տղմաշաղախ ոտքի ամաններնուն կրունկները փառաւորապէս կրակարանին չորս դին կըթընցուցած՝ խորունկ մտածութիւններու մէջ ընկղմեր էին։*

Պանդոկապետը՝ որ դրամատեղանին քով կեցեր էր, իր հայրենակցացը պէս բարձր հասակ մ՚ունէր, դէմքը բաւական տգեղ, մազերը թաւ, գլուխն ալ մեծ գլխարկ մը։

Ոչ միայն ինքը, այլ հոն գտնուող ամէն մէկը մէյմէկ դիրքով գլխարկնին դրեր էին. ոմանց գլխարկը թաղիք էր, ոմանցը ջրշան մորթէ, մէկունը արմաւենիի տերևէ, մէկալինը հասարակ. և ամէնքն ալ զանազան կերպով դրած, այնպէս որ իւրաքանչիւրին գլխարկին դիրքէն իրեն բնաւորութիւնը կ՚իմացուէր։ Ոմանք դէպ ի մէկ կողմը ծռած դրեր էին, որ ուրախ ու զուարթ բնութեան նշան է. ոմանք ինչուան քթերնէն վար քաշեր էին, որ մտածութեան տէր եղող մարդու նշան է. ոմանք ալ դէպ ի ետև դրեր էին, որ սաստիկ արթնութեան նշան է, վասն զի ամէն կողմն ազատ կ՚ուզեն տեսնել. իսկ անհոգ մարդկանց գլխարկը, որոնց փոյթը չէ թէ գլխարկնին այսպէս դրեր են կամ այնպէս, գլուխներնուն վրայ ամէն կողմ կը տատանի։

Քանի մը լայնավալարիք սևեր՝ մեծ գործունէութեամբ կը մտնէին կ՚ելլէին անդադար՝ առանց մասնաւոր բան մ՚ընելու, վասն զի ընելու բան մ՚ալ չունէին, բայց

բոլոր ջանքերնուն ան էր՝ որ իրենց տիրոջ ու Հիւրերուն աչքը մտնէին։ Այս տեսարանին վրայ աւելցուր նաև կրակարանին բազմաբոց և շառաչող կրակը. դուռն ու պատուհանները բաց էին, վարագոյրները ցուրտ ու թաց քամիէ մը ուռեր ու կը ծածանէին։

Այս բազմամբոխ ու ազատածին ընկերութեան մէջ մտաւ մեր ճանապարհորդը. կարճահասակ ու գիրուկ, մաքուր հագուած ու կլորակ երեսով մարդ մ'էր, զուարթ ու համարձակ բնաւորութեամբ, ծիծաղկոտ ու նշանաւոր կերպ մ'ունէր։ Մասնաւոր խընամք մը կը ցուցընէր իր պարկին ու ձեռքի հովանոցին վրայ, վասն զի երբոր ծառաները դիմացն ելան որ իրեն օգնեն՝ թող չտուաւ անոնց։ Աչուըններնին սկսաւ սրահին չորս դին պտըտցընել, և ճամբու բեռներովը տաքուկ անկիւն մը քաշուելով՝ աթոռ մ'առաւ ու զանոնք դրաւ աթոռին տակը և ինքն ալ վրան նստաւ, ու սկսաւ դիտելով մը կրունկները կրակարանին կլոթրնեցնող պարոնին նայիլ, որ անխնայ աջ ու ձախ ուժով ուժով կը թքնէր։

— Էյ, նայինք ինչպէս ես, պարոն, նոր եկողին հարցուց, ու ի պատիւ անոր՝ նոր խուխ մ'ալ արձակեց։

— Ինչպէս կը կարծեմ՝ շատ աղէկ եմ, պատասխանեց օտարականը, զգուշանալով առ ինքն եղած պատուէն՝ որ չըլլայ թէ խուխ մ՚ալ իր վրան գայ։

— Ի՞նչ նոր լուր ունիս, ըսաւ առաջինը, ու գրպանէն ծխախոտի տերև ու որսի պանակ մը հանեց։

— Նոր բան մը չկայ, պատասխան տըւաւ Նորեկը։

— Ծխախոտ կը ծամե՞ս, ըսաւ առաջինն ու եղբայրսիրաբար կտոր մը ծխախոտ հրամցուց։

— Ոչ, շնորհակալ եմ. ինծի դէշ կ՚ընէ, պատասխանեց ճամբորդը՝ ետ ետ քաշուելով։

— Զարմանք, ըսաւ միւսը, ու հրամցուած ծխախոտը իր բերանը նետեց. որովհետև երթալով բերնի խուխը կը պակսէր, և որպէս զի ետեւէ ետեւ նոր պաշար հասցընէ։

Ամէն անգամ որ դէպ ի Նորեկ պարոնը կը թքնէր՝ անիկայ կը զգուէր, մինչև առաջինն անդրադառնալով՝ քաղաքավարութեան համար դէպ ի ուրիշ կողմն դարձուց իւր թնդանօթը, և սկսաւ փայտակալի մը վրայ արձակել այնպիսի ճշդութեամբ և այն-

պիսի զինուորական հանճարով՝ որ եթէ բերդ մ'եղած ըլլար՝ քիչ մ'ատենէն հիմնայատակ կը կործանէր կ'իյնար։

— Ի՞նչ բան է, ըսաւ Նորեկը, տեսնելով որ խել մը մարդ մէկտեղ ժողված՝ պատին վրայ կպցուցած ծանուցում մը կը կարդան։

— Նշանաւոր սև մի է, ըսաւ կարդացողներէն մէկը։

Օտարականը՝ որ Պ. Ուիլսըն կը կոչուէր, նստած տեղէն ելաւ ու ճամբու պարկն ու հովանոցը աղէկ մը տեղաւորելէն ետև, ակնոցն հանեց քիթը դրաւ, և սկսաւ պատին վրայի ծանուցումը կարդալ, որ էր այս.

Ներքոյ գրելոյս քովէն՝ Գէորգ անունով խառնածին գերին փախեր է։ Այս Գէորգը վեց ոտք հասակի բարձրութիւն ունի, գոյնը նուշագ թուխ, մազերը սեւ ու գանգրաւոր. արթուն է բնաւորութեամբ։ Լաւ կը խօսի, կարդալ գրել գիտէ. անտարակոյս ինքզինքը ճերմակ պիտի կեղծէ. կռնակին և ուսերուն վրայ խորունկ սպիներ ունի. աջ ձեռքին վրայ ալ Հ տառը կոխուած է տաք երկաթով։

Ով որ զինքը ողջ բերէ, կամ թէ բացա-

կան պատճառներով ցուցընէ թէ մեռած է՝ չորս հարիւր տոլլար[1] վարձք ունի։

ՀԱՐՐԻՍ

Դ. Ուիլսըն ծայրէ ծայր այս ծանուցումը կարդաց ցած ձայնով քանի մ'անգամ, կարծես թէ բերնուց կ'ուզէր սորվիլ։

Ծխախոտ ծամող երկայնասրունք պարոնը, որ ինչպէս ըսինք՝ անդադար փայտակալը խուխով կը կոծէր, ոտուըները վար առաւ, շտկուեցաւ, և ելաւ ծանուցման քով գնաց, ու բոլոր կոկորդը քամելով՝ առատ խուխով մը ծեփեց զայն։

— Ահա այս է իմ կարծիքս ալ, ըսելիքս ալ, ըսաւ անխռով կերպով մը, ու դարձաւ նորէն տեղը նստաւ։

— Է՜, այդ ի՞նչ է ըրածդ, պոռաց անդիէն պանդոկապետը։

— Այդ ծանուցումը գրողն ալ եթէ հոս ըլլար՝ նոյն բանը պիտի ընէի, ըսաւ երկայնասրունք պարոնը. և սկսաւ անայլայլակ կերպով ծխախոտ կարել։ Ո՛վ որ քովը

1. Որովհետև ատեն կը յիշուի գրքիս մէջ այս ստակը՝ ընթերցողաց լաւ կ'ըլլայ գիտնալ՝ որ տոլլարը Միացեալ Նահանգաց արծաթ ստակն է, որ 5 ֆր. 42 սանթիմ կ'ընէ, կամ 23 դահեկան։

այդպիսի մարդ ունի ու հետը աղէկ չի վա-
րուիր՝ արժանի է որ կորսնցընէ զանիկայ։ Այդպիսի ծանուցումներ Քէնդըքիի նախասիրնք է. իմացա՞ր հիմայ ըրածիս պատճառը։

— Ըսածիդ ես ալ իրաւունք կու տամ, ըսաւ պանդոկապետը, ու մէկ կողմանէ իր պանդոկին եկողներուն անուանց ցանկը կը շինէր։

— Ես ալ խել մը գերի ունիմ, վրայ բերաւ երկայնասրունք պարոնը, միշտ խուխ արձակելով, և իրենց ըսեր եմ. «Ծօ՛ տղաք, թէ որ կ՚ուզէք՝ թողուցէք քովէս փախէք. վախ ալ մի ունենաք որ ետեւնէդ մարդ ղրկեմ զձեզ բռնելու համար»։ Ահաւասիկ իմ բռնած կերպս. ազատ թող գերիներն որ փախչին, անոնք կամք չեն ունենար փախչելու։ Այս ալ բաւական չէ. ես անոնց ազատութեան գրերն ալ կարգի դրեր պատրաստեր եմ[1], որ եթէ յանկարծ ոտուը-

1. Գերի ունեցողներէն ոմանք կը գտնուին՝ որ կտակով կամ ողջութեան ատեններն իրենց գերիները ազատ ձգելու միտք կամ դիտաւորութիւն կ՚ունենան։ Բայց շատ անգամ այսպիսի գեղեցիկ դիտաւորութիւններն ի գործ չեն դրուիր. յանկարծական թշուառութիւն մը, սնանկութիւն մը և կամ անակնկալ մահը կրնան այսպիսի բարեգործութեան մը գործադրութեանն արգելք ըլլալ։ Այս Քէնդըքեցին այսպիսի անակնունելի դիպուածոց դէմն առնելու համար՝ առաջուց ա-

ներս ալ տնկեմ՝ անոնց ազատութիւնն ապահով ըլլայ։ Ուստի, պարոն օտարական, այս գաւառիս մէջ ուրիշ մ'ալ չկայ որ ինծի պէս աղէկ ու հաւատարիմ սևեր ունենայ։ Շատ ատեն չէ որ 400 տոլլար արժող վաճառքով՝ Ջինչինատի ղրկեցի ես զիրենք, և իրենք ամենայն հաւատարմութեամբ ստակը ճիշդ ձեռքս հասուցին, և աս բանիս վրայ ես ամենևին տարակոյս չունէի։ Էշի տեղ դիր զանոնք ու խստութեամբ վարուէ հետերնին, անոնք ալ էշի մը պէս հետդ կը վարուին. մարդու տեղ դիր զանոնք ու հետերնին անուշութեամբ վարուէ, անոնք ալ մարդու պէս հետդ կը վարուին։

Ամենախօս վաճառականը մէկ կողմանէ այս բարոյական ճառախօսութիւնս կ'ընէր, մէկալ կողմանէ ալ կրակարանը խուխով կը լեցնէր։

— Բարեկամ, պատասխանեց Պ. Ուիլսըն, ըսածներուդ ես ալ բոլոր սրտով իրաւունք կու տամ. և այդ ծանուցման մէջի յիշատակուած մարդը նշանաւոր անձ մ'է,

մէն բան հոգացեր ու բոլոր իր գերեաց ազատագրութեան թղթերուն ստորագրեր էր, որով յանկարծ մեռնելու ալ ըլլար՝ ժառանգը օրինաց դիմաց պարտական էր գերիներն ազատ թողլու։

ես ալ կը ճանչնամ զինքը. շատ մը տարի իմ գործարանիս մէջ աշխատեցաւ, և իմ գործաւորացս մէջ ամենէն ճարտարն էր։ Հնարագէտ մարդ մ'է տրիկայ. վուշ ծեծելու նոր մեքենայ մը հնարեց, որ շատ գործարանաց մէջ ալ կը գործածուի հիմայ, և իր տէրը այն մեքենային համար Տէրութենէն արտօնութիւն ալ առեր է։

— Հասկըցայ, հասկըցայ, պատասխանեց վաճառականը, այդ մարդը նորահնար մեքենային տէր եղաւ, և առած արտօնութեամբը աղէկ ստակ դիզեց. իսկ խեղճ հընարողին աջ ձեռքին վրայ տաք երկաթով նշան դրեր է։ Թշուառականը թէ որ ձեռքս ըլլար՝ անոր ճակտին վրայ այնպիսի նշան մը կը դնէի որ յաւիտեան չկարենար մոռնալ։

— Այսպիսի աչքաբաց ու ճարտար գերիներն անհնազանդ կ'ըլլան, ու դժուարին է զանոնք բռնել, ըսաւ անդիէն մարդուն մէկը. անոր համար է որ այսպիսի նշաններ ունին ու ծեծի վէրքեր ու սպիներ կը կրեն վրանին. թէ որ հանդարտ կենալու ըլլային, տէրերնին ալ հետերնին այնպէս չէին վարուիր։

— Այսինքն է՝ Աստուած զանոնք մարդ

ստեղծեց, և աչքերը զանոնք անբանի տեղ կ'ուզեն դնել, նեղսրտութեամբ պատասխան տուաւ վաճառականը։

— Աղէկ որ քննենք, կրկնեց նորէն նոյն մարդը, որ իր անկրթութեամբը չիմացաւ առաջնոյն զինքն արհամարհելը, այսպիսի բանի եկող գերիները իրենց տէրանցը մեծ շահ մը չունին։ Ինչ բանի կու գայ անոնց ճարտարութիւնն ու հնարագիտութիւնը՝ երբոր իրենց տէրանցը շահուն չեն ծառայեր. ուրիշ բան չէ ըրածնին՝ բայց եթէ աչք խաբել։ Ես ալ այսպիսի մէկ երկու գերի ունէի, շուտ մը զանոնք հարաւային կողմի գերեվաճառներուն ծախեցի, աղէկ գիտէի որ կանուխ ուշ՝ օր մը զանոնք ձեռքէս պիտի փախցրնէի թէ որ այսպէս չընէի։

— Ուրեմն դու գնա Աստուծոյ աղօթք ըրէ որ ասկէ ետև անհոգ ու անմտածող արարածներ ստեղծէ քեզի համար, պատասխանեց վաճառականը։

Նոյն միջոցին մէջ մ'ալ նայիս պանդոկին դիմացը մէկ ձիով պզտի փառաւոր կառք մը կանգ առաւ. մէջը ազնիւ ու հագուած պարոն մը նստեր էր. կառավարն ալ սեւ ծառայ մ'էր։

Ներս մտածին պէս՝ ամէնքը սկսան գի-

տեղ թէ ով է այս պարոնը, ինչպէս որ սովորութիւն է անձրևի օր մէկտեղ ժողուած պարապորդ մարդկանց՝ հետաքրքրութիւն ընելու ամէն եկող գնացողին։ Ասիկայ բարձրահասակ մարդ մ'էր, պղնձագոյն սպանիացւոյ մը նման, վառվռուն գեղեցիկ աչուըներով ու սև փայլուն գանգրահեր մազերով. քիթն արծուենգն, բարակ ու շիտակ շրթունքներով, կերպարանքն ու վարմունքը վայելուչ, այնպէս որ ամէնքն սկսան ըսել թէ ասիկայ հասարակ մարդ մը պիտի չըլլայ։ Համարձակ կերպով մը ներս մտաւ. նշանացի հրաման տուաւ ծառային՝ որ սընտուկը վար դնէ, և քաղաքավարութեամբ բարևեց բոլոր հոն եղողները. ետքէն գլխարկը ձեռքը դէպ ի դրամասեղանը գնաց ու պանդոկապետին գրել տուաւ անունը Հենրիկոս Պըալէր, Օքլէնտո քաղաքէն, Ծէլպիի կոմսութեան մէջ. ետքը անտարբեր կերպով դարձաւ պատին վրայ կպցուցած ծանուցումը ծայրէ ծայր կարդաց։

— Ցակոբ, ըսաւ ծառային, կարծեմ թէ Պէռնանի քով տեսածնիս այս տեղը նկարագրուած մարդուս քիչ մը կը նմանի, այնպէս չէ՞։

— Հրամեր ես, տէր իմ, պատասխա-

նեց Ցակոբը, միայն ձեռքին վրայի նշանը որոշ չեմ գիտեր։

— Ես ոչ մտքէս ալ կ՚անցնէր այդ բանը, պատասխանեց օտարականը գլուխը շարժե-լով։ Ետքը դէպ ի պանդոկապետն երթա-լով աղաչեց որ իրեն համար մասնաւոր խուց մը պատրաստէ, վասն զի քանի մը գրելու բան ունիմ, ըսաւ։

Պանդոկապետը մէկէն ցատքեց, հետը մէկտեղ վեց եօթը սեւեր ալ՝ ծեր և տղայ, մանչ աղջիկ, պզտիկ ու մեծ, սկսան բզզալ, վեր վար վազել, ելլել մտնել, մէկմէկու զարնուիլ, ինչ է՝ նորեկ պարոնին խուց պի-տի պատրաստեն։ Իսկ պարոնը՝ առանց մէկէ մը քաշուելու՝ համարձակութեամբ մը աթոռ մ՚առած՝ սրահին մէկ անկիւնը նստաւ, ու սկսաւ քովը նստողին հետ ասդիէն անդիէն խօսակցիլ։

Արուեստաւորը՝ Պ. Ուիլսըն, օտարակա-նը ներս մտաւ չմտաւ՝ սկսաւ զանիկայ դի-տել հետաքրքիր ու անհանդարտ նայուած-քով մը. իրեն այնպէս կու գար թէ զանի-կայ տեղ մը տեսած պիտի ըլլայ, ճանչնայ պիտի, բայց թէ ո՞ւր՝ ամենեւին միտքը չէր կրնար բերել։ Ամէն անգամ որ օտարականը կը խօսէր, շարժմունք մը կ՚ընէր կամ կը

ծիծաղէր, Պ. Ուի՛լըրնին տարակոյսն ալ կը շատնար. աչքը վրան անկեր էր, բայց երբոր անոր վառվռուն ու սև աչուըները կը տեսնէր որ դէպ իրեն կը դառնային՝ աղջնը կը նայէր։ Մէյ մ'ալ յանկարծ միտքը լոյս մը ծագեցաւ, և այնպիսի խռոված և ապշած կերպով մը օտարականին երեսը նայեցաւ՝ որ անիկայ անդրադարձաւ, ու տաք ելլելով քովն եկաւ։

— Կարծեմ, ըսաւ, հրամանքդ Պ. Ու՛լըրն էս, թէ որ չեմ սխալիր. ու ձեռք առաւ։ Թողութիւն կ'ընես մէկէն չկրցայ ըզհրամանքդ ճանչնալ. կարծեմ միտքդ կու գայ Պ. Պըրալէր՝ Օքլէնտտ քաղաքէն, Շէլպիի կոմսութեան մէջ։

— Հրամեր էս... հրամեր էս, հրամեր էս, պարոն, պատասխանեց Պ. Ուի՛լըրն, կարծես թէ երազին մէջ կը խօսէր։

Նոյն միջոցին սևուկ մը եկաւ ու ըսաւ թէ պարոնին խուցը պատրաստ է։

— Յակոբ, ըսաւ օտարականը ծառային՝ կէս բերնով, սնտուկին ուշադրութիւն դիր։ Ետքէն Ուի՛լըրնին դառնալով՝ — Կը փափաքէի, կրկնեց, հրամանքիդ հետ առանձին քանի մը հարկաւոր բան խօսիլ. թէ որ կ'ուզես հրամէ խուցս երթանք։

պտըտէր սրտին անհանդարտութենէն, և չէր գիտեր ընելիքը. մէյ մը կ'ուզէր օգնել Գէորգին, մէյ մ'ալ կը փափաքէր հայրենեացը կարգն ու օրէնքները պահպանել. ուստի դարձաւ ըսաւ.

— Շատ աղէկ, Գէորգ. ես կ'ենթադրեմ ուրեմն թէ քու օրինաւոր տէրդ թողուցեր փախեր ես. չեմ զարմանար. բայց գիտցած ըլլաս, Գէորգ, որ շատ կը ցաւիմ, իրաւցընէ շատ կը ցաւիմ. և ինծի պարտք կը համարիմ այս բանս քեզի ըսելու. պէտք է որ ըսեմ։

— Ի՞նչ բանի վրայ կը ցաւիս, պարոն, հարցուց Գէորգ հանդարտութեամբ։

— Ի՞նչ բանի վրայ... վասն զի կը տեսնեմ որ այդ կերպով քու հայրենեացդ օրինացը յայտնի դէմ կը գործես։

— Իմ հայրենեացս... պատասխանեց Գէորգ դառնութեամբ. ես բաց ի գերեզմանէն ուրիշ հայրենիք չունիմ. և երանի՜ թէ ինչուան հիմայ հոն պառկած ըլլայի...։

— Ա՜հ. չէ, չէ Գէորգ. այդ բանդ մի՛ ըսեր. մահացու մեղք է այդ խօսքդ, սուրբ Գրոց դէմ է։ Իրաւ է, Գէորգ, քու տէրդ խիստ մարդ մ'է, քեզի հետ շատ գէշ կերպով վարուեցաւ, չեմ կրնար զինքը պաշտ-

պահել. բայց դու գիտես՝ հրեշտակը Ագարին հրամայեց որ դառնայ նորէն իր խաթունին քով և անոր հնազանդի, և թէ Պօղոս առաքեալն ալ Ոնեսիմոսը նորէն իրեն տիրոջը քով ղրկեց։

— Այդ կերպով Ս. Գրոց խօսքերը ինծի օրինակ մի՛ բերեր, Պ. Ուիլսըն, ըսաւ Գէորգ՝ հրացայտ աչուըներով. վասն զի կընիկս քրիստոնեայ է, ես ալ միտք ունիմ քրիստոնեայ ըլլալու, թէ որ կարենամ այնպիսի տեղ մը երթալ՝ ուր կարող ըլլամ համարձակ քրիստոնէութիւնը պաշտելու։ Բայց հիմակուան իմ գտնուած պարագայիս մէջ՝ ինծի Ս. Գրքէն օրինակ բերելն ուրիշ բան ըսել չէ, բայց եթէ բոլորովին միտքս փոխել։ Առ ամենակալն Աստուած կը բողոքեմ, ու զինքը դատաւոր կը կանչեմ իմ իրաւանցս, և կը հարցունեմ իրեն թէ ազատութիւնս փնտռելն միթէ ինծի մեծ յանցանք է։

— Այդ քու զգացմունքդ բնական է մարդուս, ո՛վ Գէորգ, պատասխանեց ազնիւ ծերունին՝ քիթը սրբելով. այո՛, բնական են մարդուս. բայց իմ պարտքս է զքեզ այս բաներուս չյորդորելու։ Այո, որդեակ, շատ կը ցաւիմ վրադ, շատ դէշ վիճակի մէջ

ես. անոր խօսք չունիմ. բայց նայէ Առաքեալն ի՛նչ կ'ըսէ. «Ամէն մարդ ինչ կոչմունք որ ունեցեր է՝ պէտք է որ անոր մէջ հաստատուն կենայ»։ Պէտք է ամէնքնիս ալ Աստուծոյ նախախնամութեանը կարգադրութեանցը գլուխնիս ծռենք, սիրելի, ու կամակար հնազանդինք։

Գէորգ ոտքի վրայ կեցեր էր՝ գլուխը դէպ վար ծռած, ու ձեռուըները կուրծքին վրայ ծալլած՝ արհամարհանօք կը ժպտէր։

— Պ. Ուիլըրն, պատասխանեց Գէորգ, թէ որ Հնդիկները զքեզ գերի բռնէին ու կնոջդ և տղոցդ գրկէն զքեզ յափշտակէին, ու մինչև ցմահ իրենց համար գետին բանելու չարաչար դատապարտէին զքեզ, կ'ուզեմ գիտնալ՝ արդեօք մտքէդ կ'անցընէի՞ր որ այս նոր ու անակնկալ դառնալից վիճակիդ վրայ գոհ ըլլաս, ու ինչ՝ կոչմունք որ ունեցար՝ անոր մէջ հաստատուն մնաս։ Ես կարծեմ՝ թէ առաջին անգամ դիմացդ ելած ձիուն վրայ հեծնալդ ու փախչիլդ մէկ կ'ընէիր, Նախախնամութեան կամքն այս է ըսելով. այնպէս չէ՞։

Ծերուկը այս խօսքիս պատասխան չկըրցաւ տալ, վասն զի տալու պատասխան մը չունէր. և սկսաւ վար նայիլ ու հովանոցը

ձեռքին մէջ խաղցընելով կտրատուածքները կը շտկէր, և միայն այս ընդհանուր յորդորանքս տուաւ. — Կը տեսնես, Գէորգ, գիտես, որ ես միշտ քու բարեկամդ եղեր եմ. և ինչ որ ալ ըսի՝ միայն քու աղէկութեանդ համար ըսի։ Հիմայ ինծի այնպէս կ'երևայ, սիրելի, որ փախչելովդ ինքզինքդ մեծամեծ վտանգներու մէջ պիտի ձգես, ուրանցմէ շատ դժուար է որ զքեզ կարենաս ազատել։ Թէ որ յանկարծ ձեռք ինկնալու ըլլաս՝ առջինէն չարագոյն պիտի ըլլայ վիճակդ. ամէնքը վրադ պիտի ծիծաղին, աւելի խստութեամբ հետդ պիտի վարուին, ու հոգիդ բերանդ բերելէն ետև՝ զքեզ Հարաւային կողմի գերեվաճառներուն պիտի ծախեն։

— Պ. Ուիլսըն, բոլոր այդ ըսածներդ գիտեմ, պատասխանեց Գէորգ. մեծ վտանգներու մէջ ինքզինքս կը ձգեմ, բայց...։ Այս ըսելով՝ հագուստը բացաւ ու երկու ատրճանակ ու մէկ դաշոյն մը ցըցուց։

— Կը տեսնե՞ս ասոնք, կրկնեց. ես ամէն բանի աչքս առած եմ. ես Հարաւային կողմերը յաւիտեան իջնելիք չունիմ. չէ... թէ որ այն վայրկենին հասնինք՝ ես գիտեմ իմ ընելիքս...։ Գոնէ վեց ոտնաչափ ա-

զատ Հայրենիք մը կրնամ գտնել ինծի, և այն կ'ըլլայ Քէնդըրքիին մէջ ունեցած առաջին և վերջին ստացուածքս...։

— Գէո՛րգ, Գէո՛րգ, այդ միտքդ դրածներդ զիս կը սոսկացընեն. ինքզինքդ յուսահատութեան տուեր ես....։ Շատ կը ցաւիմ վրադ. Հայրենեացդ օրէնքները ոտքի տակ կ'առնուս։

— Հայրենի՛ք.... Էհ, Պ. Ուի՛լսըն, դու Հայրենիք ունիս, բայց ես և ինծի պէս գերի ծնած թշուառներն ի՞նչ Հայրենիք կրնան ունենալ... Մեզի համար ի՞նչ օրէնքներ կան... ո՞ր օրէնքները մենք դրած ենք, ո՞ր օրէնքներուն մեր հաւանութիւնը առեր ենք, որ պահելու ալ պարտաւորուինք։ Մենք ձեր օրէնքներուն հետ բան չունինք. ձեր օրէնքներն ուրիշ բանի համար չեն՝ բայց եթէ հարստահարելու և ոտքի տակ առնելու միջոցներ։ Միթէ չլսեցի՞ ես Յուլիսի 4ին ձեր խօսած ճառերը[1]. դուք չէ՞ք

1. Յուլիսի 4ին Միացեալ Նահանգաց ազատութեան տարեդարձին յիշատակն է։ Նոյն օրը բոլոր ժողովուրդը ազգիս անդին կը ժողովին, նախ եկեղեցիներու, վերջն ալ առանձնական խումբերու մէջ, և ազատութեան զանազան ճառեր կ'արտասանուին, ու Միացեալ Նահանգաց ընդհանուր կառավարութեան որոշմունքները կը կարդացուին։

որ ամէն տարի կը կրկնէք՝ թէ կառավարիչներուն իշխանութիւնը կառավարեալներէն կու գայ. ի՞նչ կը կարծէք, միթէ մենք որ այդ խօսքերը կը լսենք, չե՞նք կրնար անոնց վրայ խորհրդածել. միթէ չե՞նք կրնար ձեր քարոզած բաները՝ գործերնուդ հետ բաղդատել։

Գ. Ուի՛լսընին միտքը, առանց իրեն պատուոյն դպչելու կրնանք ըսել՝ որ ուռեցուցած փափուկ՝ բայց մէջը պարապ՝ բամպակի կը նմանէր, որ ամէն բանի տեղիք կու տար։ Սրտէն կը ցաւէր Գէորգին վրայ, բայց ամենևին չէր կրնար ըմբռնել տառապեալ գերիի մ'ունեցած զգացմունքները, ու իրեն պարաք ու խեղացիուրթիւն կը համարէր ցուցընել անոր որ փախչիլը յանցանք է, և անով զղջումի բերէ ·զանիկայ։

Ուստի, — Գէորգ, ըսաւ՝ վար նայելով ու մտածելով մը, ըրածդ աղէկ բան չէ. անոր համար ինծի պարտք կը կարծեմ ըսել քեզի բարեկամաբար, որ այդպիսի կարծիքները մէկդի դիր։ Վասն զի քու վիճակիդ մարդկանց համար, ո՛վ Գէորգ, վտանգաւոր ու շատ վտանգաւոր բաներ են...։ Ու գնաց խուցին մէկ անկիւնը նստաւ, և սրտին այլայլութենէն ալ սկսաւ հովանոցին կոթը խածնել։

— Նայէ, Պ. Ուիլսըն, ինչ կ'ըսեմ, վըրայ բերաւ Գէորգ՝ դիմացը նստելով. ինծի նայէ որ դիմացդ նստեր եմ, ես ալ քեզի պէս մարդ չե՞մ. երեսս նայէ, ձեռուըներս նայէ, վրաս նայէ. — այս խօսքիս՝ կրարըճութեամբ մը նորէն ոտք ելաւ. — ես ալ որ և իցէ մարդու հաւասար մարդ մը չե՞մ։ Մտիկ ըրէ, Պ. Ուիլսըն, բան մը պատմեմ. իմ հայրս ձեր Քէնդըրքեցի ազնուականներէն մէկն էր, արժանի չդատեց՝ թէպէտ պարտքն էր՝ առաջուց այնպիսի հնարք մ'ընելու, որ իր մեռնելէն վերջը իր ժառանգները գիս ալ շներուն ու ձիերուն հետ մէկտեղ չծախեն։

Մայրս իր եօթը տղոցմովը աճուրդի հանեցին. խեղճ կնկան աչքին առջև ամէնքն ալ մէկիկ մէկիկ զանազան տէրերու ծախուեցան։ Ես եղբարցս մէջէն ամենէն պզտիկն էի. մայրս եկաւ գիս գնողին ոտքն ինկաւ ու կ'աղաչէր կը պաղատէր որ զինքն ալ ինծի հետ մէկտեղ գնէ, որպէս զի տղոցմէ մէկը գոնէ քովը գտնուի. անիկայ ոտքովը կից մը զարկաւ ու անդին հրեց զինքը։ Գետին փռուած տեսայ մայրս, անոր լացն ու աղաղակը լսեցի՝ երբոր տեսաւ որ գիս ձիուն վրայ կը կապեն ու նոր տիրոջս տունը կը տանին։

— Վե՞րջը…

— Զիս գնողը գերեվաճառներէն իմ մեծ քոյրս ալ գնեց. ասիկայ բարեպաշտ ու ազնիւ աղջիկ մ'էր, և խեղճ մօրս պէս գեղեցիկ ու վայելուչ դէմքով, աղէկ կրթութիւն առած և ամենայն աղէկ ձիրքերով զարդարուած։ Սկզբան շատ ուրախացայ տեսնելով որ գոնէ քովս սրտակից մ'ունիմ. բայց քիչ ատենէն ուրախութիւնս դառնութեան ու կատաղութեան փոխուիլ սկսաւ։

Օր մը դրան ետևէն տեսայ՝ որ զինքը կը ծեծէին. այս ականջներովս լսեցի խարազանին բախմունքը որ խեղճին փափուկ մարմնոյն վրայ կը շառաչէին. խարազանին ամէն մէկ հարուածները կարծես թէ սրտիս վրայ կ'իջնէին, և ձեռքէս բան մ'ալ չէր գար որ անոր օգնութեան հասնիմ։ Եւ գիտե՞ս, պարոն, ինչո՞ւ համար զինքը կը ծեծէին.... վասն զի չէր ուզած որ իր քրիստոնէավայել պարկեշտ մաքրութեանը արատ մը բերեն ու իր համեստութեան դպչին, այն համեստութեանը՝ որ ձիր օրէնքը կ'արգելուն գերի օրիորդի մը....։ Վերջապէս տեսայ օր մը որ խեղճը շղթաներով կապած՝ Նոր—Օրլէան գնացող գերեվաճառի մը ծախեցին... և միայն պատճառն այս էր... ալ

անկէ ետքը ի՛նչ եղաւ չեմ գիտեր...: Երկա՛յն և շա՛տ երկայն տարիներ անցան վըրայէս, ես ալ մեծցայ առանց հօր, առանց մօր, առանց քրոջ, առանց բնաւ մէկու մը որ վրաս պզտի գութ մ'ունենայ. շան պէս ծեծով, անարգանօք, սովով ու ծարաւով անցուցեր եմ բոլո՛ր կեանքս: Այո՛, պարոն, քանի՛ քանի անգամ այնպիսի սով քաշեր եմ, որ շներու առջև նետած ոսկորներուն ալ կարօտեր եմ, և այն ալ չեմ կրցած գտնել...: Քանի որ պզտիկ էի՝ ամբողջ գիշերներ լացով ու առանց քնոյ անցուցեր եմ. ոչ թէ անօթութենէս, և ոչ ալ կերած ծեծերուս համար կու լայի: Չէ, պարոն, չէ. այլ իմ մայրս կու լայի, իմ քուրերս կու լայի. այս աշխարհիս վրայ ինծի սրտակից մը չունենալս կու լայի, զիս սիրող մը չգտնելս կ'ողբայի: Խաղաղութիւն ի՛նչ ըսել է, երջանկութիւն ի՛նչ ըսել է չեմ գիտցած. անուշ խօսք մը ի՛նչ ըսել է լսած չունէի, մինչև որ քու գործարանդ եկայ բանելու: Հրամանքդ միայն, Պ. Ուիլօըն, ինծի հետ աղէկ վարուեցար. դուն ինծի սիրտ տուիր բանի մը ետևէ ըլլալ, գրել ու կարդալ սորվիլ, և մարդ ըլլալ ու մարդկանց կարգն անցնիլ. Աստուած գիտէ թէ որչափ երախ-

տապէտ եմ հրամանքիդ ինծի ըրած բարե-
բարութեանցդ համար։

Այն ատենն էր, պարոն, որ կինս դիմացս ելաւ. հրամանքդ ալ տեսեր ես զինքը. հրամանքդ ալ գիտես թէ ինչպէս գեղեցիկ ու ազնիւ է։ Երբոր իմացայ որ անիկայ զիս կը սիրէ, երբոր հետը կարգուեցայ ա՛լ աշխարհք իմս եղաւ. այնչափ հանգստութեան հասեր էի՝ որ զիս այս կենացս մէջ չէի կարծեր. և իրաւամբ, պարոն, վասն զի կինս որչափ ալ գեղեցիկ էր՝ այնչափ ալ բարի սիրտ մ'ունէր...։ Բայց ինչ օգուտ... տէրս զիս քու գործարանէդ հանեց, աշխատութենէ զրկեց, ինչպէս գիտես, զիս բոլոր բարեկամներէս ու սիրելիներէս բաժնեց ու խեղճութեան մէջ ստնակոխ ըրաւ։ Եւ ինչո՞ւ համար. վասն զի ես իմ ինչ ու ո՛վ ըլլալս մոռցայ. որպէս զի ցուցընէ ինծի որ սեւ մ'եմ, գերի մ'եմ։ Եւ պսակ այսչափ վըշտացս ու տառապանացս՝ զիս կնոջմէս բաժնեց, ու հրամայեց որ ուրիշի մը հետ կարգուիմ...։

Եւ ձեր օրէնքը՝ ընդդէ՛մ Աստուծոյ ու խղճմտանաց, այդ անիրաւութիւնները թոյլ կու տան կատարելու...։ Այո, պարոն, կը տեսնես որ այդ անիրաւ գործերէն մէկը

չկայ որ ձեր օրէնքներն արգելուն. այդ անիրաւ գործերը՝ որ մօրս, քրոջս, կնկանս և իմ սիրտս ճմլեցին։ Մանաւանդ թէ Քէնգրքին մէջ իշխանութիւն կայ ամենուն այս ամէն բանս ընելու, և մարդ չի կրնար անոնց դէմ դնել։

Միթէ ասոնք հրամանքդ իմ հայրենեացս օրէնքները կը համարիս։ Չէ, պարոն, չէ. ես Հայրենիք չունիմ, ինչպէս որ Հայր չունիմ... սակայն ետևէ եմ Հայրենիք մ'ունենալու. ձեր Հայրենիքէն բան չեմ ուզեր. միայն թողու զիս որ խաղաղութեամբ իրմէ դուրս ելլեմ. ու երբոր Գանատա հասնիմ, ուր որ օրէնքները զիս կը ճանչնան, զիս կը պաշտպանեն՝ ան ատենը Գանատա իմ Հայրենիքս կ'ըլլայ ու ես ալ անոր օրինացը կը հնազանդիմ։ Բայց եթէ մէկը զիս բռնելու ետևէ ըլլայ, աղէկ գիտնայ որ ես ամէն բան աչք առեր եմ. ազատութեանս համար արեանս վերջին կաթիլն ալ պիտի թափեմ։ Ձեր նախնիքը իրենց ազատութեանը համար արիւննին թափեր են, ինչպէս դու ալ կը պատմես. թէ որ ըրածնին իրաւունք ու արդարութիւն էր՝ իմս անոնցմէ վեր է և շատ վեր։

Գէորգ այս խօսակցութիւնս ընելու ժա-

մանակ՝ խուցին մէջ ուժով ուժով վեր վար կը քալէր։ Թափած պառն արցունքները, յուսահատական ձևերը ու կրակոտ աչուը-ները՝ խեղճ ծերուն սիրտը շարժեցին ու միտքը բոլորովին փոխեցին։ Իր զգայուն բնութեամբ՝ կ'երևակայէր տառապեալ գերեաց ընդհանուր թշուառութիւնը, և մանաւորա-պէս իր դիմացինին խեղճ կեանքը, որուն մտաւոր ու անձնական կատարելութիւնները ինքն անձամբ փորձեր էր ու գիտէր. և կը տեսնէր ցաւով սրտի՝ որ բոլոր մարդկութեան առջև մեծ համբաւոյ և յարգութեան արժա-նաւորութիւն ունեցող այսպիսի պատուական անձ մը՝ շահասէր ցածազգւոյ մը ձեռքը խաղալիկ եղած էր։ Անոր համար սրտին այլայլութենէն քրտինք կը թափէր, և դե-ղին մետաքսէ մեծ թաշկինակ մը հանած՝ ուժով երեսը կը սրբէր։ Քիչ մ'ատեն լուռ կենալէն ետև,

— Անիծեա՜լ ըլլան, յանկարծ կանչեց, գերեվաճառնե՛րն ալ, գերի գնողնե՛րն ալ. դժո՛խքն ընդունի զիրենք այս անպիտան շա-հասիրութեան համար... Ցաւամ թէ յիշոցք չեն ըսածներս...։ Աղէկ ուրեմն, ճամբայ առաջ տար, Գէորգ, ճամբայ առաջ տար. բայց խոհեմութիւնը ձեռքէ մի ձգեր, ու-

գեակ. մարդ մի՛ սպաններ, գոնէ զքեզ պաշտպանելու վտանգէն դուրս՝ մարդու արիւն մի՛ մտներ, մանաւանդ թէ ամենեւին ուրիշի կենացը մի՛ դպչիր։ Ո՞ւր է հիմայ կինդ, Գէորգ, ըսաւ ու դողդողալով ոտք ելաւ և սկսաւ վեր վար պտըտիլ։

— Ա՛ն ալ փախեր է, պարոն, ան ալ աղան գիրկը փախե՛ր է. Աստուած գիտէ թէ ուր թափառական կը պտըտի. փախեր է հիւսիսային աստղը գտնելու, փրկութեան գաւառն հասնելու։ Ո՞ գիտէ թէ մէյ մ՚ալ մէկմէկու ե՞րբ ու ո՞ւր պիտի հանդիպինք... մէկզմէկ պիտի գտնե՞նք արդեօք այս աշխարհիս վրայ։

— Ի՞նչ կ՚ըսես... ա՞ն ալ փախեր է, կարելի՞ բան է... այնպիսի աղէկ ընտանիք մը ինչպէս թողուց փախաւ։

— Աղէկ ընտանիքներն ալ պարտքի տակ կ՚իյնան, ու մեր հայրենեաց օրէնքները թոյլ կու տան՝ որ մօր մը գրկէն իր աղան յափշտակեն ու ծախու հանեն՝ պարտքերնին վճարելու համար, ըսաւ Գէորգ՝ դառնագին կերպով մը հեծնելով։

— Լաւ, լաւ, վրայ բերաւ բարի ծերուկը, գրպանը խառնելով, ա՛լ չեմ ուզեր ըզքեզ գրգռել։ Կրնա՞յ ըլլալ արդեօք.... Խըղճ-

մըտանքի ձեռք կու տամ .... ի՛նչ կ'ուզէ ըլլայ։ Ա՛ռ, Գէորգ, ըսաւ. ու խել մը թըղթեայ դրամներ դուրս հանեց։

— Չէ, չէ, ազնիւ պարոն, պատասխանեց Գէորգ, դու ինծի շատ բարիք ըրեր ես, շնորհակալ եմ. չըլլայ թէ այս առատաձեռնութեամբդ նեղութեան մէջ իյնաս։ Ես բաւական ստակ ունիմ, յուսամ՝ թէ կարենամ ինծի բաւեցընել։

— Չէ, Գէորգ, պէ՛տք է որ ընդունիս. ստակը ամէն տեղ հարկաւոր կ'ըլլայ. և որչափ ալ վաստըկիս՝ բաւական է թէ օրինաւոր ճամբով ըլլայ՝ շատ ունիմ չես կըրնար ըսել։ Ա՛ռ, տղաս, կ'աղաչեմ՝ չէ մ'ըսեր։

— Շատ աղէկ, կ'առնում, պարոն. բայց այս պայմանով որ վերջը վճարեմ, ըսաւ Գէորգ ու առաւ։

— Հիմայ ըսէ ինծի, Գէորգ, որչափ ատեն այս կերպով ճամբորդութիւն ընելու միտք ունիս. յուսամ երկայն չի տևեր, և շատ հեռու չես երթար, ինչ կ'ըսես։ Բայց շիտակը աղէկ ծպտեր ես, աղէկ ալ կը կեղծես. թէպէտ և ինծի յանդգնութիւն կ'երևայ։ Իսկ այդ քօլի սև ծառան ո՞վ է։

— Ապահով մարդուն մէկն է. տարի

մ'է որ Գանատաա փախեր ազատեր է։ Հոն լսեր է որ տէրը իր փախստեան վրայ նեղանալով՝ խեղճ պառաւ մայրը կը ծեծէ ու կը տանջէ եղեր, ուստի զանիկայ մխիթարելու և ազատելու համար եկեր այս կողմերս եկեր է։

— Գտնէ բան մը կրցա՞ւ ընել։

— Ոչ, դեռ չէ. շատ անգամ իր մօրը գտնուած կողմերը պտըտեցաւ, բայց միտքը գրածը կատարելու յարմար առիթը չգտաւ։ Հիմայ մինչև Օհիոյ ինծի հետ պիտի գայ ու զիս իր փախստեանը օգնող բարեկամաց ձեռքը պիտի յանձնէ, և ինքը նորէն ետ պիտի դառնայ մայրը փնտռելու։

— Շա՜տ վտանգաւոր բան, շատ վտանգաւոր բան, ըսաւ ծերունին։

Գէորգ ոտք ելաւ, և արհամարհական կերպով մը ծիծաղեցաւ։

Ծերունին Գէորգին գլխէն մինչուան ոտքը զարմացմամբ մը քիչ մ'ատեն դիտելէն ու նայելէն վերջը,

— Գէորգ, ըսաւ, ի՛նչպէս զարմանալի կերպով բոլորովին փոխուեր ես. կարծես թէ ա՛լ առջի Գէորգը չես։ Գլուխդ բարձր բռներ ես, և խօսուածքդ ու շարժուածքդ քուկդ չէ, ուրիշ մարդու է։

— Վասն զի հիմայ ես ազատ եմ, պատասխանեց Գէորգ պարծենալով մը։ Այո՛, պարոն, այս վերջին անգամն էր որ մարդու մը համար տէր անունը բերնէս լսեցիր. ա՛լ ես ազատ եմ։

— Աղէկ նայէ, ապահով չես. նորէն ձեռք կրնաս ինկնալ։

— Այն ժամանակը, պարոն, պատասխանեց Գէորգ, գերեզմանին մէջ ամէն մարդ ազատ ու հաւասար է։

— Այդ քու յանդգնութեանդ վրայ իրաւցընէ շատ զարմացեր եմ, Գէորգ, վրայ բերաւ Ուի՛լսըն, ի՞նչպէս ալ այս մօտի պանդոկն իջար։

— Պ. Ուի՛լսըն, այս ըրածս այնպիսի յանդուգն ու կարգէ դուրս բան մ'է՝ որ մէկու մ'ալ մտքէն չ'անցնիր՝ որ ես այս մօտի պանդոկն ըլլամ։ Զիս աւելի հեռուները փնտռել կու տան. հրամանքիդ մտքէն ալ չէր անցներ որ ես Գէորգն ըլլամ։ Յակոբին տէրն ալ այս կողմերս չի բնակիր, ու զինքը հոս ճանչցող չկայ։ Զինքը գտնելու յոյսերնին կտրեցին, ոչ ոք ա՛լ զինքը կը փնտռէ. և ծանուցման տուած նշաններուն՝ զիս ալ գտնող չի կրնար ըլլալ։

— Հապա ձեռքիդ նշանն ի՞նչ կ'ընես։

Գէորգ ձեռնոցները հանեց ու ձեռքին վրայ բարակ ապի մը ցրցուց՝ որ հազիւ թէ գոցուեր էր։

— Աս ալ, ըսաւ Գէորգ արհամարհանօք, Հարրիսին իմ վրաս ունեցած սիրոյն ու գթոյն վերջին նշանն էր որ գրաւ։ Տասներհինգ օր առաջ, խելքը փչեց որ իր անուան սկզբնատառովը ձեռքիս վրայ նշան մը դնէ, որովհետև կ'ըսէր թէ կը կասկածիմ որ այս օրերս քովէս փախչելու միտք ունիս։ Ինչպէս, աղէկ չեմ հանած, ըսաւ ձեռնոցը ձեռքն անցընելով։

— Շիտակը, քանի որ կը մտածեմ վիճակդ և գլխուդ գալիք վտանգները՝ արիւնս երակներուս մէջ կը պաղի։

— Իմ արիւնս երկայն տարիներէ ի վեր սառեր ու պաղեր էր, պարոն Ուիլըըն, բայց հիմայ տաքցեր է ու կ'եռայ, ըսաւ Գէորգ։

— Սիրելի պարոն, վրայ բերաւ Գէորգ՝ քիչ մը լուռ կենալէն ետև, երբոր տեսայ որ զիս ճանչցար, վախցայ որ քու զարմացած կերպերէդ չմատնուիմ, անոր համար մտածեցի՝ որ ինքզինքս քեզի յայտնիմ։ Վաղը առաւօտ լուսցած՝ ճամբայ պիտի ելլեմ․ վաղը իրիկուն յուսամ թէ Օհիոյ նահանգը հանգիստ քուն մը կարենամ ըլլալ։ Ամե-

նոյն համարձակութեամբ ու հանգստու-
թեամբ ճամբայ պիտի ընեմ. հասած տե-
ղերուս ամենէն աղէկ պանդոկները պիտի
իջնեմ, ու մեծամեծաց սեղանը պիտի նըս-
տիմ։ Ուստի մնաս բարով, պարոն. թէ որ
լսես՝ թէ ձեռք ինկեր եմ, ապահով եղիր
որ մեռեր եմ։

Գէորգ շիտակ ոտքի վրայ կեցած՝ իշխա-
նական կերպով ձեռք տուաւ։ Բարեսիրա-
ծերուկը սիրով ձեռքը սեղմեց, ու նորէն
քանի մը յորդորանքներ տալէն վերջը՝ հո-
վանոցն առաւ ու դուրս ելաւ։

Գէորգ քիչ մ'ատեն ոտքի վրայ լուռ կե-
ցաւ ու դէպ ի դուռը կը նայէր. յանկարծ
միտքը բան մը գալով՝ վազեց դուռը բա-
ցաւ։

— Պ. Ուիլսըն, ներս հրամէ, ըսաւ,
բան մ'ալ ունիմ ըսելիք։

Ուիլսըն ներս մտածին պէս՝ Գէորգ նո-
րէն դուռը կղպեց ետեւէն, ու քիչ մ'ատեն
գետին նայելով մտածելէն վերջը,

— Պ. Ուիլսըն, ըսաւ, միշտ քրիստո-
նէավայել մարդասիրութեամբ վարուեցար
հետս, հիմայ նորէն քրիստոնէական առա-
քինութեան ու բարերարութեան վերջին գործ
մը կը խնդրեմ հրամանքէդ։

— Ի՞նչ է, Գէորգ։

— Ըսածդ իրաւ է, պարոն, որ ես մեծ վտանգներու մէջ ինքզինքս ձգեր եմ։ Աշխարհքիս վրայ մարդ մը չունիմ՝ որ իմ մահուանս վրայ լայ ու ցաւի, ըսաւ հեկեկալով։ Կրնայ ըլլալ որ զիս սպաննեն, ու շան պէս՛ պիտի թաղեն, և երկրորդ օրը մէկն ալ իմ վրաս պիտի չմտածէ, մէկն ալ զիս մաքէն պիտի չանցընէ՝ բայց եթէ իմ խեղճ կինս։ Ո՛հ, Թշուառ աղջիկ, դու միայն պիտի ցաւիս, դու միայն իմ վրաս պիտի լաս...։ Պ. Ուիլսըն, յանձն կ'առնու՞ս սա պզտի գնդասեղը իրեն ձեռքը հասցնելու.... խեղճը նոր տարիին ինքը ինծի ընծայ ըրաւ. տուր տախկայ իրեն և ըսէ՝ որ զինքը սիրեր եմ և պիտի սիրեմ կենացս մինչև վերջին շունչը։ Խօսք կու տա՞ս, պարոն, խնդիրքս կատարելու։

— Աղէկ աղէկ, տղաս, ինչո՞ւ չէ, պատասխանեց Ուիլսըն՝ աչուըները լեցուած և դողդոջուն ձայնով, ու գնդասեղն առաւ։

— Ըսէ իրեն, կրկնեց Գէորգ, որ իմ վերջին կամքս աս է որ Գանատա երթայ, թէ որ կրնայ. փոյթ չընէ թէ խաթունը զինքը կը սիրէր, փոյթ չընէ թէ ինքն ալ իր ծնած տունը կը սիրէ. ապսպրէ իրեն

որ չըլլայ թէ նա դառնայ, վասն զի գերութիւնը միշտ թշուառութիւն է մարդու։ Զուրցէ իրեն որ մեր Հենրիկն իբրև ազատ մարդ կրթէ մեծցընէ, որպէս զի ան ալ իմ քաշածներս չքաշէ։ Աս բոլոր ըսածներս ըսէ իրեն, Պ. Ուիլսըն. յուսամ որ զանց չես ըներ։

— Հա, Գէորգ, հա, խօսք կու տամ որ ըսեմ, դու հոգ մի՛ ըներ, բայց վստահ եմ որ չես մեռնիր։ Արիացիր, կտրիճ ես դուն. Աստուծոյ ապաւինէ Գէորգ, որ մ'առաջ ազատ երկիր մը հասնելուդ լուրը կը փափաքիմ առնել, ու բոլոր սրտովս կը մաղթեմ քեզի. Աստուած հետդ ըլլայ։

— Աստուած... ինծի համար ալ կա՞յ Աստուած մը՝ որուն կարենամ ապաւինիլ[1], պատասխանեց Գէորգ այնպիսի դառնութեամբ՝ որ խեղճ ծերուն լեզուն կապուեցաւ։ Ո՜հ... կենացս մէջ այնպիսի բաներ

1. Ընթերցողը ներէ Գէորգին այս յուսահատական խօսքերուն։ Նոյնպէս՝ Գէորգին ուրիշ խորհրդածութիւններն ալ այն երկիրներուն համար են՝ ուր խօսքով ազատութիւն կը քարոզուի, իսկ օրէնքի ուժով՝ գերութիւն ի գործ կը դրուի. և այնպիսի գերութիւն՝ որ մինչև օրինաւոր կը համարուի այն խեղճ գերիներուն խղճմտանքն ալ բռնադատել՝ Աստուծոյ ու բնութեան օրինաց դէմ գործելու՝ պարզ տէրերնուն շահուն համար։

տեսայ, այնպիսի բաներ քաշեցի, որ մտքէս ալ չէր անցներ որ կրնայ Աստուած մ'ըլլալ. այն բաները քրիստոնէից վրայ այնչափ տպաւորութիւն չեն ըներ, ինչպէս մեր վրայ կ'ընեն։

— Ո՛հ որդեակ, այդպիսի մտածութիւններ մտքէդ ալ պէտք չէ որ անցընես. վրայ բերաւ ծերուկը լալով ու հեկեկալով. կա՛յ Աստուած մը, որուն կարգաւորութեանց խելքերնիս չի հասնիր ու չի կրնար ալ հասնիլ, բայց իր աթոռը ճշմարտութեան ու արդարութեան վրայ դրած է. կայ Աստուած մը, Գէորգ, հաւատա՛ խօսքիս, յոյսդ անոր վրայ դիր, և ինքը քեզի կ'օգնէ, ապահով կեցիր։ Արդարութիւնը տեղը պիտի երթայ, թէ որ այս աշխարհիս մէջ ալ չէ՝ անդիի աշխարհքը։

Կրօնքն ու գթասիրութիւնը այն բարեսիրտ ծերուն խօսքերուն վրայ այնպիսի ոյժ և տպաւորութիւն տուին՝ որ Գէորգ յանկարծ կանգ առաւ, ու քիչ մ'ատեն մտածելէն վերջը՝ դարձաւ հանդարտութեամբ մը պատասխանեց։

— Շնորհակալ եմ հրամանքիդ յորդորական խօսքերուն, ապահով եղիր որ պիտի չմոռնամ զանոնք։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

*Օրինաւոր առուտուրի մը այլևայլ պարագաները.*

*Ձայն զուժեաց ի Հռամայ, ողբումն և լալումն և աշխարումն յոյժ. Հռաքէլ լայր զորդիս իւր, և ոչ կամէր մխիթարիլ։*

ՄԱՏԹ. Բ.

*. Հէլլի ու Թումմաս կառքին մէջ ծնծուելով ծնծուելով՝ ճամբանին առաջ կը տանէին. երկուքն ալ իրարմէ տարբեր խորհուրդներու մէջ ընկղմեր էին։ Հետաքրքրական բան մ'է այս քովէ քով երկու նստողներուն մտքերնէն անցուցած խորհուրդները գիտնալը։ Մի և նոյն նստարանին վրայ նստած, արտաքուստ իրարմէ ուրիշ տարբերութիւն չունին՝ բայց եթէ մէկը քիչ մ'աւելի սև է. երկուքն ալ նոյն աչուըներն ունին, երկուքն ալ նոյն ականջներն ունին, երկուքն ալ նոյն ձեռքերն ունին, մէկ խօսքով երկուքն ալ մի և նոյն գործարաններն ունին, մի և նոյն բանը կը տեսնեն. բայց իրենց մտքէն ան-*

ցուցած խորհուրդները որչափ իրարմէ տար-
բեր են. ինչպէս տարբեր են իրարմէ այն
երկու սրտերը՝ որ թէպէտ մի և նոյն նախ-
նական շնորհքն ընդունած են Աստուծմէ,
բայց մէկն ի բարին և միւսն ի չարը գոր-
ծածած ըլլալով՝ իրարմէ ո՜րչափ տարբեր
է իրենց ունեցած զգացմունքը։

Հէլի՝ Թոլմասին հասակին երկայնու-
թեանը և կուրծքին լայնութեանը վրայ կը
մտածէր. և մտքէն կ՚ըսէր, թէ որ սուր-
կայ առողջ ու գիրցած վաճառքի հանելու
ըլլամ՝ անշուշտ աղէկ վաստակ մը կրնամ
ընել։ Միանգամայն կարգի կը դնէր մտքին
մէջ թէ ինչ կերպով իր վաճառքները այր.
կին, ծեր ու տղայ ծախու հանէ. և մտքին
մէջ անոնց հաւանական գիները ալ կը կրա-
րէր և հաշիւն ալ կ՚ընէր։ Ետքը ինքն
իր վրայ կը դառնար և իր մարդասիրու-
թեան վրայ կը զարմանար...։ Ուրիշ գերե-
վաճառից սովորութիւնը կը պահպանէր,
որ խեղճ գերիներուն ոտքն ու ձեռքը ծանր
շղթաներով կը կապեն. իսկ ինքը Թոլմա-
սին միայն ոտուըները կապեր էր. ձեռուը-
ներն ազատ թողուցեր էր, ինչուան որ այս
շնորհքովս չզեղծանի. և ապերախտ կը կո-
չէր զանոնք՝ որ այս եղած շնորհքը չեն

ճանչնար։ Եւ քանի՜ քանի անգամ խաբուեր
էր իր գերիներէն, որոնց հետ այնչափ ա-
ղէկ վարուեր էր... և ասով հանդերձ ե-
դարձեալ մարդասէր գտնուեր եմ, սիրտս
բուխ է, կ'ըսէր...։

Իսկ ընդհակառակն՝ Թովմաս սրբազան
Գրքի մը այս խօսքերս կ'որոճար մտքէն
անդադար. Քանզի ոչ եթէ ունիմք քաղաք
որ աստեն մնայուն է, այլ զհանդերձեալսն
խնդրեմք[1]։

Սուրբ Գրոց այս խօսքերը՝ զոր գլխաւո-
րապէս անուս ու տգէտ մարդիկ գրեր են,
ամէն ժամանակ Թովմասին պէս բարեսիրտ
ու պարզամիտ մարդկանց վրայ մեծ ազդե-
ցութիւն մ'ըրեր են[2]։ Այս խօսքերը մար-
դուս սիրտը հիմունքէն կը շարժեն, և փողի
մը պէս արիութիւնը, ոգւոյն ոյժը և եռանդը
կ'արթնցընեն, ուր առաջ յուսահատութեան
խաւարը կը տիրէր։

1. Եբր. ԺԳ. 14։

2. Նորաղանդից սկզբունքն է որ Սուրբ Գիրքը ա-
մէն մարդ պէտք է կարդայ, կ'ըսեն, ու ինչ որ Հոգին
ազդեցութիւն ընէ իրեն՝ այնպէս պէտք է իմանայ. ո-
րով իւրաքանչիւր մարդ ըստ իւր խելաց կը մեկնէ
Սուրբ Գրոց խօսքերը. իսկ զանոնք որ ըստ մեկնու-
թեան Սուրբ Եկեղեցւոյ կը հասկնան Սուրբ Գիրքը՝
պարզամտի ու բարեսրտի տեղ կը դնեն։ Բայց թէ ի-
րենց այս ենթադրութիւնը ո՛րչափ ծուռ է ու պահանջ-
մունքնին ալ անտեղի՝ աւելորդ է հոս բացատրել։

Հէլի գրպանէն քանի մը լրագիր դուրս հանեց ու սկսաւ հետաքրքրութեամբ մէջի ծանուցումները աչքէ անցընել: Կարդալու շատ վարժ չէր, և սովորութիւն ունէր քիչ մ'ամուրկեկ ձայնով կարդալու, իբրև թէ աչքով տեսածները՝ ականջովն ալ լսէ. ասոր սկսաւ հատիկ հատիկ հեւալով ծանուցումը կարդալ:

## ՎԱՃԱՌՔ ԿՏԱԿԱԿԱՏԱՐԻ

ՍԵՒԵՐ. Ըստ կամոյ դատաւորաց, երեքշաբթի, փետրուար 20, Ուաշինկդըն քաղաքին (Նահանգ Քենդըքի) Արդարութեան ատեանին դրանը դիմաց՝ ծախու պիտի հանուին հետեւեալ Սեւերը.

| | | |
|---|---|---|
| Ագար | 60 | տարուան |
| Յովհաննէս | 30 | » |
| Բենիամին | 20 | » |
| Սաւուղ | 25 | » |
| Ալբերտ | 14 | » |

Ասոնց գինը հանգուցեալ Պ. Ճ. Պըլէֆորդ տասպետին պարտատէրներուն ու ժառանգացը մէջ պիտի բաժնուին:

ՍԱՄՈՒԷԼ ՄԱՐՐԻՍ } կտակակատարք.
ԹՈՎՄԱՍ ՖԼԱՑՆԴ }

— Պէտք է որ երթամ տեսնեմ ես ատ ապրանքները, բաւ Հէլլի Թովմասին՝ քովը խօսելու ուրիշ ընկեր ու նիւթ չունենալուն։ Այս անգամ ալ կ՚ուզեմ ընտիր ապրանքներով վաճառականութեանս դուռը բանալ։ Դուն ալ կ՚ախորժիս, Թովմաս. վասն զի աղէկ ընկերութիւն մը կը գտնես։ Հիմայ շիտակ Ուաշինկդըն պիտի երթանք, և մինչև որ հոն գործերս լմընցընեմ՝ ապահովութեան համար զքեզ բանտը պիտի պահեմ։

Թովմաս բանտ մտնելու այս նոր լուրն ալ քաղցրութեամբ ընդունեցաւ։ Հէլլիի նոր գերիներ գնելը լսելով կը մտածէր անոնց խեղճութեան վրայ. անոնք ալ իրեն պէս իրենց կնիկն ու տղաքը ձգելով նոյն ցաւն ու վիշտը պիտի քաշէին։ Մէկալ կողմանէ ալ բանտ մտնելու լուրը իր ականջին ծանր եկաւ. վասն զի իր պատուոյն նախատինք կը համարէր այս բանս։ Այո՛, իրեն նախատինք կը գտնէր, որովհետև հաւատարմութիւնն իրեն պարծանք կը համարէր. ուրիշ ինչ բանի վրայ կրնար պարծիլ արդեօք։ Թէ որ մարդկային ընկերութեան քիչ

մ՚աւելի բարձր պատէն ըլլար, պարծելու գուցէ միայն այս բանս չէր ունենար։

Ինչ և իցէ՝ իրիկուան դէմ Ռուշինկըլն հասան, ու գիշերը Հէլլի պանդոկը, Թուլմաոն ալ բանտին մէջ անցուցին։

Երկրորդ օրը կէսօրուան մօտ Արդարութեան ատենին բակը խուռն բազմութիւն մը ժողովեր էր. ոմանք կը ծխէին, ոմանք ծըխատերև կը ծամէին, ոմանք կը թքնէին, ոմանք կը յօրանջէին, և մէկմէկու հետ կը խօսակցէին, ուրաքանչիւրն իրեն բնութեանն ու ախորժակին յարմար, և աճուրդի սկսելուն կը սպասէին։ Ծախուելիք գերիներն ալ այր և կին անկիւն մը ժողուած՝ իրարու հետ ցած ձայնով կը փսփսային։

Ծանուցման մէջ յիշուած Ազար պառաւը՝ դէմքով ու գծագրութեամբ կատարեալ ափրիկեցի մ՚էր. վաթսուն տարուան մը կար, բայց հիւանդութիւններով ու ծանր աշխատութեանց տակ՝ ժամանակէն առաջ պառուեր էր. աչուըները գրեթէ կուրցեր էին, ու սաստիկ ջղացաւէն՝ մարմինը կծկեր էր։ Քովը կեցեր էր իր մէկհատիկ Ալպերտ անունով որդին, որ տասնըչորս տարեկան գեղեցիկ տղայ մ՚էր։ Շատ տղաք ունեցեր էր խեղճ պառաւը, բայց ամէնքն ալ մէկիկ

մէկիկ ձեռքէն յափշտակեր ծախեր էին, և այս միայն մնացեր էր իր քովը. անոր համար խեղճը դողդողջուն ձեռուըներով տղան գրկեր էր, և յուսահատաբար անցնող պարձողին երեսը կը նայէր։

— Մի՛ վախեր, Ազար, ըսաւ տարեց մարդուն մէկը, ես Պ. Թուլմաս Ցըլայնդին հետ խօսեցայ, ինքը ջանք կ'ընէ որ զձեզ երկուքնիդ մէկտեղ ծախու հանէ։

— Ըսէք որ դեռ ձեռքէս բան կու գայ, պատասխանեց պառաւը՝ դողդողջուն ձեռուըները վեր վերցընելով. կրնամ կերակուր եփել, խոհանոցը աւլել, պնակները մաքրել. պարապ տեղ հաց չեմ ուտեր. և գինս ալ շատ սուղ չէ. ըսէք, կ'աղաչեմ, ըսէք... զանց մի՛ ընէք, ըսաւ խեղճ պառաւը պաղատելով։

Հէլի ասոնց մէջ մտնելով՝ մէկուն մօտեցաւ. բերանը բանալ տուաւ ու մէջը նայեցաւ. ակռաները քննեց, շիտակ ոտքի վրայ կայնել տուաւ, ետքը երեսի վրայ ծըռեցուց, և ջիղերու ամրութիւնը իմանալու համար քանի մը շարժմունքներ ընել տուաւ. վերջէն ուրիշի մ'անցաւ, ու նոյն փորձերը անոր վրայ ալ կատարեց։ Երբոր տղուն եկաւ կարգը՝ թեւերը զննեց, ձեռքերն եր-

կլնցընել տուաւ, մտաւորները նայեցան, ու արագաշարժութիւնն իմանալու համար քանի մ'անգամ վեր ցատքել տուաւ:

— Առանց ինծի տսիկայ չի ծախուիր, ըսաւ պառաւը՝ տակն ու վրայ եղած. մենք երկուքնիս մէկտեղ պիտի ծախուինք. ես դեռ բաւական ուժ ունիմ, պարոն, կրնամ շատ տեսակ աշխատութեանց դիմանալ:

— Ո՞ւր, կալուածներո՞ւ մէջ... չեմ կարծեր, պատասխանեց Հէլէ՝ արհամարհական կերպով մը խեղճին վրայ նայելով:

Զուարճալի անյարմարութիւն: Այս քըննութիւնը լմընցընելէն ետև՝ Հէլէ ետ քաշուեցաւ, ու գլխարկը ծուռ դրած, ձեռքըները գրպանը, բերանն ալ ծխախոտը՝ կը սպասէր որ աճուրդն սկսի:

— Ի՞նչ կ'ըսես հրամանքդ ալ, հարցուց մարդուն մէկը, որ Հէլիէն վերջը՝ ինքն ալ քններ էր գերիները. ինչպէս երևցան քեզի:

— Փէհ, պատասխանեց Հէլէ՝ թուք մ'արձակելով. այն երկու երիտասարդներն ու սա տղան գնելու միտք ունիմ:

— Բայց գիտե՞ս որ պառաւն ալ այն տղուն հետ կ'ուզեն ծախել, վրայ բերու մարդը:

— Աղէ՛կ մտածութիւն. ոսկրոտած կըմախք մը՝ որ և ոչ կերած աղին գինը կ'արժէ:

— Ուրեմն գանրիկայ ալ գնելու միտք չունի՞ս։

— Խենթ պիտի ըլլամ որ գնեմ. աչքը կոյր, ջղացաւէն կարկամած, ապշութեան ալ նշան կ'երեւայ վրան։

— Կան մարդիկ որ այդպիսի պառաւները ալ գնելով՝ չկարծածնէն աւելի շահ կը հանեն, պատասխանեց մարդը։

— Հը՛մ, կարելի է. բայց ինծի ձրի ալ տան՝ չեմ առներ. հազիւ վրան նայելու սիրտ ըրի։

— Բայց մե՛ղք է՝ խեղճը իր աղուն հետ չգնելը. ողորմելին առանց անոր չի կրնար ապրիլ. կարծեմ գինն ալ շատ սուղ պիտի չըլլայ։

— Ո՛վ որ կ'ուզէ ստակը ծով նետել՝ թող գնէ. ինծի աղան պէտք է կալուածի մը համար. պառաւն ինչ ընեմ. առանց ստակի ալ տան՝ չեմ առներ։

— Բայց շատ պիտի ցաւի խեղճը, ու յուսահատութեան մէջ պիտի իյնայ։

— Է՛հ, բնական է, պատասխանեց Հէ-լի ցրտութեամբ. աղան ձեռքէն կորսնցնե-լուն, ի հարկէ պիտի ցաւի։

Երբոր ասոնք կը խօսէին՝ ամբոխին մէջ շշնկոց մ'ինկաւ. կարճահասակ ու եռանդուն

մարդ մ՚երեցու՝ որ մունետիկն էր, ու բաղ-մութեան մէջէն ճամբայ բանալով առաջ կու գար։

Խեղճ պառաւը Հազիւ թէ շունչ կրնար առնուլ, ու ողուն պըլլուած կեցեր էր։

— Քովս կեցիր, Ալպերտ, ինծմէ մի՛ բաժնուիր, կ՚ըսէր որդւոյն. վասն զի երկուքնիս մէկտեղ պիտի ծախեն։

— Ո՛հ, մայրիկ, վախեմ թէ չէ, պա-տասխանեց տղան։

— Պէտք է որ զմեզ մէկտեղ ծախեն, կրկնեց պառաւը՝ դողդոջուն ձայնով, ապա թէ ոչ՝ քեզմէ բաժնուելու ըլլամ՝ շուտով գերեզման կը մտնեմ։

Մունետիկը ճանկ մը ձեռքը՝ բարձր ձայ-նով — Մէկդի կեցէք, կը պոռար ամբո-խին. աճուրդն սկսաւ։

Ցուցակին վրայ եղած երիտասարդները միջակ գնով շուտ մը ծախուեցան, որոնցմէ երկուքը Հէլիին ինկան։

— Էյ, հիմայ կարգը քեզի եկաւ, ըսաւ մունետիկը խեղճ պառաւին տղուն, ու ճան-կովը մէջտեղ քաշեց բերաւ. եկուր ցոյց տուր հանդիսականաց քու կարողութիւն-ներդ։

— Զիս ալ մէկտեղ գնէք, պարոն, կ՚ա-

ղաչեմ, գիս ալ իրեն հետ ծախեցէք. կը ճուար խեղճ պառաւը՝ անկէն չբաժնուելով:

— Անգէն կորսուէ, ձայնդ քաշէ, պոռաց պառաւին երեսէն վեր մունետիկը, ու ձեռքովը մէկին հրեց. դեռ քու կարգդ չեկաւ: Թեզ տեսնեմ սեւուկ, ցատքէ նայիմ. ու այս ըսելով՝ ողան բարձրաւանդակի մը վրայ հանեց. խեղճ մայրը ետեւէն կու լար ու կը հեկեկար: Տղան կանգ առաւ, ուզեց մէյ մը ետեւը նայիլ՝ բայց չկրցաւ, և իր խոշոր վառվռուն աչուըներուն արցունքները սրբելով՝ բարձրաւանդակին վրայ ցատքեց:

Տղուն աշխոյժ կերպը, անդամներուն ճըկունութիւնը, դէմքին գծագրութիւնը շատերուն աչքին զարկաւ. ու շատ մը մարդիկ զանիկայ ձեռք ձգելու առաջ նետուեցան: Իսկ ինքը խռոված շփոթած՝ չորս դին կը նայէր, և զինքը գնել ուզողներուն խառնաձայն աղաղակը մտիկ կ՚ընէր: վերջապէս ճանկը երկընցաւ, Հէլլին էր գնողը:

Խեղճ տղան երբոր իր այս նոր տէրը տեսաւ, կանգ առաւ ու աչքը մօրը վրայ դարձուց. իսկ մայրն ալ լալով դողալով, ձեռքերը բացած, — Զիս ալ մէկտեղ գընէ, պարոն, կ՚ըսէր, Աստուծոյ սիրոյն հա-

մար ըլլայ. ապա թէ ոչ՝ կը մեռնիմ երբոր անկէ զիս բաժնես։

— Ան իմ գիտնալու բանս չէ, պատասխանեց Հէլէն՝ անտարբեր պաղութեամբ մը, ու կռնակը դարձուց անդին գնաց։

Խեղճ պառաւն ալ շուտ մը ծախուեցաւ. այն մարդը որ Հէլէնին հետ վերը խօսեցաւ, կ՚երեւնայ թէ սրտին մէջ գեթ գթութեան կայծիկ մը մնացեր է եղեր. ոչինչ գնով գընեց զանիկայ. և ամուսնոյն ալ լըմընցած ըլլալով՝ ժողովուրդը ցրուեցաւ։

Այս խեղճ շնչաւոր ապրանքները՝ որոնք տարիներով մի և նոյն տիրոջ ձեռքին տակ մէկտեղ ապրեր էին, և հիմայ իրարմէ բաժնուելով՝ ա՛լ զիրար պիտի չկարենային տեսնել, վշտալից պառաւին չորս կողմն առին, որ յուսահատութենէն մեռնելու դուռն էր հասեր, ու սկսան մխիթարել ու ցաւակից ըլլալ իր թշուառութեան։

— Գոնէ մէկ հատը միայն քովս ձգէին ... տէրս շատ անգամ ինծի խոստացեր էր, որ այս վերջինս քովէս չհեռացընէ... ինքն ինծի խոստմունք տուեր էր, կ՚ըսէր պառաւը լալով ու հեծեծանօք։

— Աստուծոյ ապաւինէ, Ազար մայրիկ, ըսաւ ցաւագին կերպով գերիներէն մէկը։

— Անկէ ինծի ի՞նչ մխիթարութիւն կայ, պատասխանեց խեղճ պառաւը կողկողագին։

— Մայրիկ, մայրիկ, մի՛ լար այդպէս, կը պոռար անդիէն աղան. կ'ըսեն թէ աղէկ տէր մը գտեր ես։

— Ալպ՛ բռա, ի՞նչ բանի կու գայ... ո՛վ սիրելի ու ցանկալի տղաս... ա՜հ, ի՞նչպէս պիտի կենամ ես առանց քեզի....

— Աղջին տարէք ուրիկայ, պոռաց Հե-լի. ծօ ի՞նչ կը վաստըկիք այդպէս զինքը ողբալ տալէն։

Պառաւին ճանչուորներէն քանի մը հոգի մօտեցան խեղճին, ու կէս մը համոզմամբ ու կէս մը բռնութեամբ՝ վերուցին զինքն ու տիրոջը կառքը դրին, մէկ կողմանէ ալ կը ջանային մխիթարել զինքը։

— Երթանք, պոռաց Հէլի՝ երեք նոր գնած գերիները առաջ մղելով, ու գրպանէն քանի մը ձեռնակապ հանեց ու անոնց ձեռքն-անցուց, և ամէնքն ալ երկայն շղթայի մը կապելով առջևը ձգեց ու շիտակ բանտ տարաւ։ Քանի մ'օրէն ալ Օհիօյ գետին վրայ երթևեկող շոգենաւը դրաւ իր ապրանք-ներն ու ճամբայ ելաւ։ Ասիկայ սկիզբն էր իր այս անգամուան վաճառականութեանն. ու որչափ որ շոգենաւն առաջ երթար՝ միտք

ունէր ապրանքները շատցնելու. վասն զի զետեղերաց այլեայլ տեղուանք իր գործակցին ձեռքով՝ այս ապրանքներէն խել մը ժողովել տուեր էր։

Շոգենաւը՝ որ Գեղեցիկ-Գետ կ՚ըսուէր իր գեղեցկութեան ու արագութեանն համար՝ հանդարտաքայլ գետին ջուրը կը պատռտէր, ու գեղեցիկ և պայծառ երկնից տակ՝ ազատ Ամերիկոյ աստեղքն ու գրօշակը կը ծփային։ Շոգենաւուն վրայ բազմութիւն ազնուական տիկնանց ու պարոնայց խռներ էին. ու վեր վար կ՚երթային կու գային, ու այն գեղեցիկ օրը կը վայելէին։ Ամէնքն ալ կենդանութիւն մը, զուարթութիւն մը և ուրախութիւն մը կը շնչէին, բաց ի Հէլլիի գերիներէն, որ ուրիշ ապրանքներու հետ մէկտեղ՝ զիրենք ալ վարը դիզեր էին, որոնք բնութեան հասարակաց վայելմունքէն զրկուած ու մէկտեղ եկած՝ կամացուկ ձայնով կը խօսակցէին։

— Ծօ տղաք, ըսաւ Հէլլի՝ յանկարծ անոնց քով գալով, է՛ ինչպէս. յուսամ ուրախ զուարթ էք. ամենեւին մի՛ տրտմիք ու մի՛ գանգատիք. թէ որ խելքով կենաք՝ գիտնաք որ ես ալ ձեզի հետ աղէկ կը վարուիմ։

Խեղճերը անտարբեր կերպով մը՝ «Հրա-մեր եւ, պարոն» ըսին, որ դարերէ ի վեր խեղճ խափշիկ գերիներուն սովորական ու միանգամայն պարտաւորեալ տալիք պատասխանն է։ Բայց ասով ի՞նչպէս կարելի էր՝ որ մխիթարուէին... ամէն մէկն իրենց սրտին մէջ խորունկ վէրքեր ունէին։ Ի՞նչպէս կըրնային մոռնալ շուտ մը իրենց ամուսինն, իրենց մայրը, իրենց որդիքը, իրենց եղբարքն ու քրուըտանքը, որոնցմէ քիչ մ՚առաջ բաժնուեր էին, ու մէյ մ՚ալ զանոնք տեսնելու յոյս չունէին...։

— Կինս, ըսաւ Ցոլհաննէս անունով ապրանքը, երեսուն տարուան է, (ու շղթայակապ ձեռուըներր Թովմասին ծնկանը վըրայ դնելով), խեղճը գլխուս եկածն ամենուն չի գիտեր։

— Ո՞ւր կը բնակի, հարցուց Թովմաս։

— Այս տեղուանքի մօտ պանդոկ մը, պատասխանեց Յոլհաննէս...։ Ա՛հ, ո՛ւր էր թէ մէյ մ՚ալ կարենայի աշխարհիս վրայ տեսնել զինքը։

Խե՛ղճ Յոլհաննէս... մարդկային բնութեան բնական զգացմունք մ՚էր ասիկայ... արցունքը աղբիւրի մը պէս աչքէն այնպէս կը վազէր, ինչպէս որ կը վազէ ճերմակի

մը աչքէն։ Թուլման իր բազմախոց սրտէն խորունկ հառաչանք մը հանեց, ու ձեռքէն եկածին չափ զանիկայ մխիթարելու խօսքեր ջանաց գուրցել....։

Իսկ անոնց գլխուն վրայ բազմութիւն արանց և կանանց, հարց և մարց, ժողովեր էին, և քանի մը հատ ալ սիրուն տղաքներ գեղեցիկ թիթեռնիկներու պէս իրենց ծնողաց չորս կողմը կը կայտռէին, կը թռչըտէին։ Այնպիսի ուրախ ու զուարթ ընկերութեան մը մէջ ի՜նչպէս քաղցր ու անուշ կ'երևայ մարդուս իր կեանքը...։

— Ոհ, մայրիկ, ըսաւ տղոցմէ մէկը, նաւուն մէջ գերեվաճառ մը կայ, հեռուն ալ հինգ վեց գերի ունի վարը։

— Խեղճ մարդիկ, պատասխանեց մայրը ցաւագին ու սրտմտութեամբ։

— Ի՞նչ եղեր է որ հարցուց խաթուններէն մէկը։

— Վարը քանի մը խեղճ գերիներ կան, պատասխանեց մայրը։

— Խեղճերը շղթայով ալ կապուած են, վրայ բերաւ տղան։

— Ի՜նչ մեծ նախատինք է այս բանս մեր հայրենեաց, ըսաւ ուրիշ խաթուն մը։

— Ա՜հ, շատ բան պէտք է՝ այս բանին

աղէկ կամ գէշ ըլլալը ցուցընելու համար. վրայ թերաւ անգլիէն մաքուր հագուած ազնիւ խաթուն մը, որ նստած մանր մունր կարեր ընելու զբաղեր էր. ես հարաւային կողմերը գնացեր պտըտեր եմ. և շիտակն ըսելով՝ այն կողմի գերիներուն վիճակն աւելի աղէկ է իրենց գերութեան մէջ, քան թէ ազատ ըլլային։

— Կրնայ ըլլալ, կրկնեց առաջին խաթունը, որ այն գերիներուն մէջ գտնուին մէկ քանիին, որ այլևայլ պատճառներու համար՝ իրենց գերութեան մէջ երջանիկ ըլլան. բայց ինծի համար գերութեան ամենէն դառն բանն է՝ բնութեան զգացմունքն արհամարհել, ու բնական և օրինաւոր սիրոյ կապակցութիւնները քակել. ինչպէս՝ ընտանիք մը իրարմէ բաժնել ու զատ զատ ծախել ու ցրուել։

— Ըսածդ իրաւ դառն բան է, պատասխանեց կար կարող խաթունը՝ որ գոհ սըրտով ձեռքի լմընցուցած տղու հագուստին կարուածքները կը զննէր. բայց կարծեմ թէ այդպիսի բան չի պատահիր։

— Ո՛հ, մանաւանդ թէ շա՛տ անգամ վրայ թերաւ առջի խաթունը։ Ես շատ տարիներ Քէնդըքիի ու Վիրճինիոյ գաւառները

բնակեր եմ, և այնպիսի բաներ տեսեր եմ որ մարդուն սիրտը կտոր կտոր կ'ըլլայ։ Մտածէ, խաթուն, երևակայէ որ զան Հրամանքիդ երկու տղաքը գրկէդ բնութեամբ խլեն ու տանին ծախեն. Հրամանքդ ի՞նչ կ'ըլլայիր։

— Անոնք մեր զգացմունքը չունին, պատասխանեց դիմացինը՝ ծնկանը վրայ թել ոլորելով, ուստի չենք կրնար զանոնք մեզմէ չափել։

— Իրաւցընէ կը սխալիս, խաթուն, պատասխանեց առջինը, կ'երևայ թէ բան չես տեսեր, չես լսեր. ես անոնց մէջ ծներ ու անոնց մէջ մեծցեր եմ. անոնք անանկ զգայուն են՝ որ չես կրնար երևակայել, թերևս մեզմէ ալ աւելի։

— Իրա՞ւ կ'ըսես, կրկնեց խաթունը. ետքը սկսաւ յօրանջել ու քաշկռտուիլ, ու խօսակցութեանը դառնալով՝ իր առջի ըսածը կը հաստատէր. — Ես, ըսաւ, այն գիտեմ, որ գերութեան մէջ աւելի երջանիկ են՝ քան թէ ազատ ըլլային։

— Անոր տարակոյս չկայ, ըսաւ անդիէն հագուած ու ծանրակաց բողոքակրօն պատուելի մը, որ խաթուններուն խօսակցութիւնը մտիկ կ'ընէր. Աստուծոյ նախախնա-

մութեան կամքն այս է՝ որ Աֆրիկեցի սևերը միշտ գերի ըլլան ու իրենց ցած վիճակին մէջ մնան. «Անիծեալ Քանան մանուկ,
» կ'ըսէ սուրբ Գիրքը, և եղիցի ծառայ եղ-
» բարց իւրոց[1]»։

— Այս խնդիր ըսէ, բարեկամ, վրայ բերաւ բարձրահասակ պարոն մ'ալ որ քովը կեցեր էր, այդ քու բերած վկայութիւնդ արդեօք սուրբ Գիրքն ալ նոյն մտքով կը հասկընայ։

— Ո՛, ատոր վրայ տարակոյս չկայ, պատասխանեց պատուելին. Աստուած իր նախախնամութեամբն ի յաւիտենից որոշեր է որ այդ ցեղը գերութեան մէջ ծնանի ու գերութեան մէջ մեռնի, պատճառը պէտք չէ ետևէ ըլլանք քննելու. ուստի մենք չենք կրնար Աստուծոյ կամքին դէմ ելլել։

— Թէ որ այդպէս է՝ մենք գերեվաճառութիւնը ձեռքէ չձգենք, վասն զի այս է Նախախնամութեան կամքը, վրայ բերաւ պարոնը, ու դարձաւ

— Հրամանքդ ի՞նչ կ'ըսես, Նայինք, ըսաւ Հէլիին, որ հոն ոտքի վրայ կեցած, ու ձեռքերը գրպանը՝ ուշադրութեամբ խօսակցութիւնին մտիկ կ'ընէր։

1. Ծնն. Գլ. Թ. 25։

— Շատ աղէկ ուրեմն, կրկնեց նորէն բարձրահասակ պարոնը, պէտք է որ մենք Նախախնամութեան որոշմանցը հնազանդինք, պէտք է որ գերի գնենք, ծախենք, փոխնորդ ընենք, աճուրդի հանենք, մեզի ծառայեցընենք, ասոնք ասոր համար եղեր են։ Երբոր այսպէս է՝ քու խղճմտանքդ հանգիստ է, անանկ չէ՞, պարոն օտարական, հարցուց նորէն Հէլիին։

— Այդ բանդ և ոչ ալ մտքէս անցեր էր, պատասխանեց Հէլի. ես բաւական ուսմունք ըրած չեմ որ ինքիրենս կարենամ այսպիսի բաներ մտածել։ Ես ապրուստ գտնելու համար միայն գերեվաճառութեան ձեռք զարկեր եմ, միշտ մտքէս աս ալ անցընելով՝ որ եթէ ըրածս գէշ է՝ բաներս կարգի գնելէն վերջը՝ կը զղջամ ու ետ կը կենամ, ու բնաւ մէկ մ՚ալ այսպիսի արուեստի ձեռք չեմ զարներ։

— Ուրեմն ասկէց ետև զղջալու ու ետ կենալու կարօտութիւն չունիս, անանկ չէ՞, կրկնեց բարձրահասակ մարդը. սուրբ Գիրքը հասկընալը կը տեսնե՞ս ինչ աղէկ բան է եղեր[1]...։ Թէ որ դուն ալ այս կտրիճ քա-

1. Այս խօսակցութիւնները իւրաքանչիւր մարդ սուրբ Գիրքը ըստ իւր մտացը հասկընալ ուզողները ծաղրելու համար իմանալու է։

րոզչին պէս սուրբ Գիրքը հասկըցած ըլլայիր՝ շատոնց այս բաներուս խելքդ կը հասնէր ու խիղճդ երբեմն չէր տանջեր զքեզ։ Դուն ալ կ'ըսէիր՝ «Անիծեալ».... ըմ... անունը միտքս չմնաց, ու խաղաղութեամբ քու առուտուրդ առաջ կը տանէիր։

Եւ այս օտարականս՝ որ այն բարեսիրտ վաճառականն էր՝ որ Քէնտըրքիի պանդոկին մէջ կրակին քով նստած տեսանք, այս խօսակցութենէս վերջը քաշուեցաւ անկիւն մը նստաւ, ու ծուխ քաշելով՝ մէկ կողմանէ քթին տակէն արհամարհական կերպով կը ծիծաղէր։

Երկայնահասակ ու բարակուկ երիտասարդ մը, որուն երեսէն կ'երևար զգայուն և ուշիմ բնաւորութեան տէր ըլլալը, ասոնց քով մօտեցաւ և այս խօսքերս կրկնեց. Զամենայն որ միանգամ կամիցիք թէ արասցեն ձեզ մարդիկ՝ այնպէս և դուք արարէք նոցա. այս ալ կարծեմ սուրբ Գրոց խօսքն է, ըսաւ։

— Ատոր տարակոյս չկայ, պատասխանեց Քէնտըրքեցի վաճառականը. այս խօսքս այնպէս պարզ է՝ որ մեզի պէս խեղճ մարդիկ ալ կը հասկընան. ու բերնէն հրաբուխի պէս ծխախոտի ամպ մ'արձակեց։

Երիտասարդը պատասխան տալու վրայ էր, մէյ մ'ալ յանկարծ զանգակը զարնըւեցաւ, շոգենաւը կեցաւ. ամէնքը վազեցին իմանալ ո՛ւր հասած ըլլալնին։

— Ասոնք երկուքն ալ եկեղեցակա՞ն են արդեօք, հարցուց վաճառականը քովինինրէն մէկուն, առջի երկու իրեն հետ խօսողները ցուցնելով։

Մարդը գլխով՝ հա՛, ըսաւ։

Մէյ մ'ալ տեսնես շոգենաւուն մօտեցող նաւակներէն՝ սև գերի կնիկ մը վեր նաւուն մէջ ցատքեց, ու ամբոխը պատռեց վար իջաւ, ու վազեց վերը յիշուած Յովհաննէս երեսուն տարուան ապրանքին վիզը պըլլուեցաւ ու սկսաւ լալ ու ողբալ։ Այս այն խեղճ գերի կնիկն էր, որ էրկանը թըշուառութիւնն իմանալով՝ վազեր եկեր էր զինքը գտնելու...։

Բայց ինչո՞ւ այս խեղճ պատմութիւններն ու ցաւալի դիպուածները յաճախ կը կըրկնենք...։ Որ չ'ըլլար որ ընտանեկան սուրբ կապերը չխզուին, սրտեր իրարմէ չբաժնուին, տկարներ ու խեղճեր՝ զօրաւորին շահուն ու կրիցը զոհ չըլլան։ Հարկ չէ որ պատմենք այս թշուառութիւններն ու խեղճութիւնները՝ որ ամէն օր վրէժխնդրութիւն

կը պահանջեն Անիկէց՝ որ խուլ չէ, թէպէտ երկար ժամանակ լուռ կը կենայ։

Երիտասարդ պարոնը, որուն խօսքը բե-րանը մնաց, ձեռուըները կուրծքին վրայ ծալլած՝ այս տխուր ու սրտաշարժ տեսա-րանը կը դիտէր։ Քիչ մ՚ետքը դառնալով՝ քովը Հէլլին տեսաւ, ու

— Բարեկամ, ըսաւ սրդոն եղած, այդ-պիսի տառաւատուր մ՚ինչպէս, ի՞նչ սրտով կրնաս ընել. տես սա երկու խեղճերը. մինչդեռ քիչ առաջնէն իմ կնիկս ու տղաս տեսնե-լուս վրայ հիմակուընէ կ՚ուրախանամ, մինչ-դեռ նոյն զանգակը ինծի՝ իմ ընտանեացս մօտենալուս նշանը կու տայ, նոյն զանգակը այս խեղճերուն ալ իրարմէ յաւիտեան բաժ-նուելուն նշանը կու տայ։ Աղէկ գիտցիր որ այս բաներուս համար Աստուծոյ պատաս-խան պիտի տաս։

Գերեվաճառը լռութեամբ և գլուխը կախած սկսաւ վար նայիլ։

— Զայն հանէ նայինք, կրկնեց անդրէն Քէնդըրքեցի վաճառականը. եկեղեցականաց մէջ ալ ի՞նչ տարբերութիւն կայ... կ՚երե-ւայ որ այս օտարականին ծանր կու գայ՝ Ա-նիծեալ... ինչպէս ալ անունը մոքես կ՚ելլէ։

Հէլլի քթին տակէն մռմռալ սկսաւ։

— Այս բռնած ճամբադ գէշ է, վրայ բե-րաւ նորէն Քէնդըրքեցին, թէ որ յանկարծ այս օրերս Աստուծոյ դիմացն ելլես, ինչ-պէս որ մը ամէնքնիս ալ պիտի ելլենք, ի՞նչ պատասխան պիտի տաս։

Հէլլի մտածելով՝ շոգենաւուն մէկալ կող-մը գնաց։ — Թէ որ, կ՚ըսէր ինքիրեն, գե-րիներու մէկ երկու խումբ ալ ծախեմ այս տարի, ես կը քաշուիմ այս արուեստէն, վասն զի ես ալ կը տեսնեմ որ ծայրը պի-տի չելլէ։

Ետքը գրպանէն թղթապանակ մը հա-նեց, ու սկսաւ հաշիւներն աչքէ անցընել. և ասիկայ հնարք մ՚է՝ որ Հէլլիի նման մար-դիկ ի գործ կը դնեն, իրենց խռովեալ խղճ-մըտանքը հանդարտեցընելու համար։

Շոգենաւը նորէն ցամաքէն հեռացաւ ու ճամբան սկսաւ առաջ տանիլ. ճամբորդները նորէն իրենց տեղերնին դարձան. էրիկ մար-դիկ սկսան խօսիլ, կարդալ, ծուխ քաշել. կնիկները կար կարել. տղաքները վեր վար կը վազվռտէին, ու նաւն ալ սաստիկ ա-րագութեամբ իրեն ճամբան կը շարունակէր։

Երկրորդ օրը շոգենաւը Քէնդըրքիի պզտի քաղաքի մը դիմաց քիչ մը կեցաւ, Հէլլի ալ իր քանի մը գործերուն համար դուրս ելաւ։

Թովմաս՝ թէպէտ ոտքն ու ձեռքը շղթաներով կապուած՝ կրնար ոտնփոխ առնուլ, ուստի շոգենաւուն վրայ ելաւ ու սկսաւ քաղաքը դիտել։ Շատ չանցաւ՝ տեսաւ որ Հէլլի արտորանօք կու գար, հետը սև մանկահասակ կնիկ մը, որուն գիրկը պզտի տղայ մը կար։ Բաւական մաքուր հագուեր էր կինը. ետևէն ալ սև գերի մը՝ ուսը պզտի սնտուկ մը շալկած։ Կինն՝ այս գերիին հետ գուարթութեամբ խօսելով նաւը մտաւ. զանգակը զարկաւ, շոգենաւը ճամբայ ելլելու նշան տուաւ ու մեքենան սկսաւ բանիլ։ Այս կինը գնաց նաւուն մէջտեղը դիզուած ապրանքներուն վրայ նստաւ, ու տղուն հետ սկսաւ խաղալ և զանիկայ զբաղեցընել։

Հէլլի երկու երեք անգամ շոգենաւուն մէջ վեր վար պտըտելէն ետև, եկաւ այս սև կնկան քով նստաւ, ու անտարբեր կերպով մը մէկ երկու խօսք ըսաւ անոր։

Թովմաս տեսաւ որ կնոջ ճակտին վրայ սև ամպ մը պատեց. և այլայլած ու խիստ կերպով պատասխան տուաւ.

— Չէ, ըսաւ, չեմ կրնար հաւատալ, հրամանքդ կատակ կ'ուզես ընել ինծի հետ։

— Թէ որ չես հաւատար՝ աս թուղթը նայէ, պատասխանեց Հէլլի՝ ծոցէն թուղթ մը

Հանելով. ասիկայ քու ծախուելուդ դաշնա-գիրն է՝ տիրոջդ ստորագրութեամբ. գիտնաս որ ուզի նստար ինծի, աղէկ սակ սուեր իմ քեզի համար։

— Ձեմ կրնար հաւատալ՝ որ տէրս զիս այսպէս խաբած ըլլայ, պատասխանեց կինը ալ աւելի այլայլելով։

— Որովհետեւ կը տարակուսիս, ըսածիս չես հաւատար, որու կ՚ուզես կարդացուր այս թուղթը։ Պարոն, ըսաւ Հէլի անկէ անցնող-ներէն մէկուն, շնորհք ըրէ սա դաշնագիրը կարդա, վասն զի այս կնիկը չ՚ուզեր հաւ-տալ իմ խօսքիս. նայէ ի՛նչ կ՚ըսէ։

— Այս թուղթս, պատասխանեց մարդը, դաշնագիր մ՚է Ճոն Ֆոսայք անունով պա-րոնէն ստորագրուած, որով հրամանքիդ կը թողու Լուչիան իր տղան. ինչպէս որ թըղ-թէն ալ կ՚իրեւայ՝ տուստուրը եղեր լմնցեր է. ասիկայ տարակոյս չի վերցըներ։

Խեղճ կնոջ փրցուցած աղաղակէն ու կո-ծին ձայնէն՝ ճամբորդները բոլոր վրան թա-փեցան. Հէլի ալ այս աղաղակին պատճառը համառօտիւ մը մեկնեց անոնց։

— Իմ՝ տէրս ըսաւ ինծի, կը կրկնէր խեղճ կնիկը, որ զիս Լուիզվիլ վարձքի տուեր է խոհարար ըլլալու պանդոկի մը՝ ուր էրիկս

տալ կը ծառայէ[1]։ Իմ տէրս ինծի այսպէս ըսաւ, ուստի չեմ կրնար կարծել որ սուտ ըսած ըլլայ։

— Բայց ինքը ծախեր է զքեզ, խե՛ղճ կնիկ, այս բանս տարակոյս չի վերցըներ, ըսաւ կարեկցութեամբ՝ բազմութեան մէջէն ուրիշ մ'ալ՝ պաշտնագրին թուղթը կարդալով. անիկայ զքեզ ծախե՛ր է։

— Ան ատեն ի՛նչ զուր տեղը կը խօսիմ, պատասխանեց կնիկը, ու մէկէն հանդարտեցաւ. և տղան գիրկը՝ սնտուկին վրայ նստաւ, ու կռնակը անցուորաց դարձուցած՝ տրտում տխուր գետին վրայ կը նայէր։

— Վերջապէս հանդարտեցաւ, ըսաւ գերեվաճառը. կ'երևայ թէ բաւական արիութիւն ունի։

Շոգենաւը շուտ շուտ առաջ կ'երթար, բարակ ու ամառուան անուշ քամի մը կը փչէր, որ խեղճ կնկան ճակատին զարնելով՝ գլխուն տաքութիւնը կամաց կամաց իջեցուց... բարերա՜ր քամի, որ ամենևին չես հարցըներ թէ զովացուցած ճակատդ ինչ

1. Գերի ունեցողները շատ անգամ գործ չունենալով՝ իրենց գերիները ուրիշի վարձքի կու տան. և ինչպէս ձի, եզ, կով, էշ վարձողներ կան, այսպէս ալ ան կողմերը մարդիկ կան՝ որ գերիները վարձելը իրենց արհեստ ու բաղդ շինելու ճամբայ մ'ըրած են։

գոյն ունի։ Խեղճ կինը գետին ալիքներուն վրայ կը նայէր, որ արեւուն ոսկեգոյն ճառագայթները կը ցոլացընէին. ամէն կողմանէ ականջները կը թնդային շոգենաւուն մէջ գտնուող երջանիկ մարդկանց ուրախ զուարթ խօսակցութիւններէն, բայց իր սրտին վրայ մեծ բեռ մը ծանրացեր էր։ Տղան ծնկանը վրայ ոտք ելած՝ պզտի ձեռուըներովը մօրը երեսը կը շոյէր, կը ցատքէր, ու դեռ նոր լեզու ելած ըլլալով՝ կը ջանար կակազելով մը խօսիլ. կարծես թէ մայրը մխիթարել կ'ուզէր։ Յանկարծ մայրը զինքը կուրծքին վրայ սեղմեց, իր արցունքներովը անոր կլորիկ երեսները կը թրջէր, որ զարմացած մօրը կը նայէր։ Քիչ մ'ատենէն կարծես թէ հանդարտեցաւ, ու սկսաւ տղուն կաթ տալ։

Տղան տասը ամսուան էր, հասակէն վեր ուժով ու կայտառ. վայրկեան մը հանդարտ չէր կենար, ու մայրն ալ հանգիստ չէր թողուր։

— Ի՞նչ աղուոր տղայ ունիս, ըսաւ ճամբորդներէն մէկը՝ ձեռուըները գրպանը դրած՝ կնկան քովէն անցնելով. քանի՞ ամսուան է։

— Տասնուկէս ամսուան է, պատասխանեց մայրը։

Օտարականը աղուն սուլեց, ու կտոր մը շաքար ձիոքը տուաւ. աղան զայն մէկէն առնելէն ու բերանը դնելը մէկ ըրաւ։

— Ի՛նչ աշխոյժ ալ է, կրկնեց օտարականը, ու սուլելով հեռացաւ քովերնէն։ Նաւուն մէկալ կողմն երթալով՝ Հէլլիի մօտեցաւ՝ որ ապրանքներուն կոթընած ծուխ կը քաշէր։ Օտարականն ալ ծխախոտը վառեց ու — Բարեկամ, ըսաւ Հէլլիի, գեղեցիկ կին մը ձեռք ձգեր ես։

— Կարծեմ անկէ տեսքովն ալ կրնայ ըլլալ, պատասխանեց Հէլլի՝ ամպի պէս ծըխախոտին մուխը բերնէն դուրս փչելով։

— Դէպ ի Հարաւային կողմե՞րը պիտի տանիս զանիկայ։ — Հէլլի ծուխը բերանը՝ գլխովը հա՛ ըսաւ։

— Կալուածներո՞ւ համար։

— Հրամեր ես, կալուածի մը համար գերիներու յանձնարարութիւն մ'ունիմ, յուսամ թէ ատ կնիկն ալ հոն կարենամ դընել։ Ինծի ըսին թէ աղէկ կերակուր եփել գիտէ. թէ որ կ'ուզեն թող խոհարար ընեն զինքը, թէ չէ՝ բամբակի դաշտերուն մէջ թող աշխատցընեն։ Մատուըները շատ յարմար են այն տեսակ աշխատութեանց, ես ալ քննեցի տեսայ։ Ի՛նչ ալ ըլլայ՝ յուսամ

թէ ծախքս հանեմ, ու վրան վաստակ ալ ընել կարենամ։

— Հապա տղան կալուածի մէջ ի՞նչ բանի պիտի գայ։

— Իրաւ է. առիթ մը գտնելու ըլլամ կը ծախեմ։

— Հարկաւ աժան գնով պիտի ծախես, պատասխանեց օտարականը՝ այրանքներուն վրայ երկնցած նստելով։

— Ան չեմ գիտեր, ըսաւ Հէլի. կը տեսնես ի՛նչ աղուոր է, աշխոյժ, գիրուկ, ուժով տղայ է, և քարի պէս պինդ մարմին ունի։

— Իրաւ է. բայց գնողը ո՛րչափ ատեն անպատուղ կերցընէ խմցընէ պիտի, մինչև որ մեծնայ։

— Է՜հ, շան ձագի մը պէս շուտ կը մեծնայ. ամուէ մը տեսնես թէ ի՛նչպէս ոտք կ՚ելլէ ու համարձակ վեր վար կը վազէ։

— Ես յարմար տեղ մ՚ունիմ, և ետեւէ եմ քանի մը պզտի տղաք ձեռք ձգելու։ Խոհարար աղախնոյս տղան մէկալ օր լուացքի խալկինին մէջ ինկաւ խղդուեցաւ, մինչդեռ մայրը լուացքները կը փռէր. ուստի կը մտածեմ որ ուրիշ տղայ մը առամ իրեն մեծցընելու։

Հէլի ու օտարականը քիչ մը ատեն լուռ կեցած ծուխ կը քաշէին, և երկուքն ալ մէկմէկու կը սպասէին որ խօսք բանան. վերջապէս օտարականը դարձաւ ըսաւ.

— Ի՛նչ ալ ըլլայ՝ մարդ մ'ալ չես կրնար գտնել որ աս տղուն տասը տոլլարէն աւելի ուզէ տալ։

Հէլի գլուխ թօթուեց՝ խուխ մ'արձակելով,

— Աւելորդ ապրանք չունիմ, ըսաւ, ու սկսաւ նորէն ծխել։

— Ուրեմն նայինք դուն ի՞նչ կ'ուզես։

— Ես ալ կրնամ, ըսաւ Հէլի, սնուցանել աս տղան և կամ ուրիշի մը սնուցանել տալ. ասկէ վեց ամսէն՝ հարիւր տոլլար կ'արժէ. մէկ երկու տարիէն երկու հարիւր տոլլար՝ ո՛ւր որ ըլլայ. ուստի հիմայ յիսուն տոլլարէն ստակ մը վար չեմ տար։

— Պարոն, այդ ըսածդ ծաղրական բան է. ո՞վ կու տայ քեզի 50 տոլլար։

— Ստակ մ'ալ վար չեմ իջնար, պատասխանեց Հէլի։

— Ես ալ շատ շատ երեսունէն վեր դանկ մ'ալ աւելի չեմ տար։

— Մտիկ ըրէ, կրկնեց Հէլի՝ խուխ մ'արձակելով. երեսունին վրայ կէս երեսուն մ'ալ աւելցուր, 45 տոլլարէն վար չեմ տար։

Օտարականը քիչ մը մտածելէն վերջը, հաւանեցաւ։

— Կու տամ, ըսաւ։

— Շատ աղէկ, կրկնեց Հէլի, ո՞ւր պիտի երթաս։

— Լուիզվիլ։

— Լուիզվի՛լ, ըսաւ Հէլի, լաւ. այսօր իրիկուան դէմ կը հասնինք. տղան քնացած կ'ըլլայ. մի միայն ատենն է, կամացուկ մը կ'առնուս, որպէս զի ձայն չհանէ, և նաւէն դուրս կ'ելլես։ Ես ամէն բան խաղաղութեամբ լմնցընել կ'ուզեմ. ամենեւին աղաղակ չեմ սիրեր։ Դաշնագիրները ստորագրեցին ու նորէն ծխել սկսան։

Պարզ ու գեղեցիկ իրիկուն մ'էր. քիչ ատենէն շոգենաւը Լուիզվիլի դիմաց կեցաւ։ Տղան մօրը գիրկը կը քնանար։ Մայրը երբոր քաղաքին անունը լսեց՝ մէկէն տղան վերարկուին մէջ պլլեց, և շուտ մը ապրանքի կապոցներուն վրայ դրաւ, ու շոգենաւուն եզերքը վազեց, որ տեսնէ թէ պանդոկի ծառաներուն բազմութեան մէջ իր էրիկն ալ կը տեսնուի՞։

— Ահա հիմայ ժամանակն է, ըսաւ Հէլի օտարականին, ու քնացած տղան անոր ձեռքը տուաւ. նայէ որ չարթնցընես. թէ

որ տղուն ձայնը լսէ մայրը՝ աշխարհք տակնուվրայ կ'ընէ։

Գնոզը զգուշութեամբ մը տղան առած՝ վերը ելաւ, ու ամբոխին մէջ կորսուեցաւ գնաց։ Երբոր շոգենաւը նորէն նշան տալով ճամբայ ելաւ, կնիկն իր էրիկը տեսնելէն յուսահատած՝ իր տղուն քով վազեց. բայց ինչպէս մեծ եղաւ զարմանքն ու ցաւը՝ երբոր տղան իր դրած տեղը չգտաւ. — Ո՛ւր է տղաս, պոռաց, խելքը գլխէն գնացած։

— Լուչիա, պատասխանեց Հէլի, տղադ գնաց, աւելի աղէկ է որ շուտ իմանաս քան թէ ուշ։ Գիտէի որ պիտի չկարենաս դուն զանիկայ հարաւային կողմերը տանիլ, անոր համար աղէկ առիթ մը գտնելով՝ պատշաճ դատեցի որ հարուստ ընտանեաց մը ծախեմ, ուր զինքը քեզմէ աւելի աղէկ կը նային։

Հէլի քանի մը հիւսիսային նորելուկ քարոզչաց ու քաղաքագիտաց քարոզած քաղաքական ու քրիստոնէական կեղծուպատիր կատարելութեան ծայրն էր հասեր. մարդկային բնութեան ամէն տկարութեանց ու ամէն անմիտ նախապաշարմանց յաղթեր էր. աչքը այնչափ անգամ տեսած էր այսպիսի թշուառ տեսարաններ՝ որ խեղճ կնոջ

ողորմելի ու յուսահատական կերպարանքն
և ոչ իսկ տպաւորութիւն ըրաւ սրտին. ան-
տարբեր կերպով մը յորդորել սկսաւ զինքը
որ զուր տեղը չլայ չպոռայ ու բոլոր ճամ-
բորդները չնչին բանի մը համար տակնու-
վրայ չընէ: Իսկ ողորմելի կնիկը սրտին
այլայլութիւնէն ու յուսահատութիւնէն և ոչ
շունչ կրնար առնուլ. հարուածոյն սաստկու-
թենէն սրտին հառաչանքները լռեր էին, և
արցունքը աչուըներուն մէջ պաղեր էին.
Ջիղերը բռնուեցան, աչուըները մթընցան, ու
խեղճը անշունչ ինկաւ մնաց:

Հէլի չանաց մխիթարել զինքը. — Գի-
տէի, կ'ըսէր, որ աղջիկ անգամ լսելուդ պէս
այլայլիս պիտի, բայց քեզի պէս խելացի
ու կտրիճ կնիկ մը, Լուչիա, պէտք չէ որ
վհատիս. ձեռքէդ բան մը չի գար. այս բանս
պէտք էր որ օր մը չէ՝ օր մը հանդիպէր,
ճար չկայ:

— Ո՛հ, պարոն, ո՞հ պարոն... պատաս-
խանեց կնիկը խզգուկ ձայնով մը, շնորհա-
կալ եմ, շնորհակալ....:

— Դուն խելացի կնիկ մ'ես, Լուչիա՛, ես
զքեզ աղէկ տեղ մը կը տեղաւորեմ. և հոն
շուտով ուրիշ էրիկ մը քեզի կը գտնես.
քեզի պէս գեղեցիկ ու տեսքով կին մը...

— Ա՜հ, պարոն, ինծի շնորհք մ'ընէիր ու չխօսէիր, կրկնեց կինը՝ անանկ մշտացեալ ու յուսահատ ձայնով մը, որ Հէլէն ալ իմացաւ որ կարող չէր իր զօրաւոր խօսքերով զանիկայ մխիթարելու, ուստի ոտք ելաւ ու գնաց. կնիկն ալ երեսը մէկդի դարձուց և գլուխը կրկնոցովը ծածկեց։

Հէլէն նաւուն վրայ վեր վար սկսաւ պարտիլ, և երբեմն քովը կը մօտենար կը նայէր։

— Շատ մշտացաւ, կ'ըսէր ինքիրեն, բայց սակայն հանդարտ է. Թող քիչ մ'ատեն իր ցաւոց մէջ ընկղմի, կամաց կամաց ի հարկէ կը վարժի։

Թովմաս այս ամէն եղածները տեսեր էր ու հետեւանքն ալ ինքիրեն կը գուշակէր. խեղճ ապէս սեւուկը որ մեր հիմակուան լուսաւորեալ քաղաքականութիւնէն չէր հասկընար, Հէլէնի անգթութիւնը միայն չարաչար կը պախարակէր. Թէ որ ինքն ալ քանի մը քաղաքագէտ ու կրօնագէտ մարդիկներու պէս գիտնար ու ըմբռնէր՝ որ այս հանդիպածներն ուրիշ բան չէին՝ բայց եթէ օրինաւոր առուտուրի անխուսափելի հետեւանքները, անշուշտ շատ աւելի տարբեր կերպով պիտի մտածէր։

Բայց Թոմմաս իր տգիտութեամբ՝ Աւետարանի խօսքերէն զատ ուրիշ բան սորված կամ միտքը պահած չէր. խեղճին սրտէն արիւն կ'անցնէր, երբոր կը տեսնէր ողորմելի ու թշուառ կնոջը դէմ եղած անիրաւութիւնը, որ թարշամեալ բուսոյ մը պէս գլուխը ծռած կեցեր էր։

Այն հոգի ունեցող, զգայուն ու մտածող անձը՝ Ամերիկայի օրէնքները չեն ամըչնար բամբակի, շաքարի ու խահուէի տականերուն ու կապոցներուն հաւասար՝ ապրանքի մը պէս ծախել ու գնել։

Մօտեցաւ խեղճին քով և ուզեց մէկ երկու խօսքով մը զանիկայ մխիթարել, բայց կնիկը հառաչանքէ զատ ուրիշ պատասխան չտուաւ։ Թոմմաս աչուըներն արցունքով լեցուած՝ ջանաց սիրտ տալ անոր. կը յիշեցընէր իրեն մեր Փրկիչը որ մեզի համար ամէն նեղութեանց համբերեց, կը յիշեցընէր յաւիտենական կեանքը՝ որուն սահմաններէն ներս ցաւք ու արտմութիւնք չեն կրնար մտնել. բայց խեղճ կնոջ սրտին մէջ վիշտն ու արտմութիւնը շատ խորունկը թափանցեր էին, և Թոմմասին տուած մխիթարութիւնները չկրցան մինչև այն խորերը հասնիլ։

Խաղաղ ու հանդարտ գիշերը վրայ հա-

տաւ. անթիւ աստղերը երկնքի կապուտակ կամարին վրայ սովորականէն աւելի կը փայլփլէին. կարծես թէ հրեշտակաց աչուը-ներն էին՝ որ երկրիս վրայ իրենց նայուած-քը դարձուցեր էին. բայց այն հեռաւոր երկնքէն ոչ մխիթարութեան ձայն մը կը լսուէր և ոչ օգնական ձեռք մը կ'իջնէր։ Հետզհետէ նաւուն մէջ լռութիւնը պատեց. ամէնքն ի քուն մտեր էին. և միայն ալիք-ներուն ձայնը կը լսուէր, որոնք շոգենաւը կը պատըռտէր կ'անցնէր։ Թովմաս սնտուկի մը վրայ երկնցաւ, ու անկէ՝ հեռուէն՝ խեղճ կնոջ խորին հառաչանաց ձայները մտիկ կ'ընէր։

— Ո՜հ, Տէր Աստուած, ի՞նչ պիտի ը-նեմ, դու ինծի օգնէ ու գթա վրաս։

Այս խօսքերս երկայն ատեն կրկնուեցան, վերջէն խորին լռութիւն մը պատեց։ Կէս գիշերն անցած էր, Թովմաս պառկած տե-ղէն յանկարծ վեր ցատքեց. քովէն թռչունի մը պէս սև շուք մ'անցաւ ու դէպ ի նա-ւուն եզերքը մօտեցաւ. քիչ մ'ատենէն ծանր մարմնոյ մը ջուրն ինկնալուն ձայնը լսուե-ցաւ... ու ա՜լ ոչ ձայն մ'ելաւ և ոչ շուք տեսնուեցաւ։ Թովմաս գլուխը վեր վերցուց .... խեղճ կնկան նստած տեղը պարապ

էր.... Ցեղէն ելաւ ու կամացուկ մը չորս կողմը նայեցաւ, բայց մէկն ալ չտեսաւ։ Այն թշուառ ու յուսահատ սիրտը ա՛լ դադրեր էր բաբախելէն.... և գետին ջրերը՝ որ զինքը կլլեր էին՝ առջինին պէս խաղաղ ու հանդարտ իրենց ընթացքն առաջ կը վարէին։

Համբերութիւն... համբերութիւն պէտք է, ո՛վ ընթերցող, որ այս սղորմ և սրտատոչոր տեսարանները կը կարդաս ու սիրտդ դառնութեամբ կը լեցուի։ Բայց մխիթարիչն Աստուած՝ չէ մոռցած ու չի կրնար ալ մոռնալ այն հարստահարելոց ցաւն ու հառաչանքները.... ինքն իր մարդասէր գըթութեամբ կը տեսնէ այս մեծեղեան անօրէնութիւններն ու կը համբերէ... Համբերէ դու ալ, ո՛վ ընկճեալդ, իրեն պէս համբերէ ու սիրով աշխատէ, վասն զի որչափ ալ աներկբայելի ճշմարտութիւն մ'է Աստուծոյ էութիւնը, նոյնպէս ալ անտարակուսելի է՝ որ պիտի գայ օր մը՝ որ ըստ իւրաքանչիւր գործոց հատուցումն պիտի ըլլայ մարդկանց։

Հէլմի առաւօտը ուրախ զուարթ ելաւ, ու առջի գործը իր կենդանի ապրանքներն աչքէ անցընելն եղաւ։

— Կինն ո՞ւր է, հարցուց Թովմասին։

Թովմաս՝ խոհեմութեան ինչ հարկաւոր բան ըլլալն աղէկ գիտնալով, պատշաճ չդատեց իր վրայ եղած սպառնալութիւններն ու կասկածները տիրոջը հաղորդելու, և միայն — Այս առաւօտ զինքը չտեսայ, պատասխանեց։

— Հը՛մ. չի կրնար ըլլալ որ գիշերուան միջոց դուրս ելած ըլլայ, վասն զի շոգենաւուն կեցած ամէն տեղուանքը՝ ուրիշի վստահիլ չկրնալով՝ կ'ելլէի ես անձամբ պահպանութիւն կ'ընէի։

Հէլլի մտախոհական կերպով մ'ըսաւ Թովմասին այս խօսքերս, բայց անիկայ պատասխան մ'ալ չառաւ։ Հէլլի նաւուն մէջ ամէն կողմը պտըտեցաւ, սենեակներուն, կապոցներուն տակն ու վրան, մէջն ու դուրսը նայեցաւ, մեքենաներուն, ծխահանին քով փնտռեց, բայց անօգուտ։

Բոլոր աշխատութիւնը պարապ ելած, եկաւ Թովմասին քով։

— Շիտակ ըսէ, ըսաւ Թովմասին, սուտ մի՛ ըսեր, դու պիտի գիտնաս, կինն ի՞նչ եղաւ. ես երէկ իրիկուն ժամը տասնին տեսայ որ հոս պառկեր էր. կէս գիշերուան ատեններն ալ նոյն տեղն էր, բայց առա–

ւոտեան ժամը չորսին ա՛լ չտեսայ զինքը. իսկ դու միշտ հոն պառկեր էիր, ի հարկէ բան մը պիտի գիտնաս։

— Ուրեմն, պարոն, պատասխանեց Թով-մաս, գիտցած ըլլաս որ առաւօտեան դէմ քովէս սև ստուեր մ'անցաւ. կէս քուն կէս արթուն՝ ականջիս ջուր ինկնալու ձայն մ'ե-կաւ. այս ձայնէն արթընցայ բոլորովին, ու տեսայ որ կինն իր տեղը չէր. գիտցածս այսչափ է։

Գերեվաճառը ոչ զարմացաւ և ոչ ալ ցա-ւեցաւ... ասիկէ ա՛լ աւելի սոսկալի դիպուած-ներ լսեր ու տեսեր էր, անոր համար վար-ժեր էր իր գրած սիրտը։ Մահուան ներ-կայութիւնն իրեն վրայ սարսափ մ'ալ չէին բերած, և իրեն կենաց մէջ այսպիսի բաներ շատ եկեր էին գլխուն։ Սկսաւ հայհոյել ու բարկանալ, և մէկ կողմանէ ալ ափսոսալ՝ որ եթէ մէկ քանի այսպիսի դիպուածներ ալ գլխուն գալու ըլլան՝ բացը պիտի ելլէ։

Ուրիշ հնարք ու ճար չունէր. վասն զի Լուչիան այնպիսի երկիր մ'անցեր էր՝ որ յաւիտեան փախստականները ետ չի տար։

Ասով գերեվաճառն յուսահատած՝ հա-շուեգիրքը բացաւ, ու կորուստներուն մէջ գրեց նաև այս հոգեղէն ու մարմնեղէն ա-պրանքին կորսուիլն ալ։

# ԳԼՈՒԽ ԺԳ.

## Գուշաքեր Գաղթականի մը տունը.

Հիմայ խաղաղական տեսարան մը կը բացուի առջևնիս ։ Եկէք մտնենք մեծկակ խոհանոց մը, որուն մաքրութեանը խօսք չկայ. պատերը վայելուչ նկարուած, գետինն ալ գեղնորակ աղիւսէ՝ բնաւ փոշի չկայ վըրան ։ Կրակարանները մաքուր ու երկաթները փայլեցուցած. պատին վրայ ալ զանազան մեծութեամբ պղնձեղէն անօթներ շարած, որոնց փայլունութիւնը՝ մարդուս ախորժակը կը բանայ. խոհանոցին չորս անկիւնն ալ քանի մը հին՝ բայց հաստատուն՝ մեծ ու պզտիկ աթոռներ դրած էին, որոնցմէ մէկուն վրայ լռիկ մնջիկ նստած՝ կար կ՚ընէր Ելիզա՝ մեր հին բարեկամուհին ։

Խեղճը հալած մաշած՝ Քէնդըրքիէն ելլելէն վերջը երթալով աւելի նիհարցեր էր. երեսին վրայ ալ խոր տրտմութիւն մը կը տեսնուէր ։ Բազմաթիւ վիշտերու մէջ ինկնալով ու ծեծուելով՝ աւելի արիացեր ու նեղութեանց համբերելու վարժեր էր ։ Եր-

բեմն երբեմն աչուըները վեր կը վերցնէր և իր պզտի Հենրիկին խաղերը կը դիտէր, որ Թիթեռնիկի պէս այնտեղ մօրը չորս դին կը Թռչըտէր։

Ելիզային քով ալ յիսունըհինգ վաթսուն տարեկան խաթուն մը նստեր էր, ու մաքուր պղնձէ ամանի մը մէջ չորցուցած դեղձեր կը շարէր։ Գլխի ճերմակ պատկը, կուրծքը դրած բամբակէ սպիտակ Թաշկինակը, և վրայի հագուստը բաւականապէս կը ցուցընէին Թէ ինչ պաշտօնունքի կը վերաբերէր։ Աւրիկայ Գուտքեբուհի մ'էր. դէմքը կլոր ու կարմրորակ, ան ու անդ ճերմակ ինկած մազերը ճակտին վրայէն ժողված, ուր պարզութեան հետ մէկտեղ խաղաղութիւն ու մարդասիրութիւն մը նկարուած կը տեսնուէին։

Այս խաթունս կ'ըսուէր Հաքէլ Հէ՛լեաէյ։

— Վերջապէս ուրեմն, Ելիզա, ըսաւ, կը մտածես Գանատա անցնելու, հէ՞։

— Հրամեր ես, խաթուն, պատասխանեց Ելիզա, պէտք է որ ճամբան առաջ տանիմ, հոս կենալու սիրտ չեմ ըներ։

— Հոն երթալու ըլլաս՝ ինչ պիտի ընես. աս ալ պէտք է մտածել, աղջիկս։

Ելիզային ձեռուըններր կը դողդղային, աչուըններէն ալ վազած արցունքը ձեռքի կարը կը թրջէր, բայց պատասխան տուաւ.

— Ձեռքէս եկածը կ՚ընեմ, յուսամ թէ պարապ չեմ մնար։

— Հա, աղջի՛կս, քու տանդ մէջս՝ ուզածիդ չափ կրնաս կենալ, ըսաւ Հռաքէլ։

— Շնորհակալ եմ, խաթուն, բայց գիշերը քունս չի տանիր, կրկնեց Ելիզա՝ իր Հենրիկը ցուցընելով, կարելի բան չէ որ օրրան հանգիստ ըլլայ հոս. մէկալ գիշեր երազիս մէջ նորէն այն մարդը տեսայ որ տղաս կ՚ուզէր տանիլ, ըսաւ սարսելով։

— Խե՛ղճ աղջիկ, ըսաւ Հռաքէլ՝ արտասուքը սրբելով, պէտք չէ որ այդչափ վախնաս. Աստուած ուզեր է՝ որ մեր գեղին մէջէն գերի մ՚ալ ձեռք չինկնայ, յուսանք թէ դուն ալ ձեռք չես իյնար։

Նոյն միջոցին դուռը բացուեցաւ և կարճահասակ ու գիրուկ կնիկ մը ներս մտաւ, որ բոլորովին Հռաքէլին պէս հագուեր էր։

— Հօ՛ւթ Մաէյմէն, կանչեց Հռաքէլ՝ եկողին դիմացը վազելով ու ձեռքը սեղմելով, ի՞նչպէս ես, բարի՛ եկար։

— Բարի տեսանք, պատասխանեց կնիկը, շատ աղէկ եմ, շնորհակալ եմ, ու գլխի պզտի գլխարկը հանեց ու նստաւ։

— Հո՛ւմ, կրկնեց Հռաքէլ, աստիկայ Ելիզա Հարրիսն է, ան ալ իրեն տղան է, որոնց համար հետդ խօսեցայ։

— Շատ ուրախ եմ զքեզ տեսնելուս վրայ՝ պատասխանեց կնիկը՝ Ելիզային ձեռքը սեղմելով. ա՛ս է տղադ. ես անոր կտոր մը կարկանդակ բերի, ըսաւ ու Հենրիկին ձեռքը քանի մը կտոր կարկանդակ դրաւ։

— Քու տղադ ո՛ւր է, Հո՛ւմ, հարցուց Հռաքէլ։

— Քիչ մ'առեննէն կու գայ, պատասխանեց Հում. աղջիկդ Մարիամը՝ ներս մտնելու առենս գրկէս առաւ վեր տարաւ։

Այս խօսքիս Մարիամ տղան գիրկը ներս մտաւ։ Հռաքէլ մէկէն վազեց և Մարիամին գրկէն առաւ տղան, ու — Այս ինչ աշխոյժ ու կայտառ է՝ ըսելով՝ կը պագնէր ու կը գգուէր. այս ո՞րչափ մեծցեր է, կ'ըսէր։

— Իրաւ շատ մեծցեր է, ըսաւ Հում, ու տղուն գլխարկն ու վրայի վերարկուն հանելով գետին դրաւ զանիկայ, ու ինքն ալ աթոռի մը վրայ նստած՝ սկսաւ շուտ շուտ գուլպայ հիւսել։

— Խալկինը կրակին վրայ դիր, ըսաւ Հռաքէլ աղջկանը։

Մարիամ խալկինին մէջ քիչ մը ջուր

լեցուց ու կրակին վրայ դրաւ։ Պղնձէ ա-նօթին մէջը շարած չոր դեղձերն ալ դնել տուաւ Հռաքէլ, ուր քիչ մ'ատենէն սկսան եփիլ ու ի պատիւ հիւրերուն ախորժահամ անուշահոտութիւն մ'արձակել։ Հռաքէլ դի-մացը գոգնոց մը կապեց ու սկսաւ պաքսի-մատ շինել։

— Աքիգիա Բեդէրս խաթունն ի՞նչպէս է, հարցուց Հռաքէլ։

— Աղէկ է, ըսաւ Հռութ, դեռ այս ա-ռաւօտ այցելութեան գնացի իրեն, անկո-ղինը շտկեցի ու խուցն ալ քիչ մը կարգի դրի։ Լիա Հայլն ալ այս կէսօր անոր քով գնաց, քանի մ'օրուան համար հաց ու կե-րակուր եփեց։ Այս իրիկուն նորէն պիտի երթամ։

— Ես վաղը պիտի երթամ, ըսաւ Հռա-քէլ. ճերմակեղէններն ալ կը նայիմ։

— Լաւ կ'ընես, ըսաւ Հռութ։ Կարծեմ Աննա Սպէնսլաւն ալ հիւանդ է. էրիկս Յովհաննէսն այս գիշեր քովն էր. վաղը ես ալ պիտի երթամ։

— Թէ որ դու շատ զբաղած ես՝ Յով-հաննէսը կերակուրը հոս կրնայ ուտել։

— Շնորհակալ եմ, Հռաքէլ, տեսնենք։ Ահաւասիկ Սիմէոնն ալ եկաւ։

Մէյ մ'ալ յանկարծ Հռաքելի երիկը Սի-մէոն Հէ՛լիտէյ ներս մտաւ։ Ասիկայ բար-ձրահասակ ուժով մարդ մ'էր. հաստ չու-խայէ հագուստ մը հագեր էր, գլուխն ալ լայն եզերքներով գլխարկ մը։

— Ի՞նչպէս ես Հռութ, ըսաւ՝ ու անոր փափուկ ձեռուըները սեղմեց. Յովհաննէսն ի՞նչպէս է։

— Ամէնքն ալ աղէկ են, պատասխա-նեց Հռութ զուարթութեամբ։

— Ի՞նչ նոր լուր ունիս, հայր, հարցուց անգլիէն Հռաքէլ, պաքսիմատները փուռը դնելով։

— Բան չկայ, պատասխանեց Սիմէոն ձեռքերը լուալով. միայն գրացինիս Պետրոս Սանելպինսըն ըսաւ ինծի որ այս իրիկուն քանի մը բարեկամներովը հոս պիտի գայ։

— Իրա՛ւ կ'ըսես, պատասխանեց Հռա-քէլ զարմանալով մը, ու աչքին ծայրովը Ելիզային երեսը նայեցաւ։

— Զըսի՞ր դու ինծի, ներս գալով Սի-մէոն՝ հարցուց Ելիզային, որ դուն Հարրիս կ'ըսուիս։

Սիմէոն ու Հռաքէլ մէկմէկու աչք ըրին, իսկ Ելիզան այս յանկարծական հարցմուն-քին վրայ զարմանալով մը ու այլայլած՝

կէս բերնով – Հրամմեր ես, ըսաւ: – Վասն զի կը վախէր որ չըլլայ թէ իր փախստեանը համար ծանուցում մը հանուած ըլլայ:

— Մա՛յրիկ, եկուր քեզի երկու խօսք ունիմ ըսելիք, ըսաւ Սիմէոն Հոպքէլին, որ ալիւրոտած ձեռուըները կը մաքրէր, ու երկուքը մէկէն խոհանոցէն դուրս ելան:

— Ի՞նչ բան կայ, հայր, հարցուց դուրս ելլելէն վերջը Հոպքէլ:

— Այդ կնկան էրիկը այս կողմերս է, պատասխանեց Սիմէոն. այս իրիկուն հոս պիտի գայ:

— Ստոյգ գիտե՞ս, հայր, ըսաւ Հոպքէլ ուրախանալով:

— Ամենաստոյգ գիտեմ. երէկ Պետրոսը կառքով քալելու ելած ըլլալով՝ ճեպընթացին կայարանին դիմաց պառաւ մը ու երկու հատ ալ երիտասարդ տեսեր է, որոնցմէ մէկուն անունը Գէորգ Հարրիս է եղեր. Եւ ինչ որ վրան կը պատմէ՝ ատոր էրիկը պիտի ըլլայ, աչքաբաց ու գեղեցիկ մարդ մ'է կ'ըսէ. հիմայ մէկէն իրեն ըսե՞նք արդեօք:

— Չէ, պատասխանեց Հոպքէլ, առաջ Հումֆրին ըսենք. ան ըսելով մէկէն Հութը դուրս կանչեց:

— Կը հաւատա՞ս, ըսաւ Հաաքէլ Հաուլթին, հայր Սիմէոնը կ՚ըսէ թէ այս իրիկուան եկողներուն հետ մէկտեղ Ելիզային էրիկն ալ կայ եղեր։

Ա՜լ Հաուլթին ուրախութիւնը ո՞վ կրնայ պատմել. որուն խնդութենէն ձեռուըները վերցընելով անանկ մը ցատքեց՝ որ գլխանոցէն երկու գանգուր՝ վզի ճերմակ թաշկինակին վրայ դուրս ինկան։

— Կամա՛ց, սիրելի, ըսաւ Հաաքէլ. ի՞նչ կ՚ըսես, հիմայ մէկէն իմացընե՞նք իրեն։

— Ի հարկէ հիմայ մէկէ՛ն իմացընելու է, պատասխանեց Հաուլթ. երևակայէ թէ ես իրեն տեղը ըլլայի, ի՛նչպէս չէի ուրախանար։

— Հա՛ուլթ, խելքդ միտքդ ուրիշի բարիք ընել է, ըսաւ Սիմէոն խանդաղանօք։

— Ինչո՞ւ համար աշխարհք եկեր ենք. թէ որ ես էրիկս ու աղաքս չսիրէի՝ չէի կրնար Ելիզային զգացմունքն երևակայել։ Գնա իմացուր իրեն, ըսաւ Հաուլթ՝ Հաաքէլին ձեռքէն բռնելով. պառկելու խուցդ տար զինքը. ես իրիկուան կերակուր կը պատրաստեմ։

Հաաքէլ խոհանոցը մտաւ, ու Ելիզային

— Հետս եկուր, ըսաւ. քեզի ըսելու բան մ՚ունիմ։

Ելիզային գոյնը նետեց ու դողալով սը-զուն վրայ սկսաւ նայիլ։

— Մի՛ վախեր, բան չկայ, սիրտդ հանդարտ բռնէ, պատասխանեց Հռութ՝ քովը վազելով ու ձեռքը սեղմելով. ուրախական լուրեր պիտի տանք քեզի. ներս մտիր, Ելիզա, մի՛ վախեր, ըսաւ ու խեղճը խոհանոցին քովը խուց մը մտցուց։

Երբոր Ելիզան խուցը մտաւ ու դուռը վրայէն գոցուեցաւ, Հռութ Հէնրիկին քով վազեց, գիրկն առաւ ու սկսաւ պագնել. — Գիտես, ըսաւ, այսօր հայրդ պիտի տեսնես. կը ճանչնա՞ս զինքը, հիմայ կու գայ հայրդ։ — Տղան աչուըները պատըռտելով զարմացած երեսը կը նայէր։

Նոյն միջոցին անդին Հռաքէլ Հէ՛լիաէյ Ելիզային ձեռքէն բռնած — Աստուած ողորմեցաւ քեզի, Ելիզա, կ՚ըսէր, էրիկդ ստրկութեան տնէն փախեր է։

Այս յանկարծական լուրին վրայ Ելիզային արիւնը գլուխը զարկաւ ու դէպ ի սիրտը վազեց. գոյնը նետեց այլայլած ու վրան ինկաւ։

— Սիրտդ ամուր բռնէ, աղջիկս, կրկնեց Հռաքէլ՝ ձեռքը անոր գլխուն վրայ դնելով, իր բարեկամներուն հետն է, ու այս իրիկուն հոս պիտի գան։

— Այս իրիկուն... ա՛յս իրիկուն, հա-ռաչեց խռոված Ելիզա. որա՛ն այլայլութե-նէն ըսածը չէր գիտեր, ինքզինքը կորսըն-ցուց ու մարեցաւ ինկաւ։ Երբոր արթըն-ցաւ՝ ինքզինքն անկողնոյ մէջ պառկած գը-տաւ, ու Հռութն ալ քովը կեցած՝ քափրա-խառն օղիով ձեռուըները կը շփէր։

Իրեն այնպէս կու գար թէ երկայն ա-տեն ծանր բեռ մը վերուցեր է, ու հիմայ անկէ թեթեւցած՝ ախորժական յոգնածութիւն մը կը զգար։ Ջղերը՝ որ փախչելու օրէն ի վեր կարգէ դուրս պրկուեր էին, քիչ մը հանգչեցան, ու վրան հանգստութիւն մը ու զուարթութիւն մը եկեր էր։ Թէպէտև ա-չուըները բաց էին, բայց խաղաղական ա-նըրջոյ մը պէս կը տեսնէր քովը եկող գնա-ցողներուն շարժմունքները. դռնէն կը տես-նէր որ քովի խուցը սեղան են դրեր, վրան ճերմակ ծածկոց մը. թէյամանին զուար-թագին եռացումը կը լսէր. կը տեսնէր որ Հռութ կ'երթար կու գար՝ ձեռքը կարկան-դակներու և շաքարեղէններու պնակներով, և ամէն երթալուն գալուն՝ Հենրիկին ձեռքն ալ կարկանդակ մը կամ շաքարեղէն մը կու տար, կամ թէ տղուն երեսը կը շոյէր ու մազերը կը շակէր։ Երբեմն երբեմն ալ

Հռաքէլ անկողնոյն քով կու գար, բարձր կը շտկէր, վերմակը կը յարդարէր, և մայրենի գթով Ելիզային վրայ կը նայէր: Մէկ միջոցին Հռութին էրիկը Յովհաննէս Սաէգմէն ալ եկաւ. Հռութ դիմացը վազեց, կամացուկ ձայնով հետը խօսեցաւ, մատովը Ելիզային խուցը ցուցընելով: Սեղան նըստան ամէնքը թէյ խմելու. Հենրիկն ալ Հըռաքէլին մայրենի խնամոցը տակ՝ բարձր աթոռի մը վրայ քովը նստեր էր: Խառնաձայն ականջը կը հասնէին անոնց փարատալով խօսակցութիւնը, թէյի գաւաթներուն ձայնը. ետքէն անուշ քուն մը մտաւ. խեղճը տղան գիրկը առած աստղերու լուսով փախած սոսկալի գիշերէն ետև այսպէս հանգիստ քուն չէր եղած:

Երազին մէջ գեղեցիկ երկիր մը կը տեսնէր, ծաղկալից դաշտերով, վազուկ ջրերով, հովանաւոր կղզեկներով. հոն տուն մը կար, զոր բերկրապատար սրտիւ՝ իմս է կ'ըսէր. տղան՝ երջանկութեան ու ազատութեան հասած՝ կը խաղար. էրկանը գալը կը լսէր. իրեն մօտենալը, իրեն պլլուիլը ու արցունքներով երեսը թրջելը կ'իմանար, մէյ մ'ալ արթընցաւ....: Տեսածներն անցողական. երազներ չէին....: Գիշերուան ժամերն առաջ

գնացեր էին. տղան քովը անուշ քուն կ'ըլլար, կանթեղին լոյսը հազիւ կը պլպլար. իսկ Գէորգ՝ ամուսնոյն անկողնոյն քովը նստած՝ ուրախութեան արցունքներ թափելով՝ գլուխը բարձին դրած՝ անշարժ կեցեր էր։

Երկրորդ առաւօտ տանը մէջ կարծես թէ Հարսնիքի ուրախութիւն կար. Հռաքէլ մայրը առաւօտանց կանուխ ելած՝ բոլոր տըղաքն ու աղջիկները քովը ժողոված, զորոնք երէկ ատեն չունեցանք ամէնքն ալ մեր սիրելի ընթերցողաց ներկայացընելու, թեւերը սոթթած՝ նախաճաշիկ պատրաստելու զբաղեր էր։ Գիտնալու է որ այս կողմերը նախաճաշիկ պատրաստելը թեթեւ բան մը չէ, անոր համար շատ հոգւոյ ձեռնտուութեան կարօտ է։ Յովհաննէս շուտ մը աղբիւրը վազեց պաղ ջուր բերաւ. Կարօլոս անուշեղէնի համար ալիւր կը մաղէր, Մարիամ խահուէ կ'աղար, Հռաքէլ ալ կ'երթար կու գար՝ ամէն բան կարգի կը դնէր։ Նոյն տանն անկիւն մը քաշուած՝ Սիմէոն հայրենին ալ շապկանց՝ հայլիի մը դիմաց մօրուքը կ'ածիլէր։ Խաղաղութիւնն ու միաբանութիւնը մեծ խոհանոցին մէջ տիրեր էին. դանակներն ու պատառաքաղները մաքուր

սեղանին վրայ շարուած, կերակրեղէններն եփուած պատրաստուած էին, հրաւիրեալները միայն կը պակսէին. անոնք ալ մէկիկ մէկիկ խաղաղութեամբ իրարու հետ սիրալիր խօսակցութիւններ ընելով՝ եկան ժողովեցան։ Երբոր Գէորգը, Եղիզան ու պզտի Հենրիկն ալ պառկելու խուցէն ելան՝ ամէնքը սիրով վրանին թափեցան և չէին գիտեր ինչ ընդունելութիւն ընելնին։

Ամէնքը մէկտեղ նախաճաշիկի նստան, բաց ի Մարիամէն, որ ոտքի վրայ կեցած՝ եփուած կերակուրները հետզհետէ սեղանին վրայ կը դնէր։ Հազիւ թէ այսպիսի երջանիկ օր չէր ունեցած իր կենաց մէջ. այնչափ ամէն մանր բանի ալ հոգ, այնչափ խնամք վրան չէր տեսնուած. խահուէի պնակներն անգամ տալու ժամանակը մայրական գութ մը կը ցուցընէր։

Այս առաջին անգամն էր՝ որ Գէորգ ծերմակներու հետ իբրև հաւասարակից անոնց՝ սեղանը նստեր էր. անոր համար սկզբան քիչ մը քաշուեցաւ ու շփոթեցաւ. բայց հիւրընկալուաց ցուցած մտերմութիւնը տեսնելով՝ շուտ մը փարատեցաւ իրեն շփոթութիւնը։ Այն ատեն սկսաւ տան մը ու ընտանեաց գաղափարը մտքին մէջ տպաւո-

րուիլ, ու Աստուծոյ նախախնամութիւնը ու հաւատոյ սկզբունքները նոյն ատեն սրտին մէջ բուսնիլ սկսան. իրեն անմարդաւէր բը-նաւորութիւնը կակղցաւ, մտքին տարակոյս-ները ցրուեցան, յուսահատութիւնն անցաւ, և տեսնելով այս աւետարանական սէրն ու խաղաղութիւնը՝ փարատեցաւ մտքէն հեթա-նոսական ոգիութեան խաւարը։

— Հայր, ըսաւ Կարոլոս՝ Սիմէոնի պզտի տղան, թէ որ վրադ դատաստան բանան ի՞նչ պիտի ընես։

— Պահանջուած տուգանքը կը վճարեմ, պատասխանեց Սիմէոն հայրը հանդարտու-թեամբ։

— Թէ որ բա՞նտ ալ ուզեն զքեզ դնել։

— Դու մօրդ հետ չե՞ս կրնար տունը պարձնել։

— Մօրս ձեռքէն ամէն բան կու գայ. բայց ամօթ չէ՞ որ մեր երկրին մէջ այնպի-սի օրէնքներ գտնուին։

— Մեզի գրուած օրէնքներուն վրայ գէշ պէտք չէ խօսինք, Կարոլոս, պատասխանեց Սիմէոն հայրը ծանրութեամբ մը։ Աստուած մեզի ամէն երկրաւոր բարիք կը պարգևէ, որպէս զի արդարութեան ու ողորմութեան գործերը պակաս չընենք. բայց թէ որ աէ-

րութիւնը այս մեր ըրած բարեգործութեան համար վրանիս տուգանք դնէ, պէտք է որ սիրով համբերենք։

— Բայց ես, վրայ բերաւ Կարոլոս տըղան, կ'ատեմ բոլորովին գերի ունեցողները։

— Զիս կը զարմացընես, տղաս, պատասխանեց Սիմէոն հայրը. մայրդ այդպիսի բաներ չսորվեցուց քեզի։ Թ·է որ Աստուած դրանս դիմաց վշտացեալ գերի ունեցող մ'ալ ղրկէ՝ զերեաց ըրած բարիքս անոր ալ կ'ընեմ։

Կարոլոս կարմրցաւ քիչ մը, բայց մայրը ժիծաղելով,

— Բան չկայ, Կարոլոս, բան չկայ, ըսաւ. թէ որ դուն ալ մեծնաս մարդ ըլլաս՝ հօրդ պէս կը մտածես։

— Զըլլայ թէ, ըսաւ անդիէն Գէորգ՝ Սիմէոնին, մեր պատճառաւ վտանգի մէջ իյնկնաք։

— Մի վախեր, Գէորգ, պատասխանեց ծերը, մենք մեր ունեցած պարտքը կը կատարենք այս աշխարհիս վրայ. թէ որ բարեգործութիւն մ'ընելու համար զմեզ վտանգի մէջ ալ չդնէինք՝ մենք մեր անուանը արժանի չէինք ըլլար։

— Բայց ինծի համար չեմ ուզեր որ դուք վնաս մը քաշէք։

— Մի վախեր, բարեկամ, վասն զի այս մեր ըրածը քեզի համար չէ՝ այլ Աստուծոյ ու բոլոր մարդկութեան համար է։ Բոլոր օրը այսօր հանգիստ հոս կեցիր. այս իրիկուն մեր կառքը զքեզ ու քեզի հետ եղողները ապահով տեղ մը կը տանի կը ձգէ։ Պէտք չէ տնտընալ, ետեւէդ ինկնողները հարկաւ քիչ ատենէն հոս ալ կը հասնին։

— Թէ որ այսպիսի վտանգ կայ՝ հիմակուընէ կանուխը չկայ. ինչո՞ւ համար ինչուան իրիկուն սպասենք։

— Հոս օրուան մէջ ձեզի վտանգ մը հասնելու վախ չկայ. բոլոր այս գաղթականները քեզի բարեկամ կը գտնես, սիրելի, ամէնքն ալ վրադ աչք կ՚ունենան. իսկ գիշերանց ճամբայ ընելն աւելի ապահով ու հանգիստ կ՚ըլլայ։



# ԳԼՈՒԽ ԺԴ.

## Վարդուհի.

Միսիսիպի՜... Շատոպրիանի նկարագրած բնութեան ծաղկեալ զարմանալեացն ու անկոխ միայնութեան եզերքները ի՜նչպէս փոխուեր են հիմայ, ու նոր կերպարանք մ՚առեր են...։

Այն հրաշալի ափունքներն, այն անբընակ անտառաներն՝ ի՜նչպէս շուտ մը բազմամարդ աշխարհք մը դարձեր են, ոչ ինչ ընդհատ հիանալի և վսեմ քան զառաջինը։ Չկայ ուրիշ գետ մ՚ալ որ իրեն պէս այնչափ ճոխութիւն թափէ Ովկիանոսին մէջ, վասն զի արևադարձներէն սկսեալ մինչուան բևեռները եղած բերքերը՝ առատաբար կը բաշխէ այն երկիրներուն՝ որոնց մէջէն կ՚անցնի։ Այն պղտոր, սրընթաց, փրփրադէզ ջըրերն՝ այն կողմի բնակչաց գործունէութեանն ու աչքաբացութեան հաւատարիմ պատկեր են։ Երանի՜ թէ այսպիսի մէկ բարերար գետ մը իր ալեացը վրայ չկրէր մարդկեղէն ապրանքներով բեռնաւորուած

նաւեր, որոնց մէջէն հարստահարելոց և ընկ-ճելոց հառաչանքներն ու պառն. գանգատներն յերկինս ի վեր առ Անծանօթ¹ Աստուած մը կը վերանան... Անծանօթ անտեսանելի Աստուած մը, որ պիտի գայ օր մը՝ իր արդարութեամբը վերջ տալու այս աշխարհիս վրայի թշուառութեանց։

Արևը մանելու վրայ էր. իր շառագոյն ճառագայթները ծովանման գետին վրայ կը ծածանէին. շաքարի պողպողջուն եղէգները և ախրազգեստ նոճիի ծառերուն գագաթները երեկոյեան մեղմիկ հովմէն սասանելով՝ կարծես թէ վերջին բարև կու տային մարը մտնող արևուն։

Այս խաղաղ ջրին վրայէն բեռնաւորեալ շոգենաւ մը՝ վերջին ատտիճանի արագութեամբ սահելով, ջրերը փրփրացընելով՝ կ՚անցնէր կ՚երթար։

Հէլի՝ Թոմմասին հեզ ու հանդարտ կերպերէն՝ կամաց կամաց իր առջի խստութիւններէն սկսաւ ետ կենալ. առաջ՛որ բոլոր օրը աչքը վրան էր, ու գիշերն ալ՝ ապահով ըլլալու համար՝ անոր ձեռքն ու ոտքը շղթաներով կը կապէր, սկսաւ անկէ

1. Այսինքն՝ Մտօք անըմբռնելի։

վերջը ազատ թողուլ, որ առանց շղթաներու նաւուն մէջ ասդիս անդին քալէ։ Թովմասն ալ պարապ չէր կենար, ամենուն պիտոյքը կը հանէր, նաւաստիներուն կ՚օգնէր, այնպէս որ բոլոր նաւուն մէջինները վրան մեծ համարումն ստացան ու նաւաստիներն ալ զինքը մատով կը ցուցնէին ։ Իսկ երբոր աշխատութիւն չգտնէր՝ կ՚երթար ապրանքներուն մէջ անկիւն մը կը քաշուէր, ու ծնկանը վրայ Աւետարանը բացած՝ կամաց կամաց կը կարդար։

Դեռ Նոր–Օռլէան չհասած՝ քանի մը հարիւր մղոն միջոց Միսիսիբիին յատակը շըրջակայ երկիրներէն զգալի կերպով բարձր է, անոր համար ափանցը վրայ քսան ոտք բարձրութեամբ հաստ թումբեր շինուած են, որպէս զի ջուրը քովի երկիրները չկոխէ։

Գետին մէջէն շոգենաւով անցնելու ատեն՝ գետեզերքը հրաշալի տեսարան մ՚է. շոգենաւը աշտարակի մը պէս բարձրացած՝ վրայէն[1] բոլոր քովի երկիրները աչքին տակը

1. Մարդ մինչեւ աչքով չտեսնէ՝ չի կրնար մտքով երեւակայել Միսիսիբիի գետին վրայ ճամբորդութիւն ընող շոգենաւներուն մեծութիւնը, որ մէյմէկ շարժուն բերդեր կը նմանին։ Այս ահագին մեծութեամբ շոգենաւներն՝ երեք չորս կարգ ունին, մէջը ընդարձակ սըրահներով ու բազմաթիւ խցերով. Նաւուն վրայ շատ

կ՚ըլլան։ Թովման ալ կը տեսնէր այն գաղթականութեան երկիրները՝ ուր քիչ ատենէն ծանր աշխատութեանց տակը պիտի հեծէր․ Հեռուէն կը տեսնէր որ գերիները կը հերկէին և կ՚աշխատէին, ու անոնց տնակները նշմարելով՝ որ իրենց տիրոջը փառաւոր տուներուն քովերը կարգաւ մէկ շարքի վրայ շինուած էին, միտքը եկաւ Քէնթըքիի մէջ Շէլպիին տունն ու կալուածները, իր վարպետ տնակը, ու խորին հառաչանք մը հանեց սրտէն։...

Մտքովը աչքին դիմացը կու գային իր տղայութեան հասակին ընկերակիցները, իր կնիկը՝ որ մեծ գործունէութեամբ մը՝ երեկոյեան կերակուրը պատրաստելու զբաղեր էր․ իր տղոց անմեղ ու զուարճալի խաղերը, և պզտիկ աղջկանը՝ իրեն ծնկանը վրայ նստած՝ մանկական հտպտանքները։ Մէյ մ՚ալ յանկարծ աչուըները գետեզերքը դարձնելով՝ շաքարի եղէգներուն ու գործիքներուն ձայնը կարծես թէ կը կրկնէին ականջին՝ թէ «Անցան անդառնալի կերպով այն երջանիկ օրերը»։

անգամ բամպակի չորս հինգ հազար կապոց կը տանին․ ու երբոր այսպէս բեռնաւորուած ճամբայ կ՚ըլլեն՝ հեռուէն մէյմէկ լեռան պէս կ՚երևան։

Թէ որ քիչ մը կարդալ ու գրել գիտցող մը Թովմասին վիճակն ունենար, գոնէ թուղթ գրելով իր սրտին դառնութիւնը կը զովացընէր. եկուր նայէ որ Թովմաս գրել չէր գիտեր. չէր կրնար իրեն վիճակն ընտանեացը իմացընել. անոր համար իրեն և անոնց մէջ եղած բաժանման վիհը կերպով մը գոցելու յոյս ու ճար ալ չկար։ Կարդալ ալ մեծուստ սորված ըլլալով՝ հազիւ թէ դժուարութեամբ կը հանէր կարդացածը։ Աւետարան մ՚ունէր՝ որ միշտ հետը կը պտըտցընէր, ու հաւնած կտորներուն եզերքը գրչով նշաններ դրեր էր, այն կերպով ուզած տեղը դիւրութեամբ կը գտնէր, ու զանոնք կարդալով ու առատ արցունքներ թափելով՝ կը ջանար ինքզինքը բռնել, ու Աստուծով մխիթարուելով՝ սրտին խորունկ վէրքերուն դառն ցաւերը մեղմացընել։

Տուեհնաւուն մէջ ճամբորդներուն հետը Նոր-Օռլէանսի հարուստ ու ազնուական պարոն մ՚ալ կար, որ հինգ վեց տարուան շնորհալի աղջիկ մ՚ունէր, ու իր ազգականներէն խաթուն մ՚ալ հետը, իբրև աղջկանը դայեակ՝ միատեղ ճամբորդութիւն կ՚ընէր։ Թովմաս շատ անգամ այս պզտի աղջկան դիտելով մը կը նայէր, ու անոր աշխոյժ

բայց միանգամայն այն տարիքին մէջ ցուցած ծանր ու ազնուական կերպերը կ'ապշեցընէին զինքը։

Աղջիկն ալ իր վառվռուն ու ազնիւ վարմունքով մանկական գեղեցկութեան նախատիպ մ'էր. կլորիկ գլխին վրայէն՝ աղուոր և ոսկեգոյն մազերին ուսերուն վրայէն կախուած՝ շնորհալի դէմքին գեղեցկութիւնը կ'աւելցընէին, կապուտակ աչուըներուն անուշ նայուածքն ու ծիծաղկոտ կերպը՝ ամենուն սիրտը կը յափշտակէր։ Ամենեւին հանդարտ չէր կենար, միակերպ նաւուն մէջ ծայրէ ի ծայր կը պտըտէր, ամէն խեղճ ու ողորմելի մարդկանց քով կ'երթար, ամէն տեղ կը մտնէր ու կ'ելլէր. հայրը ու հետը դայեակն ալ չէին կրնար զինքը քիչ մ'ատեն քովերնին բռնել, հազիւ թէ քովերնին կ'երթար՝ մէյ մ'ալ յանկարծ թռչնոյ մը պէս կը ձըգէր կը հեռանար։

Թովմաս իր բնական դիւրազգած ու փափուկ երեւակայութեամբ՝ օրէ օր այս պզտի աղջկան վրայ իր սէրը կը շատցընէր. աչքին երկնային բան մը կ'երեւար, ու երբոր կը տեսնէր զանիկայ իր ճերմակ հագուստով բամբակի կապոցներուն վրայ ելած՝ հրեշտակ մը կը կարծէր որ երկինք թռչիլ կ'ուզէ։

Միակերպ այս աղջիկը Հէլլին գերիներուն քովերը կը պտըտէր. մշտացեալ կերպով կ'երթար ծանր շղթաներն վեր կը վերցընէր կը նայէր, ու մէյմ'ալ յանկարծ հառաչանք մ'ընելով աներևոյթ կ'ըլլար. շատ անգամ կ'երթար պտուղ, անուշեղէններ կը բերէր ու այն խեղճերուն կը բաժնէր։

Թովմաս շատ կը փափաքէր մէյմը խօսիլ այս աղջկան հետ, բայց չէր համարձակիր. տղաք շահելու ու ինքզինքն անոնց սիրցընելու աղէկ կերպեր ունէր. պզտի—մզտի աղայական խաղալիքներ ալ շինել գիտէր. ատոնք սկսաւ ցուցընել աղջըկան՝ որ հետն ընտանենայ, բայց անիկայ ռասնաիկ ամօթղածութեամբը սիրտ չէր ըներ ու կը քաշուէր Թովմասէն։ Բայց վերջապէս իր մանկական հետաքրքրութեան չդիմացաւ, սկսաւ Թովմասին քով մօտենալ և նայիլ, ու անկէ քանի մը շինած խաղալիքներէն ընծաներ առնել, որով մէջերնին շուտ մը բարեկամական կապ մը հաստատուեցաւ։

Օր մը Թովմաս ալ սիրտ ընելով՝ հարցուց աղջըկան. — Անունդ ի՞նչ է, օրիորդիկ։

— Վարդուհի Մէն—Քլէր, պատասխանեց աղջիկը. բայց հայրս ու ամէնքը Վարդիկ

կը կանչեն ինծի. հապա դուն ի՞նչ անուն ունիս։

— Իմ անունս Թովմաս է, բայց ինծի ալ Քէնդըքի նահանգին մէջ տղաք Աղբար Թովմաս կ'ըսէին։

— Աղէկ, ես ալ ուրեմն քեզի ասկէ ետև Աղբար Թովմաս պիտի կանչեմ, վասն զի կը սիրեմ զքեզ. իսկ հիմայ ո՞ւր պիտի երթաս ուրեմն, Աղբար Թովմաս։

— Չեմ գիտեր, օրիորդիկ։

— Չե՞ս գիտեր։

— Չէ. մէկու մը պիտի ծախուիմ, բայց չեմ գիտեր որո՛ւ։

— Հայրս կրնայ զքեզ գնել. թէ որ ըզքեզ գնելու ըլլայ՝ գիտնաս որ մեր քովը շատ երջանիկ կ'ըլլաս. այսօր կ'երթամ կ'աղաչեմ հօրս։

— Շնորհակալ եմ, ազնիւ օրիորդիկ։

Նոյն միջոցին մէջ մ'ալ շոգենաւը կեցաւ որ փայտ առնէ։ Վարդուհին հօրը ձայնը լսեց՝ որ զինքը կը կանչէր ու մէկէն դիմացը վազեց. Թովմասն ալ ելաւ փայտ կրողներուն օգնելու գնաց։

Աղջիկն և իր հայրը միատեղ շոգենաւուն եզերքին կռթնած՝ կեցեր նաւուն ափունքէն հեռանալը կը դիտէին. հազիւ թէ անիւները

շարժիլ սկսեր էին, մէյմ՚ալ խեղճ աղջիկը սաստիկ վար կախուելով՝ հաւասարակշռութիւնը կորսնցուց ու գետն ինկաւ։ Հօրը խելքը գլխէն գնացած, ինքզինք աղջկանը ետեւէն գետը նետելու վրայ էր, բայց ետեւէն հասան զինքը բռնեցին, վասն զի իր տեղը արդէն ուրիշ մը կտրճութեամբ ինքզինքը ջուրը նետեր էր։

Թովմաս՝ շոգենաւուն սատրին յարկը՝ նոյն տեղւոյն տակը կեցեր էր, ուր էր Վարգիկը. գետն ինկնալը տեսնելով՝ մէկէն կտրճութեամբ ինքզինքը ջուրը նետեց, ու երբոր աղջիկը ջրին վրայ ելաւ՝ բռնել գրկելն ու լողալով նաւուն վրայ հանելը մէկ ըրաւ։

Հայրն և բոլոր նաւուն մէջի մարդիկը աղջըկան վրայ հասան, տեսին մարած՝ վարը կանանց սրահը տարին, ու հոն ամէն խընամքով և զանազան հնարքներով արթընցուցին զինքն ու խելքը գլուխը բերին։

Երկրորդ օրը շոգենաւը Նոր—Օռլէանի դէմն հասաւ. ճամբորդները մեծ շարժման մէջ էին, ամէնքը պատրաստուելու հետ էին. ոմանք իրենց սնտուկը կը կղպէին, ոմանք ալ իրենց բեռները կը ժողվէին, ուրիշներն ալ կը զարդարուէին՝ որ շուտ մը դուրս ելլեն։ Մառանապետը, ծառայք ու նաւաստիները

բոլոր նաւը կը մաքրէին, երկաթները կը փայ-լեցընէին, որպէս զի յաղթանակաւ քաղաք մտնէ։ Թովմաս ալ նաւուն մէկ ծայրը՝ թե-ւերը կուրծքին վրայ ծալլած՝ կեցեր էր, ու աչքին ծայրով երբեմն երբեմն նաւուն մէկալ անկիւնը ժողովուած մարդկանց բազ-մութիւն մը կը դիտէր։ Վարդուհին ալ հոն՝ առջի օրուան հանդիպած դժբախտ դէպքին համար երեսին գոյնը նետած՝ բայց առող-ջութիւնը տեղը՝ իր հօրը քովը կեցեր էր։ Հայրն ալ բամբակի կտորցի մը կաթնած՝ ձեռքն ալ թիկնապանակ մ'ունէր. աչերն ու շնորհալի դիրք մը կը ցուցընէր. դէմքն ու կապոյտ աչուըները, ոսկեխառն մազերն՝ իր աղջկան դէմքին և աչուըներուն ու մազերուն կը նմանէին, բայց ատոնց աղջըկան գծա-գրութեան ուժն ու զօրութիւնն ունենալու։ Հոն կեցեր արհամարհանօք Հէլիին մտիկ կ'ընէր, որ ծախու հանած ապրանքին գե-ղեցիկ յատկութիւնները ճարտասանութեամբ մէկիկ մէկիկ անոր կը համրէր։

— Մէկ խօսքով, ըսաւ Սէն-Պիէր, ա-մէն քրիստոնէական ու բարոյական առաքի-նութիւններով զարդարուած կ'երեւայ այդ քու ապրանքդ. Ի՞նչ կ'ուզես նայինք։

— Տիրակը, պատասխանեց Հէլլի, հա-

զար երեք հարիւր տոլլարով հագիւ կրնամ տալ հրամանքիդ. պատուոյս վրայ կ'երդուընում որ հագիւ ծախքս կը հանեմ, ու բան մ'ալ վրան չեմ վաստըկեր։

— Խե՛ղճ մարդ, կրկնեց Սէն-Քլէր հեգնաբար, ուրեմն ինծի շնո՛րհք մ'ընելու համար այդ գնով՝ կ'ուզես տալ։

— Հրամեր ես, աեոայ որ աղջիկդ վըրան շատ սէր կապեր է։

— Այնպէս է, իրաւունք ունիս, աղջիկս շատ սէր կապեր է այդ գերուդոյ վրայ. տեսնենք ուրեմն՝ այս շնորհալի աղջըկան սիրոյն համար՝ քրիստոնէաբար ո՞րչափ վար կրնաս իջնել պահանջածէդ։

— Բայց քննէ տես մէյմը ի՜նչ անդամներ ունի, ձիու պէս ուժով է. ի՜նչ լայն կուրծք, ի՜նչ գլուխ է. սևի մը համար այդ գլուխը մեծ հանճարի նշան է. այդ մարդը ամէն տեսակ բանի կու գայ։ Թէ որ ըսածիս չափ ալ խելացի չըլլար՝ միայն մարմնոյն կազմուածքին համար աղէկ գին մը կ'արժէ. ո՜ւր թողունք որ խելացի ու հնարագէտ մարդ է. ինքը մինակ բոլոր իր տիրոջը տունը կը դարձընէր, իր յաջողութեանն ու ճարպիկութեանը խօսք չկայ։

— Ա՛լ գէշ, ա՛լ գէշ, պատասխանեց Սէն-

Փլէր հեզնաբար, իր շատ յաջողակութեանն համար աւելի քիչ կ'արժէ, որովհետեւ այդպիսիներուն աչքը՝ տէրերնին կողոպտելու ու փախչելու վրայ կ'ըլլայ. ուստի այս իր ճարպիկութեան համար գոնէ երկու հարիւր տոլլար վար պէտք է իջնես։

— Ընդհանրապէս իրաւ՞ է, պարոն, ըսածդ, բայց մէյ մ'ալ այդ մարդուն բարուցը նայելու է. թէ որ կ'ուզես՝ իր կրօնասիրութեանն ու առաքինի վարուց բարի վկայութիւնները հրամանքիդ ցուցընեմ. այնպէս՝ որ իր երկրին մէջ բոլոր ընկերները զինքն իբրեւ քարոզիչ կը պաշտէին։

— Օ՛, չըսե՞ս, զինքը վրաներէցս կրնամ ընել, պատասխանեց Սէն-Փլէր ծիծաղելով. նոր մտածութիւն մ'ալ այս է. բայց եկուր նայէ որ ես տանս մէջ կրօնք շատ չեմ բանեցըներ։

— Կատա՞կ կ'ընես, հրամանքդ, պարո՛ն։

— Ինչէ՞ն գիտես, կատակը ո՞րն է. չըսե՞ր ինծի թէ քարոզիչ մ'է, կ'ուզէի գիտնալ թէ արդեօք ո՞ր ժողովքին կամ ո՞ր ատեանին դիմացը քննուեր է. բայց վկայականները մէյմը տեսնեմ։

Գերեվաճառին համբերութիւնն ալ հատեր էր այս երկայն բարակ խօսակցութենէս,

բայց Սէն–Քլէրին կատակներէն քիչ մը սիրտ կ'առնուր թէ քսակը քիչ մը պիտի ցնծայ։ Հանդարտութեամբ եղող թղթապանակին հանեց գրպանէն, ու բամբակի կապոցներուն վրայ փռեց, և Թոմմասին վկայութիւններն սկսաւ փնտռել. Սէն–Քլէրն ալ դիմացը կեցած՝ հեգնօրէն անոր բրածները կը դիտէր։

Վարդուհին կապոցի մը վրայ ելաւ, ու հօրը վիզը պլլուեցաւ՝ ըսելով.

— Ի՞նչ գին ուզէ՝ տուր ու գնէ, հայրիկ. գիտեմ որ Թոմմասը գնելու համար բաւական ստակ ունիս քովդ։

— Ի՞նչ պիտի ընես, հոգիս, պատասխանեց հայրը. քեզի ի՞նչ բանի կու գայ. խաղալիք չէ որ անով զուարճանաս։

— Երջանիկ կ'ուզեմ ընել զինքը։

— Է՜, ատոր խօսք չունիմ, հոս իրաւունք ունիս, ըսաւ հայրը ծիծաղելով։

Հէլի՝ Պ. Շէլպիին տուած վկայականը Սէն–Քլէրի ձեռքը տուաւ. ան ալ մատնըներուն ծայրովը բռնելով՝ անտարբեր կերպով մէյմը աչքէ անցուց ու ըսաւ.

— Աղէկ գրուած է, կ'իմացուի որ կըրթուած պարոն մը գրեր է. բայց ատ մարդուն կրօնասիրութիւնն ինծի ի՞նչ բանի կու գայ։ Հիմայ աշխարհս կրօնասէր մարդիկ-

ներով լեցուեր է. այնչափ ալ կրօնք կայ՝ որ մարդ չի գիտեր թէ որո՛ւ վստահի. վասն զի ամէն մարդ իր ուզածը կրօնասիրութեան ծածկութով կը գոցէ. քանի մ'օր է՝ լրագիր չկարդալէս՝ չեմ գիտեր թէ կրօնքը քանի՞ եղեր է, գինն ի՛նչ է։ Բայց հիմայ նայինք սա քու սեւ կրօնքը քանի՞ տոլլար կ'արժէ[1]։

— Հրամանքդ, պարոն, թողութիւն կ'ընես, զիս կը կատակես, բայց իմ ըսածս ճշմարտութիւն է։ Իրաւ է՝ որ հիմայ կրօնասիրութեան պատրուակաւ շատ բաներ կ'ըլլան կրօնքի դէմ, ու հիմակուան կրօնասիրութիւնը պարզ աշխարհային քաղաքավարութիւն մը դարձեր է, որ կեղծաւորութենէ տարբերութիւն չունի. անոր համար այնպիսի կրօնքը թէ՛ ճերմակ մարդու մը վրայ ըլլայ և թէ՛ սեւի՝ արժէք մը չունի. բայց այս Թուլմասինն անոնց չի նմանիր. ասոր կրօնասիրութիւնը կարգէ դուրս բան մ'է. այս տեսակ հոգեսիրութիւնը գերիներուն հեզութիւն ու հանդարտութիւն մը կու

1. Բոլոր այդ խօսքերը գերեվաճառը ծիծաղ ընելու մտքով ըսած է, հեգնելով միանգամայն հիւսիսային Ամերիկացւոց օր օրուան վրայ նորանոր կրօնքներ հնարելը, որոնց թիւ չկայ։

տայ, ինչպէս որ այդ Թալմասին վրայ կը տեսնես, և ինչպէս առջի տէրն ալ կը վը-կայէ։

Ինչ և իցէ, Սէն-Քլէր գրպանէն խել մը թղթէ ստակ հանեց ու Հէլիի դիմացը համ-րեց՝ դրաւ, ըսելով — Որովհետև դու այս-չափ զովեստ խօսեցար, ես ալ կը հարկա-դրիմ քիչ մը սուղ գնով առնուլ այդ քու կրօնասէր ապրանքդ. ի՞նչ կ'ըսես։

— Ի՞նչ ըսեմ, պատասխանեց Հէլի, կար-ծեմ Աստուծոյ դիմաց ամէն մարդ իր գոր-ծերուն միայն պատասխանատու է, և ուրիշի աղէկութենէն իրեն օգուտ մը չկայ։

— Ափսոս որ գերւոյ մը կրօնաւորու-թեան համար այսչափ վճարելէն վերջը, մարդ չի կրնար անկէ օգուտ մը քաղել ան-դին աշխարհքը։ Ինչ որ է, հիմայ դուն համրէ սա դրամը, նայէ գո՞հ ես։

— Շատ աղէկ է, ըսաւ ուրախութեամբ Հէլի, ու գրպանէն եղջիւրէ հին կաղամար մը հանելով և շուտ մը դաշնագիրն ստո-րագրելով՝ Սէն Քլէրի ձեռքը տուաւ։

— Շատ կ'ուզէի, ըսաւ ծիծաղելով Սէն-Քլէր, որ իմ վրաս ալ գին մը կարէիր. նայէ պէմքս, նայէ թեւերս, նայէ ձեռուըներս ու ծնկուըներս, նայէ հասակս, կուրծքս,

որչափի՞ գին կ'արժեցընես.... ունեցած կըր-թութիւնս, գիտութիւնս, հանճարս, մարդա-վարութիւնս ու կրօնքս քանի՞ կը կարծես որ արժէ. վերջինը կարծեմ շատ տարբե-րութիւն պիտի չընէ գնոյս, վասն զի... Բայց, Վարդիկ, եկուր երթանք, ըսաւ, ա-ռանց պատասխանին սպասելու. և երբոր Թովմասին քովէն կ'անցնէին՝ կզակը բռնեց.
— Թովմաս, ըսաւ, մէյմը երեսս նայէ, տես թէ նոր տիրոջդ կը հաւնի՞ս:

Թովմաս գլուխը վեր վերցուց ու մէյմը երեսը նայեցաւ. և այն աշխոյժ ու ազնիւ կերպէն զմայլած՝ արցունքով աչուըները լե-ցուած՝ — Աստուա՛ծ օրհնէ զքեզ, տէր իմ, ըսաւ:

— Աստուա՛ծ տայ, պատասխանեց Սէն-Քլէր, չեմ տարակուսիր որ քու աղօթքովդ Աստուած կ'ողորմի ինծի. Թովմաս, հիմայ աս ըսէ ինծի, կառք քշել գիտե՞ս:

— Իմ պաշտօնս, տէր իմ, Պարոն Շէլ-պիին տունը կառավարութիւն էր:

— Շատ աղէկ, ուրեմն դուն իմ կառա-պանս պիտի ըլլաս, բայց այս պաշինքով որ շաբաթը մէկ անգամ պիտի գինովնաս:

Թովմաս այս խօսքիս վրայ զարմանա-լով, մանաւանդ թէ իրեն նախատինք հա-

մարելով, — Ես ամենեւին չեմ գինովնար, պատասխանեց։

— Ուրիշներն ալ այդպէս կ՚ըսեն, բայց գործը տեսնենք. թէ որ գինի քիչ խմես՝ ինծի ալ, քեզի ալ շահ է. ինչ և իցէ՝ յուսամ թէ ինծի աղէկ կը ծառայես։

— Մի՛ տարակուսիր, տէր իմ, պատասխանեց Թովմաս։

— Կը տեսնես, վրայ բերաւ Վարդիկ՝ Թովմասին, որ հօրմէս շատ գոհ պիտի ըլլաս։ Հայրս ամենուն հետ անուշութեամբ կը վարուի, ամենուն բարիքը կ՚ուզէ, բայց քիչ մը կատակ ընել կ՚ախորժի։

— Շնորհակալ եմ այս քու հօրդ վրայ տուած գովութեանդ, պատասխանեց խնդալով Սէն-Քլէր, ու կամաց կամաց պատրաստուեցաւ ցամաք ելլելու։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Թովմասին նոր տէրը.

Հիմայ որ մեր այս խոնարհ դիւցազին կենցաղավարութիւնը Սէն-Քլէրի կենցաղին հետ շատ վերաբերութիւն պիտի սկսի ու-

նենալ, անոր համար պէտք է որ երկու խօսքով Սէն-Բէլէրի ով ըլլալը պատմենք ընթերցողաց։

Օգոստինոս Սէն-Բէլէրի ընտանիքը բուն Գանատացի էին, բայց ինքը Լուիզիանա նահանգը ծնած էր. հայրը այն կողմի հարուստ կալուածատէրներէն մէկն էր. հօր եղբայրը, որ բարքով Օգոստինոսի հօրը շատ նման էր, Ուէրմընդ նահանգը հաստատուած էր, իսկ հայրը՝ Լուիզիանա։ Օգոստինոսի մայրը ազգաւ գաղղիացի բողոքականներէն կ'իջնէր, որ գաղթականութեան առջի տարիները Գաղղիայէն ելեր՝ այն կողմերը բնակեր էին։ Օգոստինոս ուրիշ եղբայր մ'ալ ունեցաւ, բայց ինքը բնութեամբ մօրն ելած ըլլալով՝ անոր պէս ալ փափուկ կազմուածք մ'ունէր. այն պատճառաւ հայրը զինքը պզտիկուց Ուէրմընդ նահանգը հօր եղբօրը քով ղրկեց, որ օդափոխութեամբ՝ հոնտեղի ցուրտ ու առողջարար կլիմայէն քիչ մը բնութիւնն ուժովնայ։

Օգոստինոս Սէն-Բէլէր պզտիկուց կարգէ դուրս զգայուն բնութիւն ունէր, որ աւելի կանանց կը վայլէ՝ քան էրիկ մարդկանց. սակայն ժամանակը վրայ գալով՝ քիչ շատ բնութեանն ոյժ առաւ, առանց կարող ըլ-

լալու փոխել զայն։ Առաջին կարգի հանճար մ'ունենալուն՝ միտքը գաղափարաց աշխարհին մէջ կը թափառէր, անոր համար ալ պաղ աչքով կը նայէր այս աշխարհիս բաներուն վրայ։ Հազիւ թէ ուսմունքը լմընցուցեր և ըսկըրոցէն ելեր էր՝ աշխարհիս մէջ ընդհանուր եղած երիտասարդաց անփորձ ու վտանգաւոր երևակայութեանց մէջ ինքն ալ բռնուեցաւ։ Իրեն ալ ժամանակին հասեր էր, այն ժամանակը՝ որ իւրաքանչիւրին համար մէյմէկ անգամ կը հնչուի. իրեն աստղն ալ հորիզոնին վրայ բարձրացեր էր, այն աստղը՝ որ շատ անգամ ընդունայն տեղը կը ծագի, բայց իրեն յիշատակը յաւիտեան մարդուս մաքէն չի ջնջուիր. Իրեն համար ալ այս աստղը ընդունայն տեղը ծագեր էր։ Պարզ խօսելով՝ հիւսիսային նահանգներուն մէկուն մէջ՝ տեսքով ու միանգամայն ազնիւ սրտով օրիորդի մը հետ ծանուցուեցաւ, ու անոր վրայ սէր կապեց, ու մինչև հարսնութիւնն ալ եղաւ. սակայն այսպիսի ուրախական յոյսերով՝ ելաւ հարաւային կողմերը հօրը տունը եկաւ՝ որ հարսանեաց հարկաւոր պատրաստութիւնները տեսնէ։ Բայց անկարելի է իրեն որսին ցաւը պատմել. երբոր հազիւ թէ հօրը տունը հասեր

էր՝ մէյմ՚ալ յանկարծ ետևէն՝ բոլոր իրեն առ նշանածը գրած թղթերն ետ եկան՝ Հարսնացուին խնամակալին թղթի մը հետ, որով կ՚իմացըներ թէ քիչ ատենէն այն օրիորդը ուրիշի մը հետ պիտի կարգուի։

Սրտին դառնութենէն՝ Սէն—Փլէր և ոչ պատասխան տուաւ թղթին, կամ մէկ կերպով մը պատճառն ուզեց հարցընել, մանաւանդ որ այսպիսի բան հարցընելն իրեն անձնական նախատինք կը դատէր. ուստի՝ ինչպէս որ աշխարհիս մէջ շատերուն հանդիպած է ու կը հանդիպի, ջանաց իր մաքէն դուրս հանել անոր սէրը. և ինքզինքն աշխարհիս յորձանաց մէջ նետեց։ Վրան հազիւ թէ տասնըհինգ օր անցաւ՝ ուրիշ մը հետը ճանչուորեցաւ, և քիչ ատենէն ամէն բան կարգի դնելով՝ հետը կարգուեցաւ։ Այս իրեն նոր հարսը շատ տեսքով էր, և վառվռուն սև աչուըներ ունէր. հետն ալ հարիւր հազար տոլլար օժիտ բերեր էր. որով բնականաբար ամէնքը երանի կու տային իրեն։

Սէն—Փլէր կարգուածին պէս՝ ելաւ Բռնշարդրէն լճին քովի գեղեցիկ ամարատունը գնաց, ու բարեկամներով մէկտեղ հոն բնակեցաւ։ Օր մը նամակ մ՚եկաւ իրեն, որուն երեսագրէն ճանչցաւ ուսկից գալը։

Ուրախ զուարթ ընկերութեան մը մէջ՝ խաղալու ու խնդալու հետ եղած ատեն՝ ձեռքն հասաւ այս նամակը, որով մէկէն Սէն–Քլէր այլայլեցաւ, երեսին գոյնը նետեց. և քանի մը վայրկենէն դուրս ելաւ՝ խուցն առանձնացաւ և բացաւ թուղթն ու կարդաց զայն, որ երանի թէ ձեռքն ալ հասած չըլլար։

Իր առաջին հարսնացուն այս թղթիս մէջ բոլոր իր վիշտերը կը նկարագրէր։ Խնամակալն իր տղուն հետ ուզելով զինքը կարգել՝ սկսեր էր սկզբան առ Սէն–Քլէր գրած թղթերն արգելուլ ու պահել, և անոր թըղթերն ալ իրեն չէր տար, որով մեծ տարակուսի մէջ ընկեր էր և սրտին ցաւէն հիւանդացեր էր. բայց վերջապէս իմանալով խնամակալին խարդախութիւնը՝ ծածուկ կերպով այս թուղթս կը ղրկէր, որուն մէջ կ՚աղաչէր ու կը պաղատէր և մեծ յուսով Սէն Քլէրէն մէկ պատասխանի մը կը սպասէր։ Սէն–Քլէր այս թուղթս կարդացածին պէս՝ տակն ու վրայ եղաւ, մանաւանդ տեսնելով անոր իր վրայ ցուցած երախտագիտութիւնն, անշէջ սէրն և շնորհակալութիւնները. բայց բանը բանէն անցած ըլլալով՝ նստաւ յետագայ տոմսակը գրեց։

Հասաւ ձեռքս բաղդդ, բայց շատ ուշ էր, որ ինծի գրուեցաւ՝ ամենուն հասանացի և զքեզ անհատանատարիս կարծեցի խոստանալեդ, ու բաղդորովին քեզմէ յոյս կարեցի. ով հի-մայ ես հարցուած եմ և անէն բան ըլլրե-ցած է: Մոռանանք մեկզմեկ. այս բանս միայն կրնանք ընել:

## ՕԳՈՍՏԻՆՈՍ

Այսպէս անցաւ Օգոստինոսի երեւակայա-կան ու խաբուսիկ կեանքը և դիմացը միայն իր էական կենաց մրճակը մնաց: Ճամբորդի մը կը նմանէր՝ որ ծովեզերքը կեցած՝ ար-ծաթափայլ կապուտակ ալիքը կը դիտէ, ո-րոնց վրայ ճերմակ առագաստներով նաւակ-ները կը ծփին. բայց քանի մը վայրկենէն՝ ալիքները կ՚իջնեն, ջուրը կը քաշուի, թիակ-ներուն պաշտօնակաւոր ձայնը կը լռէ, առա-գաստները կ՚անհետանան, և դիմացն ուրիշ բան չի մնար՝ բայց եթէ աւազ, անզգայ ու հոտած մակոյկ մը. որ մարդուս մտքէն այն ատենի երեւակայեալ գեղեցկութիւնները կը ջնջէ կը տանի:

Ընդհանրապէս վիպասանական պատմու-թեանց մէջ վշտահար սիրահարները վախ-ճանը մահուամբ կը լմնցնեն. բայց իրա-

կան կենաց մէջ չենք կրնար մեռնիլ՝ երբոր մեր սիրոյ առարկան սրտերնուս մէջ կը մեռնի ։ Պէտք է ուտել , խմել , հագուիլ , ժուռ գալ , այցելութեան երթալ , գնել , վաճառել , կարդալ , խօսիլ , և կենաց ուրիշ հարկաւոր պիտոյքները կատարել . Թէ և մեր բարոյական կեանքը բազմապատիկ վիշտերով ալ լեցուի՝ սակայն արտաքին կեանքն իր պիտոյքը կը պահանջէ ։ Օգոստինոսին ալ նոյն բանը պատահեցաւ . Թէ որ իր նոր հարսը կնոջ մը վայելուչ ազնիւ յատկութիւններն ունենար՝ սարսափոյս չկայ որ վըշտագնեալ կենաց վէրքերը շուտով կը գոցուէին . բայց եկուր տես որ էրկան ցաւերուն և ոչ հետքն անգամ կրցեր էր նշմարել . Մարիամ Սէն-Բըլէր բաց ի արտաքին տեսքէն , զոյգ մը վառվռուն սև աչուըններէն և հարիւր հազար տոլլարէ՝ ուրիշ բան չունէր . հիւանդագէն սիրտ մ'առողջացընելու գեղթափին ամենևին չունէր ։

Շատ անգամ Սէն-Բըլէր մահագոյն դէմքով բազմոցին վրայ կ'երկըննար գլխացաւի պատճառով , անգամ մ'ալ Մարիամ իրեն չնչին դեղ մ'ալ չըսաւ ։ Անգութութիւնն ու գլխու ցաւը շատ օրեր ու շատ շաբաթներ տևեցին . միայն օր մը Մարիամ ըսաւ՝ Թէ

ամենեւին զքեզ այսպէս վատառողջ չէի կարծեր, կ՚երեւայ թէ գլխու ցաւ ունիս. և թէ ինչ դժուար բան է իրեն համար՝ մինակ ընկերութեանց մէջ երևնալ, և ամուսան մը հարս՝ այսպէս առանց էրկան՝ այցելութեան երթալ։

Օգոստինոս ի սկըզբան տեսնելով կնոջ այս անկասկած կերպը՝ մաքէն կ՚ուրախանար, բայց երբոր առջի ամիսն անցաւ՝ սկըսաւ իր հաճոյքը փայփայուած ու շոյելով մեծցած մանկամարդու մը պատն ծանրութիւններն իմանալ։ Մարիամ ի բնէ սիրոյ կայծ մ՚ալ չունէր իր սրտին մէջ, և ոչ ալ զգածմունք. և թէ որ քիչ մ՚ալ ունէր՝ չափազանց ու անընտրող ինքնահաւանութեամբ ուրիշի յարգ չէր ճանչնար։ Պզտիկուց ի վեր շողոքորթներու ձեռք մեծցեր էր. իր կամքը միշտ առաջ տանիլ սովրեր էր, բայց թէ ուզածն իրաւացի՞ է արդեօք, և ոչ կասկած մը մաքէն կ՚անցնէր։ Հօրը մէկ հատիկն ըլլալով՝ բան չկար որ ուզէ ու հայրը իրեն ժխտէ. ծառաներն ալ՝ սիրոջ աչքը մտնելու համար՝ այս աղջկան չորս կողմն առած, գովեստ ու պատիւ չէր մնար որ իրեն չտային. ուստի այսպիսի սնապարծութեամբ մեծցած՝ երբոր աշխարհքիս մէջ ե-

ընալ սկսաւ՝ իր գեղեցկութեանն ու հարըստութեանը համար կը կարծէր թէ բոլոր աշխարհք ետևէն պիտի երթար. Սէն-Քլէրին հետ կարգուիլն ալ իբրև անոր շնորհք մ'ըրած կը համարէր մտքէն: Մեծ սխալ է կարծել թէ անսիրող կին մը՝ սիրուելու ալ փոյթ չըներ. մանաւանդ թէ չափէն ալ աւելի ուրիշներէն սէր կը պահանջէ. որչափ անսիրելի է՝ այնչափ սիրուիլ կ'ուզէ, և որչափ ինքնահաւան է՝ այնչափ ալ նախանձոտ է: Այս պատճառաւ երբոր Սէն-Քլէր կամաց կամաց աւելի յայտնի ըրաւ իր կընոջմէն պաղիլը՝ Մարիամ քար չմնաց որ չշարժէ. սկսաւ էրկանը դիմաց լալ, հառաչել, մեղադրել, բարկանալ, սպառնալ: Ջանաց Սէն-Քլէր իր անուշ ու ներողամիտ բնութեամբ՝ հանդարտեցընել զինքը և ընծաներով ու շողոմանքներով սիրտն առնել, ու երբոր Մարիամ գեղեցիկ աղջիկ զաւակ մ'ալ բերաւ՝ Սէն-Քլէր քիչ մ'աւելի վրան զգացմունք ու գութ սկսաւ ունենալ:

Սէն-Քլէրի մայրն՝ իր ազնուական ու բարեկիրթ բնաւորութեամբ և խելքով՝ մեծ համարումն թողեր էր իր վրան. Սէն-Քլէր ալ կարգէ դուրս մայրը կը սիրէր, ուստի անոր յիշատակին համար աղջկան իր մօրը

անունը դրաւ։ Մարիամ տեսնելով իր էր-կանը՝ աղջկանը վրայ ցուցած հոգն ու խը-նամքը՝ սաստիկ նախանձ մը սկսաւ զգալ, ու չէր կրնար քաշել, կարծելով թէ իր վրայ ունենալիք խնամքը աղջկան վրայ կը ցու-ցընէր։ Աղջկան ծննդենէն վերջը՝ Մարիամ առողջութիւնը կորսնցուց. բնական և մը-տաւորական անգործ կեանքը, ձանձրոյթն ու տժգոհութիւնը, և ազաբերքէն պատճա-ռած ակարութիւններն՝ այն մանկահասակ գեղեցկութիւնը թառամեցուցին, և Մարիա-մը գեղնած ու չորցած կնիկ մը դարձու-ցին. խել մ'ալ երեւակայեալ հիւանդութիւն-ներ գլուխը ժողվելով՝ աշխարհիս վրայ ա-մենէն թշուառն ու ողորմելին կը կարծէր ինքզինքը։

Իրեն լռածին նայելով՝ ամէն տեսակ հի-ւանդութեան վրան կը կանուէր, բայց գըլ-խաւորը գլխի ցաւն էր, որ շաբաթն երեք անգամ կը բռնէր, և օրերով խցէն դուրս չէր ելլեր. անով տանը բոլոր հոգը ծառա-յից ձեռքը մնաց։ Սէն-Պլէր ալ մեծ խնամք ունէր իր մէկհատիկ մատաղ աղջկան վրայ. տեսնելով անոր փափուկ ու խնամոց կա-րօտ կազմուածքը և մօրն ալ անխնամողու-թիւնն ու անկարողութիւնը։ Ելաւ աղջկան

հետ մէկտեղ Ուէլմընդ նաւահանգը գնաց ու իր Օֆէլիա հօրեղբօր աղջիկը հետն առած՝ իր տունը բերաւ, որ զոնէ աղջկան ու տանը վրայ հոգ ու աչք ունենայ։ Ահա այս կնիկն էր որ տեսանք շոգենաւուն մէջ Մէն–Քլէրի ու Վարդուհիին հետ, որ Ուէլմընդէն Նոր–Օռլէան կը դառնային։

Եւ որովհետև գետ Նոր–Օռլէանի բարձր շէնքերուն ու զանգակատուններուն ծայրերը հազիւ կ'երևան, ուստի քանի՛ որ ժամանակ ունինք՝ ընթերցողաց ծանօթացընենք Օֆէլիան։

Ով որ Նոր–Անգղիոյ կողմերը պտըտեր է՝ տեսած պիտի ըլլայ այն կողմի գեղերուն մեծ տները, որոնց բակին մէջ խոտը կը բարձրանայ, և շաքարի ծառն ալ իր խիտ տերևներով՝ թանձր ստուեր մը կը թողու։ Տեսած պիտի ըլլայ նաև այնտեղի խաղաղութիւնն ու հանդարտութիւնն և ամէն բանի կարգաւորութիւնը. ցանկապատէն ցից մ'ալ կոտրած կամ ելած չէ, և կանաչագեղ գաւթին մէջ և ոչ յարդի մը շիւղ կը տեսնուի. պատուհաններուն տակն ալ եղրևանի ըսուած ծաղկաբեր թուփը տնկուած է։ Տունը մեծամեծ լուսաւոր խուցերու կը բաժնուի, ուր ամէն բան իր տեղն է, այնպէս որ մարդ

կարծէ թէ տան կահ կարասիքն ամենևին տեղերնէն շարժած չեն։ Ծառայք ալ հանդարտաքայլ ու կանոնաւորեալ կերպով իրենց պաշտօնը կը կատարեն, և իրենց առաջնորդ ունին տանը մէկ անկիւնը կախուած հին ժամացոյց մը։ Հասարակաց խուցը հին գրապարան մը կայ ապակապատ, ուր քովէքով շարուած կը տեսնուին Ռօլէնի Հնախօսութիւնը, Միլլըրի Դրախտ կորուսեալը, Պընայէնի Ուխտագնացութիւնը, Սգօթի Աստուածաշնչի համառօտութիւնը, և տանց նման ուրիշ խել մը յարգ ունեցող գրքեր։ Տանը մէջ ծառայ չ'երևար. տանտիկինը ձեան պէս ճերմակ գլխանոց մը դրած, ակնոցը քիթը՝ կէսօրէն վերջը աղջիկները գլուխը ժողված՝ կար կ'ընէ, կարծես թէ ամենևին ուրիշ գործ մը չունին։ Տան աշխատութիւններն առաւօտանց կը կատարեն և ժամը ինչուան կէսօրուան մէկը՝ ամէն աշխատութիւն մնացած կ'ըլլան։ Օրուան որ ժամուն ալ մարդ իրենց այցելութեան երթայ՝ միշտ զիրենք ընդունելութեան պատրաստ կը գտնէ. խոհանոցը մաքուր, կարծես թէ մարդ ոտք կոխած չէ. սեղանները, աթոռները, խոհանոցին անօթներն ու գործիները՝ իբրև թէ տեղերնէն շարժած չըլ-

լային. և սակայն հոն օրը չորս անգամ կերակուր կ'եփուի, պնակները կը լուացուին, կերակուր եփելու ամանները կը մաքրուին կը փայլեցուին, կարագ և պանիր կը շինուի: Բայց թէ ո՞ր ատեն և ի՞նչպէս՝ ասիկա գաղտնիք մ'է որ չի գիտցուիր:

Ահա Օփէլիան ալ քառասունըհինգ տարի այսպիսի խաղաղ տան մը մէջ անցուցեր էր իր օրերը, երբոր հօրեղբօր որդին զինքն ուզեց հետը տանելու: Բազմաթիւ ընտանեաց մ'առջինեկն էր, բայց իր հօրն ու մօրը աչքին դեռ տղայ կը կարծուէր. անոր համար երբոր իր հօրեղբօր որդւոյն հետ Նոր-Օռլէան երթալու ձայնը դուրս ելաւ, ամէնքը կը զարմանային: Ծերունի հայրը գրքարանէն հին աշխարհացոյց մը դուրս հանեց ու սկսաւ նայիլ թէ Նոր-Օռլէանի պէս հեռաւոր երկիր մը ո՞ր լայնութեան տակ կ'ինկնայ. և որպէս զի այն կողմի մարդկանց բարքն ու սովորութիւնները գիտնայ՝ սկսաւ այլ և այլ ճանապարհորդութիւններ խառնել: Խեղճ մայրն ալ այլայլած՝ երթալիք քաղաքին վրայ տեղեկութիւններ կը հարցընէր. կարծես թէ հեթանոսաց երկիր կամ Սանտուիչ կղզիները իր աղջիկը պիտի ղրկէր:

Տան–քահանան, բժիշկը, դերձակը շուտ մ'իմացան թէ Օֆէլիան Հօրեղբօրորդւոյն հետ Նոր–Օռլէան պիտի երթայ. բոլոր գեղն ալ սկսան այս բանին վրայ խօսիլ: Քահանան ջերեհանից կուսակից էր, կ'ըսէր թէ Ուէրմընդի բնակիչներէն մէկը հարաւային գաղթականներուն մէջ երթալով՝ զիրենք իրենց ծուռ կարծեացը մէջ հաստատել չէ՞ արդեօք: Իսկ բժիշկը, որ հակառակ կարծիքն ունէր, կ'ըսէր թէ Օֆէլիային Նոր–Օռլէան երթալովը՝ անոնք ալ կ'իմանան որ Ուէրմընդի բնակիչները բոլորովին իրենց հակառակ կարծիք չունին:

Երբոր Օֆէլիայի ճամբայ ելլելն որոշուեցաւ՝ տասնըհինգ օր բոլոր ծանօթներուն ու բարեկամներուն երթաս բարովի համար տներնին հրաւիրեցին զինքը. ամէնքը իր նոր ընելիք ճամբորդութեան, տեսնելիք տեղերուն վրայ կը խօսէին, ու իրեն մեծամեծ բարեմաղթութիւններ կ'ընէին: Սէն–Քլէր ալ յիսուն տոլլար տուեր էր՝ որ իրեն հարկաւոր եղած հագուստները գնէ. ինքն ալ Պոստընէն երկու մետաքսէ հագուստ և մէկ գլխարկ մը բերել տուեր էր: Կ'արժէ՞ր արդեօք այսչափ ծախք ընել. բոլոր գեղը սկսան այս բանին վրայ խօսիլ. ոմանք կ'ըսէին թէ ինչ կ'ըլ-

լայ եղեր այսպիսի պարագայի մէջ՝ մէկ անգամ՝ այսպիսի ծախք ընելը. ուրիշներն ալ կ՚ըսէին թէ լաւագոյն չէ՞ր արդեօք՝ որ փոխանակ վատնելու՝ այն դրամը քարոզչաց զրկուէր: Ամէնքն ալ կը զարմանային Օֆէլիային Նիւ-Եօրքէն բերել տուած հովանոցին վրայ, որուն նման այն կողմերը տեսնուած չէր. և մետաքսէ հագուստին վրայ՝ զոր առաջին հագնող ինքն եղաւ: Կ՚ըսէին թէ Թաշկինակ մ՚ալ ունի՝ եզերքն ասղնեգործ ժապաւինած և չորս անկիւնը բանած. բայց այս վերջին պարագային վրայ՝ ամենուն կարծիքը միակերպ չէր:

Օֆէլիան՝ ինչպէս որ հիմայ կը տեսնենք՝ շոգենաւուն մէջ սեւագոյն ճամբու հագուստ մը հագեր էր. հասակը բարձր, չորչրուկ ու նշանաւոր դէմք մ՚ունէր. սեւ ու դիտող աչուըները չորս դին կը պտըտցընէր, կարծես թէ սիրտը հանգիստ չէր ու բան մը փընտռէր կարգի դնելու:

Վարմունքը ծանր և ուժով, խօսուածքը քիչ, բայց բերնէն խօսք մը դիւրին չէր ինկնար. և բոլոր իր սովորութեանց մէջ կարգի կանոնի և ճշդութեան նախագաղափար մ՚էր: Ժամացոյցի մը պէս կանոնաւորեալ էր, շոգեշարժ մեքենայի մը պէս անփոփո-

խելքի, և իրեն բնաւորութեան հակառակ բնաւորութեանց վերջի աստիճանի արհամարհող։ Իրեն դիմացը ամենէն մեծ մեղքն էր թեթեւամտութիւնը. և երբոր մէկուն համար լսուէր թէ թեթեւամիտ է՝ ալ անիկայ իրեն աչքին ստակի մը յարգ չունէր։ Անոնք որ անգործ կեանք մը կ'անցընեն, անոնք որ ճիշդ չեն գիտեր թէ ըրածնին ինչ է, կամ անոնք որ գործ մ'ընելու համար շիտակ ճամբայ չեն բռներ, այնպիսիք իրեն աչքին դիմացը վերջի աստիճանի արհամարհ էին. և ոչ արժանի կը գտնէր այնպիսիներուն վրայ ունեցած կարծիքն անգամ իրենց զրուցելու. և այնպիսեաց հետ վարմունքն ալ ցուրտ ու պաղ էր։

Մտաւորական կարողութեան կողմանէ գործունեայ, պարզ և ուժով միտք մ'ունէր Օֆէլիա. հին պատմութեան տեղեակ էր, և իրեն նեղ սահմանին մէջ զօրաւոր մտածութիւններ ունէր։ Կրօնական սկզբունքներն ալ կարգի վրայ առած՝ մտքին մէջ այնպէս տեղաւորեր էր՝ որ նոր սկզբունք մ'ալ ընդունելու տեղ չկար։ Գործնական կենաց վրայ ալ իրեն մասնաւոր գաղափարներն ունէր, ինչպէս են տան մը տնտեսութիւնը և իր գեղին քաղաքական գործողութիւնները։ Իրեն

գլխաւոր յատկութիւնն էր խղճմտանքաւորութիւն. բոլոր իր սկզբանց գլուխն ասիկայ էր, ինչպէս նաեւ Նոր–Անգղիոյ շատ կանանց ալ։ Այս բանս իր բարոյական կազմութեան մէջ այնպէս էր, ինչպէս է կրանիտ քարը երկրիս խաւերուն մէջ, որ երկրիս խորերը ու լերանց ծայրը կը գտնուի։

Օֆէլիա իր պարտուց գերին էր. երբոր ապահով ըլլար թէ բռնած ճամբան շիտակ է՝ ոչ հուր և ոչ ջուր կրնային զինքն ետ դարձընել։ Թէ որ իրեն զլուցելու ըլլային թէ այս ճամբուն ծայրը ջրհոր մը կայ, կամ լեցուն թնդանօթ մը՝ ամենևին ետ չէր դառնար։ Իրեն մտաց մէջ արդարութեան և կատարելութեան այնպիսի բարձր ու անթերի գաղափար մ'ունէր, որ անդադար ինքզինքը կը նեղէր անոր հասնելու, և կը վշտանար իրեն անբաւականութեան վրայ։ Ամենևին մարդկային ակարութեան ներել չէր գիտեր, որով իրեն կրօնասիրութիւնն ալ խիստ ու տխուր կերպարանք մը կ'առնուր։

Բայց ի՞նչպէս կրնար Օֆէլիա Օգոստինոս Սէն–Քլէրին հետ կենալ՝ որ անտարբեր, զուարթ, ներողամիտ, տարտամ, իր գործոցը մէջ անորոշ մարդ մ'էր։ Այս բանիս պատճառն յայտնի է, վասն զի Օֆէլիա զին֊

քը սաստիկ կը սիրէր։ Երբոր Օգոստինոս պզտիկ էր՝ ինքն անոր քրիստոնէական վարդապետութիւն կը սորվեցնէր. վրան գլուխը կը մաքրէր, մազերը կը սանտրէր, և անոր կրթութիւն կու տար։ Վրան մեծ սէր ունէր Օֆելիա, որով կրցաւ Օգոստինոս զինքն համոզել թէ իրեն պարտքերը զինքը Նոր-Օռլէան կը կանչեն. պէտք է հետը մէկտեղ երթայ, որպէս զի Վարպտուհիին պաստխարակութեանը ուշ ընէ, և կնոջը հիւանդութեանը պատճառաւ տանը մէջ եղած անկարգութեանց առջեւն առնու։ Օգոստինոսին տանը երեսի վրայ մնալը լսելով՝ Օֆելիային սիրտը շարժեցաւ. այն պզտիկ աղջիկն ալ կը սիրէր. և թէպէտ Օգոստինոսին վրայ հեթանոսի համարմունք ունէր, սակայն վրան գութ ունէր. իրեն կատակներուն վրայ կը ծիծաղէր, և իր բնաւորութեան հակառակ՝ անոր պակասութեանց աչք կը գոցէր։

Բայց Օֆելիային վրայ աւելի լաւ գաղափար առնելու համար՝ ընթերցողք իրեն գործերէն կրնան պատասատան ընել, զորոնք հիմայ կը սկսինք կարգաւ պատմել։

Ահաւասիկ նայեր է շոգենաւուն սենեակը. չորս դին խել մը ճամբու տոպրակներ, տփեր, կողովներ, սնտուկներ շարած, զո-

բոնք արտորնօք իրարու կը կապէր բարակ չուանով մը ։

— Վարդէկ, լսա՛, համրեցի՞ր բեռներդ, կարծեմ և ոչ մոքէդ անցաւ. դու ալ ուրիշ տղոց պէս բաներուդ ուշ չես դներ ։ Խատուտիկ տոպրակը՝ մէկ, գլխարկիդ կապոյտ հաստ թղթէ տուփը՝ երկու. քառուշուէ սընտուկն՝ երեք. իմ գզրոցս, գլխարկիս տուփը, սա միւս տուփը՝ վեց. կաշիէ պզտի սնտուկը եօթը ։ Հովանոցդ ո՞ւր դրիր ...։ Հոս ինծի տուր որ թղթի մէջ պլլեմ և իմինիս հետ կապեմ։

— Բայց, հօրքույր, ի՞նչ պարապ աշխատութիւն. տուն հասանք։

— Մարդ պէտք է իր բաներուն հոգ ունենայ, սիրելի, թէ որ կ'ուզէ որ աղէկ պահուին։ Մատնոցդ ի՞նչ ըրիր։

— Չեմ գիտեր ։

— Փնտռէ զայն. կարի տուփդ բեր նայիմ՝ մէջը չըլլա՞յ։ Ահաւասիկ մատնոցը հոս է. մէջը կայ նաև մոմ, երկու դգալ, մկրատ, դանակ մը, թուղթ մը գնդասեղ. լաւ է, բան մը պակաս չէ։ Ի՞նչ պիտի ընէիր թէ որ հօրդ հետ միայն ճամբորդութիւն ընելու ըլլայիր ... ապահով եմ որ ունեցածիդ կէսը կը կորսնցնէիր։

— Իրաւ, հօրքոյր. բայց հայրս ինծի նորէն կը գնէր՝ թէ որ տեղ մը կենալու ըլլայինք։

— Մեղայ... այս ի՜նչ աղէկ բան...

— Աւելի աղէկ չէ՞, ըսաւ Վարդիկը։

— Այդ բանդ աններելի թեթեւամտութիւն մ'է, պատասխանեց Օֆելիա։

— Բայց, հօրքոյր, սա սնտուկը շատ լեցուն է, ի՞նչպէս պիտի գոցենք։

— Պէ՛տք է որ գոցուի, ըսաւ Օֆելիա իշխանաբար, մէջի բաները տեղաւորելով ու խուփը ուժով մը գոցելով. սակայն որչափ ալ ուժ տուաւ՝ չեղաւ, անկարելի եղաւ խուփը գոցելը։

— Վարդիկ, ուրոր վրան ելիր, ըսաւ Օֆելիա, ուզէ չուզէ պէտք է որ գոցուի այս սնտուկը։

Վերջապէս գոցուեցաւ, ու Օֆելիան կղպելով՝ բանալին գրպանը դրաւ։

— Ահաւասիկ հասանք. հայրդ ո՞ւր է. կարծեմ՝ ատենն է հիմայ բեռները դուրս հանել տալու։ Նայէ, Վարդիկ, հայրդ ո՞ւր է. գնա կանչէ։

— Հո՛ն է հոն. էրիկ մարդկանց ժողովատեղին է, ու հոն նարինջ կ'ուտէ։

— Անտարակոյս չի գիտեր թէ հասնելու վրայ ենք. վազէ իրեն իմաց տուր։

— Հայրս ամենեւին արտորալ չունի, և դեռ ալ նաւահանգիստ չմտանք, ըսաւ Վարդիկ ։ Ելուր, ելուր, նայէ, ահա սըւիկայ է մեր տունը. սա ճամբուն գլուխը ։

Շոգենաւն՝ յոգնած հրէշի մը նման՝ խոր մնչելով մը նաւերուն մէջէն անցաւ ու ծովեզերք մօտեցաւ ։ Վարդուհին ուրախութեամբ իր ծննդեան քաղաքին զանգակատուններ, գմբէթներն ու բարձր շէնքերը կը ցուցընէր Օֆելիային ։

— Աղէկ, աղէկ, սիրելի, ըսաւ Օֆելիա. բայց նաւը երկաթ նետեց, հայրդ ո՞ւր է ։

Ըսաւ չըսաւ՝ նաւուն մէջ աղաղակը փըրթաւ. ամէն կողմանէ ծառաներ ներս թափեցան. բեռնակիրներն սկսան կապոցները, սնտուկները, տոպրակները դուրս կրել նաւէն. կանայք իրենց տղաքն սկսան քովերնին կանչել. և ամէնքը դուրս ելլելու ճամբուն վրայ դիզուեցան ։

— Կ'ուզե՞ս սնտուկդ վերցընեմ տանիմ, խաթուն ։

— Ո՞ւր պիտի երթան, խաթուն ։

— Կարգն իմս է, խաթուն ։

— Չէ, խաթուն, իմս է կարգը ։

Ամէն կողմանէ այս ձայները կը լսէր Օֆելիա, որ բոլոր բաները պատերազմի կար-

փաւ շարած հիւսած էր, կարծես թէ իրեն վրայ եկողներուն հետ ալխաւի պատերազմի տրեամբ չափ: Ամենեւին չլսելու զարկաւ. ոտքի վրայ անշարժ կեցած, հովանոցներուն կապոցը ձեռքը, ամենուն ալ չէ կ՚ըսէր:

— Բայց այս ի՞նչ ըսել է, վարդիկ. հայրդ ինչու՞ կ՚ուշանայ: Արդեօք գնա՞ց է ինկեր. գուցէ գլուխը բան մ՚եկած ըլլայ: Չեմ գիտեր ի՛նչ ընեմ:

Վերջապէս Սէն-Բլէր վրայ հասաւ՝ իր սովորական անհոգ կերպով, և իր աղջըկան կտոր մը նարինջ տալով, ըսաւ.

— Կարծեմ պատրաստ ես, խաթուն, անանկ չէ՞:

— Ժամ մ՚է պատրաստ քեզի կը սպասեմ, ըսաւ Օֆէլիա:

— Կառքը դուրսը մեզի կը սպասէ. բազմութիւնը քակուեցաւ. հիմայ կրնանք հանգիստ դուրս ելլել՝ առանց մէկու մը զարնուելու: Հոս եկուր, ըսաւ կառավարին, սա բեռները շալկէ տանինեմ:

— Երթամ նայիմ ի՛նչ կերպով կառքին մէջ կը դնէ, ըսաւ Օֆէլիա:

— Բան չունի՛ս. թո՛ղ, մարդը կը տանի:

— Ի՛նչ ալ ըլլայ, ուրիկայ, սա մէկալը և նուիկայ ես իմ ձեռքովս կը տանիմ, ը-

սաւ Օֆէլիա, ու երեք տուփ և տոպրակ մը մէկդի դրաւ։

— Սիրելի, ըսաւ Սէն–Բլէր, Պալարի Լերանց սովորութիւններն հոս չեն անցնիր. քիչ մ'ալ պէտք է այս կողմի սովորութեանց յարմարիլ. ուստի վար թող սա բեռները, ապա թէ ոչ զքեզ աղախին մը կը կարծեն. կառավարին տուր, անիկայ ամենայն զգուշութեամբ կը տանի։

Օֆէլիան քիչ մը պժկամակեցաւ, բայց վերջէն մխիթարուեցաւ մտածելով որ ինքն ալ կառքին մէջ անոնց քովն էր։

— Թոմմասն ո՞ւր է, հարցուց Վարդուհին։

— Կառքին առջեւ նստեր է, ըսաւ Սէն–Բլէր. կ'ուզեմ Թոմմասը մօրդ ընծայ մը տանիլ այն գինով կառավարին տեղը, որ անգամ մը կառքերնիս շրջեց։

— Թոմմասն աղէկ կառավար է, ըսաւ Վարդուհին. գիտնաս, հայրիկ, որ անիկայ ոչ երբեք պիտի գինովնայ։

Կառքը քիչ մ'ատենէն հին տան մը դի֊մաց կանգ առաւ, որ կէս մը գաղղիացի և կէս մ'ալ սպանիացի ճարտարապետութեամբ շինուած էր։ Բակը՝ ուր կամարակապ դռնէ մը կը մտցուէր՝ կատարեալ քառակուսի էր,

Մէյմ'ալ տեսնես բոլոր տանը ծառանե-
րը մեծ ու պզտիկ դուրս թափեցան. անոնց պարագլուխ էր խառնածին երիտասարդ մը, որ զարդարուն հագուստով, ձեռքը հոտաւէտ թաշկինակ մը՝ տիրոջը դիմացն ելաւ։ Ասոր անունն էր Ադոլփոս. բազմութիւնը մէկդի ընելով առաջ անցաւ։

— Ադոլփոս, ո՞ւր ալ հոս ես, ըսաւ տէրը՝ ձեռքն երկընցընելով. ի՞նչպէս ես։

Ադոլփոս բերանը բացաւ, սկսաւ ձեւերով խօսիլ՝ տասնըհինգ օր առաջ պատրաստուած բարի—եկարի ճառը։

— Բաւական է, բաւական, ըսաւ Սէն—Քլէր իր անփոյթ կերպով. ճառդ շատ գեղեցիկ է։ Նայէ բեռները զգուշութեամբ վար առնուն. քիչ մ'ատենէն ես կու գամ. ու աս ըսելով՝ Օֆէլիան ներսը մեծ խուց մը տարաւ։

Նոյն միջոցին Վարդիկ թռչունի մը պէս թռաւ գնաց ներքնասենեկի մը դուռը բացաւ, ուր սեւաչեայ և երեսին գոյնը նետած կին մը երկընցեր պառկեր էր բազմոցին վրայ։

— Մայրի՛կ, կանչեց Վարդիկն ուրախութեամբ, ու վազեց վիզը պլլուեցաւ, և սկսաւ զինքը պագնել։

— Բաւական է, բաւական, սիրելի, ը-

սաւ մայրը՝ Թոյլ կերպով մը աղջիկը գրկելով. նայէ որ գլուխս շատ չցաւցընես։

Նոյն միջոցին վրայ հասաւ Սէն-Փըլէր ալ և կնոջը հետ պաղատեցաւ, միանգամայն ներկայացընելով իրեն իր հօրեղբօր աղջիկը՝ Օֆէլիան։ Մարիամ ալ աչքը վերուց մանաւոր հետաքրքրութեամբ զննեց սալը, և ցուրտ քաղաքավարութեամբ մը բարի-եկար ըսաւ իրեն։ Բազմութիւն ծառայից և աղախիններու վեր վազեցին, որոնց պարագլուխ կեցեր էր տարիքն առած խառնածին կին մը, որ սրտին անհամբերութենէն և ուրախութենէն կը դողդըղար։

— Ահ, հոս եմ, Մամմի, ըսաւ Վարդէնկ, ու վազելով խառնածին կնոջ գիրկն ընկաւ. որ ոչ միայն գլուխս կը ցաւի՝ չըսաւ, այլ գիրկն առաւ Վարդինկն և սկսաւ պագնել և ուրախութենէն պոռալ կանչել, այնչափ որ տեսնողները կարծէին խելքը թռուցեր է։ Վարդինկն առոր գրկէն ելաւ՝ ուրիշի մը վազեց, մէկուն ձեռքը կը սեղմէր, մէկալին համբոյր մը կու տար։

— Այս կողմի աղաք, ըսաւ Օֆէլիա, բաներ կ'ընեն՝ որ ես ըլլայի չէի կրնար ընել։

— Հապա ի՞նչ կարծես, ըսաւ Սէն-Փըլէր։

— Իրաւ, կրկնեց Օֆէլիա, ես ալ ուրիշներուն հետ աղէկ կը վարուիմ, ամենեւին մարդու չարիք չեմ ուզեր. բայց ուրիշի հետ պարտուիլ, ձեռք սեղմել ...

— Ի՞նչ, սեւերո՞ւ հետ։

— Հրամեր ես ... չեմ կրնար ընել։

Սէն-Քլէր սկսաւ բարձրաձայն ծիծաղիլ. և առաջ կանչեց ծառայից բազմութիւնը որ կը սպասէին։

— Ամէնքնիդ ալ հոս եկէք. տէրերնիդ ողջ առողջ տեսնելնուդ վրայ գոհ չէ՞ք՝ ըսելով՝ ամենուն ձեռք տուաւ։ Ի՞նչ բան է, ըսաւ, առանց նայելու՝ երեսները մրոտած տղու մը զարնուելով, որ չորս ոտքով հոն եկեր էր. աս ի՞նչ պզտիկ բան է, մարդուս ոտքին տակը կ'իյնայ և ոչ կ'երեւայ։

Գերիները սկսան բարձրաձայն ծիծաղիլ, և Սէն-Քլէրին շնորհակալութիւններ ընել. ինքն ալ ամենուն բարի ձեռք տուաւ։

— Հիմայ ա՛լ բաներնիդ գնացէք, ըսաւ անոնց Սէն-Քլէր. անոնք ալ դուրս ելան, ետեւներնէն ալ Վարդուհին, որ տոպրակ մը լեցուն՝ անոնց խնձոր, ընկոյզ, շաքարեղէն, ժապաւէն, և ուրիշ խաղալիքներ բերեր էր, զորոնք մասնաւոր իրենց համար ճամբան գներ էր։

Թովմաս շփոթած՝ անկիւն մը կեցած էր դուրսը. Ատոլփոս ալ սանդուխին կոթընած՝ ակնոցով զինքը կը դիտէր։

— Քեզի պէս անքաղաքավար, ըսաւ Սէն-Քլէր Ատոլփոսին՝ ակնոցն աչքէն վար առնելով, ընկերոջդ այդպիսի՞ պատիւ կ՚ընես։ Որո՞ւն է այդ հագած գեղեցիկ բաճկոնդ. կարծեմ իմս պիտի ըլլայ։

— Հրամեր ես, տէր իմ, ըսաւ Ատոլփ, հրամանքներուդ էր, բայց բոլոր աղտոտեր էր, այնպէս որ հրամանքներուդ չէր վայլեր հագնիլ. այլ ինծի պէս խեղճուկ գերւոյ մը կը վայլէ։

Այս խօսքերս լսելու ատեն՝ Ատոլփ գլուխը կը շարժէր, ձեռքովն ալ իւղաթուրմ հոտաւէտ մազերը կը շոյէր։

— Եղածն եղած է, ըսաւ Սէն-Քլէր. հիմայ Թովմասն իրեն խաթունին ցուցնեմ, ետքէն ա՛ռ զինքը խոհանոց տար։ Նայէ հետը շատ չիյնաս, վասն զի քեզի պէս երկուք կ՚արժէ։

— Տէր իմ, ըսաւ Ատոլփ, միշտ կատակ ընել կը սիրէք. շատ ուրախ եմ հրամանքնիդ այսպէս զուարթ տեսնելուս։

— Թովմաս հոս եկուր, ըսաւ Սէն-Քլէր։

Թովմաս ներս մտաւ, և բերանը բաց զար-

մացած մնաց՝ տեսնելով յատակի գեղեցիկ կապերտները, ապակիները, պատկերները, արձանները, վարագոյրները. այնպէս որ կը վախէր ոտքը գետին դնելու։

— Մարիամ, ըսաւ Սէն-Բլէր իր կնոջ, վերջապէս քեզի համար աղէկ կառավար մը գնեցի։ Չափաւորութեան կողմանէ նմանը չկայ. աչքդ վերցուր մէյմը երեսը նայէ. և մի՛ ըսեր թէ երբոր քեզմէ կը հեռանամ՝ զքեզ կը մոռնամ։

Մարիամ՝ աչքերը վերցուց Թովմասին նայեցաւ։

— Ինքն ալ հարկաւ ուրիշներուն պէս կը գինովնայ, ըսաւ։

— Չէ. ամենայն կերպով զիս ապահովցուցին որ չի գինովնար։

— Կը փափաքէի որ զքեզ խաբած չըլլային. բայց կը տարակուսիմ։

— Ադոլփ, ըսաւ Սէն-Բլէր, Թովմասն հետդ վար տար, և ըսածներս միտքդ բեր։

Ադոլփ ցատքըտելով դուրս ելաւ, Թովմասն ալ ծանրաքայլ ետեւէն կ՚երթար։

— Կատարեալ ձիապետի կը նմանի, ըսաւ Մարիամ։

— Կատակը մէկդի թող, Մարիամ, ըսաւ Սէն-Բլէր, բազմոցին քովի աթոռին վրայ նստելով. ի՞նչ նոր լուր ունիս նայինք։

— Ժամադրութենէդ տասնըհինգ օր աւելի կեցար դուրսը, ըսաւ Մարիամ։

— Պատճառը քեզի գրեցի։

— Գրած թուղթդ այնպէս կարճ, այնպէս ցուրտ էր՝ որ չեմ կրնար բացատրել։

— Ի՞նչ ընեմ. ճեպընթացն երթալու վրայ էր, կա՛մ այնչափ պէտք էր գրել, կա՛մ ամենեւին չգրել։

— Միշտ պատճառանք պակաս չէն՝ ճամբանին երկընցընելու, ու թղթերնին համառօտելու։

— Ահաւասիկ քեզի Նոր-Եօրքէն ի՞նչ աղուոր ընծայ բերի, ըսաւ Սէն-Բրէր, ու ծոցէն թաւշապատ տուփ մը հանեց։ Ասիկայ սիրուն քաշուած լուսանկար պատկեր մ՚էր, ուր Վարդինին հօրը հետ ձեռք ձեռքի տուած նստեր էին։

Մարիամ վեր ի վերանց պատկերին նայեցաւ, ու — Ինչո՞ւ այսպիսի գէշ դիրք ընտրեր ես, ըսաւ։

— Պատկերի մը դիրքը ամէն մարդու իր ախորժակէն կը կախուի. բայց նմանութեանն ի՞նչ կ՚ըսես։

— Թէ որ այս կողմանէ չես յարգեր իմ կարծիքս, ես ալ հարցուցածդ արժանի չեմ դատեր պատասխանի, ըսաւ Մարիամ, ու տուփը գոցելով անդին դրաւ։

— Այդ ի՞նչ անհամ ու անշնորհք կերպ է, ըսաւ մաքէն Սէն-Քլէր, բայց դրսուանց բան չցուցընելով՝ – Բաւական է, Մարիամ, ըսաւ, աղայութիւն մի՛ ըներ, նմա՞ն է թէ չէ։

— Գլուխս մի՛ ցաւցըներ, Սէն-Քլէր. քանի որ եկեր ես՝ այնչափ աղաղակ հանեցին տան մէջ՝ որ գլուխս ճաթեցաւ. հիմայ դու ալ եկեր ես ինծի պարապ բաներ կը հարցընես։

— Ի՞նչ, ըսաւ անգլիէն Օֆէլիան՝ որ թեւաւոր աթոռի մը վրայ նստած՝ տանը կահ կարասիքը կը դիտէր, ու մաքէն անոնց գինը կը գուշակէր. գլխու-ցաւի հիւանդութի՞ւն ունիս։

— Հրամեր ես, պատասխանեց Մարիամ. կատարեալ մարտիրոսութիւն մ'է կեանքը։

— Խաշած գիհի ջուրը շատ զօրաւոր դեղ է գլխու-ցաւի դէմ, շատերը փորձեր ու օգուտ տեսեր են անկէ, ըսաւ Օֆէլիա։

— Ուրեմն շուտ մը բերել տամ, վրայ բերաւ Սէն-Քլէր ու զանգակը քաշեց. բայց Օֆէլիա՛, կրկնեց, հրամանքդ յոգնած պիտի ըլլաս և հանգչելու կարօտութիւն պիտի ունենաս։

Երբոր Ադոլփոս ներս մտաւ, Սէն-Քլէր գիհը ապսպրեց, ու ըսաւ ալ որ Մամմին

իրեն կանչէ։ Մամմին վարդուհիին նոյն օրը ընծայ բերած գլխարկը գլուխը՝ ներս մտաւ։

— Մամմի, ըսաւ Սէն-Բլէր, խաթունը յոգնած է, խուցը տար զինքը, ու նայէ որ իր ամէն պիտոյքն հոգաս։

Օֆէլիա Մամմիին հետ դուրս ելաւ։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

### Աղբար Թովմասին նոր տիրուհին.

— Ահա հիմայ հանգիստ կեանք մը կ'անցընես, ըսաւ քանի մ'օր ետքը Սէն-Բլէր՝ նախաճաշիկի ժամանակ Մարիամին. հօրեղբօրս աղջիկն արթուն ու գործունեայ կնիկ մ'է, տանը ամէն հոգը ինքը վրան կ'առնէ ու դուն քու հանգիստդ կը նայիս, ու կամաց կամաց վրայ կը գնես։ Բայց պէտք է այս նոր պաշտօնս ամենուն դիմաց Օֆէլիայի տալ։

— Շիտակը գալուն վրայ շատ ուրախ եմ, բարով հազար բարով եկեր է, պատասխանեց Մարիամ, գլուխը ձեռքին կոթընցընելով. բայց քիչ ատենէն ինքն ալ կ'իմանայ որ աս տանս մէջի տէրերը գերի են, ու գերիները մէյմէկ տէր դարձեր են։

— Ի հարկէ շատ բան պիտի իմանայ, և ուրիշ շատ ճշմարտութեանց ալ տեղեակ պիտի ըլլայ[1]։

— Ուրիշները կը կարծեն որ մենք մեր գերիները մեր զուարճութեան և հաճոյից համար կը պահենք, բայց թէ որ մենք մեր շահը գիտնայինք՝ պէտք էր որ զանոնք ամէնքն ալ ազատ ձգէինք, որ ըլլեն ուզած տեղերնին երթան։

Վարդուհին որ հոն նստեր էր՝ մօրը այս խօսքին վրայ զարմացած՝ մէյմը երեսը նայեցաւ ու անկեղծ կերպով մը, — Ինչո՞ւ ուրեմն կը պահենք զանոնք, ըսաւ։

— Շիտակը՝ չեմ կրնար ըմբռնել, պատասխանեց Մարիամ. վասն զի անոնք են իմ կենացս թշուառութիւններն, անոնք են գլխաւորապէս իմ հիւանդութեանս պատճառը. մեր գերիներն ամենէն աւելի անպիտաններն են։

— Մարիամ, ըսաւ Սէն-Քլէր, այս առտու նորէն քիթդ կախած ու տխուր կ'երեւաս. Մամմիին պէս կարգաւորեալ աղախին մը ո՞ւր կ'ուզես գտնել։

1. Ծածկեալ կերպով հասկըցընել ուզելով Մարիամին՝ որ իր բռնած գէշ կերպերուն պիտի անդրադառնայ Օֆելիա։

— Մամմին իմ տեսածներուս մէջ ամենէն աղէկ գերին է իրաւ, բայց այնպէս ինքնահաւան է, որ չես կարծեր։

— Ցիրաւի ինքնահաւանութիւնը շատ գէշ պակասութիւն մ'է, պատասխանեց ծանրութեամբ Սէն-Քլէր։

— Ի՞նչ է այդ իրեն ըրածը, կրկնեց Մարիամ, որ բոլոր գիշերը կը քնանայ, ու չի ալ մտածեր որ այս հիւանդութեանս համար՝ ամէն վայրկեան խնամքի ու արթնութեան կարօտ եմ. բայց այսու ամենայնիւ սիրտս չի քաշեր զինքն արթընցընել։ Այս առաւօտ սովորականէն աւելի տկար որ կը տեսնես զիս՝ գիտնաս որ բոլոր պատճառն ան է, վասն զի այս գիշեր զինքը կանչելէն հոգիս բերանս եկաւ։

— Շատ գիշեր արթուն քովդ կեցած չէ՞, ըսաւ Վարդուհի։

— Ինչէ՞ն գիտես, պատասխանեց նեղանալով մայրը, անշուշտ քեզի եկեր գանգատեր է։

— Չէ, չէ, գանգատ ըրած չէ... գիշերները կրած նեղութիւններդ պատմեց ինծի։

— Ինչո՞ւ երբեմն ալ Ցօլհաննան ու Սըրքուհին Մամմիին տեղ չեն կենար քովդ, հարցուց Սէն-Քլէր, որպէս զի գոնէ ինքն երթայ քիչ մը հանգչի։

— Ինչպէս ալ այդ տեսակ խորհուրդներ ինծի կու տաս, պատասխանեց Մարիամ. ըսածդ, Սէն-Քլէր, դու ալ չես ըմբռներ։ Ջղերուս ցաւն այնպէս սաստիկ է՝ որ պզտիկ թանէ մը մէկէն ինքզինքս կը կորսընցընեմ, և նոր մարդ քովս չեմ կրնար տեսնել։ Եթէ Մամմին կտոր մը վրաս սրտանց հոգ ունենար՝ դիւրութեամբ կ'արթըննար. չվարժած մարդիկներուս հետ ի՞նչպէս կրնամ յարմարիլ։ Ոմանք՝ ծառայից իրենց տիրոջ վրայ ունեցած սիրոյն՝ մեծ մեծ գովեստներ կու տան, բայց դեռ ես մեր ծառաներուն վրայ այդպիսի սէր չեմ տեսած։

Այս ըսաւ Մարիամն ու հառաչեց։ Օֆէլիա այս խօսակցութիւններս լաւ մնջիկ մտիկ կ'ընէր, առանց ամենուն մէջ մանելու. առաջ կ'ուզէր մարդը ճանչնալ՝ որ վերջը գիտնայ խօսելիքը։

— Մամմին, կրկնեց Մարիամ, իրաւ քանի մը շատ աղէկ կատարելութիւններ ունի, բայց իր ինքնահաւանութեան չափը չկայ. օրինակի համար՝ անկարելի եղաւ որ էրիկը մաքէն հանէ, ու ամէն օր գլուխս կ'ուտէ որ երթայ մէյմը զինքը տեսնէ։ Կարգուելէս վերջը՝ հոս գալու ատենս հարկ եղաւ որ Մամմին ալ հետս գայ. հայրս անոր էրիկը

չէր ուզեր քովէն հեռացընել, որովհետեւ վարպետ երկաթագործ էր։ Եւ ալ տեսնելով որ ալ դժուար պիտի ըլլայ ու մէկզմէկ նորէն գտնեն՝ ետեւէ եղայ որ պսակը քակեն, բայց շատ վրայ չտալուս՝ հիմայ կը զղջամ, թէ չէ՝ մինչեւ հիմայ Մամմին ուրիշի մը հետ կարգած էի։ Ըսի իրեն որ ա՛լ իր էրիկը տեսնելիք չունի, ուստի հոս ուրիշի մը հետ կարգուի. բայց անոր ինքնահաւանութիւնը կը տեսնե՞ս, անկարելի եղաւ որ խելքէն դուրս հանէ իր էրիկն ու միտքը փոխէ։

— Տղաք ունի՞ս, հարցուց Օֆէլիա։

— Հրամեր ես, երկու աղայ ունիմ։

— Հարկաւ վշտացած է զանոնք թողլուն համար։

— Հետս չէր կրնար զանոնք ալ բերել, այնպիսի անշնորհք բաներուն երեսն ալ նայելու սիրտս չէր քաշեր. ուրիշ կողմանէ ալ՝ թէ որ իրեն հետ մէկտեղ եկած ըլլային՝ Մամմիին շատ արգելք պիտի ըլլային։ Կարծեմ այս բանիս վրայ ծածուկ ոխ պահեց. անոր համար ալ նորէն կարգուիլ ամենեւին չուզեց. և թէպէտ կը ճանչնայ ալ թէ որչափ այս հիւանդութիւններուս մէջ կարօտութիւն ունիմ իրեն, բայց այսու ամենայ-

նիւ. սառոյց գիտեմ, որ ելժէ կարենայ՝ վաղը զիս կը թողու մէկէն էրկանը քովը կ՚երթայ։ Նայէ թէ աղէկ ըսած գերիներուդ ինքնահաւանութիւնը մինչեւ ո՞ւր կը հասնի։

— Մաքէն ալ անցընելը, պատասխանեց հեզնաբար Սէն-Փոլէր, մարդուն պժգալը կը բերէ։

Օֆէլիա այս խօսքին վրայ զարմանալով Սէն-Փոլէրի երեսը դարձաւ նայեցաւ, կարծելով որ Սէն-Փոլէր խրատունք կու տայ Մարիամին գանգատներուն. իսկ անիկայ սրտին նեղութիւնը հազիւ թէ զսպելով՝ պակսունքները կը խածնէր որ չըլլայ թէ մաղը ծակի։

— Ի վերայ այսր ամենայնի, կրկնեց Մարիամ, ինծի խիղճ ըրած եմ՝ որ իմ սաստիկ անուշութեամբս երես տուի անոր. պէտք էր մէյմը իր հագուստներուն պարանը խառնէիր նայէիր. ամէն տեսակ ազնիւ զգեստներ շինել տուի անոր, մանաւանդ թէ քանի բան ալ ձեռքովս շիներ և իրեն տուեր եմ. անգամ մ՚ալ ամբողջ օր մ՚անցուցի՝ որ գլուխը գնելու գլխարկը մաքրեմ շտկռտեմ. բոլոր կինացը մէջ հազիւ թէ մէկ երկու անգամ ծեծ կերեր է. ամէն առաւօտ կաթը, խահուէն և թէյը պակաս չէ, շաքարն ալ ճերմակէն կու տամ որ աւելի գոհ ըլլայ. բայց

այսու ամենայնիւ դեռ Սէն-Բլէր գոհ չէ, կ'ուզէ որ խոհանոցին մէջ ամէն առատութեամբ երթցուի, բոլոր գերիներն ուզածնին ընեն ։ Միով բանիւ՝ բոլորն ալ վերջի աստիճանի երես ելած սըկըռթած պարձեր են. բայց յանցանքը մերն է, մեր անհոգութենէն ու աչք գոցելէն է որ այսչափ համարձակութիւն առեր են. այնչափ անգամ ըսեր եմ Սէն-Բլէրին, բայց օգուտ մ'ալ չեղաւ, ես յոգնեցայ ըսելէս ։

— Ես ալ մտիկ ընելէն, պատասխանեց Սէն-Բլէր՝ լրագիր մը ձեռքն առնելով։

Վարդիկ մօրը այս խօսակցութեան ժամանակ խորունկ մտածման մը մէջ ընկղմածի պէս՝ լուիկ կեցեր մտիկ կ'ընէր. մէյ մ'ալ ելաւ մօրը վիզը պլլուեցաւ ։

— Ի՞նչ ունիս, աղջիկս, հարցուց մայրը։

— Մայրիկ, չե՞մ կրնար մէկ գիշեր մ'ալ ես քովդ կենալ. մէ՛կ գիշեր մը միայն. յուսամ թէ ես ալ ջղացաւիդ սաստկանալուն պատճառ չեմ ըլլար. քունս ալ չի տանիր, որովհետեւ արդէն շատ անգամ բոլոր գիշերն արթուն կը կենամ ու կը մտածեմ։

— Ի՞նչ խենթ բան է ըսածդ, աղջիկ. դուն ալ ի՞նչ կարգէ դուրս բաներ կ'ըսես ։

— Հիմայ այս նայինք, մայրիկ, կ'ուզե՞ս

թէ չէ։ Կարծեմ Մամմին քիչ մը տկար է. քանի մ՚օր է գլխի ցաւ ունիմ, կ՚ըսէ։

— Մամմիին անմիտ գործերէն մէկն ալ այս է....։ Սա սեւերն ալ ի՛նչպէս իրարու նման են. թէ որ պզտի բան մ՚ունենան, կամ թէ կտոր մը գլուխնին ցաւի՝ բոլոր աշխարհք տակնուվրայ կ՚ընեն։ Ա՛լ ես այս իր խենթութեանց տեղիք չեմ կրնար տալ. այսպիսի պարագաներու՝ սկզբամբ կը մտածեմ, կրկնեց՝ Օֆէլիայի կողմը դառնալով, դու ալ փորձով պիտի իմանաս որ իրաւունք ունիմ եղեր։ Թ՚է որ մէյմը սեւերուն մտիկ ընես՝ ա՛լ առտուընէ մինչեւ իրիկուն իրենց պարապ երեւակայեալ տկարութեանց գանգատներով ականջդ կը խլցընեն. կը տեսնե՞ս զիս, բերնէս հիւանդութեանցս վրայ տրտունջ մը լսած ունի՞ս, թէպէտ Աստուած միայն գիտէ իմ քաշած նեղութիւններս. մարդուս գլխաւոր պարտքերէն մէկն ալ համբերութիւնն է, ես ալ ինքզինքս համբերութեան կը վարժեցընեմ։

Օֆէլիա աս կատարեալ համբերողին ճառախօսութիւնը մտիկ ընելով՝ զարմանքէն հազիւ խնտալը բռնեց, բայց Սէն-Քլէր չկարենալով ինքզինքը բռնել՝ խնտալ մ՚էր փըրցուց։

— Էրիկս ալ, վշտացեալ կերպով մը կրկնեց Մարիամ, քանի որ իմ ակարութեանցս ու հազարումէկ քաշած ցաւերուս վրայ խօսք կ'ըլլայ՝ կը ծիծաղի. Աստուած տայ որ չզղջայ օր մը՝ երբոր ա՛լ բանը բանէն անցած տեսնէ, ըսաւ ու թաշկինակով երեսը գոցեց։

Քիչ մ'ատեն լռութիւն ըլլալէն վերջը՝ Սէն-Քլէր ժամացոյցը նայեցաւ, ու հարկաւոր բան ունիմ ըսելով դուրս ելաւ. Վարդուհին ալ ետեւէն գնաց, ու միայն Օֆէլիան ու Մարիամը մնացին։

— Նայէ սա Սէն-Քլէրի ըրածը, հառաչեց Մարիամ, էրկանը դուրս ելլէն վերջը՝ թաշկինակը վար առնելով. դեռ չի հասկնար թէ ի՛նչ քաշեցի ու դեռ ալ կը քաշեմ. թէ որ այն տեսակ կնիկներէն ըլլայի որ ամէն պզտի բանի կը գանգատին ու կը տրտնջան՝ իրաւունք ունէր ձանձրանալու, էրիկ մարդիկ չեն քաշեր որ կանայք իրենց դիմացը ունեցած վշտերնուն վրայ խօսք բանան. ես այսչափ տարի լռութեամբ ու առանց պզտիկ տրտունջ մ'ընելու՝ ցաւերու մէջ կը տանջուիմ ու դեռ ձայն չեմ հանած, անանկ որ Սէն-Քլէր զիս անզգայի տեղ սկսաւ դնել։

Օֆէլիա չէր գիտեր թէ ի՛նչ պատասխան

տայ. Մարիամ արցունքը սրբեց ու սաստիկ անձրեւի տակ թրջած տատրակի մը պէս՝ ինքզինքը շակրտըկեց նստաւ, ու անական բաներու վրայ սկսաւ խօսիլ։ Խոհանոցին վրայ, պարաններուն վրայ, ճերմակեղէններուն վրայ, և այլն, և այլն, խել մը խօսակցութիւններ ու յանձնարարութիւններ ըրաւ Օֆէլիային։

— Հիմայ, կրկնեց, ամէն բանին տեղը գիտես, թէ որ մէյմ'ալ իմ հիւանդութիւնս բռնէ ու չկարենաս ինծի խորհուրդ հարցընել, ամէն բան ինքիրենդ կրնաս ընել։ Վարդիկին վրայ ալ քեզի քանի մը խօսք ունիմ ընելիք, վրան պէտք է աղէկ աչք ունենալ։

— Աղէկ կատարելութիւններ վրան կ'երեւան, պատասխանեց Օֆէլիա։

— Վարդիկն ալ կարգէ դուրս աղջիկ մ'է. այնպիսի բնաւորութիւն կը ցուցընէ որ չեմ կրնար ըմբռնել թէ ուսկի՛ց առեր է, ինծի ամենևին չի նմանիր։

Խորին հառաչանք մ'արձակեց Մարիամ, իբրև թէ մեծ դժբախտութիւն մ'ըլլար այս բանս։ Իսկ Օֆէլիա մաքէն կ'ուրախանար ու — Աղէկ որ, կ'ըսէր, քեզի չի նմանիր. բայց դրսէն ի՞նչպէս կրնար իր մաքէն անցածը բացատրել։

— Վարդիկ միշտ ծառայից հետ կենակցիլ կը սիրէ, կրկնեց Մարիամ. անոնց հետ շատ ընտանութեամբ կը վարուի, որ աղէկ բան չէ։ Պզտիկուց ես ալ հօրս սեւակներուն հետ կը խաղայի, բայց սա Վարդիկին պէս չէի. անիկայ գերիներուն հետ իբրեւ իրեն հաւասարակից կը վարուի. այնչափ ետեւէ եղայ՝ չկրցայ իրեն այս պակասութիւնը շտկել. բայց ինչ կ'ուզես, տղաք ինչ որ ուրիշի վրայ կը տեսնեն՝ իրենք ալ նոյնը կ'ընեն. Սէն-Քլէրին կերպը չէ՞ս տեսներ. ան մարդն ալ ով որ քովը կը մօտենայ՝ կ'աւրէ, բաց ի իր կնոջմէն։

Օֆէլիա այս խօսքերուս ալ պատասխան չտուաւ։

— Այնպիսի ոճով գերիներուն հետ պէտք է վարուիլ, որ իրենց ցած վիճակնին չմոռնան. ես ալ պզտիկութենէս ի վեր այս ոճը բռներ եմ։ Բայց Վարդիկ բոլորովին հակառակը կ'ընէ, ամենուն երես կու տայ. վերջը չեմ գիտեր ինչպէս զանոնք հնազանդեցընէ պիտի իրեն՝ երբոր տան գլուխն անցնի։ Իրաւ, պէտք է գերիներուն հետ գթութեամբ ու սիրով վարուիլ, ես ալ միշտ նոյն ոճը կը բռնեմ, բայց մէկալ կողմանէ ալ անոնց իրենք զիրենք ճանչցընել պէտք է։ Վարդու-

Հին գաղափար չունի գերիներուն ինչ աս-
տիճանի մարդիկ ըլլալնուն. լսեցիր քիչ մ'ա-
ռաջ ինչպէս Մամմիին տեղը կ'ուզէր գի-
շերը քովս կենալ, անկէ կ'իմանաս որ եթէ
վրան աչք չունեցուի՝ ինչ բաներ դեռ պիտի
ընէ։

— Բայց կ'ենթադրեմ, պատասխանեց
Օֆէլիա, որ հրամանքդ գերիներդ մարդու
տեղ դրած ըլլաս, ու թողուս որ աշխատու-
թենէ վերջը երթան հանգչին։

— Ի հարկէ, ով կրնայ տարակուսիլ.
Ես ձեռքէս եկածը կ'ընեմ՝ որ առանց իրենք
իրենց պարտքէն պակսելու՝ բանի մ'ալ կա-
րօտութիւն չունենան։ Մամմին երբ ալ ըլ-
լայ՝ կրնայ քիչ մը քուն ըլլալ. անիկայ իր
բանը գիտէ, ատեն կը գտնէ քնանալու,
ես դեռ անոր պէս ուրիշ քնոտ մ'ալ չեմ
տեսած. կարելի ըլլայ՝ կար կարելու, քա-
լելու և կամ նստած ատենն ալ կը քնա-
նայ. բայց այս Վարդուհիին բռնած կերպին
պէս, գերիներուն վրայ յախճապակիի և
կամ սակաւագիւտ բոյսերու պէս խնամք ու-
նենալը՝ ինծի շատ ծիծաղական բան կ'ե-
րենայ։

Մարիամ այս խօսքերուս ատեն բազմո-
ցին վրայ երկնցաւ, ու ձեռքի հոտաւէտ

եղին շիշը բացաւ ու սկսաւ հոտուըտալ. և վերջը պարձաւ. ակար ձայնով մ'ըսաւ, — Կը տեսնե՞ս, սիրելի. ես իմ վրաս ոչ երբեք խօսք կ'ընեմ, ես այդպիսի սովորութիւն չունիմ. չեմ ալ ախորժիր։ Բայց շիտակը այս ըսած քանի մը բանիս մէջ Սէն-Փլէրին հետ համամիտ չենք. ամեններն ըսածս չ'ըմբռներ, չ'ուզեր լսել. և ահա այս է իմ հիւանդութեանս գլխաւոր մէկ պատճառն ալ. իրաւ է որ աղէկ յատկութիւններ ունի, ես ալ գիտեմ, բայց էրիկ մարդիկ կարգէ դուրս ինքնահաւան են, և ամենևին կանանցմէ նըկատմունք չունին. գոնէ իմ վրաս այնպէս ազատութիւն ըրած է։

Օֆէլիա սաստիկ կը քաշուէր ընտանեկան էրիկ կնկան մէջ եղած շփոթութեանց մէջ մտնելէն, ուստի ձայն չհանեց. իբրև սատանայի փորձութենէ մը փախչելով՝ գըրպանէն գուրպայ մը հանեց ու հիւսել սկըսաւ, զոր միշտ հետը կը պտըտցընէր, իբրև զօրաւոր դեղ ընդդէմ պարապութեան. և պատասխան մ'ալ չտուաւ։ Բայց Մարիամին հոգը չէր, և ոչ ալ Օֆէլիային չախորժելն անդրադարձաւ. ուստի սկսաւ նորէն խօսքն առաջ տանիլ, անուշահոտ շիշը նորէն հոտուըտալով։

— Ես, ըսաւ, Սէն-Քլէրի հետ կարգը-ւելովս՝ իբրև օժիտ իմ հայրենական ժա-ռանգութենէս զատ՝ խել մ՚ալ գերիներ հետս բերի, զորոնք՝ ըստ իրաւանց՝ ուզածիս պէս կրնայի գործածել։ Սէն-Քլէր ալ հայրենա-կան ժառանգութիւն ու գերիներ ունի, թող անոնց վրայ միայն իր կերպը բանեցընէ. բայց ինքն իր գերիներուն գոհ չըլլալով՝ կ՚ուզէ իմ գերիներուս ալ հրամայել. շատ բանի վրայ կարգէ դուրս կարծիքներ ունի, մանաւանդ գերիներու գործածութեան մէջ։ Կը հաւատա՞ս, հրաման հանեց որ տանը մէջ բաց ի իրմէ ու ինծմէ՝ ոչ ոք գերինե-րուն պիտի կարենայ զարնել։ Ինքը՝ գերի-ները գլխուն վրայ ալ քալեն՝ անոնց ձեռք չի վերցըներ, իսկ ինծի համար պահանջելը որ գերիները ծեծեմ՝ իմ տկարութեանս նայելով՝ կատարեալ բարբարոսութիւն մ՚է։

— Այս տեսակ բաներուն տեղեկութիւն չունիմ, պատասխանեց անտարբեր կերպով մը Օֆէլիա։

— Դու ալ փորձով կը սորվիս այս տանս մէջ. դու չես կրնար երևակայել այս ան-պիտան գերիներուն անմտութիւնը, անհո-գութիւնն ու ապերախտութիւնը, որ մարդուն կիրքը կը հանեն։

Մարիամ՝ այս խօսքերս ըսելու ատեն կարծես թէ բոլորովին նոր ուժ առեր էր. մոռցեր էր քիչ մ'առաջ ունեցած տկարութիւնները:

— Բայց, կրկնեց, այս բաներս Սէն-Քլէրի խելքը չի մտնար, ի՞նչ գանգատ ալ ընեմ՝ մենք ենք պատճառը կը կրկնէ միշտ, մեզմէ կը տեսնեն ինչ որ կ'ընեն. մենք ալ անոնց տեղը ըլլայինք՝ նոյն բանը կ'ընէինք. ուստի անգթութիւն է որ մեր ըրած բանը՝ ուրիշի վրայ պատուհասենք. դեռ ի՞նչ գիտնամ... կարծես թէ անոնք մեզի հաւասար են . . . անոնք մեզի հետ կրնա՞ն բաղդատուիլ . . . :

— Ի՞նչ կը կարծես, պատասխանեց Օֆէլիա, չէ՞ս հաւատար որ Աստուած սեւերուն ալ ճերմակներուն պէս զգացումն ու սիրտ տուած ըլլայ:

— Չէ, ամենեւին չեմ հաւատար. ի՞նչ կարգէ դուրս բան է ըսածդ... անոնք ցածազգի ու մարդկութեան դիրան են:

— Ի՞նչ. չէ՞ս հաւատար թէ անոնք ալ անմահ հոգի մ'ունին, պատասխանեց Օֆէլիա զայրացկոտ:

— Հոգի մ'ունին, անոր խօսք չկայ, ըսաւ Մարիամ յօրանջելով. բայց ուզել զա-

նոնք մեզի հետ բաղդատել, անոնք ալ մեզի հաւասար են, մեզի նման են ըսել՝ արտառոց կարծիք մ'է։ Ժէն–Փլէր միտքը դրած է թէ Մամմին իր էրկընէն բաժնելը նոյն բանն է՝ ինչպէս թէ զիս իրմէ հեռացուցած ըլլալն։ Կրնա՞ս հաւատալ տոոր.... իմ ունեցած զգացմունքս կարելի բա՞ն է որ Մամմին ալ ունենայ. մէկմէկէ շատ տարբեր ենք. երիկս ինչ որ կ'ուզէ թող ըսէ։ Կարելի բա՞ն է որ ես ինչպէս Վարդիկը կը սիրեմ՝ Մամմին ալ այնպէս իր պզտիկ լակոտները սիրէ։ Եւ սակայն Ժէն–Փլէր կը ջանայ զիս համոզել, թէ և առողջութիւնս ալ վատ ըլլայ, որ Մամմին իր տունը ղըրկեմ ու տեղն ուրիշ մ'առնում։ Ա՛լ քաշածիս չափը չկայ. շատ անգամ մարդու բան չեմ ըսեր, և սկզբունքս է ամէն բանի լըռութեամբ համբերել. բայց երբոր այս բանս առաջարկեց ինծի՝ ա՛լ համբերութիւնս հատաւ, չկրցայ ես զիս բռնել։ Անիկէ ետև ամենևին խօսք չբացաւ այս նիւթիս վրայ. միայն հեռուէն երբեմն երբեմն խօսքեր կը նետէ, որով կը տեսնեմ որ դեռ նոյն կարծիքին վրայ է։

Այս խօսքիս վրայ Օֆէլիա կը վախէր թէ ինքզինք պիտի չկարենայ բռնել. անոր հա-

մար սկսաւ արագ արագ գուրպան հիւսել, որ շատ բան կ'ուզէր նշանակել՝ թէ որ Մարիամ ըմբռնելու կարող ըլլար։

— Այս բռածներէս կը տեսնես Հրամանքդ ալ, վրայ բերաւ Մարիամ, թէ ինչպիսի՛ սուն պիտի կառավարես ։ Հոս ոչ կարգ կայ, ոչ կանոն կայ. հոս գերիներն ամէն ուզածնին կ'ընեն, բաց ի այն օրերէն՝ որ հիւանդութենէս քիչ մը շունչ կ'առնում, ու տանը բաներուն քիչ մը կը խառնուիմ. շատ անգամ խարազանը ձեռքս կ'առնում որ ոմանց գլխուն իջեցընեմ. բայց այս բանս իմ կարողութենէս վեր է։ Ո՜հ, ո՜ւր էր թէ Սէն-Քլէր ալ ուզէր ուրիշներուն պէս ընել։

— Ուրիշներն ի՞նչ կ'ընեն։

— Ուրիշներն իրենց գերիները ծեծի տեղը[1] կը ղրկեն ու աղէկ մը ծեծել կու տան. ասոնց հետ վարուելու մէկ հատիկ ճամբան այս է. թէ որ ես այսպէս տկար ու հիւանդոտ չըլլայի՝ անոնք ալ կը տեսնէին թէ տէր ի՛նչ ըսել է։

— Հապա Սէն-Քլէր ի՞նչպէս կը հնա-

1. Հիւսիսային Ամերիկայի հարաւային կողմերը մասնաւոր տեղեր կան՝ ուր գերիները ծեծելու կը տանին այս տեղերուն իրենք Calabouse կ'ըսեն։

զանդեցընէ զանոնք, երբոր կ՚ըսեն թէ ա֊մենեկին անոնց ձեռք չի վերցըներ, հարցուց Օֆէլիա ։

— Երիկ մարդիկ ուրիշ կերպ մ՚ունին, որ իրենք զիրենք կը պատկառեցընեն. և ուզածնին ընել կու տան ։ Դիտա՞ր ես, Սէն-Քլէր քիչ մը հրամայական կերպով խօսե֊լու ըլլայ, քիչ մը ձայնը բարձրացընէ՝ կար֊ծես թէ աչուըներէն կայծակ կը ցայքէ. ես հազար պոռամ և հազար բարկանամ՝ օ֊գուտ չըներ. իրեն մէկ նայուածքը բաւական է. անոր համար իմ զանգատանացս ամե֊նևին տեղիք չի տար. բայց եկուր նայէ որ անոր ալ խստութեան օրերը շատ քիչ են ։ Ա՛հ, այս տանս մէջ առանց խստութեան բան չի լմըննար. գերիներուն անպիտանու֊թեաննի ու ծուլութեան խելք չի հասնիր ։

— Նորէն հին խօսքերդ բերանդ կը քա֊լեն, ըսաւ Սէն-Քլէր՝ յանկարծակի ներս մանելով ։ Այդ անպիտաններն արդեօք ինչ պատասխան պիտի տան դատաստանին օրը իրենց ծուլութեանց համար ։ Իրաւցընէ թո֊ղութիւն պիտի չգտնեն. վասն զի ոչ ես և ոչ Մարիամը իրենց այսպիսի չար օրինակ տուեր ենք ։

Աս ըսելով՝ Մարիամին նստած տեղւոյն դիմացի բազմոցին վրայ երկընցաւ ։

— Շատ չարասիրտ ես, Սէն-Քլէր, ը-
սաւ Մարիամ. վասն զի մտքիդ հակառակ
կը խօսիս։

— Ինչո՞ւ. ես կարծէի թէ խելքով է ը-
սածս, վասն զի քու կարծիքէդ է. ուրեմն
խաբուեր եմ եղեր։

— Իրաւցընէ ուրիշ բան չէ քու ըրածդ՝
բայց եթէ ցաւերս նորոգել։

— Աստուած պահէ. օդը սաստիկ տաք
է. քիչ մ'ալ Ատոլփին հետ տաք տաք խօ-
սելուս՝ յոգներ եմ։

— Նորէն ի՞նչ պատահեցաւ, հարցուց
Մարիամ. այդ գերիին աներեսութիւնն ա՛լ
չափն անցընելու վրայ է. թէ որ քիչ մը
իմ ձեռքս ըլլար՝ զինքը ես կարգի կը բե-
րէի, կը ցուցընէի իրեն ո՛վ ըլլալը։

— Ըսածդ իրաւ է. սովորական դիտո-
ղութեամբդ աղէկ ճանչցեր ես զինքը։ Իսկ
ես անոր համար որոշեցայ՝ որ ինքն ամէն
ջանք կ'ընէ ինծի նմանելու. մինչև ինք-
զինքը զիս կարծեցընել տուեր է. ուստի ըսի
թէ մէյմ'ալ այսպիսի բան չընէ։

— Այդ ի՞նչպէս կ'ըլլայ, ըսաւ Մա-
րիամ։

— Ետևէ եղայ զինքը համոզելու որ հա-
գուստներէս մէկ քանին ինծի համար միայն

պահած եմ, և թէ չեմ ուզեր որ անոնց ձեռք դպցընէ. և թէ քիչ մ'ալ, ըսի, հոտաւէտ եղերուն չափ դիր, և ճերմակ ազնիւ թաշկինակներս ալ ամէնը մէկէն մի գործածեր: Այս ըսածներս Ռոտըլֆին քիչ մը ծանր եկան, անոր համար կը ջանայի զինքն համոզելու:

— Ահ, Սէն-Քլէր, Երբ պիտի սորվիս ծառայից հետ աղէկ վարուիլ. անոնց վրայ այդչափ աչք գոցելդ իրաւցընէ քրէական յանցանք մ'է, ըսաւ Մարիամ:

— Ի՞նչ ալ ըլլայ, վերջապէս անկէ ի՞նչ չարիք կրնայ ծագիլ՝ թէ որ խեղճը կը ջանայ տիրոջը նմանիլ. և թէ որ ես զինքը գէշ վարժեցուցեր եմ հոտաւէտ եղերու, գեղեցիկ սպիտակ թաշկինակներու, ինչո՞ւ պիտի չտամ:

— Բայց ինչո՞ւ այդչափ անփոյթ եղար իրեն դաստիարակութեանն, ըսաւ Օֆէլիա:

— Վասն զի իրեն տէրերը ծոյլ են, և ծուլութիւնն այնչափ հոգի կը կորսնցընէ որ դու գաւազանով չես կրնար բժշկել. թէ որ ես ալ ծոյլ չըլլայի՝ ինչուան հիմայ հրեշտակ մը դարձեր էի. ես այնպէս կը կարծեմ, ինչպէս ձեր վարդապետներն ալ կ'ըսեն, որ ծուլութիւնը մայր է բարոյական չարեաց. և յիրաւի այնպէս ալ է:

— Գերեաց տէր եղողները ծանր պատասխանատուութիւն մ'ունին, ըսաւ Օֆէլիա. աշխարհիս գանձն ալ ինծի տան՝ ես յանձն չեմ առնուր։ Ձեր պարտքն է զանոնք աղէկ կրթել, անոնց հետ իբրև բանական մարդու հետ վարուիլ. վասն զի անոնք ալ անմահ հոգի մ'ունին, որուն համար պատասխան պիտի տաք Աստուծոյ դատաստանին առջև։ Ահաւասիկ այս է իմ կարծիքս, ըսաւ Օֆէլիա, որ առաւօտուընէ ի վեր ինքզինքը բռնելով լռիկ կեցեր էր։

— Դեռ կեցիր, կեցիր, ըսաւ Սէն-Քլէր՝ յանկարծակի ոտքի վրայ ելլելով, առաջ զմեզ աղէկ մը ճանչցիր, վերջէն մեր վրայ դատաստանդ ըրէ։

Վերջէն ելաւ դաշնակին առջև նստաւ ու սկսաւ աշխոյժ ու եռանդուն եղանակ մը զարնել։ Սէն-Քլէր երաժշտութեան մասնաւոր յարմարութիւն ունէր. մատուըները կարգէ դուրս արագութեամբ ու ճշդութեամբ կը շարժէր. ետևէ ետև քանի մը գեղեցիկ կըտորներ զարկաւ, ետքէն ոտք ելլելով զուարթութեամբ Օֆէլիային ըսաւ.

— Աղէկ դաս մը տուիր այսօր. դու քու պարտքդ կատարեցիր, ուրախ եմ։ Ճշմարտութեան քար մը նետեցիր մեզի, և այն-

պէս աղէկ նշան առիր՝ որ առջի բերան անկարելի եղաւ ինծի անոր յարգը ճանչնալ։

— Իմ կողմանէս բոլորովին իրաւունք չեմ կրնար տալ, ըսաւ Մարիամ. մէկը չըկայ որ ինծի պէս հոգ ունենայ իրեն գերիներուն վրայ. և սակայն անոնք օր օրուան վրայ անպիտանութեան կը դառնեն։ Ես այնչափ անգամ զիրենք խրատեր եմ, պարտքերնին առջևնին դրեր եմ, աշխատեր կոկորդս յոգնեցուցեր եմ իրենց համար։ Ամէն անգամ զիրենք եկեղեցի ղրկելու ջանք ըրեր եմ, թէ և եկեղեցական պաշտամանց բառ մ՚ալ չհասկընան. ուստի իրենք զիրենք լուացընելու ամէն միջոց ունին. բայց ինչպէս որ ըսի՝ ասոնք մարդկութեան գերան են, չեն կրնար իրենց այս վիճակէն վեր ելլել։ Ո՛րչափ ալ մարդ անոնց վրայ աշխատի՝ անօգուտ է. ես այս բանս փորձով գիտեմ, ես որ անոնց մէջ ծներ, անոնց հետ մեծցեր եմ, ու մինչև հիմայ անոնց հետ կ՚իյնամ կ՚ելլեմ։

Օֆէլիա կարծեց որ բաւական իր միտքը հասկըցուց, ուստի լռեց. իսկ Սէն-Քլէր սկսաւ սուլել։

— Սէն-Քլէր, ըսաւ Մարիամ, մի՛ սուլեր. չե՞ս գիտեր որ գլուխս կը ցաւի։

— Շատ լաւ, ըսաւ Սէն-Քլէր. ուրիշ բան դեռ կրնամ ընել զքեզ հաճելու համար:

— Կ'աղաչէի որ քիչ մը քաշած ցաւերուս վրայ գութ ունենայիր. ամենևին չկըրցայ քեզի հասկըցընել քաշածներս:

— Յիրաւի շատ յանցաւոր եմ, ըսաւ Սէն-Քլէր՝ քթին տակէն խնդալով:

— Այդպիսի խօսքերով սիրտս ծակել կ'ուզես:

— Ի՞նչպէս կ'ուզես որ հետդ խօսիմ, ըսէ. ես պատրաստ եմ զիս ամէն հրամաններուդ յարմարցընելու:

Այս միջոցիս մէյմ'ալ բակէն բարձրաձայն ծիծաղելու ձայն մը լսուեցաւ: Սէն-Քլէր մէկէն պատուհան վազեց նայեցաւ, ու ինքն ալ սկսաւ ծիծաղիլ:

— Ի՞նչ կայ, ի՞նչ կայ, ըսաւ Օֆէլիա՝ պատուհան վազելով:

Բակին մէջ վարը Թովմաս նստեր էր, և բաճկոնին օղակները բոլոր յասմիկի ծաղկըներով զարդարեր էր. և Վարդինին ալ ծընկանը վրայ ելած՝ վիզը վարդէ պսակ մը կ'անցընէր, և երեսը նայելով բարձրաձայն կը ծիծաղէր:

— Թովմաս, կ'ըսէր, ի՞նչ դարձար:

բոզիչներ ալ տալ իրենց՝ որ զիրենք կրթեն. այնպէս չէ՞։

— Ըսածդ կէս մը իրաւ է, պատասխանեց Օֆէլիա՝ քիչ մը մտածելէն ետև։

Սէն–Քլէր պատուհանէն դուրս կախուեցաւ, և տեսաւ որ Վարդուհին Թոմասին ձեռքէն բռնած կը պտըտէր։

— Այս խեղճերն առանց աղւոց ընկերութեան ի՞նչ պիտի ընէին, ըսաւ Սէն–Քլէր. տղաք են ճշմարտապէս հաւասարութիւն ճանչցողները։ Թովմասը Վարդիկին աչքին դիւցազուն մ՚է. անոր պատմութիւններն իրբև մէյմէկ զարմանալիք են իրեն առջև. անոր հոգևոր երգերն աւելի յարգի են իրեն՝ քան թէ գեղեցիկ տաղերգութիւն մը. անոր շինած խաղալիքներն՝ իրեն համար աշխարհիս ազնիւ գոհարեղէններէն վեր են։ Վարդիկ դրախտին այն վարդերէն է՝ որ Աստուած ստորին կարգի թշուառ մարդկանց համար այս աշխարհիս վրայ տնկեց։

— Շատ կը զարմանամ, ըսաւ Օֆէլիա. այս խօսքերդ լսողը զքեզ կրօնից վարդապետ կը կարծէ։

— Դժբախտութեամբ ըսածներս ես չեմ պահեր։ Շէյքսբիր բանաստեղծն իրեն դերասաններուն բերնով այսպէս կ՚ըսէ. «Ա֊

» ւելի կը սիրեմ բարին սովրեցընել քը-
» սան հոգւոյ՝ քան թէ այն քսաններէն մէկն
» ըլլալ՝ բարիք ընելու »։ Լաւ կը հա-
մարիմ աշխատանքն երկուքի բաժնել, խօ-
սելու մասը ես կ՚առնում, կատարելու մասն
ալ դու։

Ի՛նչպէս որ կ՚երևայ՝ Թովմաս աղէկ վի-
ճակի մը մէջ էր։ Վարդուհին հօրը աղաչեր
էր որ երբոր պտըտելու համար դուրս ել-
լելու ըլլայ՝ Թովմասն հետն առնու. ուստի
Թովմասին հրաման գնաց որ ուրիշ աշխա-
տութիւնները թողու, ու Վարդիկին հետ
միշտ դուրս ելլէ. Ինքն ալ սիրով յանձն
առաւ այս պաշտօնս։ Գլխէն ինչուան ոտքը
մաքուր հագուեցուցին զինքը, և բոլոր ա-
խոռն ունեցած աշխատութիւնը ուրիշ բան
չէր՝ բայց եթէ երթալ աչք մը տալ։ Մա-
րիամ ալ ուզեց որ երբոր Թովմաս քովը
մօտենայ՝ վրայէն գէշ հոտ մը չգայ. անոր
համար զինքը ետ կեցուցին այն ամէն աշ-
խատութիւններէն՝ որ վրան անախորժ հոտ
մը կը թողուին. վասն զի կ՚ըսէր թէ ան-
ախորժ հոտերը ջղերուն կը զարնեն, որով
շատ չանցնիր կեանքս ալ կը վերցընեն։
Հետևաբար Թովմասին չուխայէ մաքուր հա-
գուստ մը կարեցին, գլուխն ալ ջրշան մոր-

թէ գլխարկ մը, ոտքը փայլուն կօշիկ, վիզն աղուոր վզնոց մը, այնպէս որ տեսնողը կը պատկառէր իրմէ։

Բնակարանն ալ շատ գեղեցիկ էր. ուզած ծաղկըները, թռչունները, աւազանները, մետաքսէ օթոցները, լոյսը, ճրագարանները, արձանիկները, ոսկեզօծ զարդերն ունէր. այնպէս որ տեսնողը ազնուականի մը բնակարան կը կարծէր։

Կիրակի առաւօտ մը՝ Մարիամ հագուած սգուած և մարգարիտներով ու ակունքներով զարդարուած՝ պատրաստուեր էր եկեղեցի երթալու. ընդհակառակն Օֆէլիա ալ պարզ ու անպաճոյճ հագուստ մը հագեր էր։

— Վարդիկն ո՞ւր է, հարցուց Մարիամ։

— Սանդուղին վրայ Մամմիին հետ կը խօսի, պատասխանեց Օֆէլիա։

Իսկ անդին Վարդիկ Մամմիին կ'ըսէր.

— Սիրելի, կը տեսնեմ որ գլխուդ ցաւէն շատ նեղութիւն կը քաշես, կրնայ ըլլալ որ դուրս ելլելով քիչ մ'անցնի. բայց սա հոտաւէտ շիշն ա՛ռ ու հոտուըտա՛։

— Ի՞նչպէս կրնամ ես այս ոսկիէ ականակուռ շիշը գործածել, ըսաւ Մամմի. ինծի չի վայլեր, ու չեմ կրնար ընդունիլ։

— Ինչո՞ւ պիտի չվայլէ. դու այս շիշին

կարօտութիւն ունիս, ես ամենևին չունիմ. մայրս ամէն գլխու ցաւի դէմ անիկայ կը գործածէր. ուստի իմ սիրոյս համար ա՛ռ, շուտ ըրէ, պիտի երթամ...

Աս ըսաւ Վարդուհին ու շիշը ձեռքը առնալով մօրը եանէն վազեց հասաւ:

— Ինչո՞ւ ուշացար, հարցուց մայրը:

— Շիշս Մամմիին տուի՝ որ հետը մէկտեղ եկեղեցի տանի:

— Ի՞նչ, ոսկիէ շիշդ Մամմիին տուի՞ր, պոռաց Մարիամ՝ ոտքը գետին զարնելով. դու ե՞րբ խելք պիտի սորվիս. շո՛ւտ, վազէ գնա ե՛տ առ:

Վարդիկ ամօթէն սկսաւ գետին նայիլ. և երբ ետ դառնալու վրայ էր,

— Մարիամ, տղէն ի՞նչ կ'ուզես, ըսաւ Սէն-Քլէր վրայ հասնելով, հանդիստ թող զինքը:

— Ահ, Սէն-Քլէր, այդ կերպով ի՞նչպէս կ'ուզես որ աշխարհիս վրայ իր ընթացքը կատարէ, ըսաւ Մարիամ:

— Այդ բանը Աստուած գիտէ. բայց ես այս գիտեմ որ երկինքը քեզմէ ալ, ինծմէ ալ լաւագոյն ընթացք մը պիտի կատարէ:

— Հայրիկ, ըսաւ Վարդուհի, կ'աղաչեմ մօրս սիրտը մի՛ նեղացըներ:

— Ի՛նչ և իցէ, հրամանքդ ալ մեզի հետ չե՞ս ուզեր եկեղեցի գալ, ըսաւ Օֆէլիա Սէն-Քլէրին։

— Շնորհակալ եմ, ես եկեղեցի երթալու սովորութիւն չունիմ։

— Շատ կը փափագէի որ Սէն-Քլէր ալ երբեմն երբեմն եկեղեցին երթար, ըսաւ Մարիամ. բայց կրօնքի սկզբունք մ'ալ չունի, որ մեծ ամօթ է կրթեալ մարդու մը համար։

— Գիտեմ, գիտեմ, ըսաւ Սէն-Քլէր, դուք ինչ բանի համար եկեղեցի կ'երթաք...։ Վարդիկ, ի՞նչ, դո՞ւ ալ պիտի երթաս. կեցիր քեզի հետ մէկտեղ խաղանք։

— Շնորհակալ եմ, հայրիկ. ես ալ կ'ուզեմ եկեղեյի երթալ։

— Հո՛ն երթաս պիտի ձանձրանաս, ըսաւ Սէն-Քլէր։

— Երբեմն, ըսաւ Վարդուհի. բայց ամէն ջանք կ'ընեմ որ քունս չկոխէ։

— Ուրեմն ինչո՞ւ կ'երթաս։

— Հօրաքոյրս, ըսաւ քթին տակէն, ինծի սորվեցուց որ Աստուած կ'ուզէ զմեզ իւր տունը տեսնել. և որովհետև ամէն բան Աստուծմէ մեզի կու գայ, այսպէս ալ պէտք է որ մենք իր կամքը կատարենք։

— Ա՜հ, սիրելիս ու աչքիս լոյսը, ըսաւ Սէն-Քլէր՝ Վարդուհին պագնելով. գնա, ինծի համար ալ աղօթք ըրէ։

— Ես հրամանքիդ համար միշտ աղօթք կ'ընեմ, ըսաւ աղջիկն ու կառքը ցատքեց։

Կառքն սկսաւ հեռանալ, Սէն-Քլէր դեռ ձեռքով համբոյր կը մատուցանէր աղջկանը. և աչքէն խոշոր արցունքներ սկսաւ թափել. ետքէն վեր ելաւ նստաւ լրագիր կարդալու։

— Նայէ, Վարդիկ, ըսաւ մայրը ճամբան երթալու ատեն. գերիններուն հետ աղէկ վարուելու է, բայց այնպէս ալ ընելու չէ որ անոնցը կարծէ թէ մեր ազգականն են, կամ մեզի հաւասար են։ Օրինակի համար, թէ որ Մամմի հիւանդ ըլլայ՝ ձեռքէդ գայ՝ զինքը անկողինդ կը պառկեցնես։

— Ինչու չէ, ըսաւ Վարդուհի. հոն աւելի հանգիստ կը պառկի՝ քան թէ իր անկողնոյն մէջ. ես ալ ան ատեն աւելի կրնամ զինքն հոգալ։

Մարիամ նեղացաւ այս պատասխանին վրայ, տեսնելով որ մէջը ամենևին բարոյական զգացմունք մը չկայ։

— Ի՞նչ ընելու է, պոռաց, ատոր միտքը փոխելու համար։

— Ոչ ինչ, ըսաւ Օֆէլիա։

Վարդուհին քիչ մը տրամեցաւ. բայց բարեբախտաբար՝ ինչպէս որ սովորութիւն է տղոց՝ ամենևին սրտերնին չեն դներ, ուստի քիչ մ'ատենէն ետև ինքն ալ սկսաւ խօսիլ ու ծիծաղիլ։

*

— Նայինք, ըսաւ Սէն-Քլէր սեղանին վրայ, այսօրուան քարոզն ի՞նչ բանի վրայ էր։

— Ո՛հ, պատասխանեց Մարիամ, այսօր Ա. Ա. պատուելին շատ գեղեցիկ քարոզ մը տուաւ. դու ալ պէտք էիր լսել. կարծես թէ բոլորովին իմ միտքս կը բացատրէր։

— Ուրեմն մէկ շնչով շատ բանի վրայ խօսած պիտի ըլլայ, ըսաւ Սէն—Քլէր։

— Ըսել կ'ուզեմ թէ ես մարդկային ընկերութեան վրայ ինչ կարծիք որ ունիմ՝ անոնց վրայ խօսեցաւ ։ Քարոզին բնաբան դրաւ թէ Աստուած ամէն բան իր վիճակին վայելուչ ստեղծեց. և ցըցուց թէ մարդկային ընկերութեան մէջ եղած այլ և այլ կարգերն Աստուծմէ են. և թէ աշխարհիս վրայ ամէն բան գեղեցիկ յարմարութեամբ են իրարու հետ. պէտք է որ ոմանք աղքատ ըլլան, ոմանք հարուստ. ոմանք հրամայելու

համար ծներ են, ոմանք ալ հնազանդելու։ Եւ գերութեան դէմ խօսողներուն բոլոր պատճառները լուծեց. սուրբ Գրքէն վկայութիւններ բերելով՝ խօսքը հաստատեց։ Ափսոս որ դու ալ հոն չէիր՝ որ լսէիր ու միտքդ պահէր։

— Ես կարօտութիւն չունիմ. ես իմ ընթացիկներս ունիմ, որ քաւական ինծի լոյս կու տան, ըսաւ Մէն–Քլէր։

— Ի՞նչ, վրայ բերաւ Օֆէլիա, այդչափ ցուցմունքներուն չե՞ս հաւնիր։

— Շիտակը խօսելով՝ այդպիսի խնդիրներուն կրօնական կերպարանք տուողներուն վրայ ես շատ գայթակղեր եմ։ Թէ որ հարկ ըլլար ինծի գերութեան վրայ խօսելու, շիտակ շիտակ կ՚ըսէի՝ թէ ուրիշ բանի համար գերի չենք պահեր՝ բայց եթէ մեր հաճոյից ու շահուն. անհաւասիկ այդպիսի ծանր խնդրոյ մը՝ երկու խօսքով լուծումը, ուստի մէկդի թողլու է կեղծեալ բարեպաշտութիւնը։

— Կըսաւցընէ. Օգոստինոս, որքազան բաներուն պատիւն ալ չես պահեր. բուածիդ գայթակղեցայ։

— Թող գայթակղական ըլլայ, ճշմարտութիւնն այս է։ Ինչ գեղեցիկ մեկնութիւն Ս. Գրոց խօսքին. տաօր զօրութեամբ դեռ կրնար շատ բան իրաւացի ցուցընել։

— Վերջապէս, ըսաւ Օֆէլիա, հրամանքդ ի՞նչ կը մտածես. գերի ունենալն աղէ՞կ է թէ գէշ։

— Ես կը վախեմ, պատասխանեց Սէն-Քլէր զուարթութեամբ մը, Նոր-Անգղիոյ տրամաբանութենէն. թէ որ պատասխան տամ, ուրիշ աւելի դժուարին հարցմունքներ ալ պիտի ընես, որոնց պիտի ստիպուիմ կամ այո՛ ըսել և կամ ո՛չ։

— Պարապ տեղը մի՛ աշխատիր, ըսաւ Մարիամ Օֆէլիային, բերնէն խօսք մը չես կրնար առնուլ. միշտ փախուստ կու տայ. և կարծեմ թէ այս բանս կրօնք չունենալէն առաջ կու գայ։

— Ի՞նչ կրօնք, ըսաւ Սէն-Քլէր. միթէ կրօ՞նք է այդ ձերը՝ որ ուզածնուդ պէս սուրբ Գրոց վարդապետութիւնը կը ծըռմըռտըկէք, ու հիմակուան մեր ինքնահաւան մարդկութեան հաճոյից ու կամացը կը յարմարցընէք։ Այդ բնութեան դէմ եղած անիրաւութիւնն ու անխղճութիւնը միթէ դուք կրօ՞նք կ'անուանէք։ Կրօնք գտնելու համար պէտք է աչուընիս մեզմէ վեր տանինք առ Աստուածութիւնն արդար և ողորմած, և ոչ թէ մեզմէ վար։

— Ուրեմն հրամանքդ չե՞ս հաւատար թէ

սուրբ Գիրքը գերութիւնը կ'արդարացընէ, հարցուց Օֆէլիա։

— Սուրբ Գիրքը, ըսաւ Սէն-Քլէր, իմ մօրս կենացն ու վարուց կանոնն էր. անով ապրեցաւ, անով ալ մեռաւ. չեմ կրնար ըմբռնել որ անոր մէջ այդպիսի վարդապետութիւն մ'ըլլայ։ Նման է՝ թէ մէկն ինծի ապացուցանէ թէ մայրս կը հայհոյէր, կը գինովնար, ուստի պէտք է որ ես ալ իրեն հետեւիմ։ Այս մոլութեանց վրայ ունեցած կարծիքս առանց կորսնցընելու՝ առ մայրս ունեցած յարգութիւնս կը կորսնցընեմ. և աշխարհիս վրայ մարդուս մեծ մխիթարութիւն է յարգութեան առարկայ մը գտնելը։ Այս ըսել կ'ուզեմ թէ ամէն մարդ այնպիսի լեզու կը բանէ՝ ինչ լեզու պէտք էր որ բանէր։ Մարդկային ընկերութիւնը թէ՛ Եւրոպա եղեր է և թէ՛ Ամերիկա՝ այնպիսի մասունքներէ կը բաղկանայ, որ եթէ ըրածնին քննելու ըլլաս՝ բարոյականութենէ շատ հեռու կը գտնես. ամէն մարդ բացարձակ արդարութեան կը ցանկայ, բայց միանգամայն կը նայի թէ ուրիշներն ինչ կ'ընեն՝ ինքն ալ անոնցմէ վար չի մնար։ Ուստի թէ որ մէկը գայ ինծի ըսէ՝ թէ «Գերի ունենալն հարկաւոր բան է, առանց անոր չենք կրնար ըլ-

լալ, ապա թէ ոչ մուրացկանութեան վիճակի մէջ կ'իյնանք », եւ կը յարգեմ այս բողոքին համարձակախօսութիւնը, վասն զի միտքը ինչ է՝ բերանն ալ այն է։ Բայց թէ ընդհակառակն մէկը կեղծաւորաբար այս բանիս համար ինծի սուրբ Գրքէն վկայութիւններ ալ բերէ, եւ այնպիսին կ'ատեմ, վասն զի կը ջանայ իր միտքը կեղծելու։

— Ամենեւին գթութիւն չունիս, ըսաւ Մարիամ։

— Ենթադրենք թէ, վրայ բերաւ Մէն-Քլէր, բամբակը վար իջնէր, գերիներն ալ բոլորովին իրենց արժէքը կորսնցընէին, ի՞նչ կարծէք, այս բանիս համար ալ սուրբ Գրքէն ուրիշ վկայութիւն մը չէի՞ն գտներ։ Երբոր գերիներն ա՛լ բանի չգային՝ ան ատեն ի՞նչ նոր լոյսեր կը ծագէին աշխարհիս վրայ, և թէ ի՞նչպէս սուրբ Գիրքն ու բանականութիւնը գերութեան դէմ կ'ելլէին։

— Ի՞նչ կ'ուզէ ըլլայ, ըսաւ Մարիամ՝ մեծ բազմոցի մը վրայ երկընննալով, ես ինծի բախտ կը համարիմ այնպիսի երկիր մը ծնանիլս՝ ուր գերութիւնն ոտքի վրայ է. ինծի օրինաւոր բան կ'երեւայ, և պէտք է ալ որ ըլլայ, և ինչ և իցէ կերպով ինծի հարկաւոր կ'երեւայ։

— Իսկ դու ի՞նչ կ'ըսես աղջիկս, հարցուց Սէն-Քլէր Վարդիկին, որ ձեռքը ծաղիկ մը ներս կը մտնէր։

— Ո՞ր բանին, հայրիկ։

— Ո՞րը կ'ընտրէիր. Ուէրմընդ մեծ հօրեղբօրդ պէս ապրի՞լ, թէ մեզի պէս տուն մը լի գերի ունենալ։

— Երկրորդը. վասն զի մեր ապրելու կերպը աւելի աղէկ է, պատասխանեց Վարդիկ։

— Ինչո՞ւ, հարցուց Սէն-Քլէր՝ աղջկան երեսը շոյելով։

— Վասն զի այս կերպով սիրելու աւելի մարդ ունինք, ըսաւ Վարդուհին։

— Տուած պատասխանիդ չեմ զարմանար, ըսաւ Մարիամ. այս նիւթիս վրայ Վարդիկ միշտ արտառոց մտածութիւններ դուրս կը հանէ։

— Ի՞նչ արտառոցութիւն ունի ըսածս, հայրիկ, փսփսաց Վարդիկ՝ հօրը ծնկան վրայ ելլելով։

— Յիրաւի ըստ աշխարհի՝ Վարդիկին ըսածն արտառոց է, կրկնեց հայրն ալ։ Բայց ինչուան հիմայ ո՞ւր էիր։

— Թոմմասին խուցն էի, պատասխանեց աղջիկը, իրեն երգերը մտիկ կ'ընէի. կերակուրս ալ ինծի հոն բերաւ Դինան։

— Ի՞նչպէս, աղէկ եղանակներ գիտե՞ս։

— Հրամեր ես. այնպիսի գեղեցիկ երգեր գիտէ Վերին Երուսաղէմի վրայ, Հրեշտակաց վրայ, Քանանու երկրին վրայ՝ որ չեմ կրնար ըսել։

— Անշուշտ թատերական երգերէն աւելի սիրեցիր զանոնք։

— Հրամեր ես. ինծի ալ սկսաւ սորվեցընել։

— Հաւատա, մրմռաց քթին տակէն Մարիամ, անկէ ծաղրական բան չի կրնար ըլլալ։

— Տիրակը՝ Թովմասին հոգեւորութեան վրայ շատ զարմացեր եմ, վրայ բերաւ Սէնքլէր. այս առաւօտ կանուխ՝ ձիու կարօտութիւն ունենալով՝ իրեն պառկելու խուցը գնացի. դրսէն լսեցի որ բարձր ձայնով ջերմեռանդութեամբ աղօթք կ'ընէր, և ամենայն եռանդեամբ գիս ալ Աստուծոյ կը յանձնէր։

— Զարմանք չէ, պատասխանեց Մարիամ ծիծաղելով. անշուշտ իմացեր էր որ դրսէն մտիկ կ'ընես։

— Չէ, չի կրնար ըլլալ. վասն զի համարձակ իմ պակասութիւններուս համար մէկիկ մէկիկ Աստուծոյ կ'աղաչէր։ Կարծեմ ինքն ալ իմացեր է՝ որ իմ վրաս քիչ մը

կրօնքի պաղութիւն կը քալէ. ուստի Աստուծոյ կ'աղաչէր որ այս բանս վրայէս վերցընէ։

— Աստուած լսէր Թումասին աղօթքին, ըսաւ Օֆէլիա։

— Կարծեմ դու ալ նոյն համարմունքն ունիս վրաս, պատասխանեց Սէն-Քլէր։ Լաւ, լաւ, տեսնենք։

## ԳԼՈՒԽ ԺԷ.

*Ազատ մարդու մը ինքզինքը պաշտպանելը.*

Դառնանք նորէն քուաքէրներուն տունը։ Այն օրը որ Գէորգն ու Ելիզան մէկզմէկ գտան՝ իրիկուան դէմ Հռաքէլ Հէլիտէյ կ'երթար կու գար, ու իր դարաններուն մէջէն հարկաւոր բաներ կը հանէր փախստականաց համար, որոնք նոյն գիշերը ճամբայ պիտի ելլէին։ Երեկոյեան մութը կոխելու վրայ էր, և արևուն շառագոյն գունտը կարծես թէ տխրագին դիմօք հորիզոնին վրայ կանգ առեր էր, ու իր գեղնորակ խաղաղ ճառագայթներովը պզտի խուց մը կը լուսաւորէր, ուր Գէորգն ու իր կինը նստեր

էին։ Գէորգ ծնկանը վրայ առեր էր իր տղեկը, ու մէկ ձեռքովն ալ Ելիզային ձեռքը սեղմեր էր, և երկուքն ալ լուրջ ու տխուր կեցած, աչուըննին արցունքով կը փայլէր։

— Այս ասանկ է, Ելիզա, ըսաւ Գէորգ, բոլոր ըսածներդ իրաւ է. դու ինծմէ շատ վեր ես, ասկէ ետեւ ես ալ քու խօսքէդ դուրս պիտի չելլեմ, կ'ուզեմ իբրեւ ազատ մարդ գործել, ու իբրեւ քրիստոնեայ մտածել. ամենակարողն Աստուած ալ գիտէ որ միտքս բարի է, և մինչ ուրիշներն ինծի դէմ կը դարձնէին՝ ես դիս կը բռնադատէի անոնց չարիք մը չհասցընելու։ Հիմայ անցուկը մոռցուկ ըլլայ. կ'ուզեմ սրտէս ամենայն ատելութիւն և թշնամութիւն դուրս ձգել, սուրբ Գիրքը ձեռք առնուլ և պարտքերս լաւ կատարել սորվիլ։

— Երբոր Գանատա հասնինք, ըսաւ Ելիզա, ես ալ կ'օգնեմ քեզի. կար ընել բաւականապէս գիտեմ, լուացք ընել, ճերմակեղէններն արդուկել ձեռքէս կու գայ, գլուխ գլխու տուած՝ երկուքնիս մէկտեղ աշխատելով՝ հացերնիս կը ճարենք։

— Այո՛, այո՛, Ելիզա, շատ երջանիկ կ'ըլլանք թէ որ ինչուան վերջը մէկտեղ ըլլանք։ Ա՛հ, Ելիզա, երանի՜ թէ մեր թշնամիները

կարող ըլլայէն ըմբռնելու մարդու մը զգացած ուրախութիւնը՝ երբոր կ'ըսէ թէ իրեն կինն և իրեն տղաքը՝ իրենն են։ Եւ շատ անգամ զարմացեր եմ անոնց վրայ որ ուրիշ ամէն բանէ զուրկ են, միայն կրնան ըսել թէ կինս իմս, տղաքս իմս են։ Ես ալ հիմայ հարուստ ու զօրաւոր եմ, թէպէտ և ձեռուըներէս զատ ուրիշ բան չունիմ. ասկէ աւելի բան չեմ խնդրեր Աստուծմէ։ Բոլոր կեանքս անխոնջ աշխատութեամբ անցուցեր եմ, և ոչ դանկ մ'ունիմ՝ որ իմս է կարենամ ըսել, ոչ որջ մը՝ գլուխս դնելու, և ոչ ալ թիզ մ'երկիր. բայց թէ որ զիս ազատ միայն թողուն՝ ես գոհ եմ և իրենց ալ շնորհակալ կ'ըլլամ։ Կ'աշխատիմ ու վաստըկած դրամովս՝ քու ու Հենրիկին գինը Շէլպիին կը վճարեմ։ Իսկ իմ գինս՝ ես հարիւրապատիկ վճարեր եմ տիրոջս իմ աշխատութիւններովս, ա՛լ անոր տալիք չունիմ։

— Բայց մենք բոլորովին վտանգէն դուրս չենք, կրկնեց Էլիզա. դեռ Գանատա չմըտանք։

— Իրաւ է, պատասխանեց Գէորգ, բայց կարծես թէ ազատ օդ մը կը ծծեմ ես, որ զիս կը զօրացընէ։

Սոյն միջոցին քովի խոհակերոցը խօսելու ձայներ լսուեցան․ քիչ մ'ետքը խցին դուռը զարնուեցաւ․ Ելիզա դողդղալով մ'ելաւ բացաւ։

Սիմէոն Հէլիոտէյն էր, հետն ալ ուրիշ քուաքէր եղբայր մը՝ Փինեհէս Ֆլեչըր անունով։ Փինեհէս բարձրահասակ ու չորչըրուկ մարդ մ'էր, խարտեաշ մազերով, վարպետորդի ու կարիճ կերպարանքով․ ինքը Սիմէոնին պէս խաղաղ ու հանդարտ դէմք չունէր, այլ ընդհակառակն արեւէ անցած, աշխարհք ճանչցող մարդ կ'երեւար։

— Մեր այս Փինեհէս բարեկամն, ըսաւ Սիմէոն, Գէորգ, քեզի հարկաւոր բան մ'ունի ըսելիք, աղէկ կ'ըլլայ որ դու ալ գիտնաս ։

— Ըսելիքս այս է, վրայ բերաւ Փինեհէս, և ասկէ կը հասկընաս թէ որչափ հարկաւոր բան է եղեր մարդուս միշտ արթուն ըլլալ, նոյն իսկ քնանալու ժամանակը։ Երէկ իրիկուն սա ճամբուն վրայի պանդոկը գնացեր էի։ Ճամբէն յոգնած ըլլալով՝ քիչ մը բան դրի բերանս ու անկիւն մը քաշուած՝ տոպրակներու դէզի մը վրայ երկընցայ, վրաս ալ գոմէշի մորթ մ'առի, մինչեւ որ անկողինս պատրաստեն․ ու հոն քիչ ատենէն քունս տարեր է։

— Միայն թէ մէկ աչքդ բաց էր, այնպէս չէ՞, հարցուց Սիմէոն ծիծաղելով։

— Ոչ, երկու աչքերս ալ գոց էին, և ժամ մը խոր քուն եղեր եմ. բայց մէյմ'ալ արթըննամ նայիմ՝ որ ուրիշ մարդիկներ ալ ժողովեր են հոն, և մէջ տեղը սեղանի մը չորս կողմը նստած կը խօսէին, կը խմէին։ Տեղէս առանց շարժելու՝ ամենայն ուշադրութեամբ մտիկ ըրի, նայիմ թէ ի՛նչ կը խօսէին, վասն զի Փուաքէր բառը ականջիս դպաւ։ Ուրեմն, ըսաւ մէջերնէն մէկը, քուաքէրներուն տունը ապաւիներ են հա՞։

Ան ատեն սկսայ ականջներս աւելի տընկել, և հասկըցայ որ հոս ապաւինող փախըստականաց վրայ կը մտածէին ու կը խօսէին։ Շատ չեն մնար հոն, ըսաւ ուրիշ մը. երիտասարդն իր առջի տիրոջը կը ղրկենք, որ այնպէս վարուի հետն՝ որ ուրիշ գերիներուն բարի օրինակ ըլլայ, և անոնց մէջէն մէյմ'ալ փախչելու կամքը վերցուի։ Մենք ալ, մէջերնէն երկու հոգի կ'ըսէին, կնիկը կ'առնունք և Նոր-Օրլէան կը տանինք, ու հոն մեր հաշուին կը ծախենք, և յուսանք թէ հազար վեց հարիւր, հազար ութ հարիւր տոլլար անկէ հանենք. տղան այդէն ծախուած է, իրեն տիրոջը կը դարձընենք։

Ցակոբն Ճէյմս ու մայրն ալ նորէն Քէնդըքի կը սանինք։ Մօտի քաղաքէ մը, կ՚ըսէին, երկու զինուոր ալ պիտի գան իրենց օգնելու, և թէ՝ կինը դատաւորին դիմացը պիտի հանեն, իրենցմէ մէկն ալ՝ որ կարճահասակ ու ստախօսին մեծն էր՝ պիտի երդմամբ հաստատէ թէ այն կինն իր ապրանքն է, և պիտի առնու ու դէպ ի հարաւ պիտի իջնէ։ Մէկ խօսքով՝ այս գիշեր ինչ ճամբայ պիտի բռնենք տեղն ի տեղը գիտեն, և ութ հոգւով ետեւնէս պիտի իյնան։ Հիմայ ի՞նչ ընելու է։

Այս լուրս լսողներուն ցուցած այլեւայլ կերպարանքները վարպետ նկարչի մը վըրձնոյն արժանի տեսարան մ՚էր։ Ռաքէլ Հէլիտէյ որ նոյն ատեն խմորիկէն շաղուելու հետ էր՝ այս լուրս առնելով՝ քար կտրեցաւ, ու ալիւրոտ ձեռուըները երկինք վերուցած՝ անշարժ մնաց. Սիմէոն խոր մտածմունքներու մէջ ինկած կ՚երեւար. Ելիզան ալ էրկանը պըլշուած՝ սազնապեալ աչուըներով երեսը կը նայէր։ Իսկ Գէորգ թեւերը ծալլած՝ աչուըները կրակ դարձած՝ ոտքի վրայ կեցեր էր. քանի որ կը մտածէր որ քրիստոնեայ ազգի մ՚օրինաց պաշտպանութեան տակը՝ կնիկը աճուրդի պիտի հանեն ու տղան

ալ մարդավաճառի մը ձեռք պիտի տան՝ որային հին դատնութիւնները կը նորոգուէին։

— Ի՞նչ պիտի ընենք, Գէո՛րգ, հարցուց Եւլիզա սկար ձայնով մը։

— Ես իմ ընելիքս գիտեմ, պատասխանեց Գէորգ կտրուկ կերպով։ Ու քովի խուցը մտաւ ու երկու ատրճանակները ձեռքը դուրս եկաւ։

— Ո՛հ ... նայէ, նայէ. գլուխը շարժելով ըսաւ Փենեհէս Սիմէոնին, նայէ ի՛նչ բաներու պատրաստութիւն կը տեսնուի։

— Տեսա՛յ, տեսա՛յ, պատասխանեց Սիմէոն հառաչելով. Աստուած տայ որ այն կէտին չհասնինք։

— Ես չեմ ուզեր, վրայ բերաւ Գէորգ, որ մէկը ինքզինքն ինծի համար վտանգի մէջ դնէ։ Թէ որ կառքերնիդ մեզի փոխ տաք ու ճամբայ մ'ալ ցուցընէք՝ մենք մինակ կ'երթանք։ Ճէյմ առիւծի պէս ուժով է, ու վրան յուսահատական կարճութիւն կայ. ես ալ իրմէ վար չեմ մնար։

— Աղէկ, աղէկ, բարեկամ, բայց հետդ ճամբայ ցուցընող մ'ալ պէտք է։ Դու ազատ ես պատերազմելու[1], թէ որ կ'ուզես,

1. Քուաքէրք, որ և Բարեկամք կ'ըսուին, պատերազմի սաստիկ դէմ են, ու վրանին յարձակմունք մ'ըլլայ

բայց մենք քանի մը ճամբաներ կը ճանչնանք՝ որ դուն չես գիտեր ։

— Բայց ինծի համար չեմ ուզեր որ դուք շփոթութեան մէջ իյնաք։

— Շփոթութիւնը ո՞ւր է, պատասխանեց Փենեհէս կրքով մը. նայէ որ դու չշփոթիս։

— Փենեհէս խոհեմ ու յաջողակ մարդ մ'է, վրայ բերաւ Սիմէոն. աղէկ կ'ըլլայ, Գէորգ, որ անոր խորհրդոյն հետեւիս. պէտք չէ, կրկնեց՝ ծանր կերպով մը ձեռքը ուսին վրայ դնելով, ու տարճանակները ցուցընելով, պէտք չէ գահավէժ խորհուրդներով գործ տեսնել. երիտասարդաց արիւնը քիչ մը շատ տաք է։

— Ես չեմ ուզեր որ մէկն ալ ինծի հետ կապուի, պատասխանեց Գէորգ հանդարտութեամբ. միայն այս կը խնդրեմ ձեզմէ՝ որ թողուք որ առկից ելլեմ երթամ։ Բայց...

Այս խօսքիս կանգ առաւ, ճակատը կընճռեցաւ, ու երեսին գոյնը նետած,

— Ես քոյր մ'ունիմ, կրկնեց, որ Նոր-Օռլէան ծախուեցաւ. գիտեմ ինչու համար կը գնեն այսպիսիները ...։ Ես ալ ուրեմն

ամենեւին բռնութեամբ ինքզինքնին չեն պաշտպաներ. անոր համար հոս ըսել կ'ուզէ Գէորգին՝ որ դուն կըրնաս պատերազմիլ, բայց մենք չենք կրնար։

կրնա՞մ պաղ արեամբ տեսնել՝ որ կնիկս յափշտակեն իմ ձեռքէս, ու անօրէնութեան մէջ ձգեն զինքը, երբ Աստուած ինծի այս թեւերս տուեր է որ զինքը պաշտպանեմ...: Չէ ... կ'օգնէ ինծի Աստուած ... Արեանս մինչեւ վերջին կաթիլը կը թափեմ ու չեմ թողուր՝ որ կնիկս ու տղաս ձեռքէս յափշտակեն: Կրնա՞ք զիս պախարակել այս ըրածիս համար ...

— Ոչ ո՛ք կրնայ զքեզ պախարակել, պատասխանեց Սիմէոն. մարմինն և արիւնն ասկէ տարբեր բան չէր կրնար ընել: Վա՜յ աշխարհին որ այս գայթակղութեանց պատճառ կ'ըլլայ, ու վա՜յ անոնց ալ՝ որ այս չարեաց ընողներն են:

— Դուն ալ, պարոն, վրայ բերաւ Գէորգ, իմ տեղս ըլլայիր՝ սոյն բանս չէի՞ր ընէր:

— Աղօթք կ'ընեմ՝ որ Աստուած այս փորձութեան մէջ չձգէ զիս, պատասխանեց Սիմէոն. հը՜մ, մարմինը տկար է:

— Ես կարծեմ, վրայ բերաւ Փենեհէս՝ հողմաշարժ ջաղացքի թեւերուն պէս բազուկները տարածելով, իմ մարմինս սոյնպիսի դիպուածոց մէջ բաւական ուժով է. ես յանձն կ'առնում, Գէորգ, քեզի օգնութեան գալու:

— Թէ որ պէտք է որ մարդ գէշերու դէմ դնէ, կրկնեց ծերուկ Սէմէոնը, Գէորգ ալ այս դիպուածիս մէջ ազատ է իր ետեւն եկողներուն դէմ՝ դնելու։ Բայց մեր ժողովըրդեան առաջնորդները լաւագոյն ճամբայ մը կը սովրեցընեն, որովհետեւ մարդուս բարկութիւնն Աստուծոյ արդարութիւնը չի լեցըներ։ Բայց այս բանս շատ դժուար բան է մարդուս ապականեալ բնութեան համար, ու ոչ ոք կրնայ ասոր հնազանդիլ, մինչեւ որ երկինք չօգնէ իրեն. անոր համար աղօթք ընելու ենք՝ որ փորձութեան մէջ չիյնանք։

— Ես ալ աղօթք կ'ընեմ, պատասխանեց Փենեհէս, բայց թէ որ փորձութիւնը սաստիկ ըլլայ.... Աղէկ, աղէկ ուրեմն.... վա՜յ այն թշուառականներուն։

— Կերպէդ յայտնի կ'երեւայ, բարեկամ, ըսաւ ժպտելով Սիմէոն, որ դուն քուաքէրաց մէջ ծնած չես. անոր համար երբեմն երբեմն քու առջի բնութիւնդ կ'արթըննայ։

Շիտակն ըսելով՝ Փենեհէս երկայն տարենէ ի վեր անտառաբնակ մը դարձեր էր. աղէկ ու ճիշտ նշան առնող որսորդ մ'եղեր էր. բայց քուաքէր աղջկան մը հետ կարգուած ըլլալով՝ անոնց քով շատ կը յաճա-

խէր , տաով կամաց կամաց բոլորովին ա-
նոնց ընկերութեան անդամ եղաւ։ Եւ թէ-
պէտ համեստ , պզուշաւոր ու գործունեայ
մարդ մ'էր, ու իր վրայ ամբաստանութիւն
մը , դէշ խօսք մ'ալ լսուած չէր, բայց ա-
նոնք որ ինքզինքնին հոգեւոր յառաջադի-
մութեան ամենաբարձր աստիճանը ելած կը
կարծէին՝ իրենցմէ վար մնալուն համար կը
յանդիմանէին զփենեհէս։

— Բարեկամ փենեհէս[1] կարդէ դուրս
մտածութիւններ ունի, վրայ բերաւ Հոաքէլ
ծիծաղելով , բայց ապահով ենք որ խիստ
աղէկ սիրտ ունի։

— Աղէկ չէ՞, ըսաւ անդիէն Գէորգ, որ
փութանք ու փախչինք։

— Ես այս առտու չորսին ելայ, պա-
տասխանեց փենեհէս, ու մէկ շնչով վազե-
ցի եկայ. թէ որ իրենք մեր ճամբէն ալ գան՝
մենք իրենցմէ երկու երեք ժամ աւելի ա-
ռաջ ենք. բայց մութը չկոխած՝ վտանգա-
ւոր է ճամբայ ելլելը. մեր անցնելու գեղե-
րուն մէջ դէշ մարդիկներ կան՝ որ զմեզ տես-
նելու ըլլան՝ կրնայ ըլլալ որ զմեզ արգիլեն.
բայց երկու ժամէն ապահովապէս ճամբայ

1. Քուաքէրները իրարու բարեկամ կը կանչեն։

կրնանք ըլլալ։ Ես կ՚երթամ Միքայէլ Գրոսին կը յանձնեմ որ մեր ճամբայ ելլելէն վերջը ետեւնէս գայ ու ճամբուն վրայ կենայ, ու թէ որ տեսնէ որ կը մօտենան մեր ետեւէն եկողները՝ շուտ հասնի մեզի իմացընէ. Միքայէլին ձին խիստ վազուկ ու արագ է. միանգամայն կ՚երթամ Ճէյմին կ՚իմացընեմ որ շուտ պատրաստուի իր պառաւ մօրը հետ ու ձիերն ալ պատրաստէ։ Մենք բաւական միջոց առեր իրենցմէ առաջ ենք. կրնանք՝ իրենք մեր ետեւէն չհասած՝ առաջի իջեւանն հասնիլ։ Ուստի քեզ տեսնեմ, Գէորգ, սիրտ առ. այս առաջին անգամը չէ որ այս տեսակ բանի ձեռք կը զարնեմ, ըսաւ ու դռնէն դուրս ելաւ։

— Փենեհէս աչքաբաց մարդ մ՚է, ըսաւ Սիմէոն. քեզի համար, Գէորգ, ձեռքէն եկածը կ՚ընէ։

— Ամէն բանէ աւելի՝ իմ սրտիս անհանգստութիւնը՝ ինծի համար ինքզինքնիդ վտանգի մէջ ձգելնիդ է։

— Հիմայ այս խօսքերը մէկդի դնենք, բարեկամ. մեր խիղճը կը հրամայէ մեզի որ այս բաներս ընենք, տարբեր բան չենք կրնար ընել։ Հիմայ, մայրիկ, դարձաւ ըսաւ Հռաքէլին, պատրաստութիւններդ շուտ տես,

ու սեղանը դիր որ անօթի փորանց ճամբայ չելլեն այս խեղճերը։

Հաւաքէլ իր տղոցը հետ սեղան պատրաստելու առենը՝ Գէորգ ու իր կնիկն ու աղան մինակ խուցին մէջ կեցած՝ ու իբր թէ մէկմէկէ քիչ առենէն պիտի բաժնուին՝ զիրար կը պագնէին ու վերջին բարեւնին կու տային։

— Ելիզա, կ՚ըսէր Գէորգ, անոնք որ բարեկամներ, տուներ, երկիրներ ու դրամ ունին՝ այնչափ չեն կրնար սիրել զանոնք, ինչպէս կը սիրեմ ես զքեզ՝ որ իմ ամէն բանս ես։ Այն օրուընէ որ քեզի հետ ճանչուորեցայ՝ ուրիշ մարդու վրայ սէր չէի կապած՝ բաց ի մօրմէս ու դժբաղդ քրոջմէս։ Այն օրն որ վաճառականն իմ քոյրս Եմիլիան տարաւ, առաւօտանց կանուխ պառկած առենս քոյրս քովս եկաւ ու ըսաւ ինծի. «Խեղճ Գէորգ, մէկ բարեկամ ունէիր, ան ալ պիտի երթայ. խե՛ղճ տղայ ասկէ ետեւ ինչ պիտի ընես»։ Անկողնէս ցատքեցի ու մէկէն վիզը պլլուեցայ և սկսայ լալ ու հառաչել. ինքն ալ ինծի հետ մէկտեղ։ Ասոնք եղան սիրոյ վերջին խօսքերը՝ որ տասը երկայն տարիներ մէյմ՚ալ չլսեցի. սիրտս բոլորովին ցամքեցաւ, և մոխիր դարձեր էր՝ երբոր առաջին անգամ զքեզ տեսայ։ Քու սէրդ կար-

ծես թէ ի մեռելոց յարոյց զիս ու նոր մարդ եղայ։ Իսկ հիմայ, Ելիզա, արեանս վերջին կաթիլը կը թափեմ ու չեմ թողուր որ զքեզ գրկէս յափշտակեն. զքեզ յափշտակելու համար՝ պէտք է առաջ իմ դիակիս վրայէն անցնին։

— Ով, Տէր, ողորմէ մեզի, ըսաւ Ելիզա հառաչանօք, թող որ մէկտեղ այս երկրէս ելլենք. ուրիշ բան չենք ուզեր։

— Աստուած ճերմակներուն հետն է, ըսաւ Գէորգ, աւելի խօսիլ ուզելով քան թէ սրտին զգացումները թափել։ Անոնց ամէն ըրածը կը տեսնե՞ արդեօք. թէ այդպէս է՝ ինչո՞ւ կը թողու որ աշխարհիս վրայ այսպիսի բաներ ըլլան։ Իրաւ՝ իշխանութիւնն իրենց կողմն է, բայց Ս. Գիրքն ալ իրե՞նց կողմն է արդեօք, ինչպէս որ իրենք կ'ըսեն։ Իրենք հարուստ են, առողջ են, երջանիկ են. եկեղեցւոյ անդամ են, և կը սպասեն արքայութիւն երթալու. այս աշխարհիս վրայ քաղցր կեանք մը կ'անցընեն, ամէն փափագնին կը կատարեն. իսկ անոնք՝ աղքատ, ազնիւ ու հաւատարիմ քրիստոնեաներ, լաւագոյն քան զիրենք, հողի ու փոշւոյ մէջ կը տառապին և անոնցմէ ոտնակոխ կ'ըլլան։ Զանոնք կը գնեն, կը ծախեն. անոնց սրտին

արիւնը, անոնց արտասուքը, անոնց հառաչանքները կը վաճառեն. և Աստուած ալ կը թողու որ այս անօրէնութիւններս կատարուին:

— Բարեկա՛մ Գէորգ, կանչեց Սիմէոն խոհանոցին խորէն, սա սաղմոսը մտիկ ըրէ, ասով կրնաս մխիթարուիլ:

Գէորգն ու Ելիզան վրան մօտեցան որ լսեն. Սիմէոն սաղմոսը բացաւ ու սկսաւ խել մը այն աստուածաբուղխ մարգարէական հոգւով գրուած քանի մը մխիթարական կտորուանքները կարդալ: Ճշմարտութեան սուրբ խօսքերը՝ որ այն բարի ծերունին հատիկ հատիկ կը կարդար, Գէորգին խռովեալ ու աղմկեալ սիրտը թմփանցեցին, և երեսին վրայ քաղցրութիւն մը, խաղաղութիւն մը նկարուեցաւ, ու կամաց կամաց հանդարտեցաւ:

— Թէ որ միայն այս աշխարհս ըլլար, վրայ բերաւ Սիմէոն, կրնայիր իրաւամբ հարցնել. Ո՞ւր է Աստուած. բայց շատ անգամ անոնք որ աս աշխարհիս վրայ բան չունին՝ անդին պիտի վայելեն երկնից արքայութեան մէջ: Ի՛նչ բան որ ալ գլխուդ գայ այս աշխարհիս մէջ՝ Աստուծոյ վրայ դիր յոյսդ, օր մը չէ օր մը արդարութիւնը տեղը կ'երթայ:

Թէ որ այս խօսքերս այնպիսի մէկն ըսէր՝

որ ըստ ինքեան դիւրակեաց ու հանգիստ կեանք մ՚ունի, և միայն տառապելոց սիրտը մխիթարելու համար ճարտասանութեան այսպիսի հոգեւոր ծաղիկներ կը թափէ բերնէն՝ գուցէ մեծ ազդեցութիւն մը չընէին։ Բայց այնպիսի մարդ մ՚էր այս ըսողն՝ որ Աստուծոյ ու մարդկութեան սիրոյն համար ամէն օր ինքզինքը տուգանաց ու բանտի վտանգի մէջ կը դնէր. անոր համար իրեն խօսքերն ալ կարգէ դուրս զօրութիւն մ՚ունէին, և այն խեղճ ու տառապեալ փախըստականաց սիրտը սփոփեցին ու բաւական կազդուրեցին։

Ելաւ Հռաքէլ խանդաղատանօք Ելիզային ձեռքէն բռնեց ու սեղանի հրամցուց։ Հազիւ թէ նստեր էին, դուռը կամաց մը զարնուեցաւ ու Հռութ ներս մտաւ։

— Պզտի տղուն, ըսաւ, երեք զոյգ բրդէ գուլպայ բերի, որ աղէկ կակուղ են ու տաք կը բռնեն. տեսնես Գանատա ինչ ցուրտ է։ Քիչ մ՚ալ անուշեղէն բերի, ըսաւ. ինչպէս որ գիտես, Ելիզա, տղաք առաւօտուընէ ինչուան իրիկուն ուտելու բան կ՚ուզեն։

Աս ըսելով տղուն ձեռքը կտոր մ՚անուշեղէն տուաւ, Մնացածն ալ թղթի մէջ պըլլած մօրը յանձնեց՝ սիրով ձեռքը սեղմելով։

— Ա՛հ, շնորհակալ եմ ազնիւ սրտիդ, ըսաւ Ելիզա։

— Հրամէ, Հռութ, ըսաւ Հռաքէլ, նստէ կերակուրնիս մէկտեղ ուտենք։

— Բացարձակապէս չեմ կրնար. Յովհաննէսը տղուն հետ մինակ է տունը. պաքսիմատներն ալ փուռը կ'էրին, շատ չեմ կրնար ուշանալ։ Յովհաննէսն ալ շաքարամանին մէջ եղած շաքարը բոլոր տղուն կու տայ. իրեն սովորութիւնն է։ Ուստի երթաս բարով, Ելիզա. երթաս բարով, Գէորգ. յաջող ճամբայ ... Աստուած բարի ճանապարհ տայ։

Փոքրահասակ քուակերուհին դուռը գոցեց ու վազելով գնաց։ Սեղանը լմնցաւ, և քիչ մը վերջը՝ մեծ գոց կառք մը դրսի դրան առջեւը կանգ առաւ։ Գիշերը պայծառ ու աստեղալից էր. Փենեհէս կառքէն վար ցատքեց՝ որ ճանապարհորդները մէջը տեղաւորէ։ Գէորգ դուրս ելաւ՝ մէկ ձեռքով տղան բռնած, մէկալ ձեռքով կինը. քալուածքն ուժով, դէմքը խաղաղ և անվեհեր։ Անոնց ետեւէն ալ Հռաքէլն ու Սիմէոնը կու գային։

— Քիչ մը դուրս ելէք, ըսաւ Փենեհէս կառքին մէջ եղողներուն, որպէս զի կառքին ետեւը կանանց ու տղոց համար տեղ պատրաստեմ։

— Հոս գոմէշի երկու կաշի կայ, ըսաւ Հռաքէլ, զանոնք նստարաններուն վրայ փռէ. վասն զի բոլոր գիշերը ճամբայ պիտի ընէք։

Ճէյմ մէկէն վար իջաւ, և զգուշութեամբ պառաւ մայրն ալ վար իջուց, որ անդադար չորս դին կը նայէր, վախնալով որ չըլլայ թէ զիրենք հալածողները վրայ հասնին։

— Ճէյմ, ըսաւ Գէորգ ցած ձայնով, ատրճանակներդ աղէկ վիճակի մէ՞ջ են։

— Հրամեր ես, ի՞նչ ըսել է, պատասխանեց Ճէյմ։

— Գոնէ պէտք եղած ատեն զանոնք գործածելը գիտե՞ս։

— Դու ապահով եղիր, ըսաւ Ճէյմ՝ կուրծքը բանալով ու խորին հառաչանք մ'արձակելով։ Ի՞նչ կը կարծես, կը թողու՞մ որ մայրս յափշտակեն։

Այս կարճառօտ խօսակցութեանս ժամանակ, Ելիզա վերջին բարեւը տուաւ իր ազնիւ բարեկամուհւոյն Հռաքէլի, և Սիմէոնին օգնութեամբը կառքն ելաւ ու Հէնրիկին հետ մէկտեղ գոմէշի կաշիին վրայ նստաւ։ Ետեւէն ալ պառաւն ելաւ ու քովը նստաւ. Գէորգն ու Ճէյմն ալ անոնց դիմացի փայտէ նստարանին վրայ նստան, փենեհէսն ալ կառավարին տեղն ելաւ։

— Երթաք բարո՛վ, կանչեց Սիմէոն դըրւէն ։

— Աստուա՛ծ օրհնէ զձեզ, պատասխանեցին ճամբորդները բոլորը մէկ բերան։

Կառքն սկսաւ ցնցուելով առաջ երթալ սառած գետնին վրայէն։ Ճամբուն անհարթութենէն ու անիւներուն ձայնէն՝ իրարու խօսակցութիւնը չէին հասկընար. և կառքը մէյմը մեծամեծ անտառներու մէջէն կ'անցնէր, մէյմը ընդարձակ անապատ դաշտերու մէջէն, մէյմը բլուրներու վրայ կ'ելլէր, մէյմ'ալ ձորերու մէջ կ'իջնէր։

Ժամը ժամու կը յաջորդէր, կառքն անդադար կը շարժէր, ու մեր ճանապարհորդները միշտ առաջ կ'երթային։ Շատ չանցաւ՝ պզտի Հենրիկը խոր քուն մտաւ ու մօրը գիրկին ինկաւ. խեղճ պառաւն իրեն վախը մոռցաւ. Եղիզային աչուըներն ալ սկսան գոցուիլ։ Փենեհէսն էր ամենէն արթունը, և իր երկայն ճամբուն ձանձրոյթը սուլելով կը փարատէր. թէպէտեւ այս բանս քուաքերի մը վայել բան չէր։

Ժամը երեքին մօտերը Գէորգ որոշ կերպով ձիու մը վազելը լսեց՝ որ կառքին ետեւէն կու գար, թեւով Փենեհէսը գրդեց, որ մէկէն ձիերը կայնեցուց որ մտիկ ընէ։

— Միքայէլը պիտի ըլլայ, ըսաւ, աս ե-կողն։ իրեն ձիուն քալուածքէն ալ կ՚իմա-ցուի։

Ետքը ոտքի վրայ ելաւ ու գլուխը դէպ ի ոտնաձայն եկած կողմն երկընցուց. Հե-ռուէն բլրի մը ծայրը մշուշի մէջ մարդ մը տեսաւ, որ ձին վազցընելով առաջ կու գար։

— Ահաւասիկ ինքն է կարծեմ, ըսաւ Փենեհէս։

Գէորգն ու Ճէյմ մէկէն կառքէն վար ցատ-քեցին, առանց գիտնալու թէ ինչ կ՚ընեն. ամենուն վրայ խոր լռութիւն մը պատեր էր, ու տեղերնէն չէին շարժեր, և աչուըներնին դէպ ի եկողը դարձուցեր էին։ Անիկայ ալ վա-զելով առաջ կու գար. մէյմ՚ալ յանկարծ ձորին մէջ աներեւոյթ եղաւ, բայց ձիուն ոտնաձայնը կը լսուէր, որ երթալով իրենց կը մօտենար։ Քիչ մ՚ատենէն բարձրաւան-դակի մը վրայ տեսան զինքը, ուսկից իրա-րու ձայն կրնային լսել։

— Ահա Միքայէլն է, ըսաւ Փենեհէս։ Է՜, Միքայէ՜լ, պոռաց բարձրաձայն, աս դիու կողմէն։

— Փենեհէս, դո՞ւն ես։

— Ե՜ս եմ. ի՞նչ լուր. ետեւէդ մարդ կա՞յ։

— Ինծմէ շատ հեռու չեն. ութը, տասը

հողի են. գլուխնին օդին տաքցած՝ հայհոյելով փրփրալով՝ գայլու մը պէս կը վազեն։

Մինչդեռ կը խօսէր՝ առաւօտեան հովը բազմութեան ձիաւորաց վազելուն ոտնաձայնը բերաւ։

— Բարեկամներ, շուտ ըրէք կառք ելէք, ըսաւ Փենեհէս։ Թէ որ պատերազմիլ կ՚ուզէք, սպասեցէք քիչ մ՚ալ հեռու երթանք։

Գէորգ ու Ճէյմ կառք մտան. Փենեհէս խարազանն հնչեցընելով՝ ձիերն սկսան վազել. կառքը կարծես թէ ոստած գետնին վըրայէն կը թռչէր. բայց ձիաւորաց ոտնաձայնն երթալով կը մօտենար. կնիկներն ալ լսեցին զայն, և գլուխնին դուրս երկընցուցած՝ հեռուն բարձր բլրի մը ծայրը՝ առաւօտեան շառագոյն երկնից հորիզոնին վրայ խումբ մը ձիաւորներ տեսան։ Անոնք շուտ մը ուրիշ բլրի մը վրայ հասան, ուսկից անշուշտ կառքը տեսած պիտի ըլլային՝ վրայի ճերմակ ծածկոյթէն, վասն զի հոն՝ անոնց ուրախութեան ու յաղթանակի խառնաձայնութիւնն ասոնց ականջն հասաւ։ Էլիզային գոյնը նետեց, և սկսաւ տղան ամուր մը գրկին մէջ սեղմել. պառաւը կ՚աղօթէր ու կը հառաչէր. Գէորգ ու Ճէյմ յուսահա-

տաքար ատրճանակնին ձեռք առին։ Թշնամիներն արագ արագ առաջ կու գային. կառքը շուտ մը դարձաւ ու ապառաժ ժայռերու շարքի մը դիմաց կանգ առաւ, որոնք ընդարձակ դաշտին մէջ բարձրացած՝ բնական ամրութիւն մ՚էին։ Այս տեղս շատ աղէկ գիտէր Փենեհէս, վասն զի որսորդութեան ժամանակներն ստէպ եկած էր այս կողմերս, անոր համար ալ ձիերն այնպէս ուժով վազցուց ։

— Ահաւասիկ հասանք, ըսաւ Փենեհէս, ու ձիերը կայնեցուց, և ինքը վար ցատքեց. ամէնքնիդ ալ վար իջէք ու հեռուէն այս ապառաժին վրայ եկէք։ Միքայէ՛լ, դու ալ ձիդ կառքին կապէ ու կառքն առած Ամարիային տունը գնա. իրեն ալ ըսէ որ մանչերն առած՝ շուտ հոս հասնի՝ սա եկող անպիտաններն ընդունելու։

Մէկէն ամէնքն ալ կառքէն դուրս ցատքեցին։

— Տղան ինծի տուէք, ըսաւ Փենեհէս՝ Հենրիկը գրկելով. դուք ալ կնիկներն առէք ու հեռուէս մէկ շնչով վազեցէք. շուտ։

Ցորդորանքի կարօտութիւն չունէին անոնք. ցանկէ մ՚անցին անցան, և սկսան դէպ ի ժայռը վեր վազել։ Աստեղաց ու ար-

շալուսին նուաղ լուսովը ճամբայ մը նշմարեր էին որ ժայռին գագաթը կը հանէր։

— Առաջ, առաջ, կանչեց Փենեհէս. և տղան դիրկը բռնած՝ առջեւէն մագլցի այծու մը պէս շուտ շուտ վեր կ՚ելլէր։ Ետեւէն Ճէյմը կու գար՝ պառաւ մայրը ուսն առած, որ վախէն կը դողդղար. Գէորգ ու Ելիզան ալ իրենց ետեւէն կ՚երթային։

Ձիաւորներն ալ ետեւնէն հասան, ու պոռալով կանչելով և հայհոյելով՝ ցանկին քով ձիերնէն վար իջան։ Փախստականները ժայռերուն ծայրն ելան. անկէց անդին ճամբան նեղ անցք մ՚էր, ուսկից երկու հոգի քովէ քով չէին կրնար անցնիլ, ծայրն ալ մէկ մեղր լայնութեամբ պատառուած մը կար. անկէ անդին խումբ մը ժայռերու՝ մէկալներէն բաժնուած՝ իբր երեսուն ոտնաչափ դէպ ի վեր կը բարձրանար, և որուն կողերը բերդի մը պարսպաց կը նմանէին։ Փենեհէս պատառուածքին վրայէն դիւրութեամբ մը ցատքեց անդին ու տղան դրկէն գետին դրաւ։

— Հիմայ կարգը ձերն է, կանչեց. գըլուխնիդ վտանգի մէջ է։

Անոնք ալ անցան, և շուտ մը ժայռերու կտորներ հոլովելով՝ իրարու քով շարեցին ու անոնց ետեւը պահուըտեցան։

— Ահաւասիկ ամէնքնիս ալ հոս ենք, ըսաւ Փենեհէս. թէ որ կրնան թող վրանիս յարձակին: Առաջ պէտք է որ մէկիկ մէկիկ սա երկու ժայռին մէջտեղէն անցնին, ուր որ ձեր ատրճանակներուն գնտակները կը հասնին զիրենք բարեւելու:

— Այնպէս է, պատասխանեց Գէորգ, բայց որովհետեւ հիմայ ասպարէզը մերն է, հրամանքդ մի վտանգեր զքեզ, թող մենք միայն պատերազմինք:

— Դու ազատ ես պատերազմելու, Գէորգ, ըսաւ Փենեհէս՝ վայրի թթենւոյ տերեւ ծամելով. բայց կարծեմ թէ կրնամ՝ գործողութեան ընթացքն ուղղել: Մեր թշնամիները վարը խորհուրդ կ'ընեն և թառիլ ուզող հաւերուն պէս գլուխնին վեր կը վերցնեն կը նային: Աղէկ կ'ըլլայ, որ իրենց քանի մը խօսքով ծանուցանես՝ որ պարապ տեղը փորձ չփորձեն վեր գալու, ապա թէ ոչ՝ վերջէն կը զղջան:

Իսկ յարձակողներն էին մեր հին ծանօթները, Թովմաս Լոքէր, Մարք, երկու ալ պահապան զինուոր և քանի մը հատ դատարկապորտ մարդիկներ, զորոնք պանդոկը գտեր էին, և քիչ մ'օղի խոստանալով՝ հետերնին առեր էին զերիներն որսալու:

— Ահաւասիկ, Լոքէր, ըսաւ անոնցմէ մէկը, նապաստակներդ պարանն ինկան, հի-մայ բռնելը նայինք։

— Հիմայ ուրիշ բան չի մնար ընելու, բայց եթէ տանուէն երթալ, ըսաւ Լոքէր։ Վար չեն կրնար ցատքել. ոչխարի պէս հիմայ զի-րենք կը բռնենք։

— Բայց, Լոքէր, ժայռերուն տանուէն կըր-նան վրանիս ատրճանակ պարպել, պատաս-խանեց Մարք. ան ատեն ի՞նչ կ՚ընես։

— Դուն ալ միշտ, ըսաւ Լոքէր, կաշիդ կը մտածես, Մա՛րք. ամենուն վտանգ չը-կայ. սեւերը շատ վատ են։

— Չեմ՝ գիտեր թէ ինչո՞ւ համար կաշիս ազատել պիտի չմտածեմ, պատասխանեց Մարք. աշխարհիս վրայ բոլոր մէկ կեանք մ՚ունիմ։ Երբեմն սեւերն առիւծի պէս կը պատերազմին գիտե՞ս։

Այս միջոցին Գէորգ ժայռին վրայ ելաւ, ու բարձր ձայնով սկսաւ ըսել.

— Պարոններ, ո՞վ էք դուք և ի՞նչ կ՚ու-զէք ։

— Քանի մը փախստական գերիներ կը փնտռենք, պատասխանեց Լոքէր. և են Գէ-որգ Հարրիս, Էլիզա Հարրիս և իրենց տղան, Ճէյմ Յակոբ և պառաւ մը։ Զիրենք բռնե-

լու համար արդարութեան պաշտօնեաներ և հրաման ունինք հետևելու։ Գէորգ Հարրի՞սն ես դու, պարոն Հարրիսին գերին, Քէնդըքի նահանգին Շէլպիի կոմսութենէն։

— Գէորգ Հարրիս եմ. Հարրիս անունով Քէնդըքեցիին մէկը զիս իւր ստացուածքը կը համարէր. բայց ես հիմայ ազատ եմ, և ազատ երկրի մը վրայ եմ, և կինս ու տղաս իմս են. Ճէյմ ու մայրն ալ հոս են. ձեռքերնիս զէնք ունինք և զմեզ ինչուան վերջը պիտի պաշտպանենք։ Կրնաք վեր գալ՝ թէ որ կ'ուզէք. բայց գիտցած ըլլաք՝ ով որ յանդըգնի առաջ գալու՝ գետին կը փռուի մեր գնտակներէն. նոյնպէս ալ ետևէն եկողները։

— Մի՛ ըներ, մի՛ ըլլար, ըսաւ առաջ նետուելով կարճահասակ ու հաստ մարդ մը. ըրածդ մեծ անխոհեմութիւն է։ Մենք արդարութեան պաշտօնեաներ ենք. մեր ձեռքը օրէնք և ուժ կայ. ուստի լաւ է որ խելօք անձնատուր ըլլաք, թէ չէ՝ չուզելով կ'ըլլաք։

— Շատ լաւ գիտեմ որ դուք ձեռքերնիդ օրէնք և ուժ ունիք, պատասխանեց Գէորգ դառնութեամբ։ Դուք կ'ուզէք իմ կինս Նոր-Օրլէան ծախելու ղրկել, տղաս ալ հոր-

թու մը պէս վաճառքի պիտի հանէք ու ա-
նոր վաստըկովը պիտի հրճուիք, Ճէյմին
մայրն ալ իր անգութ տիրոջը պիտի դար-
ձընէք, որ զինքը ծեծի տակ փըտտեցնէ՝ իր
տղուն հետ աղէկ վարուելուն համար։ Իսկ
զիս ու Ճէյմն ալ կ'ուզէք անոնց ձեռքը
յանձնել՝ որ մեր տէրը կ'ըսուին, որպէս զի
ստնակոխ ընեն զմեզ գաւազանով և սան-
ջաղներով։ Եւ թէ որ ձեր օրէնքներն այս
բաներս ձեզի թոյլ կու տան, ամօ՛թ ձեզի
և ձեր օրէնքներուն։ Բայց մենք դեռ ձեր
ձեռքը չենք ինկած. մենք ձեր օրէնքները
չենք ճանչնար. մենք ձեր հայրենիքը կ'ու-
րանանք. ազատ ենք մենք, և յանուն Աս-
տուծոյ՝ որ զմեզ ստեղծեր է՝ մինչև ցմահ
պիտի պատերազմինք մեր ազատութեան վը-
րայ։

Այս խօսակցութեանս ատեն՝ Գէորգ ժայ-
ռին ծայրը աներկիւղ կեցեր էր. արշալու-
սոյն ճառագայթներն իր սեւորակ թուշերը
ներկեր էին, և աչուըները բարկութիւն ու
յուսահատութիւն կը փայլակէին. և երբոր
մարդկան արդարութեանը դէմ Աստուծոյ
արդարութեան դիմեց, ձեռուըները դէպ եր-
կինք վերուց։ Իրեն արիութիւնը, նայուած-
քը ձայնը և շարժմունքներն՝ յարձակողնե-

*րուն վրայ տպաւորութիւն մ՚ըրին, բաց ի
Մարքէն։ Ասիկայ ատրճանակը լեցուց ու
Գէորգին վրայ պարպեց, մինչդեռ իր ընկեր-
ները ապշած լուռ կեցեր էին։*

*— Փոյթ չէ թէ մեռած կամ ողջ առնեն
զքեզ Քէնդըքի, գինը նոյն է, ըսաւ անայլ-
այլակ՝ ատրճանակին հագուստին ծայրովը
սրբելով։*

*Գէորգ դէպի ետեւ ցատքեց, Ելիզա ճիչ
մը վերուց. գնտա՛կը էրկանը մազերուն քը-
սուելով անցեր էր, և Ելիզային թուշերը շփե-
լով՝ գնացեր ծառի մը մէջ խրեր էր։*

*— Բան չկայ, Ելիզա՛, ըսաւ Գէորգ ա-
ռանց շփոթելու։*

*— Փոխանակ անոնց երեւնալու՝ պէտք
է մանաւանդ թէ ժայռի մը ետեւ պաշտպա-
նուիս, ըսաւ Փինէհէս. անոնք գիտցած մար-
դիկդ չեն։*

*— Հիմայ, Ճէ՛յմ, ըսաւ Գէորգ, կարգը
մերն է. նայէ ատրճանակներդ պատրաստ
են. աչուընիս սա անցքին վրայ ըլլայ. ա-
ռաջին եկողին վրայ ես կը պարպեմ, եր-
կրորդին վրայ դուն, և այսպէս կարգաւ. աղէկ
նայինք՝ չըլլայ թէ երկու գնտակ մէկ հոգւոյ
վրայ կորսընցընենք, վասն զի չեն արժեր։*

*— Բայց թէ որ սխալելու ըլլաս ...*

— Ձեմ սխալիր, ըսաւ Գէորգ պաղ ա-րեամբ։

— Այս երիտասարդին քով աղէկ կըրա-յըճութիւն կայ եղեր, մրմռաց փենեհէս քթին տակէն։

Բայց յարձակողները Մարքին կրակ ընե-լէն ետեւ ալ՝ դեռ անորոշ կեցեր էին։

— Կարծեմ թէ անոնցմէ մէկը վիրաւո-րուած պիտի ըլլայ, ըսաւ արդարութեան պաշտօնեաներէն մէկը, վասն զի աղաղակ մը լսեցի։

— Ես կ'երթամ ստուգելու ըսածդ, վրայ բերաւ Թոմաս Լոքէր. ես գերիներէն ամե-նեւին վախ չեմ ունեցած, այսօր առաջինը պիտի չըլլայ։ Ով կ'ուզէ ետեւէս գալ, ըսաւ՝ ու ժայռին վրայ ցատքեց։

Գէորգ այս խօսքերս որոշ լսեց, և ատըր-ճանակը լեցուց ու դէպի նեղ ճամբուն բե-րանը շտկեց։

Կարիճներէն մէկը Թոմաս Լոքէրին ե-տեւէն սկսաւ գալ ու, Առա՛ջ առա՛ջ կանչել։ Մէյմ'ալ տեսնես Թոմաս Լոքէր նեղ ճամ-բուն ծայրէն երեւցաւ. Գէորգ ատրճանակը պարպեց ու Լոքէրին կողը վիրաւորեց. բայց անիկայ քայլ մ'ալ ետեւ չգնաց. մանաւանդ թէ կատաղի ցլու մը պէս մռնչելով՝ պա-տառուածքէն անդին ցատքեց։

— Բարեկա՛մ, կանչեց փենեհէն՝ մէկէն առաջ նետուելով ու երկայն ձեռուըներովը Լոքէյին ուժով մը ետեւ հրելով, հոս քեզի կարօտութիւն չունինք։

Թովմաս Լոքէր պատառուածքին մէջ ին-կաւ, ծառերուն, թուփերուն, քարերու կառ-րուանդներուն վրայէն գլորելով, և ինչուան յատակն հասաւ՝ ճեճուած, վիրաւոր ու հո-գին բերանն եկած։ Հոգին փչելը բան մը չէր՝ թէ որ հագուստները ծառի մը ճիւղե-րուն գալով՝ անկման ուժը չկտրէին։

— Օգնութի՛ւն, օգնութի՛ւն, կանչեց Մարք ու սկսաւ փախչիլ, միւսներն ալ ե-տեւէն. մանաւանդ այն հաստ արդարութեան պաշտօնեան, որ շունչը բռնուած՝ չէր գիտեր ի՛նչպէս փախչի։

— Է՛յ բարեկամներ, պոռաց Մարք. գը-նացէք Լոքէրը վերուցէք, ես ալ ձիս հե-ծած կը վազեմ օգնութիւն փընտռելու։ Եւ առանց միտ դնելու իր ընկերակցաց աղա-ղակին ու կատականաց՝ ձիու վրայ ցատ-քելն ու թողուլ փախչիլը մէկ ըրաւ։

— Այսպիսի յիմարութիւն արդեօք տես-նուա՞ծ է, ըսաւ մարդիկներէն մէկը. զմեզ իր շահուն համար հոս բերաւ, ու հիմայ թողուց փախաւ։

— Ի՛նչ ալ ըլլայ, վրայ բերաւ ուրիշ մը, պէտք է զանիկայ ընկած տեղէն վերցընենք. բայց ո՛վ գիտէ թէ արդեօք ո՛ղջ է թէ մեռած:

Լոքէրին ձայնին առնելով հեռուէն՝ քարերուն, թուփերուն ու փուշերուն մէջէն, գնացին ընկերները զինքը գտան, որ կը տապըլտըկէր, և սարսափելի կերպով կը հայհոյէր ու կը գանգատէր·

— Եօթը հոգի ունեցած պիտի ըլլաս, Լոքէր, ըսաւ անոնցմէ մէկը. վէրքդ ծա՞նր է:

— Ես ի՞նչ գիտնամ. ո՛ւհ, տարէք զիս ասկէ: Վա՛յ գլխուն գայ այն քուաքէրին. անիկայ չըլլար՝ անոնցմէ մէկը հիմայ պառկած կ՚ըլլար իմ տեղս:

Մեծ աշխատութեամբ ու տքալով՝ զինքը տեղէն վերուցին և ձիերուն քով տարին:

— Թ՚է որ կարելի ըլլար՝ զիս նորէն պանդոկ դարձընէիք. թաշկինակ մը կամ ուրիշ լաթի կտոր մը տուէք ինծի որ վէրքս կապեմ, որպէս զի արիւնս չվազէ:

Գէորգ բարձրէն ասոնց ամէն շարժմունքը կը դիտէր, և տեսաւ որ ամէն ջանք կ՚ընեն ձիու վրայ դնելու այն վիթխարի մարդը. բայց ճար չեղաւ, երկար աշխատութենէ ետեւ՝ ձիուն վրայէն սահեցաւ վար ինկաւ:

— Զըլլայ թէ մեռած ըլլայ, ըսաւ Ելիզա, որ ինքն ալ ուշի ուշով աչքը դէպ ի հոն անկեր էր։

— Ինչո՞ւ կը ցաւիս, պատասխանեց Փենեհէս, արժանի է։

— Վասն զի մահուընէ ետեւ դատաստան կու գայ, ըսաւ Ելիզա։

— Իրաւ է, վրայ բերաւ պառաւն ալ, որ ինչուան ան վայրկեանը կը հառաչէր ու աղօթք կ'ընէր. մարդուս համար սարսափելի ժամ մ'է այն ժամը որ դատաստանի կ'ելլէ։

— Կարծեմ զինքը հոն թողուցին, ըսաւ Փենեհէս։

Եւ յիրաւի, քիչ մ'ատեն մէջերնին խօսակցելէն ետեւ՝ ձիերնին հեծան ու աներեւոյթ եղան։ Երբոր բոլորովին ա՛լ չաներեւցան՝ Փենեհէս ըսաւ որ վար իջնեն։

— Հիմայ ա՛մէն հանդէս լմընցաւ, ըսաւ. ասկէ իջնենք. քիչ մը հեռուն՝ ճամբուն վրայ Միքայէլ կառքով մեզի կը սպասէ, երթանք զինքը գտնենք. և դեռ կանուխ ըլլալով՝ ճամբան մարդու չենք հանդիպիր, և երթալու տեղերնիս ալ ասկէ երկու մղոն հեռու է, ուր ինչուան հիմայ հասած էինք՝ թէ որ ճամբաներն աղէկ ըլլային։

Երբոր վարը ցանկէն մօտեցան՝ տեսան որ հեռուէն կառքը կու գար՝ քանի մը ձիաւորներ ալ մէկտեղ։

— Ապրի՛ք, կանչեց ուրախութեամբ Փենեհէս. ահաւասիկ Միքայէլն, Ստեփանն ու Ամարիան են սա եկողներն։ Հիմայ ա՛լ վախ չկայ. ա՛լ հիմայ երթալու տեղերնիս հասածի պէս եղանք։

— Երբոր այնպէս է, ըսաւ Եղիզա, քիչ մը կենանք սա խեղճ մարդուն օգնենք, որ անդին յուսահատաբար կը պոռայ կը կանչըռտէ։

— Քրիստոնէի մը պարտքն է, ըսաւ Գէորգ, այնպիսիններուն օգնել. երթանք վերցընենք զինքն ու հետերնիս մէկտեղ տանինք։

— Անկէ ետեւ աշխատութիւնը քուաքէրներուն կը մնայ զինքը հոգալու, ըսաւ Փենեհէս. լաւ, երթանք նայինք թէ ինչ վիճակի մէջ է։

Փենեհէս իրեն սրտորդութեան ժամանակ քիչ մը վիրաբուժութիւն սորվեր էր, ուստի նստաւ Լոքէրին վէրքը քննելու։

— Մարք, դո՞ւ ես, ըսաւ Լոքէր մարած ձայնով։

— Պարապ տեղը զինքը կը կանչես, բա-

ընկամ, ըսաւ Փինիհէս. Մարքին փայլն ալ չէ, անիկայ ինքզինքը կը մաշէ, և ամենէն առաջ ձգեց փախաւ։

— Ես ալ զինքը մարդ կը կարծէի, կանչեց Լոքէր. վատ անպիտանի զիս հոս մինակ թողուց։ Ա՛հ, իմ պառաւ մայրս խեղճ կ'ըսէր թէ օր մ'այս բանս պիտի գայ գլխուս։

— Սա խեղճ մարդը կը լսէ՞ք, ըսաւ պառաւը, իր մայրը կը կանչէ. շատ կը ցաւիմ վրան։

— Կամաց, կամաց, ըսաւ Փենեհէս Լոքէրին, որ ատքով ձեռքով զինքը մէկդի կը հրէր. խելօք կեցիր. թէ որ վէրքդ չպատեմ՝ մնացած արիւնդ ալ կը վազէ ու հոգիդ ալ մէկտեղ կ'ելլէ։

— Դու չէի՞ր որ զիս վար գլորեցիր, ըսաւ Լոքէր։

— Թէ որ ես զքեզ վար չգլորէի, դու զմեզ պիտի գլորէիր, պատասխանեց Փենեհէս. բայց հիմայ կեցիր որ վէրքդ պատեմ. քեզի դէմ ամենեւին ատելութիւն չունինք, ու քու աղէկութիւնդ կ'ուզենք։ Զքեզ տուն մը կը տանինք որ քու տանդ պէս զքեզ հոգան։

Լոքէր հառաչանք մ'արձակեց ու աչուը-

ները ցոյց։ Այսպիսի մարդկանց ոյժն ու զօրութիւնը բոլորովին նիւթական է, արեան հետ մէկտեղ կը վազէ կ'երթայ. խեղճ բան մ'է այսպիսի վիթխարի մարդ մը գետին փռուած տեսնելը։

Միքայէլն ու ընկերներն հասան. կառքին նստարանները վար առին, ու գամէշի կաշիները չորս ծալլած՝ մէկ կողմը փռեցին, և չորս հոգի մեծ դժուարութեամբ այս անկողնիս վրայ Թովմաս Լոքէրը վերուցին դրին։ Երբոր զինքը վերցընելու հետ էին՝ բոլորովին ինքզինքը կորսընցուց։ Պառաւը սաստիկ վրան գթալով՝ անոր գլուխը իր ծնկան վրայ դրաւ. Ելիզա, Գէորգ ու Ճէյմ կրցածնուն չափ կառքին մէջ տեղաւորուեցան ու ճամբայ ելան։

— Ի՞նչ կը մտածես, ինչ վիճակի մէջ է աս մարդը, հարցուց Գէորգ Փինեհէսի, որ կառքին առջեւ քովը նստեր էր։

— Վէրքն այնչափ վտանգաւոր բան մը չէ, բայց վար գլորիլն և քարի փայտի զարնուիլը վայն ի վրան բերին. շատ արիւն վազեր է, և արեան հետ մէկտեղ ոյժն ու զօրութիւնը կորսընցուցեր է. բայց բան մը չէ, կ'ազատի. միայն՝ այս վիպուածէս բաւական է թէ խրատուի։

— Հիմայ սիրտս քիչ մը հանգչեցաւ, պատասխանեց Գէորգ. բոլոր կենացս մէջ ինծի մեծ խիղճ պիտի ըլլար՝ թէ որ սպաննելու ըլլայի զինքը, թէպէտեւ ամենայն իրաւամբ։

— Այնպէս է, ըսաւ Փենեհէս, սպանութիւն ընելը միշտ գէշ բան է, թէ՛ մարդ եղեր է և թէ անասուն։ Ես ատենով երեւելի որսորդ էի. անգամ մը եղջերու մը տեսայ որ վիրաւոր ինկած ու մահուան. դուռը հասած՝ այնպիսի խեղճ աչքով մը ինծի կը նայէր՝ որ զինքն սպաննելուս վրայ զղջացի։ Ո՞ւր թողունք որ ասիկայ մարդ է. վասն զի ինչպէս որ քիչ մ՚առաջ Ելիզա ըսաւ՝ մահուընէ ետեւ դատաստան կու գայ։

— Հիմայ ի՞նչ պիտի ընենք այս խեղճ մարդը, ըսաւ Գէորգ։

— Զինքն Ամարիային տունը կը տանինք. իրեն Տորգաս մամը աղէկ հիւանդ կը հոգայ. կարծես թէ այս բանս իրեն կոչմունք մ՚է, և երջանիկ կը համարի ինքզինքը երբոր հիւանդի մը քով կը ծառայէ. բարեկամդ իրեն կը յանձնենք, և մի՛ վախեր՝ տասնըհինգ օրէն ոտք կ՚ելլէ։

Ժամ մը ճամբայ ընելէն ետեւ՝ յոգնած դադրած՝ մեր ճանապարհորդները գեղի տուն

մը հասան, ուր դիմացնին առատ նախաճաշիկ մը հանուեցաւ : Թովմաս Լոքերը մաքուր ու փափուկ անկողնոյ մը վրայ դրին, որ կեանքին մէջ չէր տեսած, և վէրքն ալ ամենայն զգուշութեամբ ու խնամքով դարմանեցին ու կապեցին։ Լոքէր յոգնած տղու մը պէս կռնակին վրայ պառկած մնաց. մարած աչուըները կը բանար կը գոցէր, ու չորս դին կը պտըտցընէր, ճերմակ վարագոյները կը դիտէր, ու եկող գնացողներուն կը նայէր։

Հիմակուհիմայ զինքն այս վիճակիս մէջ թողունք, ու դառնանք մեր Աղբար Թովմասին։

## ՎԵՐՋ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻՆ

